# ՊԱՏՄԱԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ՀՐԱՄԱՆԱՒ

**Ն. Ս. Օ. Տ. Տ. ԳԱՐԵԳՆԻ ԵՐԿՐՈՐԴԻ**

ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԵՒ ՎԵՀԱՓԱՌ

ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ლეონ მელიქსეთ-ბეგი

# “ჩრდილო მხარეთა სომეხთა მოძღვარნი” და მათი ვინაობა”

სომეხ-ქართველთა ურთიერთობის საკითხებთან დაკავშირებით
ცდა ისტორიულ-ლიტერატურული გამოკვლევისა

ტფილისის უნივერსიტეტის გამოცემა
ტფილისი – 1928

---

ПЕРВОПРЕСТОЛЬНЫЙ СВЯТОЙ ЭЧМИАДЗИН
ЕРЕВАНСКИЙ ГОСУДАРСТВЕННЫЙ УНИВЕРСИТЕТ
ИНСТИТУТ АРМЕНОВЕДЧЕСКИХ ИССЛЕДОВАНИЙ

ЛЕОН МЕЛИКСЕТ-БЕК

# АРМЯНСКИЕ УЧЕНЫЕ СЕВЕРНЫХ СТРАН

(опыт историко-литературного исследования)

Издательство Первопрестольного Св. Эчмиадзина
Св. Эчмиадзин - 2016

---

MOTHER SEE OF HOLY ETCHMIADZIN
YEREVAN STATE UNIVERSITY
INSTITUTE FOR ARMENIAN STUDIES

MELIQSETH-BEK L.

# ARMENIAN SCHOLARS OF THE NORTHERN REGIONS AND THEIR IDENTITY

HISTORICAL-PHILOLOGICAL RESEARCHES

Publication of Mother See of Holy Etchmiadzin
Holy Etchmiadzin - 2016

ՄԱՅՐ ԱԹՈՌ ՍՈՒՐԲ ԷՋՄԻԱԾԻՆ
ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ
ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ԼԵՎՈՆ ՄԵԼԻՔՍԵԹ - ԲԵԿ

# «ՎԱՐԴԱՊԵՏՔ ՀԱՅՈՑ ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄԱՆՑ» ԵՎ ՆՐԱՆՑ ԻՆՔՆՈՒԹՅՈՒՆԸ

ՀԱՅ-ՎՐԱՑԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ
*(պատմագրական հետազոտության փորձ)*

*Վրացերենից թարգմանեց*
*ՀՐԱՉ ԲԱՅՐԱՄՅԱՆԸ*

ՄԱՅՐ ԱԹՈՌ ՍՈՒՐԲ ԷՋՄԻԱԾՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

Ս. ԷՋՄԻԱԾԻՆ - 2016

ՀՏԴ 93/94
ԳՄԴ 63.3
Մ 511

*Տպագրվում է երաշխավորությամբ*
*Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնի*
*Հրապարակչական խորհրդի*

**ՄԵԼԻՔՍԵԹ-ԲԵԿ ԼԵՎՈՆ**

Մ 511 «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց» և նրանց ինքնությունը / Լևոն Մելիքսեթ-Բեկ: Վրացերենից թարգմանեց Հրաչ Բայրամյանը; Խմբագրութեամբ՝ Գէորգ Տէր-Վարդանեանի - Մայր Աթոռ Ս. Էջմիածնի հրատարակչություն, Ս. Էջմիածին, 2016.- 288 էջ+5 ներդիր:

Անվանի կովկասագետ Լևոն Մելիքսեթ-Բեկի «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց» և նրանց ինքնությունը» աշխատությունը լույս է տեսել Թիֆլիսում 1928 թվականին, վրացերեն: Հեղինակը հետազոտել է ԺԱ-ԺԳ. դդ. հայ-վրացական գիտական, գրական և պատմամշակութային հարաբերությունները:

Հետազոտությունն անհասանելի էր վրաց լեզուն չիմացող հայագետներին, մինչդեռ նրա թարգմանությունն ու հրատարակությունը թույլ կտա արժևորելու հայ-վրացական պատմագրական նվաճումներից մեկը, իսկ միջնադարյան հայկական համալսարանների գիտակրթական պատմությունն ուսումնասիրողները կունենան բավականին ընդգրկուն և փաստառատ սեղանի գիրք:

ՀՏԴ 93/94
ԳՄԴ 63.3

*Տպագրվում է մեկենասությամբ*
***«ՍԱՐԳԻՍ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ»** հիմնադրամի*

ISBN 978-9939-59-168-1

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ. Հաղբատ-Սանահինի դպրոցը և հարևան [կրթ]օջախների խմբակները ԺԲ-ԺԳ. դարերում



## ՀԱՎԵԼՎԱԾ



## ՆԿԱՐՆԵՐ

*Հրաչ Բայրամյան*

# ԿՈՎԿԱՍԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՐԱԽՏԱՎՈՐԸ

*(Կենսագործունեության համառոտ ակնարկ)*

*Հայագիտության XX դարի երևելի ներկայացուցիչներից Լևոն Մելիքսեթ-Բեկի հարուստ, բազմազան ու բազմաժանր գիտաստեղծագործական ժառանգությունն այսօր՝ նույնիսկ նրա մահից ավելի քան կես դար անց, մեծ արժեք է ներկայացնում ոչ միայն հայագիտության, այլև վրացագիտության և, առհասարակ, կովկասագիտության համար:*

*Ձնայած Լևոն Մելիքսեթ-Բեկը հայկաբանական հետազոտությունները սկսեց իրականացնել այն ժամանակ, երբ ականավոր գիտնականներ Նիկողայոս Մառը (1865-1934), Նիկողայոս Ադոնցը (1871-1942), Ներսես Ակինյանը (1883-1963), Հովսեփ Օրբելին (1887-1961) և անվանի շատ այլ դեմքեր հասել էին գիտական գործունեության գագաթնակետին, այդուհանդերձ նա՝ պատմաբանասիրական գիտությունների և մի քանի լեզվի խոր, համակողմանի ու արմատական իմացությամբ, անաչառ խոսք ասաց այդ ոլորտում. արժանացավ համընդհանուր գովեստի ու հարգանքի և իր պատվավոր տեղն զբաղեցրեց տվյալ գիտաճյուղերի պատմության անդաստանում:*

*Լևոն Մելիքսեդեկի Մելիքսեթ-Բեկը ծնվել է 1890 թ. սեպտեմբերի 26-ին, Թիֆլիսում, ծառայողի ընտանիքում: 1897-1899 թթ. մասնավոր պանսիոններից մեկում կրթություն ստանալուց հետո, 1899-1909 թթ. նա սովորել է տեղի ռեալական ուսումնարանում: 1906 թ. ընդգրկվել է էսպերանտիստների համաշխարհային լիգայի կազմում: Բարձրագույն կրթությունն ստացել է 1909-1913 թթ. Օդեսայի (Նովոռոսիյսկ) համալսարանի իրավաբանական ֆակուլտետում, միաժամանակ հաճախել նույն բուհի պատմաբանասիրական ֆակուլտետի դասընթացներին՝ ունկնդրելով ճանաչված գիտնականներ Ա. Ալմազովին, Ա. Շպակովին, Ա. Թոմսոնին, Է. ֆոն-Շտերնին և այլոց: Նա իր ավարտական աշխատանքը՝ «Հայոց Ծայրագույն պատրիարքի իրավաբանական կացությունը» թեմայով, գրել է ժամանակից երկու տարի շուտ՝ արժանանալով ականավոր հայագետ Գարեգին Հովսեփյանի և վրացի գրականագետ Ա. Խախանովի (Խախանաշվիլի) գովասանքին:*

*Ուսումնառության տարիներին Լ. Մելիքսեթ-Բեկը մեծ հետաքրքրություն է ցուցաբերել հնագիտության նկատմամբ, շրջագայել է Հայաստանում, այցելել Ռուսաստանի և Ուկրաինայի հայաբնակ վայրերը: 1914 թ. ընտրվել է պատմության և հնությունների Օդեսայի ընկերության թղթակից անդամ: Վերադառնալով Թիֆլիս՝ նա վարել է մի շարք պաշտոններ, այդ թվում՝ Հայոց ազգագրական ընկերության խմբագրական մասնաժողովի անդամ-քարտուղարի, Մոսկովյան հնագիտական ընկերության կովկասյան բաժանմունքի գիտական քարտուղարի, որի իսկական անդամներից էր: 1913-1918 թթ. զբաղվել է նաև մանկավարժական գործունեությամբ:*

*1918 թ. հունվարին սկսում է գործել Թիֆլիսի վրացական համալսարանը, որտեղ հայագիտական դասընթացներ վարելու նպատակով բուհի հիմնադիր-ռեկտոր Իվանե Ջավախիշվիլին 1918 թ. սեպտեմբերին նորաբաց բուհ աշխատանքի է հրավիրում տակավին երիտասարդ, բայց արդեն գիտնականի համբավ վաստակած Լևոն Մելիքսեթ-Բեկին*[1]*:*

*1922 թ. նույն համալսարանում հանձնելով դոկտորական քննություն՝ հայ-վրացական, վրաց-հունական բանասիրություն և այլ առարկաներից, նա ընտրվում է նորաստեղծ հայագիտության ամբիոնի դոցենտ, ապա և վարիչ, միևնույն ժամանակ նշանակվում է հնդեվրոպական լեզվաբանության հանձնաժողովի նախագահ: Ավելի քան քառասուն տարի՝ մինչև իր մահը, նա ղեկավարել է այդ ամբիոնը, վրաց իրականության մեջ ընդլայնել է հայ-վրացական բանասիրության շրջանակները՝ խորացնելով պատմական թեմատիկան, ինչպես նաև զգալի ջանքեր է գործադրել հայ և վրացի գիտնականների միջև համագործակցության կապեր հաստատելու և ամրապնդելու համար:*

*1945 թ. Լ. Մելիքսեթ-Բեկի նախաձեռնությամբ Թբիլիսիի պետական համալսարանում հիմնադրվում է հայոց լեզվի և գրականության բաժին՝ ուսանողների ամենամյա ընդունելություն կատարելու իրավունքով: Հայագիտական առարկաներից այստեղ դասավանդվում էին գրաբար, ժամանակակից հայոց լեզու, հայ գրականության պատմություն (հին, նոր և նորագույն շրջաններ), Հայաստանի պատմություն, հայ ժողովրդական բանահյուսություն, հայ բարբառագիտություն: Դրանցից բացի նաև՝ համեմատական*

---

[1] Ըստ գործող կարգի՝ մինչ դասախոս ընտրվելը, համալսարանի գիտական խորհրդի ամբողջ կազմը՝ ռեկտորի ղեկավարությամբ, ունկնդրել է նրա առաջին դասախոսությունը, գնահատել գերազանց, որից հետո միայն նա իբրև դասախոս մտել է լսարան (18.09.1918):

*քերականություն, կառուցվածքային լեզվաբանության հիմունքներ, եվրոպական լեզուներ և, իհարկե, վրացագիտական առարկաներ:*

*Լայն են եղել Լ. Մելիքսեթ-Բեկի գիտական հետաքրքրությունների շրջանակները՝ աղբյուրագիտություն, ազգագրություն, բանահյուսություն, հնագիտություն, կրոնագիտություն, վիմագրագիտություն, բարբառագիտություն, պատմագիտություն, իրավագիտություն, բնագրագիտություն, անձնավագիտություն և այլն: Բացի հայագիտության գրեթե բոլոր բնագավառներից և հայ-վրացական հարաբերություններից, նա զբաղվել է նաև հայ-ռուսական, հայ-բյուզանդական, հայ-ադրբեջանական, վրաց-ռուսական, վրաց-բյուզանդական առնչությունների պատմությամբ: Այս ամենի վերաբերյալ հայերեն, ռուսերեն և վրացերեն լեզուներով հեղինակել է ավելի քան 600 աշխատություն (մենագրություններ, հոդվածներ, հրապարակումներ և այլն), որոնց տպագիր ծավալը կազմում է շուրջ 9000 էջ: Այսպիսին է գիտնականի ստեղծագործական ժառանգության ոչ ամբողջական ծավալը:*

*Լ. Մելիքսեթ-Բեկն աշխատակցել է հայկական բազմաթիվ պարբերականների («Արարատ», «Հովիվ», «Էջմիածին», «Ազգագրական հանդես», «Գեղարվեստ», Էջմիածնի Գիտական ինստիտուտի «Բանբեր») և ռուսական ու վրացական մի շարք հանդեսների: Երիտասարդական տարիների նրա ուսումնասիրություններից որոշակի արժեք են ներկայացնում «Վրացիների ազգակցությունը իսպանացիների հետ ըստ հին աղբյուրների»[2], «Հայկական հնությունները Ակերմանում (Բեսարաբիա)»[3], «Հայկական հնագույն արձանագրությունները Օդեսայի պատմության և հնությունների ընկերության թանգարանում»[4], «XV դարի Շարականի ձեռագիրը՝ հայտնաբերված Օդեսայում»[5] և բազում այլ աշխատություններ:*

*Լինելով լայն մտահորիզոնի տեր՝ Լ. Մելիքսեթ-Բեկը գիտական լայնածավալ գործունեությունից բացի, դասավանդել է Թբիլիսիի, Երևանի և Բաքվի պետական համալսարաններում, Քութայիսի, Գորիի, Ցխինվալիի մանկավարժական ինստիտուտներում: Դեռևս 1920 թ. նա վրացական բուհերի հումանիտար ֆակուլտետների համար հեղինակել է գրաբարի քերականության տարրական դասընթաց և քրեստոմատիական ժողովածու՝ «Ծաղկաքաղ բանից նախնի*

---

2 Родство Грузии с испанцами по древним источникам, Тифлис, 1911.

3 Армянские древности в Аккермане (в Бессарабии), Тифлис, 1911.

4 Старинные армянские надписи в Музее Общества Истории и Древностей. Издание книжного магазина "Гуттенберг", N 73, Тифлис, 1912.

5 Рукопис Шаракана XV века, открытая в Одессе, Тифлис, 1913.

*հայերէն հանդերձ հայ-վրացերէն բառգրքովք»[6], «Հայ հին դրականության պատմության ձեռնարկ»[7], որտեղ գեղարվեստական բարձրարժեք ստեղծագործություններից բացի, ընդգրկել է հայ պատմական մատենագրության գրեթե բոլոր նշանավոր երկերը: Նա վրացերեն է թարգմանել Սայաթ-Նովայի հայերեն խաղերը[8], կազմել և հրատարակել է Շամչի Մելքոյի երգերը[9], կատարել է գեղարվեստական արձակ և չափածո երկերի երկկողմանի թարգմանություններ, զբաղվել թարգմանագիտությամբ:*

*Լ. Մելիքսեթ-Բեկը գիտական ասպարեզ է մտել հայ-վրացական պատմամշակութային հարաբերությունների հիմնախնդիրներին նվիրված աշխատություններով: Շուրջ քսան տարի նա հատկապես ուշադրություն է դարձրել ԺԱ-ԺԳ. դարերի Հյուսիսային Հայաստանի գիտամշակութային, աստվածաբանական, կրոնադավանաբանական կյանքին, Հայաստանյայց Առաքելական և վրացական եկեղեցիների միջև Զ. դարում սկիզբ առած և հետագայում թեժացած դավանաբանական և նվիրապետական անզիջում բանավեճերին, երբ իր իսկ խոսքերով՝ «Հայ-վրացական հարաբերությունների խաչաձևման այդ տարածքը դարձավ հայերի մշակութային ամենաակնառու անկյուններից մեկը», և երբ Հյուսիսային Հայաստանը «հայտնվեց Վիրքի պետականության ոլորտում»[10]:*

*Ձեռագրերից բացի, նա տվյալ թեմայի լիարժեք մշակման համար մասնակցել է հայաստանյան գիտական արշավախմբերին, շրջագայել հայոց պատմամշակութային ու ճարտարապետական հուշարձաններով հարուստ վայրերում՝ այցելել է Երևան, Էջմիածին, Պետերբուրգ, Վիեննա, Վենետիկ, ուսումնասիրել հարյուրավոր բնագրեր, հրատարակել մեծածավալ ու փոքրածավալ հետազոտություններ, որտեղ փորձել է հնարավորինս սպառիչ վերլուծել Հյուսիսային Հայաստանին (Գուգարաց աշխարհ) վերաբերող մի շարք կարևորագույն խնդիրներ, ինչպես նաև հայ վարդապետների խմբակների շուրջ երկուհարյուրամյա պատմությունը՝ կապված հայ-վրացական պատմագրական իրողություններին:*

*Աշխատության հրապարակումից հետո միևնույն խնդիրների վե-*

---

[6] ძველი სომხური ქრესტომათია ლექსიკონითურთ, ნაკვეთი პირველი, ქრესტომათია. ტფილისი, 1920.

[7] ძველი სომხური ლიტერატურის ისტორია (სახელმძღვანელო უმაღლესი სკოლებისათვის, თბილისი, 1941.

[8] საიათნოვას სომხურ ლექსთა კრებული, თარგმანი ვარიანტებით, ტფილისი, 1935.

[9] Շամչի-Մելքոն և նրա հայերեն խաղերը, Երևան, 1958:

[10] მელიქსეთ-ბეგი ლ., ჩრდილო მხარეთა სომეხთა მოძღვარნი და მათი ვინაობა, ტფილისი, 1928, გვ. VIII.

րաբերյալ գրվել են բազմաթիվ ուսումնասիրություններ, բնականաբար, Լ. Մելիքսեթ-Բեկից անկախ, տարբեր հետազոտողներ շատ հարցերում կրկնել կամ սրբագրել են նրա եզրակացությունները, երբեմն՝ լուծումներ առաջադրել:

Հեղինակը իր աշխատությունը համեստորեն դիտարկում է որպես պատմագիտական հետազոտությունների փորձ և նկատի ունենալով աղբյուրագիտական համապատասխան նյութերի սակավությունը՝ հույս է հայտնում, որ հատկապես Էջմիածնի և Երուսաղեմի պահոցների ձեռագիր մատյանների հրատարակումներից հետո կրկին կանդրադառնա իր առաջադրած խնդիրներին, որպեսզի դրանք վերանայի, խորացնի ու դարձնի առավել ամբողջական: Այսուհանդերձ այսօր էլ հայագիտության համար այն հույժ կարևոր աշխատություն է:

Նշված տարածքում և ուսումնասիրվող դարերում հայ վարդապետների, մասնավորապես՝ Մխիթար Գոշի, Անանիա Սանահնեցու, Գրիգոր Տուտեորդու, Գրիգոր Մագիստրոսի, Վանական Վարդապետի, Սամուել Անեցու, նրանց մտերիմների ու աշակերտների կենսագործունեության և հիմնադրված խմբակների, բարձրագույն դպրոցների ու կազմակերպությունների հանգամանալից ուսումնասիրությունը, հայ գրականության պատմության որոշ հարցերի լուսաբանմանը զուգընթաց, նպաստել է հայ-վրացական գրական-մշակութային, քաղաքական, պատմական հարաբերությունների որոշ կնճռոտ հարցերի լուսաբանմանը ևս: Լ. Մելիքսեթ-Բեկը փաստական հարուստ նյութերի քննական վերլուծության հիման վրա ապացուցում է, որ տվյալ ժամանակաշրջանում հայ գրականության գրեթե բոլոր ճյուղերի առաջընթացն անժխտելի է, քանի որ ստեղծվել են համաշխարհային նշանակության գլուխգործոցներ: Այսպես՝ «էգզեգետիկական» (մեկնաբանական) գրականությունը ձեռք է բերել [illegible] Հովհաննես Սարկավագի «Ցուցակ Սուրբ գրոց»-ը, Գրիգոր Աբասորդու «Գիրք պատճառաց»-ը, եկեղեցական հիմնոլոգիան՝ Հովհաննես Սարկավագի և Խաչատուր Տարոնացու շարականների շարքը, ջատագովական-դավանաբանական գրականությունը՝ Անանիա Սանահնեցու «Բան հակաճառութեան ընդդէմ երկաբնակաց»-ը, Հովհաննես Սարկավագի «Յաղագս քաղկեդոնացն»-ը և Մխիթար Գոշի «Գծագրութիւն... յաղագս վրաց»-ը, տոմարական-տիեզերաբանական գրականությունը՝ Հովհաննես Սարկավագի բազմաթիվ աշխատությունները, իրավագիտությունը՝ Դավիթ Ալավկա որդու «Կանոնագիրք»-ը և հատկապես Մխիթար Գոշի «Դատաստանա-

գիրք Հայոց»-ը, որը հիմք է ծառայել ԺԳ-ԺԸ դարերում հայերեն և օտար լեզուներով ստեղծված կանոնական գրքերի համար (օրինակ՝ Կիլիկիայում, Մոլդովայում, Լեհաստանում, Ղրիմում, Հարավային Ռուսաստանում, Վրաստանում և այլն):

Հեղինակն անհրաժեշտաբար նշել է, որ հայ-վրացական եկեղեցական հակամարտությանը վերաբերող բնագրային նյութերը մենագրությունում մեջբերում է հայերեն, մանավանդ երբ դրանք տպագրված չեն, իսկ երբ վերաբերում են հիմնական հարցին, այսինքն՝ վարդապետներին և նրանց գործունեությանը, ապա դրանց կցում է վրացերեն թարգմանությունները: Մյուս դեպքերում բոլոր տեղեկությունները նա վկայել է վրացերեն թարգմանությամբ, իսկ թարգմանությունները, առանց բացառության, կատարել է բնագրին համարժեք: Գիրքը հագեցրել է նաև լուսանկարներով, քարտեզով և հավելվածներով:

Լ. Մելիքսեթ-Բեկի հայագիտական ժառանգության մեջ մեծ ծառայություն է Հայաստանի և հայերի մասին վրացական աղբյուրների եռահատոր ժողովածուն[11]: Այն ամփոփում է վրաց վկայաբանական-վարքագրական, պատմական, գեղարվեստական տպագիր երկեր, ձեռագրեր, հարանց վարքեր, ժամանակագրություններ, որոնց հեղինակները, որոնց թվում նաև վրացալեզու հայեր, պատմական, հնագիտական, ազգագրական, աշխարհագրական, արվեստագիտական, լեզվաբանական ու այլևայլ բնույթի կարևոր, եզակի տեղեկություններ են հաղորդում Հայաստանի, հայի և հայկականի մասին: Լ. Մելիքսեթ-Բեկը դրանցից կատարած թարգմանությունները հագեցրել է անհրաժեշտ ներածականներով, համեմատական, բանասիրական, աղբյուրագիտական մեկնաբանություններով, ընդգրկուն ծանոթագրություններով, հավելվածներով և ցանկերով[12]:

Այս ժողովածուի չորրորդ գիրքը, որտեղ, ըստ հեղինակի, ամփոփված են վիմական տարեգիրը, հայերենից վրացերեն թարգմանված երկասիրությունները, ժողովրդական բանահյուսությունը, հավելվածներն ու կարևորագույն ցանկերը, չնայած աշխատության կարևորությանը, դեռևս անտիպ է:

Դրվատանքի արժանի է «Հայ գրողները և Վրաստանը»[13] աշխա-

---

[11] Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, գիրք Ա., Ե-ԺԲ. դարեր, Երևան, 1934, Գիրք Բ., ԺԳ-ԺԸ. դարեր, Երևան, 1936, Գիրք Գ., ԺԸ-ԺԹ. դարեր, Երևան, 1955:

[12] Այդ երեք հատորը մեկ գրքով վերջերս լույս ընծայեց ԵՊՀ հրատարակչությունը: Տե՛ս **Մելիքսեթ-Բեկ Լ.**, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, Հայ-վրացական մատենաշար, գիրք Ա, Երևան, 2013:

[13] **Մելիքսեթ-Բեկ Լ.**, Հայ գրողները և Վրաստանը, Երևան, 1964:

*տությունը, որտեղ նա, ըստ ամենայնի, ներկայացրել է շուրջ երեսուն հայ այն գրողներին ու մշակութային գործիչներին՝ արձակագիրներ, բանաստեղծներ, դրամատուրգներ, աշուղներ, պատմության, բանասիրության, արվեստի և այլ բնագավառների ներկայացուցիչներ, որոնց կյանքն ամբողջովին կամ մեծավ մասամբ անցել է Վրաստանում, և ովքեր իրենց բազմաբնույթ ստեղծագործություններում պատկերել են այդ երկրի անցքերը, նիստ ու կացը, վարք ու բարքը, սովորույթները, ինչ խոսք, նաև հայ և վրաց ժողովուրդների ռազմական, քաղաքական, գրական, պատմական ու մշակութային առնչությունները: Հետաքրքիր տեղեկություններ կան գրողների անձնական և ստեղծագործական հարաբերությունների, հայ և վրաց լեզուների փոխներթափանցման մասին: Գրեթե անթերի բերված են նաև հայ հեղինակների մասին եղած վրացերեն տեղեկությունների և նրանցից կատարված թարգմանությունների ցանկերը: Հեղինակը, նկատի ունենալով երկերի ժանրային յուրահատկությունները, աշխատանքը շարադրել և բնութագրել է յուրովի, ինչպես ինքն է վկայում՝ դրանք երբեմն նկարագրողական են, երբեմն՝ համեմատական, երբեմն՝ ժամանակագրական: Նախատեսված է եղել աշխատությունը լույս ընծայել երկու գրքով, սակայն երկրորդը չի հրատարակվել:*

*Լ. Մելիքսեթ-Բեկը հատուկ ուսումնասիրության նյութ է դարձրել «Վրաստանի պատմության գրավոր սկզբնաղբյուրների հրատարակությունները»[14], որը բաղկացած է երկու մասից: Առաջին մասում ներառված են Ե-ԺԸ դարերի հուշարձանները, իսկ երկրորդում՝ «Մեգալիթյան մշակույթը Վրաստանում»[15] և այլ նյութեր: Միայն համեմատաբար վերջերս իրականացվեց նրա կազմած «Հայերեն-վրացերեն բառարանի» հրատարակությունը[16], որը պարունակում է ժամանակակից հայերենի շուրջ 22 000 բառ և դրանց վրացերեն համարժեքները: Բնականաբար, վերանայվել և մասնակի փոփոխությունների են ենթարկվել բառացանկերը, քանզի հայոց լեզուն տասնամյակների ընթացքում հարստացել է հազարավոր բառերով ու դարձվածքներով, բազմաթիվ բառեր հնացել, դուրս են մնացել գործածությունից, իսկ շատերը իմաստափոխվել են: Այն լույս է տեսել բառարանագրության պահանջմունքներին համապատասխան և, անշուշտ, կարող է օգտակար լինել ուսանողների,*

---

[14] საქართველოს ისტორიის წერილობითი წყაროების პუბლიკაციები. საქართველოს საარქივო სამმართველოს გამოცემა, თბილისი, 1949.

[15] მეგალითური კულტურა საქართველოში, ფედერაციის გამოცემა, თბილისი, 1938.

[16] Հայերեն-վրացերեն բառարան. Թբիլիսի, 1996:

թարգմանիչների, գիտաշխատողների, առհասարակ հայոց և վրաց լեզուներով հետաքրքրվող անձանց համար:

Լ. Մելիքսեթ-Բեկը ուսումնասիրել և գիտական անհրաժեշտ չափանիշներով հրատարակել է հայերենից վրացերեն թարգմանված երկերի քննական բնագրերը՝ համապատասխան բացատրություններով, մասնավորապես «Վարք Ս. Գրիգոր Պարթևի»[17], Մխիթար Գոշի «Դատաստանագրքի» այն հոդվածները, որոնք ներառված են վրաց Վախտանգ Զ-ի «Օրենսգրքում», Ստեփանոս Օրբելյանի «Պատմութիւն նահանգին Սիսական» գրքի[18] և Թովմա Մեծոփեցու «Պատմութիւն Լանկ Թամուրայ եւ յաջորդաց իւրոց» Վրաստանին առնչվող համապատասխան հատվածները[19]:

Բազմաբեղուն գիտնականի ուշադրության կենտրոնում է եղել արձանագրությունների ուսումնասիրությունը ևս. դեռևս 1950-ական թվականների սկզբին նա հրատարակության է պատրաստել երկու ժողովածու՝ «Վրացերեն արձանագրությունները Հայաստանում», «Հայերեն արձանագրությունները Վրաստանում»[20], որոնք, սակայն, ինչ-ինչ պատճառներով լույս չեն տեսել: Վրացագիտության մեջ բարձր են գնահատվում այդ բնագավառում նրա հրատարակած աշխատանքները, մասնավորապես՝ Գարեջիի քառալեզու (վրացերեն-հայերեն-պարսկերեն-ույղուրերեն) արձանագրությունը[21]:

Լ. Մելիքսեթ-Բեկը կազմել և հրատարակել է «Ռուսթավելին և նրա «Ընձենավորը» հայ գրականության մեջ»[22], «Նյութեր Ն. Մառի ամբողջական մատենագիտության համար»[23], «Նյութեր հայկական ձեռագրերի քարտարանի մատենագիտության համար»[24], «Նյութեր

---

17 ცხოვრებაჲ წმ. გრიგოლ პართელისაჲ, გამოცემული ლეონ მელიქსეთ-ბეგის მიერ. Monumenta Georgica, I, ტფილისი, 1920.

18 სტეფანე სივნიელის "ორბელთა ისტორიის" ქართული ვერსია", "საისტორიო მოამბე", ტ. VI, თბილისი, 1952.

19 თომა მეწოფელი, სომხური ტექსტი ქართული თარგმანითურთ, თბილისის უნივერსიტეტის გამოცემა, თბილისი, 1937, 39 გვ.

20 Տե՛ս «1917-1957»: «საიუბილეო კრებული» («Սախուբիլեո կրեբուլի»), Թբիլիսի, 1957, էջ 193:

21 Гаресджийская тетралингва эпохи монголов 1352 г., "Эпиграфика Востока", изд. АН СССР, т. VIII, Ленинград, 1953.

22 შ. რუსთაველი და მისი "ვეფხისტყაოსანი" სომხურ ლიტერატურაში, "საქართველოს საჯარო ბიბლიოთეკის შრომები", თბილისი, 1938, IV, გვ. 152-164.

23 Материалы для польной библиографии работ Н. Я. Мара, "მასალები ამიერკავკასიის ბიბლიოგრაფიის ბიბლიოგრაფიისათვის", თბილისი, 1938, II-III, გვ. 17 (19)-27.

24 Материалы для библиографии каталогов армянских рукописей, "მასალები ამიერკავკასიის ბიბლიოგრაფიის ბიბლიოგრაფიისათვის", თბილისი, 1939, IV, გვ. 3 (5)-25.

*Ավ. Իսահակյանի երկերի լիակատար հրատարակության համար»*[25] *և մատենագիտական այլ ցանկեր:*

*Նրա բանահյուսական, պատմագիտական ու գրականագիտական հոդվածներից ուշագրավ են՝ «Արտավազդ և Մհերի հետքերը Վրաստանում», «Դավիթ Անհաղթի» Վրաստանում լինելու շուրջ», «Չորրորդ Հայքի 774-775 թթ. գյուղացիական ապստամբության պատմության շուրջ», «Հայաստանում կարմիր որդան ներկի արտադրության պատմությունից», «Հայերը Վրաստանում», «Հայերը վրաց հին գրականության մեջ» և հայերեն, վրացերեն ու ռուսերեն բազմաթիվ այլ աշխատանքներ:*

*Առհասարակ հարկ է նշել, որ այս կամ այն խնդրին անդրադառնալիս վաստակաշատ գիտնականն ուսումնասիրել է բոլոր սկզբնաղբյուրները, նախորդների աշխատությունները և հետո միայն հայտնել իր կշռադատված ու տրամաբանորեն հիմնավորված կարծիքը:*

*Լ. Մելիքսեթ-Բեկը միաժամանակ հնարավորինս պայքարում էր այն մասնագետների տեսակետների դեմ, ովքեր խեղաթյուրում կամ կասկածի տակ էին առնում հայ պատմագիրների աշխատությունները, ժխտում կամ արժեզրկում հայերի կամ հայազգի գործիչների Վրաստանին մատուցած ծառայությունները, պատմական, բանասիրական ակնհայտ, օբյեկտիվ սկզբունքները փոխարինում սուբյեկտիվ հայեցակետերով, ցանկալին ներկայացնում որպես իրականություն և այլն:*

*Անվանի գիտնական մանկավարժը մասնավորապես Թբիլիսիի պետական համալսարանի համար աճեցրել է վրացի հայագետների մի ամբողջ փաղանգ:*

*Անգնահատելի է նաև Լ. Մելիքսեթ-Բեկի վաստակը հայագիտության, վրացագիտության, կովկասագիտության, հայ-վրացական գիտագործնական հարաբերությունների, երկու ժողովուրդների միջև կրթական ու մշակութային կապերի զարգացման և ամրապնդման գործում: Հաշվի առնելով նրա անուրանալի վաստակը այդ ասպարեզում Վրաստանի կառավարությունը 1941 թ. նրան շնորհել է գիտության վաստակավոր գործչի կոչում, իսկ 1945 թ. նա ընտրվել է Հայկական ԽՍՀ Գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ:*

*Կովկասագիտության մաս կազմող անձնական գրապահոցի հարյուրավոր գրքեր գիտնականի 80-ամյակի օրերին հանդրվանել են Թբիլիսիի պետական համալսարանի հայագիտության ամբիոնին*

---

[25] Ալմանախ, հրատ. Վրաստանի սովետական գրողների հայկական սեկցիայի, Թբիլիսի, 1960, էջ 360-364:

տաղնիներ՝ իր իսկ անունը կրող աշխատասենյակում, իսկ արխիվն ու գրադարանը, որ մի ամբողջ հարստություն են, և որտեղ, անշուշտ, կան հրատարակության պատրաստ մեծ ու փոքր աշխատություններ, կոնսպեկտներ, սևագիր կամ անավարտ էջեր, ինչպես նաև նամակներ, ժառանգները նվիրել են նույն բուհի գիտական գրադարանին և Վրացական ԽՍՀ ԳԱ Ձեռագրերի ինստիտուտին (այժմ՝ Վրաստանի Հանրապետության ԳԱԱ Կոռնելի Կեկելիձեի անվան Ձեռագրերի ազգային կենտրոն): Դրանց հետազոտությունն ու հրատարակությունը նախ և առաջ հայ մասնագետների կարևոր խնդիրներից պետք է լինի մոտ ապագայում:

Լ. Մելիքսեթ-Բեկի անտիպ թողոնի հրատարակությունը և ռուսերեն ու վրացերեն աշխատությունների թարգմանությունը հայերենի հանրության, գիտաշխատողների, կովկասագիտությունն ընտրած ուսանողների, այդ երկրների պատմությամբ և բանասիրությամբ հետաքրքրվող անձանց համար փնտրված ձեռնարկներ են:

**Ներկա թարգմանության հանգամանքները.-** Լևոն Մելիքսեթ-Բեկի «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց» և նրանց ինքնությունը» աշխատությունը լույս է տեսել 1928 թ., վրացերեն, որի հիման վրա, նույն թվականին, հեղինակը Թբիլիսիի պետական համալսարանի գիտական կոչումներ շնորհող խորհրդում վրացերեն պաշտպանել է դոկտորական ատենախոսություն (4 նոյեմբերի 1928 թ.): Այս մենագրությունը լույս տեսնելուց ի վեր, որպես տվյալ բնագավառի ծանրակշիռ ավանդ, լայնորեն շրջանառվում և օգտագործվում է վրաց մասնագետների կողմից, մինչդեռ վրաց լեզվի չիմացության պատճառով ցայժմ հասու չէ հայագետներին. թերևս մի քանիսն են ի վիճակի կարդալու այն:

Աշխատության հրապարակումից հետո նույն խնդիրների վերաբերյալ հայ իրականության մեջ գրվել են հետազոտական բազմաթիվ ուսումնասիրություններ, բնականաբար Մելիքսեթ-Բեկից անկախ, տարբեր մասնագետներ շատ հարցերում ինչ-որ ձևով կամ այլաստացությամբ կրկնել, հաճախ էլ սրբագրել են նրա եզրակացությունները, երբեմն խնդիրներն ավելի զարգացրել և նոր լուծումներ են առաջադրել: Եթե այդ ամենը ծանոթագրությունների ձևով ներկայացնեինք, կստացվեր թարգմանությունից՝ մեր բուն նպատակից հեռուն տանող մեկ այլ գործ: Մյուս կողմից, նկատի ունենալով, որ հայալեզու հայագիտության համար խնդրո առարկա հետազոտությունը շարունակում է մնալ գիտական տևական արժեք, մենք հանձն առանք հայագետներին և ընթերցող լայն շրջաններին

*այն մատչելի դարձնելու պարտականությունը: Թեև ձգտել ենք պահպանել վրացերեն բնագրի ձևը և բովանդակությունը, այդուհանդերձ, կատարված աշխատանքի մասին մի քանի խոսք:*

*Նախ՝ հեղինակային է գրքի վերնագրի սկզբի չակերտված գրաբար աղբյուրներում վկայված բանաձևումը՝ «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց», այսինքն՝ իր գիրքն ինքը միշտ այդպես է հիշատակել*[26*]*:*

*Երկրորդ՝ այսպիսի բազմալեզու (հին ու նոր հայերեն, հին ու նոր վրացերեն, հունարեն, լատիներեն, ռուսերեն, գերմաներեն, ֆրանսերեն) գրականության հղումներ ունեցող երկի տպագրությունը, հասկանալի է, չէր կարող զերծ լինել սրբագրական թեկուզ և մասնակի վրիպումներից: Հեղինակի նկատած երկէջ (էջ Դ-Ե.) «Վրիպումներ և ուղղելիքներ»-ը հաշվի առնելով հանդերձ՝ այլալեզու քաղվածքները, ձեռագրական հավաքածուների հայերեն գրչագրերից արված բոլոր պարբերություններն ու էջերը համեմատվել են բնագրերի հետ և անհրաժեշտ շտկումներ կատարվել բուն շարադրանքի մեջ: Ուղղել ենք վրիպակները, ինչպես՝ Ղլար (Ղզլար), Ղրտիլա (Ղրտիլի), Հ. Մանանդյան (Ի. Մանանդյան), Բաստամյանց (Բոստամյանց), Տաշյան (Դաշյան), սելջուկներ (սկյութներ) և այլն: Զուգահեռ որոշ ձևեր, օրինակ՝ Հաղբատ (Հաղպատ, Ախպատ, Հախբատ), Համազասպ (Ամազասպ), Հրաչյա (Հռաչյա), Տարոնացի (Տարոնեցի), Քերովբէ Զրաքյան (Քերոբէ Ծրագյան, Ծրաքյան), Աղստև, (Աղստափա, Աղստաֆա), ՍՊբ., (Ս.Պ.Բ., ՍՊԲ) և այլն, բերվել են միօրինակության՝ հօգուտ առաջինների, շտկումներ են արվել նաև տարեթվերի գրության մեջ՝ 1139-1119, որ պետք է լիներ՝ 1119-1139, կամ 18/՟/, որ պետք է լիներ՝ 1853, և այլն:*

*Հղված վրացերեն որևէ գործի (գիրք կամ հոդված) առաջին հիշատակությունն արել ենք բնագրի գրերով՝ վրացատառ-վրացերեն, այնուհետև փակագծերի մեջ գրել ենք նույնի հայերեն թարգմանությունը և ավելացրել՝ «այսուհետև՝ հայերեն», և այս վերջինը գրվել է հետագա բոլոր դեպքերում (առ այս տե՛ս Մասն առաջին, Գլ. Գ., ծնթ. 1, 2, 12, 15, 16): Գրքի աղբյուրագիտական հիմքն ավելի հստակ պատկերելու և նրա առավել լավ գործածությունն ապահովելու նպատակով հայերեն թարգմանությունն օժտել ենք «Օգտագործված գրականություն»-ով և «անվանացանկերով», որոնք վրացերեն բնագրում չկան:*

---

[26*] Տե՛ս, օրինակ, **Լ. Մ. Մելիքսեթ-Բեկ**, «Յովհաննես Վանական Տաւուշեցու անտիպ երկերից («Պատճառք Առաջաւորաց պահոցն»).- Էջմիածին, 1959/Զ., էջ 35 (35-44):

*Բնագրի հռոմեական թվերը փոխարինվել են հայերեն թվատառերով: Մասնակի դժվարություն էր նաև եզրաբանությունը ճշգրիտ ներկայացնելու խնդիրը: Հեղինակը տրամաբանական միտքը խտացնող տասնյակ լատինահունչ եզրեր ու հասկացություններ է գործածել, որոնց հայերենը միշտ չէ, որ կարող էր ճիշտ ընկալվել ընթերցողի կողմից, ուրեմն՝ կա՛մ նույն եզրի համար պետք է տրվեր հայերեն առնվազն երկու հոմանիշ, կա՛մ միայն լատիներենը, կա՛մ էլ՝ հայերենը և լատիներենը միաժամանակ, ինչպես և վարվել ենք: Այսպես՝* հեղինակ(ություն)//ավիտենցիա, մաքուր// էգուպուր, շրջաբերական//էնցիկլիկա, կրոնադավանական//կոնֆեսիոնալ, տոնազիտություն//էորտոլոգիա, ձեռագիր// մանուսկրիպտում, ստորակարգություն// հիերարխիա, մասնավոր// պարտիկուլյար, ճյուղավորում// ֆիլիացիա, մամուլահամար// սիգնատուրա, *և այլն:*

*Հին վրացերեն վկայակոչումների թարգմանություններ կատարելիս մեզ սիրահոժար օգնել է հայագետ, պ. գ. թ., դոց. Նիտո Ափցիաուրին, ում և հայտնում ենք մեր խորին շնորհակալությունը: Իսկ գրաբար աղբյուրներից արված բոլոր քաղվածքները ստուգել և անհրաժեշտ շտկումներն արել է գրքի խմբագիրը՝ վաստակաշատ ձեռագրագետ Գևորգ Տեր-Վարդանյանը. նա է պարզել նաև Լ. Մելիքսեթ-Բեկի հիշատակած՝ Մաշտոցյան Մատենադարանի և Ռուսաստանի ԳԱ Արևելյան ձեռագրերի ինստիտուտում (Ս. Պետերբուրգ) պահպանվող ձեռագրերի ներկայիս համարները (տե՛ս Գրականության ցանկի սկզբում): Նրան մեր երախտագիտությունը հայտնում ենք նաև խիստ անհրաժեշտ որոշ ծանոթագրությունների և խորհուրդներ տալու համար (ստորագրված են՝ «Գ. Տ-Վ.»):*

*Երկի հրատարակությունը նվիրվում է Լևոն Մելիքսեթ-Բեկի ծննդյան 125-ամյակին: Վաստակաշատ կովկասագետի հարուստ և բազմաժանր գիտաստեղծագործական ժառանգության մեջ «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց» և նրանց ինքնությունը գիրքը, անշուշտ, մնայուն արժեք է, բայց, ինչպես նշվեց վերը, շուրջ ինը տասնամյակ գրեթե անծանոթ է հանրությանը, և այժմ մայրենիով հասանելի է դառնում և՛ միջնադարագետներին, և՛ ընթերցողներին:*

# «ՎԱՐԴԱՊԵՏՔ ՀԱՅՈՑ ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄԱՆՑ»

# ԵՎ

# ՆՐԱՆՑ ԻՆՔՆՈՒԹՅՈՒՆԸ

# ԱՌԱՋԱԲԱՆ

*Հայ-վրացական մշակութային հարաբերությունների հիմնախնդիրների մասին 1911 թվականից սկսած մեր աշխատությունը հետզհետե առաջ բերեց պատմական-գրական բազում առանձնահատուկ հարցեր: Դրանց մեջ հատկապես ուշադրություն գրավեց այսպես կոչված, «Հարավային Վրաստանի» կամ «Հյուսիսային Հայաստանի» մշակութային կյանքը Ժ–ԺԳ. դարերում, երբ հայ-վրացական հարաբերությունների խաչաձևման այդ տարածքը դարձավ հայերի մշակութային ստեղծագործական ամենաակնառու անկյուններից մեկը, և հայ ժողովրդի ստեղծագործությունները, որոնք պատկերված են ճարտարապետական բազմաթիվ վեհաշուք հուշարձաններում և նրանց դեկորատիվ ու պլաստիկ հետաքրքրաշարժ բազում մասյաններում՝ մի կողմից, և մեզ հասած անթիվ սքանչելի ու թանկարժեք ձեռագրերի տեսքով հոյակապ գրական հարստության՝ մյուս կողմից, իսկապես այնպիսի հետք է թողել այդ երկրամասի վրա, որ այսօր էլ զմայլվում է ամեն մի հետազոտող և անգամ հասարակ դիտող: Սակայն սա դեռ բոլորը չէ: Հայ ժողովրդի մշակութային ստեղծագործական հետքն այդ երկրամասում այնքան հզոր ու անջնջելի է, որ ամբողջովին ստվերում են նախորդ և հաջորդ ժամանակների գուգարական-վրացական աշխատանքները, որոնց մնացուկները՝ հին տեղանվանական և վրացական արձանագրություններով զարդարուն, «քաղկեդոնական» մի քանի օջախներում պիտի փնտրենք:*

*«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» մասին մեր արծարծած հարցը մեկն է բազմաթիվ այն հարցերից, որոնք առնչվում են, այսպես կոչված, «Հարավային Վրաստանի» = «Հյուսիսային Հայաստանի» և նրա անցյալի ուսումնասիրությանը և վերաբերում են այդ մարզում ԺԱ–ԺԳ. դդ. գիտագրական ասպարեզ իջած հայոց վարդապետների գործունեությանը, ինչին մեծապես նպաստեց հենց տվյալ դարաշրջանում Վրաստանի քաղաքական-տնտեսական հզորացումը: Դրա հետ մեկտեղ Հին Հայաստանում և հայերի մեջ գոյություն ունեցող գիտագրական խմբակները, ուղ-*

*ղությունները և դպրոցները պատմության մաս կարելի է համարել որոշակի վերապահումով, ինչպիսին, օրինակ՝ հայ գրականության պատմությունն է, մասնակի բացառությամբ, որ դեռևս հետազոտված չէ, քանզի հայ գրականության պատմության հարցերի լուսաբանումը նպաստում է հայ-վրացական մշակութային հարաբերությունների հարցերի առաջադրմանն ու դրանց պատասխանին:*

*Հարկ ենք համարում նշել, որ այս աշխատությունը գրելուն մենք ձեռնամուխ ենք եղել դեռևս 1922 թվականին. սակայն անհրաժեշտ գրականության և հատկապես ձեռագրերի անհասանելիության պատճառով չկարողացանք ավելի շուտ ավարտել: Էական խոչընդոտն այն էր, որ Էջմիածնի գրապահոցի ձեռագիր մատյանների հիմնական հավաքածուն, որը 1914 թվականին Մոսկվա էր տեղափոխվել և միայն 1922 թվականին վերադարձվեց Խորհրդային Հայաստան, մինչև 1925 թ. փակ էր: Այդ իսկ պատճառով մեր մտահղացված աշխատանքը հաջողվեց իրականացնել միայն 1925-1927 թթ. (համալսարանի գործուղումների շնորհիվ): Իսկ Համամիութենական Գիտությունների Ակադեմիայի Ասիայի թանգարանում պահպանված հայկական ձեռագրերին ծանոթանալը մեզ հաջողվեց Լենինգրադում եղած ժամանակ՝ 1925 թվականի սեպտեմբեր-հոկտեմբեր ամիսներին:*

*Ձեռագրերի օգտագործումից բացի, ծրագրված հետազոտությունների վերջնական մշակման համար մենք նպատակ դրեցինք նաև շրջագայել, այսպես կոչված, «Հարավային Վրաստան» = «Հյուսիսային Հայաստան»-ով՝ անհրաժեշտ արձանագրությունները տեղերում ստուգելու և հնագիտական որոշ պեղումներ կատարելու համար, իսկ նման աշխատանքի իրականացումը հնարավոր եղավ մեր համալսարանի կազմակերպած մի քանի գործուղումների շնորհիվ: Օրինակ՝ 1924 թ. մայիսի 17-18-ին, Արագածի շրջանից վերադառնալիս մենք դիտարկեցինք Օձուն = Ուզունլարը (պրոֆ.* Գ. Չուբինաշվիլու *և ճարտարապետ* Ն. Սեռովի *հետ միասին) և Քոբեր=Քոբայրը (միայնակ): 1925 թ. դեկտեմբերի 25-31-ին՝ Ախթալան, Կայանը, Հաղբատը, կրկին Օձուն=Ուզունլարը, Հոռ(ո)ոմայրը, «Հովհան Օձնեցու մենաստանը» և դարձյալ ու կրկին՝ Քոբեր=Քոբայրը: 1926 թ. օգոստոսի 15-29-ը՝ Դսեղ գյուղի մոտ գտնվող, այսպես կոչված՝ «Բարձրաքաշի Սուրբ Գրիգորը» և «Քառասնից» Հնեվանքը՝ Լոռի-Տաշիրի դաշտավայրով հանդերձ, նաև Աքո Շահնազարը և Ջուջիքենդը, ինչպես նաև Դմանիսի = Դումանիսին և Քվեշը:*

*1927 թ. հունիսի 11-14-ին (պրոֆ.* Գ. Չուբինաշվիլու, *ճարտարապետ* Մ. Մաճավարիանիի *և* Ն. Սերովի *հետ մեկտեղ՝ կրկին Ախթալան, Սանահինը և դարձյալ Հաղբատը, իսկ նախորդ տարիներին (1923 թ.) դիտել էինք Սամշվիլդեն, Բոլնիսը և, ընդհանրապես, Բոլնիսի (Փոլադաուրիի) կիրճի բոլոր հնությունները:*

*Մեր մենագրության վերջնական մշակմանը բավականին նպաստեցին հայագիտության այժմյան կարևորագույն կենտրոններից մեկի՝ Վիեննայի Մխիթարյան միաբանության հայագետներից ոմանց վերջին աշխատությունները, որոնցում խոսվում է նաև մեր կողմից առաջադրված մի քանի հարցերի մասին: Այսպես,* Ներսես Ակինյանը *1922-ին հրատարակել է իր «Հետազոտությունների» առաջին հատորը, որտեղ, ի միջի այլոց, քննարկված են «Գրիգոր Աբասարդու և նրա «Գիրք Պատճառաց»-ի, Դավիթ Քոբայրեցու և Վարդան Հաղբատեցու խնդիրները: Համազասպ Ոսկյանը նույն 1922-ին հրատարակել է հատուկ մենագրություն՝ «Յովհաննէս Վանական և իւր դպրոցը», իսկ 1926-ին՝ «Մատենագրական քննութիւններ»-ը, որտեղ հատուկ անդրադարձել է Հովհաննես Սարկավագին և Մխիթար Գոշին, իսկ Ղևոնդ Մովսեսյանը 1923-ին լույս է ընծայել «Լոռիի Կիւրիկեանց թագաւորներու պատմութիւն»-ը:*

*Այդ հրատարակությունները, ինչ խոսք, զգալիորեն դյուրացրին մեր աշխատանքը:*

*Մեր աշխատությունը անձամբ մենք դիտարկում ենք որպես յուրահատուկ* պատմագրական հետազոտությունների փորձ, *որի ամբողջ դժվարությունը «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» ինքնության խնդիրն է՝ հատուկ թեքումով, իսկ այդ վարդապետների գրական գործունեությունը ներկայացված է ընդհանուր առմամբ, հույսով, որ երբ հայոց ձեռագիր մատյանների առկա հիմնական հավաքածուները հրատարակվեն (օրինակ՝ Վենետիկինը և Վիեննայինը մասամբ հրատարակվել են, իսկ Էջմիածնի և Երուսաղեմի ձեռագրերը պատրաստվում են տպագրության), մեր առաջադրած հարցերին նորից կանդրադառնանք, կամ էլ ուրիշները իրենց վրա կվերցնեն դրանց վերանայումն ու խորացումը:*

* * *

*Այս մենագրության արտաքին և ներքին որոշ կողմերի մասին անհրաժեշտ ենք համարում ասել հետևյալը. բնագրային ամեն մի նյութ, որ վերաբերում է հայ-վրացական եկեղեցական երկպառակության խնդրին, մեջբերում ենք հայերեն, մանավանդ, եթե*

*տպագրված չեն, իսկ եթե այդ նյութերը վերաբերում են նաև հիմնական հարցին, այսինքն՝ «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետներին» և նրանց ինքնության, այդ ժամանակ* en regard *կցում ենք նաև նոր վրացերենով թարգմանությունը: Մնացած դեպքերում պատմական և գրական բոլոր տեղեկությունները, աննշան բացառությամբ, մեջբերում ենք միայն վրացերեն թարգմանությամբ, իսկ թարգմանությունները միշտ կատարել ենք բնագրին համարժեք:*

*Տեքստերում, մեջբերումներում և նրանց թարգմանություններում մեր կողմից վերականգնվածները դրված են ուղիղ փակագծերում, իսկ մեր նկատառումներն ու ծանոթագրությունները՝ անկյունավոր փակագծերում: Սովորական (կոր) փակագծերի գործածության կանոնն ինքնին հասկանալի է:*

*Մի երկու խոսք* onomasticon*-ի մասին. հատուկ անունները* (Perzonennamen) *մենք, գրեթե միշտ, գրել ենք իրենց վրաց համարժեքներով, բացառությամբ մի քանի դեպքերի, երբ այդպիսի համարժեքների գործածությունը փոքր-ինչ անհարմար ենք համարել, եթե, իհարկե, նմանների գոյությունը կամ փնտրտուքը կասկածի տեղիք չի տվել (օր.՝* Գեորգ *[և ոչ թե* Գիորգի*]*, Ղևոնդ [Լեոնիդ], Մարտիրոս [Մարտվիլի՞], Խաչատուր [Քրիստեփորե՞], Վարդան [Վարդեն] *ևլն.), աշխարհագրական անունները* (Ortsnamen) *միշտ գրել ենք այն տեսքով, ինչ տեսքով որ նրանք հայտնի են եղել հնում՝ վրաց մատենագրության մեջ, օրինակ՝* Ախպատ *[և ոչ թե* Յաղբատ*]*, Սանաին [Սանաիին]*, ինչպես որ* Վախուշտին *է գործածել, այստեղ նույնպես ունենք մասնակի բացառություններ (օր.՝ գործածում ենք* Խաչեն, *թեև պետք է ասեինք՝* Խաչիանի *և այլն):*

*Գրքում զետեղված բոլոր լուսանկարները (տե՛ս էջ 52, 53, 93 և 184) հատուկ մեզ համար տեղերում նկարահանել է պրոֆ.* Գ. Չուբինաշվիլին, *1927 թվականի հունիսի 12-13-ին: Սանահնի պլանը վերցված է* Լ. Եղիազարյանցի *և* Ռ. Մարտիրոսյանցի *կազմած ալբոմից՝* «Памятники армянской архитектуры, под редакции проф. Г. Гримма» *(*Спб, *1912,* табл. *31), իսկ վերջում տեղադրված «Հյուսիսային կողմանց» պատմական քարտեզը՝ գիտագրական օժանդների ցուցադրմամբ, հատուկ պատրաստված է քարտեզագրության ինստիտուտում: Սրանից ավելի ցուցադրական նյութեր զետեղել, ցավոք, անհնարին եղավ զուտ տեխնիկական բարդությունների պատճառով, և սրանով պիտի բացատրել, որ պրոֆ.* Գ. Չուբինաշվիլու՝ *հատուկ մեր հրատարակության համար նկարահանած որոշ*

*լուսանկարներ (օր.՝ Հովհաննես Սարկավագի և Գրիգոր Տուտեոր-դու գերեզմանների վրա կառուցված հուշարձանների անչափ ուշա-գրավ արձանագրությունները և այլն), ինչպես նաև՝ ճարտարապետ* Մ. Մաճավարիանիի *կազմած՝ Հաղբատի պանթեոնի պլանի տեղա-դրումը այս հրատարակության մեջ:*

*Տփղիսի տպարանների անհարմարավետությամբ է բացատրվում այն փաստը, որ ծանոթագրություններում որոշ անհրաժեշտ մեջբե-րումներ, հին վրացերեն ուղղագրությամբ, հնարավոր չեղավ, ահա թե ինչու «Ձ»-յոտա-ի փոխարեն տպագրեցինք «ο»-ի, «Ց»- հաէ-ի փոխարեն՝ «ο»-ի կամ «ვ»-է: Որոշ տեղերում գործածված պարսկա-կան բառերը լատինական տառադարձությամբ լիարժեք ճշգրտու-թյամբ չեն տրված: Նմանապես, ռուսաց լեզվով բոլոր հին հրատա-րակությունները ստիպված ենք եղել ներկայացնել նոր ուղղագրու-թյամբ:*

*Տեխնիկական բնույթի խոչընդոտներով է բացատրվում նաև այն, որ մեր մենագրության մեջ տեղադրված բնագրագիտական նյութե-րը բերված են հնարավորինս* վերականգնված տեսքով. *դրանով իսկ խուսափել ենք պահանջվող «ծանոթագրությունների» անհրաժեշ-տությունից:*

* * *

*Վերջում՝ հաճելի պարտականություն ենք համարում մեր սրտա-բուխ երախտագիտությունը հայտնելու բոլոր այն հաստատու-թյուններին և անձանց, հատկապես՝ Վարլամ Թոփուրիային, ովքեր խոսքով և գործով աջակցեցին մեզ՝ այս գիրքը կազմելու և տպա-գրելու գործում:*

*Լ. Մ. Բ*
*Թիֆլիս*
*26. 01. 1928*

# ՀԱՄԱՌՕՏԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Ա = *Արարատ*

Ալիշան = Ղևոնդ վ. Ալիշան, *Շիրակ, Վնտ., 1881:*

Ակինեան, *Մատ. հետազ.* = Ներսէս վ. Ակինեան, *Մատենագրական հետազօտութիւններ, քննութիւն և բնագիր. հատոր Ա. [ԱՄ ՂԴ.] Վն., 1922 (=նույնի՝ Գրիգոր որդի Աբասայ և Պատճառաց գիրքը,- ՀԱ 1907, էջ 132-135, 228-235, 271-274; Դաւիթ վարդապետ Քոբայրեցի.- ՀԱ 1908, էջ 139-147: Վարդան վրդ. Հաղբատացի, ՀԱ 1908, էջ 232-235):*

ԱՅ = *Ազգագրական Հանդէս*

ԱՄ = *Ազգային Մատենադարան*

Բարխուդարեան = Մակար եպ. Բարխուդարեան, *Արցախ, Բագու, 1895:*

Եր. ս. = *[Տէր-Մինասեանց] Եր[ուանդ] ս., Հաղբատ և Սանահին վանքերը.- Ա 1901, էջ 217-277, 338-344:*

Երզնկեան = Ռոստոմբէգ Երզնկեան, *Հնախօսական տեղագրութիւն Հաղբատայ աշխարհահռչակ վանից, Վաղ., 1886:*

Զ[արբհանալեան] Գ. = Գ. վ. Զ[արբհանալեան], *Հայկական հին դպրութեան պատմութիւն, Գ. տպ., Վնտ., 1897:*

Էջմ. = *Էջմիածին:*

Թիֆ. համ. բանբեր = *Թիֆլիսի համալսարանի բանբեր:*

Թուղթ ընդհ. = *Թուղթ ընդհանրական:*

Լալայեան = Երուանդ Լալայեան, *Բորչալուի գաւառ.- ՀԱ, գ. VII-VIII, Տփղ., 1901:*

Կարինեանց, Մայր ցուցակ = Յակոբ Կարինեանց, *Մայր ցուցակ ձեռագիր մատենից գրադարանի Սրբոյ Աթոռոյն Էջմիածնի, Տփղ., 1863:*

Կիրակոս - *Պատմութիւն Հայոց, արարեալ Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ, ի լոյս ընծայեաց* Ոսկան Տէր-Գրիգորեան Յովհաննիսեանց Երևանցի, *Մոսկվա, 1858: Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ, Համառօտ պատմութիւն ի սրբոյն Գրիգորէ ցաւուրս իւր լուսաբանեալ, Վնտ., 1865: Պատմութիւն Հայոց, արարեալ Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ, [ՂՄ 3], Տփղ., 1910*

*(վերահրատարակված է Մոսկվայի՝ 1858 թվականի հրատարակությունից): Մենք օգտվում ենք երրորդ հրատարակությունից (նշում ենք՝* Կիրակոս*):*

Կոստանեանց = Կ. Կոստանեանց, *Վիմական տարեգիր [BAG II],* Спб.*, 1913:*

ՅԱ = *Հանդէս Ամսօրեայ:*

Ղ. Մովսէսեան = Յ. Ղևոնդ Մովսէսեան, *Լոռիի Կիւրիկեանց թագաւորներու պատմութիւնը [ԱՄ Ղե.], Վն., 1923 (= նույն վերնագրով,- ՀԱ 1922, էջ 13-30,95-110, 244-245,369-382, 643-645, 1923,էջ19-22):*

ՂՄ = *Ղուկասեան Մատենադարան:*

Մատթէոս Ուռհայեցի - Մատթէոս Ուռհայեցի, Պատմութիւն 1869: *Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Բ. տպ. [հրատ.* Մամբրէ Մելիք-Ադամեան և Ներսէս Տէր-Միքայէլեան*], Վաղ., 1898: Մենք օգտվում ենք երկրորդ հրատարակությունից (նշում ենք՝* Մատթէոս Ուռհայեցի*):*

Մխիթար - *Մխիթարայ Այրիվանեցւոյ Պատմութիւն Հայոց, ի լոյս ընծայեաց* Մ. Էմին, *Մոսկվա, 1860: Մխիթարայ Այրիվանեցւոյ Պատմութիւն ժամանակագրական, ի լոյս ընծայեաց* Ք. Պատկանեան, *ՍՊբ., 1867: Երկրորդ հրատարակությունը ձեռքի տակ չունենալու պատճառով՝ օգտվել ենք առաջինից (նշում ենք՝* Մխիթար*), բացառությամբ մեկ դեպքի, երբ օգտվել ենք երկրորդ հրատարակությունից (տես այս գրքի Բ մասի Ը գլուխը):*

Յարութիւնեան = Իսահակ Յարութիւնեան, *Սանահին.- ԱՀ, գ. Գ., Տփղ., 1898:*

Յովհ. Ղրիմեցի (Крымский) = Описание монастырей Ахпатского и Санагинского, архим. Иоанна Крымского. *Description des monastéres arméniens d'Haghbat et de Sanahin, par archim. Jean de Grimée, avec notes et Appendice, par M. Brosset,- «Mémoires de l'Acad des Scienccs», VII sér., t. VI, N 6,* Спб., *1863*[1*]*:*

Նամականի = *Գրիգոր կաթողիկոսի Տղայ կոչեցելոյ Նամականի, Վնտ. 1865:*

Շահխաթունեանց = Յովհաննէս եպ. Շահխաթունեանց, *Ստորագրութիւն կաթողիկէ Էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ, Հ. Ա-Բ., Էջմ., 1842:*

Ոսկեան Յ., *Յովհաննէս Վանական և իւր դպրոցը* = Յ. Յամազասպ Ոսկեան, *Յովհաննէս Վանական և իւր դպրոցը [ԱՄ ՂԳ.], Վն., 1922*

[1*] Յայերէն բնագիրը տե՛ս Յովհաննու Ղրիմեցւոյ Պատմութիւն Յաղբատու Ս. Նշանու վանաց, Վիեննա, 1965, 184 էջ - Գ. Տ-Վ.:

*(=նոյն վերնագրով,- ՀԱ 1921, էջ 41-52, 163-172, 364-374, 458-471, 564-573, 1922, էջ 89-94, 214-226):*

Ոսկեան, *Մատ. քննութ.* = Հ. Համազասպ Ոսկեան, *Մատենագրական քննութիւններ [ԱՄ ԾԺԲ.], Վն. 1926* (=նույնի՝ *Յովհաննէս Սարկաւագի կեանքը.- ՀԱ 1925, էջ 27-40, Յովհաննէս Սարկաւագի գրութիւնները,- ՀԱ 1925, էջ 117-125, 233-248: Մխիթար Գոշ,- ՀԱ 1925, էջ 348-361: 1925, էջ 25-35, 129-137:* Բաբգէն եպիսկոպոս [Կիւլեսէրեան], *Մխիթար Գօշի վերաբերյալ ձեռագիրք Երուսաղէմի սրբոյ Յակոբեանց ձեռագրաց մատենադարանին մէջ,- ՀԱ 1926, էջ 137-147):*

ՊՀ = *Պատմագիրք Հայոց*

Ջալալեանց = Սարգիս վ. Ջալալեանց, *Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, Տփղ., մս. Ա., 1842, մս. Բ., 1858:*

Սամուէլ - *Սամուէլ քահանայի Անեցւոյ «Հաւաքմունք ի գրոց պատմագրաց», հրատ.* Արշակ Տէր-Միքելեանի, *Վաղ., 1893 (նշում ենք*՝ Սամուէլ):

Սարգիսեան = Ներսէս վ. Սարգիսեան, *Տեղագրութիւնք ի Փոքր և ի Մեծ Հայս, Վնտ., 1864:*

Վաղ. = *Վաղարշապատ*

Վարդան – *Մեծին Վարդանայ Բարձրբերդեցւոյ Պատմութիւն տիեզերական,՚ի լոյս ընծայեաց՚* Նկրտիչ ՚Էմին,՚ *Մոսկվա,՚1861: ՚Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի լուսաբանեալ, Վնտ., 1862: Մենք օգտվում ենք երկրորդ հրատարակությունից (նշում ենք*՝ Վարդան):

Վն. = *Վիեննա*

Վնտ. = *Վենետիկ*

Տաշեան, *Ցուցակ* = Յակովբոս վ. Տաշեան, *Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, Վն., 1895:*

Տփղ. = *Տփղիս, Թիֆլիս, Թբիլիսի*

Ք.Ց. = *Քարթլիս ցխովրեբա. Բրոսե, Մ. Բրոսեի հրատարակութիւնը, ՍՊբ., 1849: Թաղ. = Մարիամ թագուհու տարբերակը, Է. Թաղայիշվիլու հրատ. Տփղ., 1906:*

Օրմանեան, *Ազգապատում* = *Մաղաքիա արքեպ. Օրմանեան, Ազգապատում, Կ. Պոլիս, 1912-1913:*

BAG = *Bibliotheca Armeno-Georgica*

Ձ. = *ձեռագիր. Ձ. էջմ. թանգ. հին հավ.= ձեռագիր էջմիածնի թանգարանի հին (հիմնական) հավաքածուի մինչև 1914 թվականը հավաքածնները. Ձ. էջմ. թանգ. նոր հավ.= ձեռագիր էջմիածնի նույն*

*Թանգարանի նոր Հավաքածուի 1914 Թվականից հետո Հավաքածուները:*

Зап. АН = Записки Академии Наук

ЗВО = Записки Восточного Отделения И. Русского Археологического О-ва

Изв. АН = Известия Академии Наук *(VI* серия*)*

Изв. КИАИ=Известия Кавказского Историко-Археологического Института в Тифлисе

Лнгр.= Ленинград

М = Москва

СМК = Сборник материалов для описания местностей и племен Кавказа

ТР = Тексты и Разыскания по армяно-грузинской филологии

ХВ = Христианский Восток



Նկար 1. Սանահինի գրապահոցը
*(վրացերեն հրապարակությունից՝ էջ 52)*



Սանահինի գրապահոցը մեր օրերում (2006 թ.)



Նկար 2. Հաղբատի գերեզմանատունը (պանթեոն)
*(վրացերեն հրապարակությունից՝ էջ 53)*



Հաղբատի գերեզմանատունը (պանթեոն) մեր օրերում (2006 թ.)

# ԳԼՈՒԽ Ա.

## ՆԱԽՆԱԿԱՆ ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ

*«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետներ» անվանումով Հայագիտության և Հայ գրականության մեջ Հայտնի են այն անձինք, ովքեր, ըստ Հայկական սկզբնաղբյուրների, գործունեություն են ծավալել «Հյուսիսային կողմերում», որոշակի ժամանակաշրջանում և որոշակի պայմաններում, և պատկանել են որոշակի դավանաբանական-ազգային ուղղության, այսինքն՝ տվյալ դեպքում՝ Հայ Հակաքաղկեդոնական ծայրահեղ, պահպանողական մտածողության՝ այլատեցության (քսենոփոբ) թևին, իսկ այս թևը խստագույն ընդդիմություն էր ներկայացնում Կիլիկիայում գործող և եկեղեցական-քաղաքական կյանքում իշխող այլասեր (քսենոֆիլ) շրջանակների դեմ:*

*Այս անձանց ինքնության պարզումը՝ կապված նրանց գործունեության Հետ, չափազանց Հետաքրքիր է այն առումով, որ նրանց ստեղծած դպրոցը Հայ մատենագրության պատմության մեջ Համընկնում է Վրաստանի պետականության Հզորացման Հետ, այսինքն՝ ԺԱ-ԺԳ. դարերին, Հետևաբար Հատուկ Հետաքրքրություն կարող է ներկայացնել Հայ-վրացական Հարաբերությունների տեսանկյունից:*

*Հանգուցյալ* Կարապետ Տեր-Մկրտչյանը, *Հայ գրականության զարգացումը կապելով, այսպես կոչված՝ «Հյուսիսային կողմանց» Հետ, իրավացիորեն նշում է. «Նախորդ ժամանակներում Համեմատաբար այդքան զգալի չի եղել Հայաստանի Հիւսիսային նաՀանգների կատարած դերը. Հայոց ինչպէս քաղաքական, այնպէս և Հոգևոր՝ կեանքը մինչև Բագրատունեաց վերջին օրերը կենտրոնացած էր գլխաւորապէս Այրարատում և Վասպուրականում: Բայց երբ անվերջ Թուրք-Թաթարական արշաւանքներից Հայաստանի այդ միջնաշխարՀը աւերուեց ու ամայացաւ, շատ մասերում էլ ընդ միշտ օտար մաՀմեդական ցեղեր Հաստատուեցան, վերոյիշեալ քաղաքական ոյժերի Հետ նաև Հայ ազգի Հոգևոր-բարոյական զօրութեան որոշ տարրերը ապաստան գտան Հիւսիսում, և Հիւսիսային Հայաստանը դարձավ այդ կողմից էլ Կիլիկիայի նման ու*

*աւելի տեւական կերպով՝ հայ-քրիստոնէական քաղաքակրթութեան պատսպարանը: Արդէն Զաքարէ Սպասալարն ու Իվանէ Աթաբէկը զինուորական մեծագործութեանց հետ զուգընթացաբար նշանաւոր էին հանդիսացել ընդարձակ շինարարութեամբ, և նոցա ու իրենց իշխանակիցների հովանաւորութեան ներքոյ բարգաւաճել էին Հաղբատն ու Սանահինը, Մխիթար Գոշ վարդապետի հիմնած վանքերն և դարձել վանական կրթութեան կարևոր կենտրոններ: Սոքա հայրենի աւանդութեանց համար ցույց տուած նախանձախնդրութեամբ հակակշռում էին Կիլիկեցիների օտարամէտ շարժումներին և բազմակողմանի գրական ու վարդապետական գործունէութեամբ մի հաւատարիմ սերունդ պատրաստում յետագայ աւելի դժբախտ ժամանակների համար: Միւս իշխանները, հետեւելով նոցա օրինակին՝ աշխատում էին մեկը միւսին գերազանցել իրենց վանքերի բարեկարգութեամբ և շինուածների հոյակապութեամբ: Նոցանից գրեթէ իւրաքանչիւրը մի տոհմային վանք ունէր, որի բարեզարդութեան համար ոչինչ չէին խնայում. Խաչէնի իշխանները շէնացնում էին Գանձասարը, Հաթերքի իշխանները՝ Դադի վանքը, Դօփեանք՝ Խաթրավանքը, Օրբէլեանները՝ Նորավանքն ու Տաթևը, Պռօշեանք՝ Այրի վանքը, Վաչուտեանք՝ Յովհաննավանքն ու Սաղմոսավանքը եւն. եւն. այլ և ազգակցական, խնամէական ու այլ կապերով միմեանց հետ կապուած իշխանները բարեպաշտական պարտք էին համարում մեկը միւսի կալուածքում մի աչքի ընկնող յուշարձան թողնել»*[1]*:*

*Մեկ այլ հայ գիտնական՝* Մաղաքիա Օրմանյանը, *այդ նույն «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետներին» այսպես է բնութագրում. «Արեւելեան վարդապետներուն խումբը* հիւսիսային կողմանց *(Ընդ. 309) վարդապետներ ալ կոչուած են, զի իրենց կեդրոններն էին Հաղբատ ու Սանահին զոյգ վանքերը, Գուգարաց Տաշիր գաւառի, Ձորոգետի հովտին մէջ, ուսկից առնելով Ձորոգետացի ալ կոչուած են յաճախ: Այս վանքերը Բագրատունեաց օրերէն սկսած էին ծաղկիլ եւ արեւելեան երկիրներու կամ բուն Հայաստանի մէջ կրօնից և ուսմանց կեդրոն դարձած էին: Եկեղեցական իշխանութեան կամ նուիրապետութեան տեսակէտէն ալ իրենց գլուխ կը ճանչնային Անիի արքեպիսկոպոսները: Արեւելեան սահմաններուն մէջ փակուած, եւ արեւմտեան յարաբերութիւններէ անջատ, եւ նախնի*

[1] Կարապետ եպիսկոպոս, Դոփեանք և Մելիք-Շահնազարեանք. «Նիւթեր հայ մելիքութեան մասին», Բ. պրակ, հրատ. Հայոց Ազգագրական Ընկ., էջմ., 1914, էջ 40-42:

*աւանդութեանց հաւատարիմ պահապան, ամէն միութեան գաղափարը կասկածաւոր էր Զորագետցիներուն աչքին, եւ օտարներու առաջարկներուն անվստահ, խաբուելու կամ ընկճուելու վտանգէն ազատ մնալու համար՝ կը սիրէին յարաբերութիւններէ ալ խուսափիլ»*[2]:

*Ն. Ադոնցը, հայ դպրության պատմությունը բաժանելով հինգ շրջանի, որպես երրորդ շրջան (ԺԲ–ԺԴ. դդ.) ընդունում է Զաքարյանների իշխանությունը Հայաստանում և Ռուբինյանների իշխանությունը՝ Կիլիկիայում, համապատասխան երկու գլխավոր կենտրոններով, մասնավորապես այս երրորդ շրջանի հոգևոր գրականության մասին ասում է.* “Церковная литература богата содержанием; этим она обязана отчасти тем партийным трениям и столкновениям, которые происходили между обоими центрами армянской образованности. Вопрос об унии армянской церкви с греческой и с латинской имел сторонников и врагов среди духовенства в Армении и Киликии. В общем, киликийское духовенство обнаруживало больше склонности к унии, под влиянием, прежде всего, политических условий. Богословская мысль никогда не была так порабощена политикой, как в этом периоде. Византия и Рим оказывали давление на армянскую церковь через Рубенидов. Они рассчитывали укрепить союз с армянами, который был им дорог в виду крестовых походов, на почве вероисповедной солидарности. Рубенидские же князья, надеясь обеспечить посредством такого союза свое политическое существование среди мусульманских государств, шли навстречу течению, направленному против §церковной обособленности. Князь Леон готов был осуществить унию даже насильственными мерами, лишь бы получить царскую корону. Мысль об унии встречала сочуствие в тех представителях церкви, которые были воспитаны в новой киликийской сфере, проникнутой западным духом. Во главе их стоял Нерсес, епископ Ламбронский (ум. в 1198 г.)... Против него и его единомышленника, католикоса Григория Отрока (ум. в 1193 г.), вооружились Григорий, сын Тутея (Тутеорди), и Давид Кобайрский из ахба-санаинской школы. Они занимали крайнюю позицию в вопросе об учении, либерализму киликийцев противопоставляя преданность санаинской школы заветам старины”[3].

*Լեոն (Առաքել Բաբախանյան) ևս, երբ դատողություններ է անում ԺԲ–ԺԳ. դդ. հայ արվեստի մեկենասների մասին, ասում է.*

---

[2] **Մաղաքիա Օրմանեան**, Ազգապատում. Հայ ուղղափառ եկեղեցւոյ անցքերը սկզբէն մինչև մեր օրերը, յարակից ազգային պարագաներով պատմուած, Կ. Պոլիս, 1912-1913, էջ 1461 (§ 1004):

[3] **Н. Адонц**, Армянская литература.- «Нов. Энцкл. Словарь Брокгауз-Ефрона», т. III, стлб. 652-653:

*«Արուեստների հետ խրախուսւում էր և մտաւոր զարգացումը: Բազմաթիւ նորակառոյց և վերանորոգուած եկեղեցիների ու վանքերի համար հարկաւոր էին միաբանութիւններ, և այս անհրաժեշտութիւնը բնականաբար գալիս էր բազմացնելու դպրոցների թիւը: Զարգանում է առանձնապէս վանականութիւնը: Վանքերը նորից մեծամեծ կալուածների տէր են, Հաղբատն ու Սանահինը դառնում են խոշոր մտաւոր կենտրոններ, ազդու և ուժեղ ոչ միայն իրանց մտաւոր կարողութեամբ, այլ մանաւանդ իրենց հարստութիւններով»*[4]:

*Իսկ նշանաւոր Ա. Մուրաւյովը, խօսելով Հաղբատ-[Սանահին]-ի խմբակի ծայրահեղ պահպանողականութեան մասին, որը հետագայում՝ Ը-ժԵ. դարերում, բացառապես Սյունիքի գլխավոր կենտրոն Տաթևի գլխին ջարդվեց, ասում է.* «В Ахпате Православие встретило сильный отпор, равно как и в монастыре Татевском, что в Карабахе, ибо там соединялись частные соборы, под председательством своих Архиепископосов, чтобы обсудить действия благонамеренных Католикосов»[5].

*Նույն կարծիքը կրկնում է Մկրտիչ Էմինը.* «В конце XII ст. Хах'бат, как хранитель старого порядка, держал сильную оппозицию против всех благих начинаний, предпринятых армянскими иерархами в Киликии»[6].

*Այսպես թե այնպես, նշված խմբի հայ գործիչները աչքի են ընկնում հայ հին գրականության մեջ հիանալիորեն սահեղծված termini technici-ով,- «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետները», որը հականե-հանվանե գործածված է Հաղբատ-Սանահնի միաբանության գրագրություններում, ուղղված «Տղայ» կոչված Գրիգոր Կաթողիկոսին (1173-1193) Կիլիկիայում:*

*Մի կողմից՝ հիւսիսային.*

*«Թուղթ վարդապետացն Հայոց հիւսիսային կողմանց, որ ի Հաղբատ և ի Սանահին, առ պատուական կաթողիկոսն տէր Գրիգորիոս»*[7]:

---

[4] Լէօ, Պատմութիւն Ղարաբաղի հայոց թեմական հոգևոր դպրոցի 1838-1913, Տփղ., 1915, էջ 47-48:

[5] [А. Муравьев], Грузия и Армения, ч. II, Спб., 1848, стр. 304.

[6] Всеобщая история Вардана Великого, пер. Н. Эмина, Москва, 1861, стр. 134, прим. 417.

[7] Թուղթ ընդհանրական արարեալ երիցս երանեալ սուրբ հայրապետին մերոյ տեառն Ներսիսի Շնորհալւոյ, էջմ., 1865, էջ 426 = Ընդհանրական թուղթ սրբոյն Ներսիսի Շնորհալւոյ, Երուսաղէմ, 1871, էջ 308 (հմմտ. Յակովբոս Տաշեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, Վն., 1895, էջ 950):

*Եվ մյուս կողմից՝*

*«Տեառն Գրիգորի՝ Պատասխանի վարդապետացն Հայոց հիւսիսային կողմանց»*[8]*:*

*Մ. Օրմանյանը, իհարկե, ճիշտ է, երբ նշում է, թե հիւսիսային վարդապետները «Զորոգետացի ալ կոչուած են յաճախ»:*

*Զորոգետը կամ Զորագետը հին անվանումն է (այժմ Խորհրդային Հայաստանի կողմից վերականգնված), ռուսների կողմից՝* Каменка, *կոչված գետի, որը արևելք-արևմուտք ուղղությամբ հոսում է երկաթուղային Քոլագիրան կայարանի մոտից և, որը այստեղ հարավից Բամբակ (այժմ, չգիտես ինչու, Փամբակ կոչված)-ին է միանում, այնուհետև նախ՝ հարավ-հյուսիս և հետո հարավ-արևմուտք-հյուսիս-արևելք ուղղությամբ ընթացող՝ Դեբեդ կամ Դեբեդչայ անունով է հայտնի*[9]*: Հաղբատը և Սանահինը ճիշտ այս գետի հովտում են գտնվում, Քոլագիրանից հյուսիս. ահա ինչու, միանգամայն բնական է, որ այս շրջակայքի միաբանության անդամներին «Զորոգետցիք» կոչեին, թեև որպես «Զորոգետցիներ» առանձնապես միայն սանահնեցիք են հայտնի եղել:*

*Ամեն դեպքում, սկզբնաղբյուրներում «Զորոգետցիք», resp. «Զո-*

---

8 Թուղթ ընդհանրական ևն., 433 - Գրիգոր կաթողիկոսի Տղայ կոչեցելոյ Նամականի, Վնտ., 1865, էջ 53 (հմմտ. Տաշեան, նույն տեղում):

9 Զորոգետ կամ Կամենկա = Դեբեդաչայ գետ **Վախուշտին** (Description geographique de la Géorgie, publié par M. **Brosset**, SPb., 1842, p. 136 = ბატონიშვილი ვახუშტი, საქართველოს გეოგრაფიაგა, გამ. მ. ჯანაშვილისა, ტფ., 1904, გვ. 40 (Բատոնիշվիլի Վախուշտի, Վրաստանի աշխարհագրություն, հրատ. **Մ. Ջանաշվիլու**, Տփղ., 1904, էջ 40) սխալմամբ Բերդուջ-Սագիմ-Դեբեդ է անվանում, մինչդեռ Բերդուջ-Սագիմը և Դեբեդը բոլորովին տարբեր գետեր են: Արտաքուստ Զորոգետը (որ «Զորի գետ է» նշանակում) գրեթե նման է **Վախուշտիի** նշած գետ-ծորին (ինչը «Գետի ծոր է» նշանակում), բայց վերջինս ներկայացված է ներքևներում: (Description, 152 = Մ. Ջանաշվիլու հրատ., 50), և, ուրեմն, Զորոգետի և Գետի-ծորի նույնացումը բնավ հնարավոր չէ: **Միքայել Չամչյանի** «Պատմութիւն Հայոց»-ի, (Վենետիկի 1784-1786 թթ. հրատ.) վրացական տարբերակում, որը հատվածաբար է հասել մեզ, և որը վերջին ժամանակներս ծեռք է բերել Վրաստանի պատմաազգագրական թանգարանը, Զորոգետը բացատրվում է հետևյալ կերպ՝ «որն ասվում է ծորակի գետին՝ առվակին» (տե՛ս թանգարանի ձեռ. Hᵈᵒ № 3107, տետր I, էջ 1r). **Ղևոնդ Մովսէսեան** (Լոռիի Կիւրիկեան թագաւորներու պատմութիւնը [ԱՄ Ղե.], Վն., 1923, էջ 86), չգիտես ինչու, Զորոգետը Կախեթն է համարում: Թե՝ Զորոյգետը Կախեթն է (sic). Զորոգետի վերաբերյալ սխալ տեղեկություններ է հաղորդում նաև **Ղուկաս Ինճիճյանը** (Ստորագրութիւն հին Հայաստանեայց, Վնտ., 1822, էջ 416-417, և ծնթ. 1, էջ 417): Քանի որ խոսք եղավ, պետք է նշենք, որ ԺԳ. դարի հայ պատմաբան-աշխարհագրագետ **Վարդանը** տարբերակում է երկու «Զորոգետ», մեկը՝ Սևորդեաց, մյուսը՝ «Անիի»: (**M. Saint-Martin**, Mémoires historiques et géographiques sur l'Arménie, t. II, Paris, 1819, pp. 424, 418): Նշենք նաև, որ Ծործորը Զորոգետի հետ ոչ մի կապ չունի՝ գտնվում էր Հարավային Հայաստանում, որտեղից էր Հովհաննես Երզնկացին կամ Ծործորեցին՝ «Պլուզ» մականվամբ (ԺԳ-ԺԴ. դդ.):

րագետցիք» եզրը, մեր կարծիքով, գործածվում է երկու իմաստով:

Օրինակ, Գրիգոր Տղայի վերոհիշյալ պատասխանում «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» թղթում «ձորագետցիք», «անեցիների» հետ միասին, հակադրված են «վաղարշապատցիներին» և «դվինցիներին»:

«Միթէ Անեցի՞ք էին սոքա և Ձորոյգետացի՞ք, կամ Վաղարշապատեցի՞ք և Դըւնեցի՞ք...»[10]:

Մյուս կողմից՝ Ներսես Լամբրոնացու պատասխանում Սանահնի դպրոցի նշանավոր ներկայացուցչին՝ Գրիգոր Տուտեորդուն, «Ձորոգետցիներ» կամ, ավելի ճիշտ, «Ձորագետցիներ» եզրը գործածված է սանահինցիներին համարժեք:

«Տեառն Ներսիսի Լամբրօնացւոյ եւ արքեպիսկոպոսի Տարսոնի Կիլիկ[ի]ոյ՝ Պատասխանի թղթոյն վարդապետին Տուտէորդւոյ և նորին նմանեաց Ձորագետացւոցն և Հաղբատացւոցն»[11]:

Ձորագետցին օգտագործված է նաև սանահնեցու նշանակությամբ ԺԳ. դարի վերջին Հովհաննես Երզնկացու կազմած «Գիրք հակաճառութեան և ընդդիմաբանութեան ընդդէմ երկաբնակաց» ժողովածուի տարբերակում[12], որտեղ առաջաբանում հիշատակված են «Անանիա վարդապետ Ձորագետցի» և «Յովհաննէս վարդապետ, Սարկաւագ կոչեցեալ, Հախպատացի»: Հետևաբար՝ այստեղ Ձորագետցին ոչ հաղբատացու նշանակությամբ է օգտագործված, ոչ հաղբատ-սանահնեցու, այլ հաղբատացու հակադրմամբ, որը, անշուշտ, համարժեք է սանահնեցուն. սա, ի միջի այլոց, հաստատվում է նաև նրանով, որ հիշատակված Անանիան, իրոք, սանահնեցի էր:

«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետները» հին փաստաթղթերում օգտագործված է «Արևելից» տերմինը:

Օրինակ՝ Գրիգոր Տղայի եղբոր՝ Ներսեսի կողմից Հաղբատցի Գևորգին հղված մի թղթի վերնագրում ասված է.

«Թուղթ առ ի Ներսիսէ եպիսկոպոսէ՝ յեղբօրէ տեառն Գրիգորիսի կաթողիկոսի Հայոց՝ Պատասխանի թղթոյն Գէորգեայ Արեւելեան եպիսկոպոսի, առաջնորդի սրբոյ ուխտին Հաղբատի»[13]:

Բայց, միևնույն ժամանակ, «Արևելցի» տերմինը իրականում ավելի լայն հասկացություն է, ինչը պարզ երևում է Ստեփանոս

[10] Թուղթ ընդհ., 447 = Նամականի, 75:

[11] **Տաշեան**, Ցուցակ, 333, հմմտ. 829:

[12] Տե՛ս էջմ. թանգ. նոր հավաք. ձեռ. Հմր 1110 [=6453], էջ 1բ:

[13] Սոփերք Հայկականք, ԺԸ., Վնտ., 1854, էջ 4:

*Օրբելյանի (ԺԳ. դ.) Պատմության մեջ զետեղված մի փաստաթղթից՝ «Ձեռնարկ միաբանութեան եպիսկոպոսաց* արևելից *և վարդապետաց և իշխանաց»*[14]*, որտեղ բոլորովին էլ «Ձորագետցիներին» նկատի չունի, այլ Հաղբատցիների հետ միասին նկատի ունի նաև սյունեցիներին, բջնեցիներին, գողթնեցիներին և հավուցթառեցիներին*[15]*:*

[14] Պատմութիւն նահանգին Սիսական, արարեալ Ստեփաննոսի Օրբէլեան արքեպիսկոպոսի Սիւնեաց [ՂՄ-4], Տփղ., 1911, էջ 461-463, հմմտ. 449:

[15] Յարկ է նշել, որ **Ստեփանոս Օրբելյանը** (Օրբէլեան, 299) Ձորոգետցիներ ասելով հոգևոր անձանց նկատի չունի, այլ Կյուրիկյան հարստության աշխարհիկ ներկայացուցիչներին, ովքեր տերերն էին Ձորոգետի հովտի, «Ձորոյգետացիքն, որ Կիւրիկեանքն կոչին».- ասում է նա:

# ԳԼՈՒԽ Բ.

## «ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄԱՆՑ ՀԱՅՈՑ ՎԱՐԴԱՊԵՏՆԵՐ» ՀԱՍԿԱՑՈՒԹՅԱՆ ՄԵԿՆՈՒԹՅՈՒՆԸ

*«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետներ» արտահայտությունը՝ որպես որոշակի հասկացություն, երկու էլեմենտ է պարունակում. դրանցից մեկը մատնանշում է* հայ վարդապետներին, *իսկ մյուսը՝ այդ վարդապետների* գործելավայրը *կամ, ավելի ճիշտ՝* մարզը, շրջանը:

Ա. Հայոց վարդապետներ՝ *այսպես ենք թարգմանում հայերենից «վարդապետք հայոց»*[1] *եզրը, որտեղ* վարդապետ-*ը ընկալվում է իր պատմական նշանակությամբ (և ոչ թե ժամանակակից՝* արխիմանդրիտ[2], *որը վրաց հին մատենագրության մեջ համապատասխանում*

---

[1] Հիշյալ տերմիններն այս իմաստով են գործածված նաև Անտոն կաթողիկոսի «Էրիստիկա»-ում ("მზამეტყველება", տե՛ս **Պ. Կարբելովի** հրատարակությունը, Տփղ., 1892)։ **«Վարդապետք Հայոց ազգակիցք»** (էջ 107), **«Վարդապետք անհաւատք Հայոց»** (էջ 112), **«Վարդապետք Հայոց ազգի»** (էջ 119), **«Վարդապետք Հայոց»** (էջ 121) և այլն:

[2] Վարդապետ եզրի մասին բազմաթիվ տեղեկություններ ենք գտնում հայ եկեղեցու հայրերի և ժողովների որոշումներում, օրինակ, Սահակի կանոններում Գ., § 35, Շահապիվանի 447 թվականի ժողովի արձանագրությունների նախաբանում, § 19, Դվինի 4-րդ ժողովի՝ 648 թ., § 9, Պարտավի՝ (Սիոն կաթողիկոսի) 768 թ., § 6, Երուսաղեմի՝ 1651 թ., § 9, **Մխիթար Գոշի** «Հայոց Դատաստանագրքի», 1, § 3, 3. **Գրիգոր Տաթևացու** «Քարոզներում» և այլն, և այլն: Ընդհանրապես հին մատենագրության մեջ այն կարծիքն է տարածված, որ եկեղեցու հիմքերը նախ առաքեալք են, հետո մարգարէք, երրորդը միայն՝ **վարդապետք**, որոնք ԺԴ. դարի գործիչ **Գրիգոր Տաթևացու** կարծիքով (Քարոզգիրք. Գիրք քարոզութեան, որ կոչի Ձմեռան հատոր, արարեալ սրբոյ հօրն մերոյ Գրիգորի Տաթևացւոյն. ևն., Կ. Պոլիս, 1740, էջ 162), նկարագրում են. առաջինները՝ «Հօրը», երկրորդները՝ «Որդուն», իսկ երրորդները՝ «Սուրբ Հոգուն» (**Գրիգոր Տաթևացու** Քարոզգիրքը մի ժամանակ թարգմանված է եղել նաև վրացերեն, այդ մասին տե՛ս **А. Цагарели**, Сведения о памятниках грузинской письменности, т. 1, в. 3, Спб., 1894, стр. 265):

Սկզբնաղբյուրների տեղեկություններ պարունակող գրականությունը տե՛ս հետևյալ ուսումնասիրություններում և հոդվածներում. Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց, հրատ. **Վահան Բաստամեանց**, Վաղ., 1880, յառաջաբանութիւն, էջ 82, ծանօթ. 55, **Մաղաքիա Օրմանեան**, Աթոռ Հայաստանեայց, Վաղ., 1886, էջ 85-89, **Արշակ Տէր-Միքելեան**, Հայաստանեայց առաքելական ուղղափառ սուրբ եկեղեցին և իւր սուրբ կարգը, Վաղ., 1897, էջ 178-190, 212-224, **Н. Марр, М. Тер-Мовсесян**, История перевода Библии на армянский язык գրքի գրախոսականը.- ТР, V, 1903, стр. 34-36, նույնի գրախոսականը՝ Аннинский, История армянской церкви գրքի.- ЗВО, т. XV, в. 4, 1904, стр. 0143, հոդվածների մի ամբողջ շարք

*; քահանային*[3], *իսկ Մխիթար Գոշի «Դատաստանագիրք Հայոց»-ի*

---

Կոստանդնուպոլսի «Լոյս» ամսագրում, 1905 թ., ՅԱ, 1906, էջ 223, Ա, 1908, էջ 867-888, **Мариэтта Шагинян**, Что такое «вардапет».- газ. «Кавк. Слово», 1915 г., № 196 և այլն:

Որ հայերեն «վարդապետ» բառը վրացերենում համապատասխանում է «մոძღվარի»-ին, ապացուցվում է նաև վրաց գրականության մի քանի հին հուշարձաններով: Օրինակ, այն հիշատակված է, նախ՝ **Արսեն կաթողիկոսի**, հայտնի երկի վերնագրում՝ "თქმული წმიდისა მამისა ჩუენისა არსენისი მოძღურისა, მცხეთელ კათოლიკოზისა,რომელი იყო სანაწებთაგან სამცხისათა საფარით,განყოფისა-თჳს ქართლისა და სომხითისა" «Ասված սուրբ հայր մերոյ Արսեն **վարդապետի**, Մցխեթցի կաթողիկոսի, որը եղել է պաշտպաններից բաժանումն Վրաց ի Հայոց». ლეონ მელიქსეთ – ბეგი, ქართული ვერსია საჰაკ პართელის წინასწარმეტყველებისა,ტფ. უნ. მოამბე,II,ტფ.,1922-1923,გვ. 205. (**Լևոն Մելիքսեթ-Բեկ**, Սահակ Պարթևի կանխագուշակության վրացական վարկածը, «Թիֆ. համալս. բանբեր», II, 1922-1923, էջ 205): Նույնի գրախոսությունը Կոռնելի Կեկելիձեի «Վրաց գրականության պատմություն» գրքի մասին, հ. I, «Սախստորիո մոամբե», 1924 թ., գիրք II, էջ 261-262), իսկ որ այս վերնագրում «մոձղվարի» տերմինը գործածված է հայերեն վարդապետի նշանակությամբ, բավական է հիշատակենք հայ գրականության մի հուշարձան, հատկապես Սահակ Կաթողիկոսի երկը, որտեղ Սահակը վարդապետ է կոչված այնպես, ինչպես Արսենը՝ մոձղվարի. Ասացեալ սրբոյ **վարդապետին** Սահակայ Հայոց կաթողիկոսի և մեծի թարգմանչի ընդդէմ երկաբնակաց նեստորականացն, (Գիրք թղթոց, Տփղ., 1901, էջ 413): Նման տերմին է պահպանվել նաև Երուսաղեմի «Կանոններ» վրացական տարբերակի վերնագրում (**Корнели Кекелидзе**, Иерусалимский Канонарь. Грузинская версия, Тфл., 1912, стр. 41, նաև հենց բնագրում՝ 52, 54, 55, 62): «Մոձղվարի» տերմինը, ճիշտ է, տվյալ դեպքում Կոռն. Կեկելիձեի կողմից ռուսերեն թարգմանվել է святитель, բայց Ն. Մառը նպատակահարմար է գտել այն ուղղել և թարգմանել որպես учитель, հայերեն վարդապետի նշանակությամբ (տե՛ս Ն. Մառի գրախոսությունը Կոռն. Կեկելիձեի վերոհիշյալ գրքի մասին.- ХВ, т. I, 1912, стр. 117, hմմտ. իր իսկ՝ *Яфетические элементы в языках Армении, Х.*- Изв. АН, 1918, стр. 317-318): Ամենից հաջողվածը Ռուի-Ուրբնիսի 1103 թվականի ժողովի հուշարձանի գրածի IX պարագրաֆն է, որտեղ ուղղակի ցույց է տրված, որ «մոձղվարի»-ն բոլորովին էլ святитель չի նշանակում, այլ՝ որոշակի որակավորում ունեցող կուսակրոն, ճիշտ այնպես, ինչպես հայոց վարդապետը, այսպես կոչված, աբեղայ (աբեղա)-ների միջև: მ. საბინინ, "საქართველოს სამოთხე" (Մ. Սաբինին, Վրաստանի դրախտը), ՍՊբ, 1882, էջ 525 = Թ. Ժորդանիա, ქრონიკები (ժամանակագրություններ, II, Տփղ., 1897, էջ 64): Դրանից բացի, Գիորգի Գ.-ի 1177 թվի հրովարտակում հիշատակվում են «կաթողիկոսը, վարդապետը և բոլոր վանականները», (**Թ. Ժորդանիա**, I, Տփղ., 1893, էջ 265 = **С. Какабадзе**, *Сигель груз. царя Георгия III по поводу восстания князей Орбели в 1177 г.*- Изв. КИАИ, т. IV, Тфл., 1926, стр 125): Իսկ "კარის გარიგება"-ում («Արքունական դաշնագիր») ամենուր սովորաբար հիշատակվում է **վարդապետաց վարդապետ** ("ჳელმწიფის კარის გარიგება" (Թագավորի արքունական դաշնագիր), Է. **Թաղաիշվիլու** հրատ., [Monumenta Georgica. IV. Leges, № 1], Տփղ., 1920, տող 269-270, 276-277, 279, 280, 281, 292-293, 377, 387, 390, 399: «Մոձղվարի» տերմինը հայոց վարդապետի նշանակությամբ շատ հաճախ հանդիպում ենք նաև **Անտոն Կաթողիկոսի** «Էրիստիկա»-ում (տե՛ս **Պ. Կարբելովի** հրատարակությունը, էջ 4, 8, 107, 112, 119, 121 և այլն): Վրաց պատմական աղբյուրներում, հատկապես Թամար թագուհու առաջին պատմիչի շարադրանքում որպես հայերեն վարդապետ տերմինի համարժեք գործածված է «մոձղվարի» (Ք. Ց., Թաղ., 482-483, Բրոս., 312-313), թեև մի տեղ «մոձղվարի»-ից բացի, մատնանշվում է նաև «վարդապետ»-ը՝ «**մոձղվարներ և վարդապետներ**

*վրացական տարբերակում*՝ քարոզչին[4]:

Բ. Հյուսիսային կողմեր՝ *այսպես ենք թարգմանում մենք հայերեն հյուսիսային կողմանք, որտեղ հյուսիսային նշանակում է հյուսիս, իսկ կողմն (այստեղից էլ plur. կողմանք) այն տերմիններից է, որոնք երկիր, աշխարհ[5] են նշանակում, միայն այն տարբերությամբ, որ այն մասնավորապես նաև կողմ, ծայրամաս է նկատի առնվում: Հետևաբար, հյուսիսային կողմանք-ը* հյուսիսային կողմերն են, *իհարկե, Հայաստանում ապրողների տեսանկյունից:*

*Ինքնին պարզ է, որ «Հյուսիսային կողմանց» հասկացությունը ժամանակի ընթացքում փոփոխական է եղել, և այն տարբեր ժամանակներում տարբեր իմաստ է արտահայտել: Օրինակ*՝ Մովսես Խորենացու *(Է. դ.՞) մոտ բոլորովին այլ է «Հյուսիսային երկրներ» հասկացությունը, երբ նա իր «Ողբում» (Հայոց պատմություն, գիրք Գ., գլուխ կը.) աղաղակում է. «Ողբամ զքեզ, Հայոց աշխարհ, ողբամ զքեզ, հանուրց* հիւսիսականաց *վեհագոյն»*[6]*, որտեղ հյուսիսային երկրներ են համարվում Արշակունյաց Հայաստանն ու հարևան երկրները, ինչպես երևում է՝ ի հակադրություն Փոքր և Մերձավոր Ասիայի այլ պետությունների: Այլ է նույն* Խորենացու *և Ուխտանեսի (Ժ. դ.) կողմից հիշատակված «կողմանք հիւսիսային»-ը՝ կապված Գուգարաց աշխարհի հետ.* Խորենացու *խոսքերով. (ընդդէմ լերինն Կաւկասայ* կողմնակալ հիւսիսոյ *կարգէ [Վաղարշակ] զմեծ և զհզօր ազգն... Գուգարացւոց)*[7]*, իսկ ըստ* Ուխտանեսի՝ *(«բդեշխի մեծի Գուգարացւոց*՝ կողմնակալ հիւսիսոյ *կարգեալ ի Վաղարշակայ Արշակունւոյ... արքայէ»)*[8]*,- որտեղ որպես* հյուսիսային կողմ *ցույց*

---

**հայոց»** (Ք. Ց., Թաղ., 483: Բրոս., 313), պատմիչը հիշատակում է որպես այլևայլ հասկացություններ պարունակող տերմիններ: Վերածննդի ժամանակաշրջանի գրականության մեջ «մոձղվարի»-ի հետ միաժամանակ հայերեն վարդապետ-ը գործածվում է հայերեն գռեհիկ արտահայտության վրացերեն տառադարձությամբ՝ «վարթապետի». (Համառոտ տեղեկություններ վրացի գրողների մասին «Ձվելի Սաքարթվելո» («Հին Վրաստան»), գիրք I, Տփղ., 1907, էջ 45-46: **Լ. Մելիքսեթ-Բէկ**, Հայերը վրաց հին գրականության մէջ.- «Գեղարուեստ» VII, Տփղ., 1922, էջ 45):

4 Կանոնագիրք Հայոց. Վրացական տարբերակ, կատարված Վախթանգ Ե.-ի հրամանով, հրատարակեց **Լևոն Մելիքսեթ-Բեկը** [Monumenta, Georgica, IV. Leges, № 2], Տփղ., 1927, գլուխ, 154, էջ 50 և այլուր:

5 Հմմտ. **И. Джавахов**, Государственный строй древней Грузии и древней Армении, т. [TP XI], Спб., 1905, стр. 33-40, 91:

6 Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց, աշխատ. Մ. Աբեղեան և Ս. Յարութիւնեան [ՊՀ, հ. Ա., գիրք Ա.], Էջմ.-Տփղ., 1913, էջ 358:

7 Նույն տեղում 114. – հմմտ. Սարաբասի նույն տեղեկությունը. **V. Langlois**, Collection des historiens anciens et modernes de l' Arménie, t. I, Paris, 1867, pp. 49-50:

8 **Ուխտանէս եպիսկոպոս**, Պատմութիւն Հայոց. [Բ.] Պատմութիւն բաժանման

*է տրված Հայաստանի և Իբերիա-Հերեթի*[9] *միջև ընկած հին Գուգարքի տարածքը՝ հայերեն՝ Գուգարք, հունարեն՝* Γωγαρηνή: *Մոտավորապես նման հասկացության են հանդել Հաղբատ-Սանահնի միաբանության և Գրիգոր Տղայի միջև ծավալված գրագրությամբ (ԺԲ. դ.)*[10]*, որտեղ որպես «հյուսիսային կողմեր» է ցույց տրված Հաղբատի և Սանահնի միջև ընկած շրջանը կամ, այսպես կոչված, Ձորոգետի,* zesp. *Ձորագետի (այժմյան Կամենկայի = Դեբեդչայի) հովիտը*[11]*: Սակայն այս բոլորի համեմատությամբ «Հյուսիսային կողմերը» բոլորովին այլ է ԺԸ. դարի համար, երբ այսպիսի* termini technici*-ով քողարկել են Կովկասյան լեռնաշղթայից հյուսիս ընկած երկրները, հատկապես Ռուսաստանը, որի պատճառով ռուսական կայսրության սահմաններում ընկած հայ թեմի առաջնորդը կոչվում էր. ( [ի]* հիւսիսային կողմանս *եղեալ ազգիս Հայոց... առաջնորդ)*[12]*:*

*Պարզվում է՝ ԺԱ-ԺԳ. դարերում Հայաստանի աշխարհագրության տեսանկյունից որպես «Հյուսիսային կողմեր», եթե հիմք ընդունենք Հաղբատ-Սանահնի միաբանության և Գրիգոր Տղայի գրագրությունը, պետք է հասկանանք Ձորոգետի, իմա՛ Ձորագետի (Կամենկա= Դեբեդչայ) կիրճը, Հաղբատ-Սանահնով հանդերձ, թեև, եթե ճշմարիտն ասենք, հարցն այսպես վճռելը բնավ ճիշտ չէր լինի, քանզի «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների»՝ Գրիգոր Տղային ուղղված թղթի վերնագրին կցված է հիշատակարան՝ ի դեմս Հաղբատ-Սանահնի, իսկ Գրիգոր Տղայի՝ նրանց տրված պատասխանում Հաղբատ-Սանահինցիները անվանված են «ձորոգետցիներ», և այս «ձորոգետցիները», իմա՛ «ձորագետցիները» Ներսես Լամբրոնացու պատասխանում միայն և միայն «սանահինցիներն» են*

---

Վրաց ի Հայոց, Վաղ., 1871, էջ 34:

[9] *Հմմտ.* კორნ. კეკელიძე, ქართველთა მოქცევის მთავარი ისტორიულ-ქრონოლოგიური საკითხები,- „მიმომხილველი". საქართველოს საისტორიო და საეთნოგრაფიო საზოგადოების ორგანო), ტ. I, ტფ., 1926, გვ.13-18 (**Կոռն. Կեկելիձե,** *Վրաց դարձի հիմնական պատմաժամանակագրական հարցերը.- «Միմոմխիլվելի», Վրաստանի պատմական և ազգագրական ընկերության օրգան, գ. I., Տփղ., 1926, էջ 13-18*):

[10] Տե՛ս ծնթ. 7:

[11] Տե՛ս ծնթ. 8:

[12] Տե՛ս **Գար[եգին] Զ[արբհանալեան]**, Հայկական մատենագիտութիւն, Վնտ., 1883, էջ 112-113. **Հովսեփ Արղութեան-Երկայնաբազուկ**. Ռուսաստանի հայերի թեմակալն է եղել 1778-1800 թթ., ինքն իրեն կոչել է՝ «Սրբոյ աթոռոյն էջմիածնի ծայրագոյն նուիրակ և **Ռուսաց** երկրի ամենայն հայոց ազգին առաջնորդ». տե՛ս **Գիւտ Աղանեանց,** Դիւան հայոց պատմութ., գ. Թ., Տփղ., 1911, էջ 1-2, որտեղ *Ռուսաց երկիրը Հիւսիսային կողմանցի* հոմանիշն է:

*նկատի առնված*[13]*, դրա համար էլ առաջին փաստաթղթի (այսինքն՝ «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» թղթի)* հյուսիսային կողմանց *հասկացությունը համեմատաբար լայն առումով պետք է հասկանալ:*

*Բավական է նշել, որ այս վերջին փաստաթղթի (թղթի) սկզբում հիշատակված են բոլոր այն վանքերը, որոնց ներկայացուցիչները, այսպես կոչված՝ «եպիսկոպոս որ յարևելս հիւսիսոյ» ղեկավարությամբ մասնակցել են փաստաթուղթը կազմելու գործին, այն է՝ «Սանահին»՝ «մայրաքաղաքն Հաղբատայ*[14]*», Հաղարծին, Խոռակերտ և Գետիկ)*[15]*:*

*Գրիգոր Տղայից Գրիգոր Տուտեորդուն ուղղված առաջին հարցման մեջ հիշատակված է՝ «յաշխարհդ արևելից, և ի գաւառն Ռանայ*[16] *և ի Գանձակ»*[17]*:*

*Այսպիսով, «Հյուսիսային կողմեր» հասկացությունը համեմատաբար շատ ավելի լայն է, քան Հաղբատ-Սանահնի շրջանինը կամ ամբողջ Ձորոգետի, իմա՛ Ձորագետի կիրճինը, որովհետև այս «կողմերում» են ցույց տրված Ձորոգետի կիրճի կայաններից (Հաղբատ-Սանահնից և Խորակերտից) բացի, Հաղարծինը և Գետիկը, որոնք ընկած են և այժմ էլ գոյություն ունեն հիշյալ կիրճի արևելքում, այսպես կոչված, Կայան-Ձորոփոր-Հաթերքի շրջանում (հետագայում՝ Ղազախ-Շամշադին), եթե, իհարկե, այս «կողմերի» տակ նկատի չունենանք ամբողջ հյուսիս-արևելքը՝ հանդերձ Ռանը (Առան) և Գանձակը:*

*Դրանից բացի, չպետք է մոռանանք, որ Հաղբատ-Սանահինը* Ասողիկի (Ստեփանոս Տարոնացու), Վարդանի *նաև* Սամուել Անեցու *մեկնաբանը ցույց է տվել Սեաւորդեաց = (Սաւորդեաց) = (Սևոր-*

---

[13] Տարօրինակ է Ալ. Պալճյանի կողմից Հիւսիսային կողմանց հայ վարդապետների բաժանումը՝ «Զորագետացիք, Սանահնեցիք, Հաղբատացիք, Անեցիք և այլն» (Աղեքսանդր Պալճեան, Պատմութիւն կաթողիկէ վարդապետութեան ի Հայս և միութեան նոցա ընդ Հռոմէական եկեղեցւոյ. ևն., Վն., 1878, էջ 76). կարծես Զորագետցիները, իմա՛ Զորագետցիները նույն Սանահին-Հաղբատցիները կամ, մասնավորապես, Սանահինցիները չեն եղել:

[14] Հմմտ. «ի մայրաքաղաքիս Եղեգիս», որը Գարեգին Հովսեփյանը թարգմանում է «В монастыре (букв. метрополии) Ег'егисе» (Гарегин Овсепян, Потомство Тарсанч'а Орбеляна и Мина-хат'уны,- ХВ, II, 1913, стр. 229):

[15] Թուղթ ընդհ., 427 = Տաշեան, Ցուցակ, 950:

[16] Հրատարակության մեջ. ի գաւառ Ռռանայ (sic):

[17] Արշակ Տէր-Միքելեան, Միջին դարերի կաթուղիկոսների ձգտումներն եկեղեցական խաղաղութեան համար, Վաղ., 1893, էջ 44:

դեաց) կողմում. սա շատ հետաքրքիր տեղեկություն է, որ կարիք ունի հատուկ բացատրության[18]:

Այսպես թե այնպես, պարզ է, որ որպես «հյուսիսային կողմեր» պետք է նկատի առնվի, այսպես կոչված, ամբողջ «Հյուսիսային Հայաստանը» կամ «Հարավային Վրաստանը», այսինքն՝ երբեմնի Գուգարք-Գոգարենեն կամ, այսպես կոչված, Ներքին Քարթլին Հերեթի հարավային մասով հանդերձ, որոնք ԺԲ. դարում Բորչալուի (Սոմխիթիի = Լոռի-Տաշիրի) և Ղազախ-Շամշադին անունով են հայտնի եղել:

Այդուհանդերձ «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետներ» անվան տակ մենք պետք է նկատի ունենանք ԺԱ-ԺԳ. դարերում գիտադրական ասպարեզում հռչակված գործիչներին, որոնց ինքնությունը պարզելը արժանի է հատուկ ուսումնասիրության:

[18] Այս մասին տե՛ս ստորև, ծնթ. 43:

# ԳԼՈՒԽ Գ.

## «ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄԱՆՑ» ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՐԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

### ա) ՀՆԱԳՈՒՅՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ ԺԱ. ԴԱՐԸ

*«Հյուսիսային կողմերը» հայ դրականության անվանակարգության (նոմենկլատուրայի) համաձայն այն տարածքն է, որ դարեր շարունակ վեճի առարկա է եղել Հայաստանի և Վրաստանի միջև, և որը վրացիները սովորաբար կոչել են «Ներքին Քարթլի» (այսինքն՝ տարբերակելու համար «Միջին Քարթլիից», Կենտրոնական Քարթլիից և «Վերին Քարթլիից» կամ Սամցխեից)*[1]*: Դա այն երկրամասն է, որտեղ վրացական և հայկական պետական-հասարակական, քաղաքական-տնտեսական, մշակութային-ազգային և եկեղեցական-դավանաբանական զարգացումները հյուսվել են միմյանց այնպես, ինչպես ուրիշ ոչ մի տեղ:*

*Այս երկրամասը հնագույն ժամանակներում, հատկապես Ք. ծ. ա. առաջին և հետագա դարերում, հույները և հայերը անվանել են* Γωγαρηνή = *«Գուգարք», ինչն ինքնըստինքյան հասկանալի է, վրացերեն հնարավոր է՝ փոխարինվել է Գուգարեթ-ով (թեև այս ձևով՝ վրացերեն -եթ ածանցով, վրացական սկզբնաղբյուրներում չի պահպանվել)*[2]*: Իսկ որոշակի ժամանակաշրջանում՝ Ժ-ԺԱ. դարերում, նաև հետագայում, այս մարզը իր մի մասով, հայ պատմագրության մեջ, հատկապես* Ուխտանեսի[3], Ասողիկի[4] *և կեղծ Շա-*

[1] Պրոֆ. **Կոռն. Կեկելիձեն** (Վրաց դարձի հիմնական պատմա-ժամանակագրական հարցերը, էջ 13-15), սրան «էթնոգրաֆիական» *Քարթլի* է անվանում: Հմմտ. Հին *Քարթլիի* մասին հակառակ կարծիքը տե՛ս. **Սարգիս Կակաբաձե,** Վրաց պետականության սկզբնավորման հարցերը «Սախստորիո մոամբե», 1924, № 1, էջ 26-27, 33, 34, 55 (სარგის კაკაბაძე, ქართული სახელმწიფოებრიობის გენეზისის საკითხები,- "საისტორიო მოამბე, 1924 წ., № 1, გვ. 26-27, 33, 34, 55):

[2] Այս ձևը սովորաբար օգտագործում է պրոֆ. **Իվ. Ջավախիշվիլին** (Վրաստանի սահմանները պատմականորեն և ժամանակակից տեսանկյունով քննարկված, Տփղ., 1919, էջ 16 և հջրդ. (ჯავახიშვილი ივ.,საქართველოს საზღვრები ისტორიულად და თანამედროვე თვალსაზრისით განხილული, ტფ., გვ. 16 et pass.).

[3] **Ուխտանէս**, 34:

[4] **Ասողիկ**, 256, 279:

պուհ Բագրատունու[5] *երկերում կա՛մ «Տաշիր և Վրացդաշտ», կա՛մ «Վրացդաշտ» անուններով է հայտնի: Իսկ մասնավորապես հիշատակված* Ասողիկի *Պատմությամբ*[6], Սամուէլ Անեցու *Ժամանակագրությունների մեկնաբանական երկերով*[7] *և* Վարդանի *Պատմությամբ*[8] *և Աշխարհագրությամբ*[9], *Հաղբատ-Սանահինը պարունակող շրջանը «Սեաւորդաց» // «Սևորդեաց» // «Սաւորդաց» կողմ է հայտարարված*[10], *թեև նույն* Վարդանը *մեկ այլ տեղ ասում է, որ «Տաշրացւոց գաւառն Բամբակի ձորն է», նմանապես՝ «Տաշիր՝ Լոռի է»*[11]: *Այդ նույն շրջանը վրացիների կողմից «Սոմխեթ», «Սոմխիթի» է կոչվել, որը* Վարդանը *մատնացույց է անում հետևյալ բառերով. «գաւառն Տաշրաց... զոր Վիրք զՍոմխէթ կոչեն»*[12]:

*Այն պարագան, որ նույն գավառը հայերը Վրացդաշտ են կոչում*[13], *իսկ վրացիները՝ «Սոմխեթ» // «Սոմխիթի», որը մե՛րթ Տաշի-*

---

[5] Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ, ի լոյս ածին † **Գ. Տէր-Մկրտչեան և Մեսրոպ եպիսկոպոս** [«Բնագիրներ և Հետազօտութիւններ», գ. Ա.], էջմ., 1921, էջ 65, հմմտ. **Ս. Կանայեան,** Պատմութիւն աստուածընկալ Ս. Նշանին Ս. Աղբերկու և Շապուհ Բագրատունի,- «Բանբեր էջմիածնի Գիտական Ինստիտուտի», գ. Ա-Բ., էջմ., 1921-1922, էջ 138:

[6] **Ասողիկ,** 281:

[7] **Սամուէլ Անեցի,** էջ 100, ծնբ. 9:

[8] **Վարդան,** 90:

[9] **M. Saint-Martin,** Mnmoires historigues et gnograhigues de l'Armnnie, II, 424.

[10] Այս անվանումը հայ մատենագրությունից դուրս հայտնի է **Ալ-Մասուդի** և **Ալ-Սթահրի** աշխարհագրական գրքերում՝ **Siyavardiya** անվամբ, Բալածորով և Իբն-ալ Ֆակիհով Savardiya, իսկ **Կոնստանդին Ծիրանածինի** մոտ Σεβορτιῶν (հունարեն ենթատեքստում աղավաղված է՝ Σερβοτιῶν, sic): Առայժմ նրա իմաստն անորոշ է, տե՛ս **H. Hubschmann,** Die altarmenischen Ortsnamen, Strassburg 1904, S. 240], A. 1. **H. Марр,** Термин «скиф».- «Яфетический Сборник» I, Пгр., 1922, стр. 94-97.

[11] **Saint-Martin,** նշ. աշխ., նույն տեղում:

[12] **Վարդան,** նույն տեղում: Այս առումով բոլորովին անհասկանալի է պրոֆ. **Ակ. Շանիձեի** Հաէմետի բնագրերը և նրանց նշանակությունը վրաց լեզվի պատմության համար, «Տփղ. համալս. բանբեր» III, 1923, էջ 361, ծան. 2 (ჰაემეტი ტექსტები და მათი მნიშვნელობა ქართული ენის ისტორიისათვის,- "ტფ. უნ. მოამბე", III, 1923, გვ. 361, შენ. 2) կարծիքը, իբր՝ «Սոմխիթի»-ն, որպես աշխարհագրական եզր, *մինչև տասնիններորդ դարը Քցիի շրջակայքի նշանակություն է ունեցել* (ընդգծումը մերն է՝ Լ. Մ.-Բ)», իսկ «Սոմեխի»-ն որպես տոհմական տերմին... միայն հետագայում կլինի... տարածված հարավում բնակվող հարևան օտար ժողովրդի վրա, որը ինքն իրեն «հայ» է կոչում, և որը այլոց կողմից արմեններ անվամբ է հայտնի»:

[13] Մենք մեկ անգամ արդեն առիթ ենք ունեցել առաջադրել Վրացդաշտ տեղանվան ստուգաբանությունը, որը, հնարավոր է ներկայացնում է nomen gentile-(«վրացի») բառի բառացի թարգմանությունը՝ քարթվելի–քարթ[թ]-վելի-քարթվելթա վելի, *հմմ* վերթա վելի = վրացիների դաշտ→ Վրացդաշտ (տե՛ս մեր զեկուցման թեզիսները. «Ներքին Քարթլիի ընդհանուր նշանակություն ունեցող աշխարհագրական անվա-

*րի, մե՛րթ Վրաց դաշտի հոմանիշ էր գործածվում, կամ էլ երկուսի համար միասին, գիտական գրականության մեջ առաջ են քաշվել սրամիտ հիպոթեզներ նախ ակադ.* Մ. Բրոսեի *(ինչը կրկնեց* Լեոն*), իսկ հետո նաև* Իվ. Ջավախիշվիլու *կողմից:*

Մ. Բրոսեն *գրում էր. „Le nom de Somkheth a aussi en georgien une double signification: c'est d'abord la veritable Armenie, dont les quinze provinces sont decrites par Moise de Khorene, dans sa Geographie; c'est encore la partie meridionale de la Georgie, qui a frequemment passe de l'une a l'autre nation, et qui, compose des provinces de Taik et de Gougark, sappelait Georgie. Vrastan, quand elle appartenait aux rois ou princes d'Armenie: Somketh, quand les monarques georgiens y dominaient. Cette province, depuis David-de-Reparateur, na cesse de faire partie du royaume ge'orgien*“[14].

*Նույն միտքը պրոֆ.* Իվ. Ջավախիշվիլու *աշխատության մեջ տրված է փոքր-ինչ այլ կերպ. «Պատմական աշխարհագրության մեջ այս անկյունը, իբրև հայոց քաղաքական գերիշխանության հիշատակ, «Սոմխիթի» տերմինը մնաց: Այս անունը հնում բոլորովին անծանոթ էր, և հանդիպում ենք սկսած Ժ. դարից միայն: «Սոմխիթի» կոչվում էին սոսկ Բոլնիս-Դմանիսի հովիտները և Լոռու դաշտը, և հատկանշական է այն, որ իբրև աշխարհագրական տերմին միայն վրացերեն և վրաց մատենագրության մեջ է գործածվել: Հայերը և հայ պատմագրությունը այս երկիրը «Սոմխիթ» չեն կոչել: Ընդհակառակը՝ նրանք Լոռի-Տաշիրի դաշտավայրը «Վրացդաշտ» են կոչել... Այս տերմինի մեջ ստույգ ապացուցող փաստաթուղթ է պահպանված, որ, չնայած իրենց քաղաքական գերիշխանությանը, հայերն էլ ինքնըստինքյան երկիրը համարել են վրացիներին պատկան»*[15]*:*

*Կամ՝*

*«Վրացական և հայկական սկզբնաղբյուրներով հաստատվում է, որ «Սոմխիթին» որպես արևելյան Վրաստանի հարավային կողմանց թեմի անուն, հնագույն ժամանակ անծանոթ էր և չէ՛ր գոր-*

նացուցակի համար՝ հնում», «Վրաց լեզվաբանական ընկերության տարեգիրք», I-II, 1923-1924, էջ 357 ("ქვემო ქართლის ზოგადი მნიშვნელობის მქონე გეოგრაფიული ნომენკლატურისათვის ძველად" ("ქართული საენათმეცნიერო საზოგადოების წელიწადეული", I-II, 1923-1924, გვ.357):

[14] **M. Brosset,** Histoire de la Georgie, Introduction, SPb., 1858, p. X, հմմտ. **Lեo,** Սահմանավէճեր. Լոռի-Ախալքալաք-Ղարաբաղ, Տփղ., 1919, էջ 17:

[15] **Իվ. Ջավախիշվիլի,** Վրաստանի սահմանները, etc., 21 (საქართველოს საზღვრები, etc., 21:),

*ծածվում: Այդ ժամանակ այս թեմը Գուգարեթ <պետք է լինի՝ Գուգարք. Լ. Մ.- Բ.> էր կոչվում և միայն հետագայում սրա փոխարեն վրաց պատմական գրականություն իբրև տերմին մտնում է «Սոմխիթի»-ն՝ որպես ժամանակի եզրույթ, երբ հայոց թագավորության այս անկյունը բռնագրավվեց:*

*«Մինչդեռ հայերը այս թեմը՝ հնում <Գուգարք>, «Վրացդաշտ» են կոչել: Այսպիսով՝ պատմական իրականությունը պարզում է, որ «հայ» և Հայաստան վրացերեն նախ իսկական արիականներ՝ «արմեններ» և նրանց տարածքն է նշանակել, իսկ հետագայում դա գործածվել է նաև այն թեմի անունով, որտեղ ժամանակի ընթացքում երևան է եկել վրացիների և հայերի խառն բնակչություն»*[16]*:*

* * *

*Մենք, իհարկե, այստեղ կանգ չենք առնի այս մարզի պատմության մանրամասն քննարկման վրա, որը շատ թե քիչ բավարար չափով ներկայացված է առկա գիտահանրամատչելի գրականության մեջ*[17]*: Մեր նպատակի համար բավական է նշել միայն, որ այս անկյունը եթե ոչ նախապատմական ժամանակաշրջանում, ապա, ամեն դեպքում, Ք. ծ. ա. առաջին դարերում, ինչպես պարզվում է* Ստրա-

---

[16] **Իվ. Ջավախիշվիլի,** Նորահայտ հնագույն վրացական ձեռագրեր, («Տփղ. համալս. բանբեր»), II, 1922-1923, էջ 358-359.- (ახლად აღმოჩენილი უძველესი ქართული ხელთნაწერები.- "ტფ. უნ. მოამბე", II, 1922-1923, გვ. 358-359.- «Սոմխեթ» // «Սոմխիթի» տերմինի մասին, բացի վերոհիշյալ՝ **Մ. Բրոսեի, Իվ. Ջավախիշվիլու** և **Ակ. Շանիձեի** աշխատություններից, տե՛ս Н. Марр, История термина "абхаз".- Изв. АН, 1912, стр. 705, Из поездок в Сванию.- ХВ, II, 1913, стр. 22, Грузинская поэма «Витязь в барсовой шкуре» Шоты из Руставa etc..- Изв. АН, 1917, стр. 439-440 և շատ ուրիշներ, Л. М. Б., Несколько слов о термине «сомех».-ХВ, VI 1917, стр. 93-94, **Առնոլդ Չիքոբավա**, Խանմետի և Յաեմետի բնագրերի հայտնաբերման առիթով «Չվենի մեցնիերեբա»), № 15-16, Տփղ., 1925, էջ 74-84 (არნოლდ ჩიქობავა, ხანმეტი და ჰაემეტი ტექსტების აღმოჩენისათვის,"ჩვენი მეცნიერება", № 15-16, ტფ., 1925, გვ. 74-84: Ըստ **Սարգիս Կակաբաձեի՝** «այս մարզը վրացիների կողմից հետագայում է կոչվել Սոմխիթի, հիմնականում այն պատճառով, որ տեղի վրաց բնակչության մեջ տարածված է եղել հակաքաղկեդոնական կամ հայկական եկեղեցու վարդապետությունը»: Վրաստանի համառոտ պատմություն: "საქართველოს მოკლე სტორია: ახალი საუკუნეების ეპოქა, ტფ., 1920, გვ. 222 (Նոր դարերի էպոխա, Տփղ., 1920, էջ 222, ծնթ.*):

[17] Ուշադրության արժանի են հատկապես երկու մենագրություն, որոնք հրատարակվեցին Տփղիսում՝ մեկը մյուսից բոլորովին անկախ և մեկը մյուսին հակառակ եզրակացություններով, 1919 թվականին, մեկը՝ վրացերեն. **Իվ. Ջավախիշվիլի,** Վրաստանի սահմանները եւն, 16-35, իսկ մյուսը՝ հայերեն. **Լեօ**, Սահմանավէճեր, 20-96, հմմտ. նաև **Ե. Լալայեան**, 303-329, **Ղևոնդ Մովսէսեան**, 1-93, այս մարզի մասին է նաև **Զ. Ճիճինաձեի** դիլետանտական բրոշյուրը՝ Յարավային Վրաստան (Յայաստան), Տփղ., 1901, էջ 1-31: [სამხრეთ საქართველო (სომხეთი), ტფ., 1901, გვ. 1-31].

բոնի *Թուսցին տեղեկություններից*[18], *և ինչը հաստատում է նաև այս երկրամասի տեղանունը*[19], *իբերցիներին* (հվերցիներին) *ազգակից կամ «վրացական» ցեղերի (ակադ.* Ն. Մառի *տերմինաբանությամբ եթե առաջնորդվենք, «հաբեթական») տոհմական կայանն է եղել, և ինչպես* Ստրաբոնն *է վկայում, Ք. ծ. ա. Բ., նաև՝ Ա. դարերում ժամանակ առ ժամանակ արմեններն (հայերը) են զբաղեցրել*[20]*: Այս անկյունը Արշակունիների դինաստիայի տիրապետության դարաշրջանում առանձին բդեշխություն էր ներկայացնում*[21]*, որը հայոց արքա Արշակի (346-349) ժամանակ, ըստ* Փավստոս Բուզանդի *հաղորդման՝ անցավ Հայաստանին*[22]*, իսկ հետագայում, ինչպես վկայում է* Մովսես Խորենացու *Պատմությունը, առնչվել է Իբերիային, որի պատճառով Իբերիայի առաջին քրիստոնյա թագավոր Միրիանը բառացիորեն կոչվել է «առաջնորդ Վրաց և բդեաշխ Գուգարացւոց»*[23]*: Այս երկրամասը Իբերիայի հետ է կապված նաև ըստ Է. դարին վերագրվող անանուն հեղինակի «Աշխարհագրության», որտեղ հիշատակված է «Գուգարք» ձևով՝ [ռնագրավված] իբերցիների կողմից՝ «Գուգարք՝ որ առ Վրաւք»*[24]*: Ինչպես տեսնում ենք, այդ նույն Է. դարի սկզբին այս երկրամասը,* Ուխտանեսի *տեղեկությամբ ներկայացնում էր Հայաստանի և Քարթլիի բուֆերը՝ «Վրացդաշտ, որ է միջասահման երկուց աշխարհացն Հայոց և Վրաց»*[25]*, յուրահատուկ քաղաքական-վարչական, նաև եկեղեցական կազմակերպությամբ, Ցուրտավ կենտրոնով, որտեղ բդեշխի և*

---

[18] Geographica, lib. XI, cap. 14, § 5:

[19] Տե՛ս մեր զեկուցման թեզիսները. «Ներքին Քարթլիի ընդհանուր նշանակություն ունեցող աշխարհագրական անվանակարգի համար՝ հնում», էջ 356-357: Համեմ. **Н. Марр**, Талыши [Труды КИПС 4], Пгр., 1922, стр. 4, **Կոռն. Կեկելիձե**, Վրաց դարձի հիմնական պատմաժամանակագրական հարցերը, 13-18:

[20] Տե՛ս ծնթ. 51:

[21] Marquart Josef, Ērānšahr, nach der Geographie des Ps. Moses Xorenac'i, Berlin, 1901, S.S. 95, 165 եւն:

[22] **Փաւստոսի Բիւզանդացւոյ** Պատմութիւն Հայոց, ի լոյս էած Ք. Պ[ատկանեան], ՍՊբ., 1893, էջ 135-136 = հրատ. **Գ. Գալստեանի**, Տփղ., 1913, էջ 242; համեմ. Ս. Կակաբաձե, Վրաց պետականության սկզբնավորման հարցերը, 49: **Կոռն. Կեկելիձե.** Վրացիների դարձի հիմնական պատմաժամանակագրական հարցերը, 15:

[23] **Մովսիսի Խորենացւոյ** Պատմութիւն Հայոց, հրատ. Մ. Աբեղեան և Ս. Յարութիւնեան, 262:

[24] **A. Soukry,** Geographie de Moïse de Corène, Venise, 1880, p. 29 (ֆրանս. թարգմ., 40):

[25] **Ուխտանէս**, 34: Այսպիսի միտք Ուխտանեսից շատ ավելի առաջ բերված է «Գիրք թղթոց»-ում (Գիրք Թղթոց, Տփղ., 1901, էջ 164, 166, 172, 194 ևն.), որտեղ Ցուրտավը ներկայացված է որպես միջնորդ՝ «միջնորդութիւն ունէր երկուց աշխարհաց»:

քահանայապետի ռեզիդենցիան էր[26], և ինչպես «Գիրք Թղթոցից» է երևում, եղել է ժամանակի գիտական-գրական պատշաճ կենտրոն:

Մենք չենք կարող չանդրադառնալ հույժ կարևոր մի երևույթի ևս, որ «Հյուսիսային կողմերը» գործունեության ասպարեզ կամ հայրենիք է շատ հայ գիտնականների ու գրողների համար, որոնց անունները հնուց ի վեր հուչակված են հայ գրականության պատմության մեջ: Այստեղ է հրավիրվել հայոց այբուբենի բարեփոխող Մաշթոցը[27], հետագայում հայտնի որպես Մեսրոպ կամ Մեսրոպ-Մաշթոց, ինչպես Կորյունն է ասում. «Իշխանին Տաշրացւոց՝ առն պատուականի և աստուածասիրի, որ անուանեալ կոչէր Աշուշայ»[28]: Այստեղ է ուսում առել նաև Ե. դարի հայտնի պատմագիր Ղազար Փարպեցին, որն իր «Թուղթ առ Վահան Մամիկոնեան» գրվածքում ուղղակի ասում է. «...առ բդեշխն, ...յորում դրան և զմեզ ուսուցանէին»[29]: Ծագումով այստեղից էր նաև Ը. դարի նշանավոր իմաստասեր, Մանազկերտի 726 թվականի ժողովի կազմակերպիչ և ղեկավար, հայ հակաքաղկեդոնականության ջատագով Յովհան Օձնեցին[30], ում մասին նրա կենսագրականում ասված է. «Էր ի գաւառէն Տաշրաց, որ արդ կոչի Լաւհոռի[31]:

[26] Առաջին անգամ Ցուրտավը հիշատակվում է «Շուշանիկի վկայաբանության» վրացերեն բնագրում (Իակոբ Խուցեսի, «Նահատակութիւն սրբոյն Շուշանկայ», **Ս. Գորգաձեի** հրատ., Քութայիս, 1917, էջ 2 = **Մ. Սաբինին**, Վրաստանի դրախտը, ՍՊբ., 1882, էջ 182): Նրա գտնվելու վայրի մասին տե՛ս Л. Меликсет-Беков, К вопросу о местоположении Цуртава.- «Изв. Кавк. Отд. Рус. Геогр. О-ва», т. XXIV, стр. 341-345. Նույնի՝ Гадженк-Гачиан.- ХВ, VI, 1917, стр. 94-95, **Ս. Կակաբաձե**, Վրաց պետականության առաջացման հարցերը, 74-76:

[27] Որպես «Մաստոց» է հայտնի վրաց Արսեն կաթողիկոսի երկում (**Թ. Ժորդանիա**, Ժամանակագրություններ, I, 325 (որտեղ սխալ է գրված՝ «Մաստոխ», sic!):

[28] **Կորիւն**, Պատմութիւն վարուց և մահուան սրբոյն Մեսրոպայ վարդապետի մերոյ թարգմանչի [ՂՍ, 13] Տփղ., 1913, էջ 30.- Իր՝ Կորյունի մասին մի ժամանակ մտածում էին, թե նա ինչ-որ ժամանակ եպիսկոպոս է եղել Քարթլիի և Աղվանքի սահմաններում (այս մասին առկա գրականությունը մանրամասն տե՛ս **Նորայր Բիւզանդացի**, Կորիւն վարդապետ և նորին թարգմանութիւնք, Տփղ., 1900, էջ 385-386), բայց այժմ այս կարծիքն անուշադրության է մատնված (տե՛ս **նույն տեղում**, նաև **Թադէոս Աւդալբէկեան**, Բանասէրի օրագրից.- ՀԱ, 1926, էջ 387-390):

[29] Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց և թուղթ առ Վահան Մամիկոնեան, աշխատ. **Գ. Տէր-Մկրտչեան և Ստ. Մալխասեան** [ՊՀ, հտ Ա., գ. Դ.], Տփղ., 1904. էջ 188. Հմմտ. **Գ. Խալաթեան**, Ղազար Փարպեցի և գործք նորին. Պատմական և գրական քննութիւն, Մոսկվա, 1883, էջ 3-9:

[30] Օձունը նախկին հայոց Ուզունլար գյուղն է Սանահին կայարանի մերձակայքում: Այլ Օձունների մասին տե՛ս **Л. Меликсет-Беков**, Из материалов поездки на Цалку в 1924 г..- Изв. КИАИ, т. IV, стр. 132-133.

[31] **Յ. Կարինեանց**, Մայր Ցուցակ, էջ 69, հմմտ. 63.- այս Հովհանի գերեզմանը այժմ էլ Արդվի գյուղի մոտ գտնվող, այսպես կոչված, «Յովհան Օձնեցու վանքում» են ցույց տալիս:

* * *

*Թ. դարի Բ. կեսը այն ժամանակն էր, երբ ըստ «Քարթլիի մատյանի» «Հայերը և աբխազները պայքարում էին Քարթլիի դեմ»*[32]*: «Թե ինչով վերջացավ այդ պայքարը,- ինչպես իրավացիորեն նշում է* Իվ. Ջավախիշվիլին,*- տեղեկություններ չենք գտնում ո՛չ հայ և ո՛չ էլ վրաց աղբյուրներում, բայց, ինչպես երևում է, հաղթել է Հայոց իշխանաց իշխան Աշոտը»*[33]*: Եվ որպես այս կարծիքի արդարացում* Իվ. Ջավախիշվիլին *վկայակոչում է ԺԱ. դարի հայ պատմիչ* Ասողիկի *տեղեկությունը Շիրակի (Անիի) հայոց թագավորության հիմնադիր՝ իշխանաց իշխան (887 թվականին թագավոր հռչակված) Աշոտ Բագրատունու մասին, որ նա՝ Աշոտը «երեսնամեայ ժամանակօք իշխան և իշխանաց իշխան եղեալ Հայոց և Վրաց»*[34]*: Եթե նկատի առնենք նաև այն հանգամանքը, որ Մրենի տաճարի 992 թվականի*[35] *և Ալամնի տաճարի 1001 թվականի*[36] *արձանագրություններում*[37] *հիշատակված է Աշոտ Ողորմած Շահնշահի, այսինքն՝ արքայից արքայի դուստր Սոփիան՝ Հայոց և Վրաց թագուհի, իսկ 1010 թվականի Անիի Մայր տաճարի արձանագրություններում Գագիկ արքան՝ որպես «Հայոց և Վրաց Շահնշահ», մեզ լիովին պարզ կդառնա քաղաքական այն սրբագրությունը (կոնյեկտուրան), որը հիշյալ Աշոտի և նրա որդի Սմբատի ժամանակ ստեղծվել էր «Հյուսիսային կողմերում»*[38]*:*

*Ճիշտ այդ ժամանակ, երբ Շիրակի (Անիի) Բագրատունիները կրում էին իշխանաց իշխան «Հայոց և Վրաց», արքայի կամ արքայից արքայի տիտղոսը, «Հյուսիսային կողմերում» գլուխ են բարձրացնում տեղական իշխանավորները՝ «Կիւրիկեանք, որք էին*

---

[32] **Ք. Ց.**, Թաղ., 224 = **Brosset**, 192, հմմտ. **Իվ. Ջավախիշվիլի**, Վրաց ժողովրդի պատմություն (ქართველ ერის ისტორია), գ. I-II Տփղ., 1913-1914, էջ 380:

[33] **Իվ. Ջավախիշվիլի**, նույն տեղում:

[34] **Ասողիկ**, 158, հմմտ. **Իվ. Ջավախիշվիլի**, Վրաց ժողովրդի պատմություն, 380, *նույնի*, Վրաստանի սահմանները, 19-20:

[35] **Н. Эмин**, Армянские надписи в Карсе, Ани и в окрестностях последнего, Москва, 1881, стр. 73, **Ղ. Ալիշան**, 138, հմմտ. **Կ. Կոստանեանց**, 10:

[36] **Н. Эмин**, ц. с. 72, **Ալիշան**, 125, հմմտ. **Կ. Կոստանեանց** 26:

[37] **Ծահխաթունեանց**, Բ., 353-354 (§ 594 <«որտեղ թվագրությունը սխալ է ցույց տրված՝ 1010-ի փոխարեն գրված է 1001»>), **Н. Эмин**, նշ. աշխ., II, **Ղ. Ալիշան**, 67-68, հմմտ. **Կ. Կոստանեանց**, 13:

[38] Տվյալ դեպքում նկատի ունենք „მატიანე ქართლისა“ -ի («Մատիանե Քարթլիսա») Սմբատ Տ[ի]եզերակալի (sic) 904 թվականին Ուփլիսցիխե կատարած արշավանքի մասին տեղեկությունը (**Ք. Ց.**, Թաղ., 225-226 = **Brosset**, 195, հմմտ. **Իվ. Ջավախիշվիլի**, Վրաց ժողովրդի պատմություն, I–II, 383):

*Բագրատունիք»*[39]*: Այս ազգակցությունն ուղղակի ճյուղն է Շի-*

[39] Ըստ **Ստեփանոս Օրբելյանի (Օրբէլեան,** 379, հմմտ. Նախկին եկեղեցական թանգարանի ձեռ. Դմր 864, էջ 6ա): **Վարդանը (Վարդան,** 145) նրանց միայն «Կիւրիկեան» է կոչել: **Կիրակոս Գանձակեցին՝ (Կիրակոս,** 86-87) - «յազգէ Բագրատունեաց»: Նոր գիտական և հանրամատչելի գրականության մեջ Լոռի-Տաշիրի Կյուրիկյանների հարստությունը որպես Շիրակի (Անիի) Բագրատունիների ճյուղ է ներկայացված, և նրա հիմնադիրն է համարվում «Ողորմած» կոչված Աշոտի որդի Գուրգենը (980-989): Եվ Կիւրիկեանք, Կորիկեանք, անվանումը Գուրգենի հետ են կապում, որովհետև այս Գուրգենը կամ Գորգենը, ինչպես **Մ. Չամչյանն** է նշում (Պատմութիւն Հայոց, Բ., Վնտ., 1785, էջ 913)-, «Գորգէն այլ ի բերանս հասարակաց Կորիկէ [կամ Կիւրիկէ, կամ Կիւրակէ»: Գուցե սա այսպես էլ եղել է, բայց մի բան խորհելու տեղիք է տալիս. «Կիվրիկե» = «Կորիկե» = «Կվիրիկե»-ն հնարավոր չէ, որ «Գուրգեն»-ի աղավաղված ձևը ներկայացնի, որովհետև այն շատ էր տարածված Լոռի–Տաշիրի իշխանական տան շրջանակներից դուրս, հատկապես Հերեթ-Կախեթի Կյուրիկյանների դինաստիաներում, որտեղ մենք վերն այդ նույն անվանը հանդիպեցինք, ինչը Ժ-ԺԱ. դարերում տարածված էր Լոռի-Տաշիրի դինաստիայում, օրինակ՝ Գագիկ, Դավիթ, Կվիրիկե, այս պարագան ուղղակի մատնանշում է բոլոր վերոհիշյալ դինաստիաների միջև գոյություն ունեցող ազգակցական և խնամիական կապերը (որոշակի ազգակցություններում որոշակի անվանումների օգտագործման մասին տե՛ս **Պ. Ինգորոդվա,** Rusthweliana, I, Տփղ., 1926, էջ 147, 196-197): Քանի որ «Կիւրիկէ» «Կորիկէ» անվանումները «շատ տարածված էին Հերեթ-Կախեթ-Տաշիրի իշխանական ազգատոհմերում, իսկ կախերի իշխանը դեռ մինչև «արքայի» կոչում ստանալը «Քորիկոզ» էր կոչվում (Ք.Ց., II, **Դ. Չուբինովի** հրատ. ՍՊբ., 1854, էջ 96-100), որը, ի միջի այլոց, հաստատում է նաև Ժ. դարի արաբ պատմաբան-աշխարհագետ **ալ-Մասուդին,** երբ հիշատակում է «Սանարի» թագավորության «Կուրիկուս» կոչված թագավորին (**Н. Караулов,** Сведения арабских географов IX-X веков по Р. Хр. о Кавказе. Арране и Адербейджане.- СМК XXXVIII, 1908, стр. 57), հնարավոր է, որ նշված «Կյուրիկե»//«Կորիկե» հատուկ անունը և «Քորիկոզ»//«Կուրիկուս» կոչումները ինչ-որ կապ ունենան իրար հետ: Ամեն դեպքում, հայտնի է, որ կախերի կառավարիչը դեռևս 787 թվականին «կոչվում էր կախերի կառավարիչ կամ քորիկոզ» Դրա համար «Քորիկոզ»-ի ընթերցումը որպես «Քորեպիսկոպոս», ինչպես բերված է «Մատիանե Քարթլիսայ»-ում (Մարիամ թագուհու տարբերակում [ՔՑ., Թաղ., 220, 222, 224, 225, 228, 231, 242 ևլն.] աղավաղված է «քարափի կովզ»-ով, և որը, ի դեպ, հիմք է ընդունել **Իվ. Ջավախիշվիլին** (Վրաց ժողովրդի պատմություն, I–II, 385, 386, 420 ևլն.): Թյուրիմացության հետևանք պետք է լինի հին ձեռագրերում օգտագործված բառի՝ «Քորիկոզ»-ի փոխաբերական իմաստով ընկալումն ու նրա սխալ բացատրությունը: Այս երևույթին առաջինը ուշադրություն է դարձրել **Սուլխան-Սաբա Օրբելիանին,** ქართული ლექსიკონი (Վրացերեն բառարան, Տփղ., 1884, էջ 329) **«Քոր-եպիսկոպոսը** անգիտակ գրողը «Քարթլիս ցխովրեբա»-ում խեղաթյուրել է: «Քորիկոզ»-ը այլաբանորեն քոր-եպիսկոպոս է կարծել: Քոր-եպիսկոպոս ծուխ չունեցող եպիսկոպոսին են ասում հունարենում, իսկ քորիկոզ արքային փոխարինողն է կոչվում», նմանապես՝ *«քորիկոզ-ը*՝ արքային փոխարինողը, թույլ չի տա իրեն արքա անվանել, մինչդեռ թարգմանում են՝ հովիվ»: Այս տերմինը ճիշտ է հասկացել նաև **Վախուշտին** (Վրաստանի աշխարհագրություն, I, Տփղ., 1885, էջ 123 et. pass.): **Ս. Կակաբաձեն** («Վրաց պետականության սկզբնավորման հարցեր», էջ 106-107) «մամասախլիսի» տերմինի համապատասխանը ընդունում է քորիկոզ-ը: «Քորիկոզ»-ը... տոհմատիրական հասարակարգի տերմին է... ոչ միայն *մամփալի* կամ *մամասախլիսի* նշանակության, այլև սոցիալական ծագման լիարժեք համարժեքն է»: Այս տերմինի մասին վերոհիշյալ գրականությունից բացի, տե՛ս **Դ. Բաքրաձեի** ծանոթագրությունը Վախուշտիի Պատմության հրատա-

*րակի (Անիի) Բագրատունիների և, սրա հետ միասին, խնամիական կապեր ունեին «խնամութեամբ խառնեալ» ինչպես Քարթլիի և Հերեթ-Կախեթիի Բագրատունիների, այնպես էլ Հայաստանի ու Քարթլիի որոշ իշխանական ազգատոհմերի հետ, օրինակ՝ Օրբելյանների հետ*[40]*, իսկ Շիրակի (Անիի) թագավորության անկումից հետո «Կյուրիկյանները» յուրացնում են «արքայի» տիտղոսը, ինչպես նաև Բյուզանդական դռան «կյուրոպաղատ»* Κουροπαλάτης *կոչումը, որով, օրինակ, հայտնի էր Կյուրիկյաններից մեկը,* Է. Պախոմովի *կարծիքով, Կորիկե Բ.*[41]*, որ մի ժամանակ նույնիսկ սեփական դրամ է հատել*[42]*:*

*Կյուրիկյանները, իրոք, «արքայի» տիտղոս և դրամ հատելու իրավունք են ձեռք բերել և իրենց գործունեությամբ ցանկացել են եթե ոչ ամբողջ Հայաստանում, ապա գոնե Լոռի-Տաշիրում «անկախ» թագավորի դեր կատարել: Այս ամենը երևում է նաև նրանից, որ նրանք օժանդակել են Հյուսիսային Հայաստանի համար մասնավոր (պարտիկուլյար) կաթողիկոսության հիմնադրմանը և, իրոք, ինչպես* Մատթեոս Ուռհայեցին[43], Կիրակոս Գանձակեցին[44] *և* Մխիթար Այրիվանեցին[45] *են պատմում, նրանք 1081 (var. 1076) թվին Աղվանից կաթողիկոսի ներկայությամբ Հաղբատում Անիի կաթողիկոս են հայտարարում Բարսեղ (Բասիլ) Անեցուն:*

---

րակությունում (նշ. աշխ., էջ 123-124, ծնթ. 2): Բոլոր այս տեղեկությունները, կարծում եմ, բավական են, որ առաջադրենք այն հիպոթեզը, ըստ որի՝ Լոռի-Տաշիրի դինաստիան, հնարավոր է՝ կոչվել է Կիուրիկեանք, resp. Կորիկեանք, բայց ոչ թե «Գուրգեն» անունից է ծագել, այլ «քորիկոզ»-ից, որը հայտնի է եղել Գուրգենից շատ ավելի վաղ և որից պետք է որ առաջացած լիներ նախ՝ դինաստիայի անունը Կորիկե իմա՛ Կիուրիկե, հետո նաև դինաստիաների անվանումը՝ Կորիկեանք, իմա՛ Կիուրիկեանք, ինչպես, օրինակ, Երկայնաբազուկների դինաստիայում հայտնի *շահնշահ* կոչումը, վրաց. *շանշե*-ն ծագում են պարսկական sahansah-ից, ինչը նշանակում է՝ արքայից արքա:

40 **Օրբելեան**, 379, հմմտ. M. **Brosset**.- «Melanges Asiatgues», III, 1852, pp. 296-297, 339, **Ղ. Մովսէսեան**, 67-69, **Լ. Մելիքսեթ-Բեկ**, Քոբերը և նրա հայերեն ու վրացերեն արձանագրությունները.- «Տփղ. համալս. բանբեր», VII, 1927, էջ 67, 68, ծնթ.1:

41 Е. Пахомов, О монете Корикэ Куропалата.- Изв. КИАИ. т. III, Тфл., 1925, стр. 43-45.

42 Այս մասին տե՛ս M. Brosset. Monographie des monnaies arméniennes, SPB. 1839; **Ե. Լալայան**, 312-313, **Ղ. Մովսէսեան**, 88-93: Е. Пахомов, op. cit., 46-48, Л. М.-Б., По поводу статьи Е. Пахомова «О монете Корикэ Куропалата».- Исв. КИАИ, III, 46-48.

43 **Մատթէոս Ուռհայեցի**, 221:

44 **Կիրակոս**, 104-105:

45 **Մխիթար**, 60:

*Կյուրիկյանների դինաստիայի հիմնադիր համարվում է Աշոտ Ողորմածի որդի Գուրգենը[46], որն իր եղբայր Սմբատ Բ.-ի (977-989) Անիի գահին եղած ժամանակ «թագավորեց» Տաշիրում: Սմբատից հետո ժառանգեցին Անիում՝ Սմբատի եղբայր Գագիկ Ա. (989-1020), իսկ Տաշիրում՝ Գուրգենի որդի Դավիթ Ա. (989-1048), որն իր եղբոր՝ Սմբատի[47] հետ միասին Սամշվիլդեն աթոռանիստ քաղաք դարձրեց[48] և միաժամանակ կառուցում էր Լոռեն[49]: Այս Դավիթը ձեռնարկեց Անիից վերացնել Տաշիրի կախվածությունը, բայց պարտություն կրեց Գագիկից, և հետևանքը եղավ այն, որ Դավիթը վտարվեց իր «թագավորությունից» և այդ պատճառով նրան «Անհողին» կոչեցին: Բայց երբ Դավիթը հնազանդվեց Գագիկին, նրան վերադարձրին իր տիրույթը, որն այդուհետ կառավարում էր որպես Անիի թագավորի վասալ: Բոլորովին այլ կերպ դասավորվեց Տաշիրցի թագավորի ճակատագիրը, երբ Անին վտանգվում էր մե՛րթ վրացիների, մե՛րթ բյուզանդացիների կողմից, և որը, ի վերջո, կործանվեց 1046 թվին: Սկսած այդ ժամանակից՝ հիշյալ Դավիթն իրեն կատարելապես ազատ զգաց, և ինքը Կորիկեի որդիների հետ միասին ոչ միայն անկախ «թագավորում էր» իր տիրույթում, այլև ինքն իրեն միակ տեր ու տնօրեն էր համարում ամբողջ Հյուսիսային Հայաստանում: Թեև նման կացությունը երկար չի տևել և Կորիկեի ժառանգները, հալածվելով սելջուկների ու վրացիների կողմից,ստիպված եղան ապաստան գտնել Հերեթում (Ռանում)», ապա հաստատվել Մածնաբերդում[50]:*

---

[46] Այս Գուրգենի գերեզմանը Սանահնում են ցույց տալիս (**Ե. Լալայան**, 387): Մյուս Կյուրիկյաններինը՝ Հաղբատում (**Յովհ. Դրիմեցի**, 33-35, **Լալայան**, 400-401):

[47] Սա կարծես այն Սմբատն է, որ թաղված է հին Սամշվիլդեի հայկական եկեղեցում, որտեղ կանգնեցված է հսկայական խաչքար՝ հայկական արձանագրություններով (հմմտ. **M. Brosset**.- «Mélanges Asiatiques», t. II, 1856 p. 97-98, **Ջալալեանց**, Բ., 79): Արձանագրությունը, որտեղ հիշատակված է **Սմբատ իշխանաց իշխան**, **Մ. Բրոսեն** թվագրում է Նճ. (=400+100=500) = 1051, իսկ **Ս. Ջալալյանցը**՝ ՆՂԳ. (=493) = 1044 թվականով: Սակայն հարցը դեռևս պարզաբանման կարիք է զգում:

[48] **Ասողիկ**, 256. «Դաւիթ հանդերձ եղբարբն իւրով Սմբատաւ ունի զկողմանս Տաշրաց և զՎրացդաշտի»:

[49] **Վարդան**, 106.

[50] Կյուրիկյանների մասին տեղեկությունները ցրված են **Ասողիկի**, **Մատթեոս Ուռհայեցու**, **Սամուել Անեցու**, **Վարդանի**, **Կիրակոս Գանձակեցու**, **Մխիթար Այրիվանեցու** և **Ստեփանոս Օրբելյանի** պատմություններում: Տե՛ս գրակ՝. **M. Brosset**, Monographie des monnaies arméniennes, նույնի՝ Additions et éclaircissements à l'Histoire de la Géorgie, pp. 277-279; **Ղ. Ալիշան**, Շիրակ, 96-97, *նույնի*՝ Հայապատում, Վնտ., 1901, Բ., 392, **Ե. Լալայան**, 312-318, **Ղ. Մովսեսյան**, նշ. աշխ., **Е. Пахомов**, նշ. աշխ., **Լ. Մելիքսեթ-Բեկ**, **Քոբեր**. ևն., 60-73, հմմտ. նաև՝ **Վախուշտի**, Վրաստանի

*Ընդհանրապես Կյուրիկյանների տիրապետությունը* Է. Պախոմովը *բնութագրում է հետևյալ կերպ.* «Получив престол вслед за падением Ани в 1046 г., а может быть и одновременно с этим событием, он (Корике II) волею судеб явился почти единственным самостятельным носителем царского титула среди армянских Багратидов, если не считать слабого, находившегося тогда под византийской опекой, последного карсского царька Гагика, правившего до 1064 г. Вполне естественно, что в армянских кругах того времени непременно должна была возникнуть партия, считавшая Корикэ II главою Армении и быть может надеявшаяся, что таширские Багратиды повторят в истории страны роль своих анийских родичей. Что такая точка зрения была не чужда самому Корикэ II, меня убеждают его решительные действия по отношению к престолу армянского или албанского католикоса[51], в избрание которого он вмешивается совершенно так же, как это делали до него анийские цари. Не вина Корикэ, что силы его крохотного царства не выдержали натиска турок, грузин и византийцев: важно лишь знать, что был момент, когда лорийский царь играл роль главы Армении и притом в то время, когда Ани и другие соседние с его владениями области находились в руках византийцев»[52].

*Կյուրիկյանների, մասնավորապես, «Կորիկե Կյուրողապատ»-ի կողմից կտրված մեկ դրամի թվագրման հարցի շուրջ խոսելիս* Է. Պախոմովը *ասում է.* «Монета Корикэ бита в царствование лорийского царя Корике II, в половине XI в., и представляет собою, вероятно, результат надежд на блестяшее будущее, явившихся благодаря неожиданному переходу незначительной удельной династии на временную роль главы осиротевшей Армении»[53].

պատմություն, I, էջ 324-325, **Պ. Ինգորոդվա**, Rusthveliana, I, 190-198 (Կախեթիի և Հերեթի Բագրատունիների ճյուղը):

[51] Ծանոթագրության մեջ. Киракос, Мхитар, под 530 арм. эры 1081 г., **Է. Պախոմովը մոռացության է տվել Մատթեոս Ուռհայեցուն և Վարդանին:**

[52] **Е. Пахомов**, նշ. աշխ., 44-45.

[53] Նույն տեղում, 45.

# ԳԼՈՒԽ Դ.

## «ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄԱՆՑ» ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՐԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

### ա) ՀՆԱԳՈՒՅՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ ԺԳ. ԴԱՐԸ. բ) ԺԱ-ԺԳ. ԴԱՐԵՐՈՒՄ

*Կյուրիկյանների գահանիստ քաղաքն սկզբում եղել է Սամշվիլդեն[1], որը հայ Բագրատունիները գրավել են Թ. դարի երկրորդ կեսին, բայց դրանից հետո, երբ Բագրատ Դ. Աբխազաց և Վրաց արքան, մոտավորապես 1065 թ., «Մատեանն Քարթլիսա»-ի տեղեկությամբ (որը, ի դեպ, հայ պատմիչներ Սամուելի և Վարդանի կողմից նույնպես հաստատագրված է) «Հայոց արքա Կյուրիկեին և նրա եղբայր Սմբատին» Ք/վ/ուեշի հովտում բռնել տվեց, նա «գրավեց Սամշվիլդեն և իրեն ենթարկեց հայերին»[2]: «Այսպիսով,- եզրակացնում է Իվ. Ջավախիշվիլին,- «վերացավ նաև «Սոմխիթի»-ի անկախությունը, և նրա թագավորները հարկատու դարձան Վրաստանին»[3]:*

*Սամշվիլդեից վտարվելուց հետո Կյուրիկեի որդիները՝ Աբաս և Դավիթ արքաները (1089-1145), բնակություն են հաստատում Ձորոգետի հովտում, այն է՝ Լոռում, որտեղից՝ «նեղեալ ի վրաց», ըստ* Վարդանի՝ *դիմում են Առան-Հերեթի տերերին, որոնցից ստանում են մի բերդ՝ Մածնաբերդը, և այնտեղ բնակվում են կարիքի մեջ[4]:*

*Եվ դրանից հետո եթե Կյուրիկյանները հիշվում են Լոռի-Տաշիրի սահմաններում, ապա միայն և միայն անվանապես՝ ԺԲ. դարի*

---

[1] Սամշվիլդեի մասին տե՛ս **M. Brosset**.- «Melanges Asiatiques», t. II. pp. 92-103, **С. Мажников**, Памятники древности города Самшвильде.- СМК XIII, 1892 отд. I, стр. 3-13, **Е. Такайшвили**, Археологические экскурсии, разыскания и заметики, в, II, Тфл., 1904, стр. 40-46:

[2] **Ք. Ց.**, **Թաղ.**, 270 = **Բրոսէ**, 229, հմմտ. **Իվ. Ջավախիշվիլի**, Վրաց ժողովրդի պատմություն, I-II, էջ 449, *նույնի՝* Վրաստանի սահմանները, 22 («საქართველოს საზღვრები, 22»), հմմտ. **Սամուէլ**, 112, **Վարդան**, 101, Համառօտ պատմութիւն վրաց, Վնտ., 1884, էջ 113:

[3] **Իվ. Ջավախիշվիլի**, Վրաստանի սահմանները, 22 (հմմտ. **Ղ. Մովսէսեան**, 50-52):

[4] **Վարդան**, 106:

երկրորդ կեսի Քոբերի[5], Այորիի[6] և Հաղբատ-Սանահնի[7] որոշ արձանագրություններում, այն էլ որպես Կյուրիկյանների այս կամ այն թագավորի կա՛մ դուստր, կա՛մ ամուսին, կա՛մ թոռ[8]:

Դեպքի մասին հիշատակում է նաև Կիրակոսը, այն տարբերությամբ միայն, որ Դավիթը և Աբասը Առանի տերերի մոտ չեն գնում, այլ՝ ուղղակի «Պարսկաստան». «Իսկ Կիւրիկէ Բագրատունին, որ 'ի Լոռէ քաղաքի, զամենայն ժամանակս իւր կացեալ ընդդէմ վրաց, ի՛ հաստատութեան պահէր զհայրենիս իւր. և յետ մահուան նորա, որդիք իւր դաւեալք ի վրաց, ելեալք ի՛ տանէ հայրենեաց, գնացին ի պարսիկս, Դավիթ և Աբաս անուն, և առնուն ի նոցանէ ի ժառանգութիւն զՏաւուշ և զՄածնաբերդ և զայլ տեղիս»[9]:

Բայց որքան էլ տարբերություն լինի Վարդանի և Կիրակոսի տեղեկությունների միջև, մի բան լիովին պարզ է. Կյուրիկյանները Առան-Հերեթի սահմաններում իրենց գոյությունը վասալական իշխանության կարգով պահպանել են մինչև ԺԳ. դարը, և նրանց բնակավայրը եղել է Մածնաբերդը[10]:

Նշված իրադարձությունների մասին համառոտ պատմում է Մխիթարը և դրանք թվագրում 1111-1221 թվականներով. «Որդիք նորա ելեալք 'ի տանէ հայրենաց»[11]:

Կյուրիկյանների պարտությունը հետևանք էր Վրաստանի հզորացման՝ սկսած Դավիթ Շինարարի ժամանակից[12]:

Ինչպես հայտնի է, այն տարիներին, երբ դեռևս Թիֆլիսը վերջ-

---

5 1153 թվականի (Լ. Մելիքսեթ-Բեկ, Քոբեր. և այլն, էջ 64):

6 1188 թվականի (նույն տեղում, էջ 67, ծնր. 3):

7 Հաղբատի [1185 թ.] (Երզնկեան, 21 = Կոստանեանց, 36, Ջալալեանց Ս., 75 = Երզնկեան, 26 = Կոստանեանց, 37), Սանահնի, մոտավորապես 1185 թ. (Ջալալեանց, Ս., 17, 18 = Կոստանեանց, 40-41), Սանահնի կամրջի, անթվակիր [И. Орбели], Надпись Санаинского моста.- ХВ, т. IV, 191-192, հմմտ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Քոբեր, էջ 72-73):

8 Կիուրիկյաններից մեկը՝ Ռուսուդանը՝ Իվանե Օրբելու ամուսինը, հիշատակվում է նաև Բեթանիայի 1196 թվի գլխատառ արձանագրությունում (M. Brosset.- «Melanges Asiatiques», t. III. pp. 296-297, 339, Լ. Մելիքսեթ-Բեկ, Քոբեր, էջ 67-68 և ծնր. I էջ 68):

9 Կիրակոս, 145:

10 Հմմտ. նույն տեղում, 299:

11 Մխիթար, 61:

12 Հայաստանի և հայերի կացության մասին՝ Վրաստանի հովանու ներքո, մասնակիորեն տե՛ս Հակոբ Մանանդյան, Հայաստանի պատմությունը թուրք-թաթարական արշավանքերի շրջանում, Երևան, 1922, էջ 48-83 (Սելջուկյան աշխարհակ[ա]լության անկումը և Հայաստանի վերականգնման ջանքերը Վրաստանի գերիշխանության տակ):

նախկանապես միացած չէր Վրաստանին, Դավիթ Շինարարը նպատակադրվեց Թիֆլիսից հարավ ընկած երկիրը գրավել, որովհետև «վրացիները,- ձեթե կրկնենք պրոֆ. Իվ. Ջավախիշվիլուն,- Ներքին Քարթլիի հարավային մասի, այսպես կոչված, Սոմխիթիի բացառիկ նշանակությունը Վրաստանի պաշտպանության համար լավ էին հասկանում և դրան տալիս էին կարևոր նշանակություն»[13]: Բայց որպեսզի «Թիֆլիսը վերցնելուց հետո «Սոմխիթը» Վրաստանի ղեկավարության աչքում իր բացառիկ նշանակությունը չկորցներ, սա,- նույն գիտնականի կարծիքով,- պարզաբանում է այն հանգամանքը, որ «Սոմխիթիի Լոռե բերդը» Վրաստանի զորքերի գլխավոր հրամանատարի և ռազմական նախարարի՝ ամիրսպասալարի աթոռանիստը կամ ռեզիդենցիան էր համարվում: Այս ամենը արժանահավատ էր այնքանով, որ այստեղից Վրաստանը լավագույնս կարելի էր պաշտպանել հարավից եկող թշնամուց, և այստեղ բնակվող ռազմական նախարարը ավելի աչալուրջ կարող էր լինել պետության այս բացառիկ կարևոր սահմանների նկատմամբ»[14]:

Դավիթ Շինարարի կողմից Լոռի-Տաշիրի կամ «Սոմխիթիի» գրավումը վավերագրված է ինչպես վրաց, այնպես էլ հայ մատենագրության մեջ, վերջինս՝ Վարդանի և Ստեփանոս Օրբելյանի պատմություններում:

Անիի գրավումից հետո, որտեղ թողնվել էր Աբուլեթ Օրբելին, իր Իվանե որդու հետ,- ասում է Վարդանը,- «ընդարձակեալ Դավիթ զսահմանս Վրաց, զառեալ զՈւխթիս, (զՈւխթիս պետք է լինի՝ զՈւղթիս)[15] և զսահմանս իւր, և զԳագ, և զՏերունականն, և զՏաշուշ և զԿայեան և զԿայծոն, և զԼոռէ և զՏաշիր և զՄահկանաբերդ և զբոլոր իշխանութիւնն Հայոց Կիւրիկէի և Աբասայ»[16]:

Բայց Ստեփանոս Օրբելյանը, պատմելով Իվանե Օրբելու կողմից 572=1123 թվականին «Տավուշի, Գագի, Տերունականի, Լոռու և Անիի գրավման վերաբերյալ, նշում է, որ «Դրա համար էլ թագավորի կողմից շատ սիրվեց ու հարգվեց: Ի հավելումն իրենց տիրույթների՝ թագավորի կողմից նրանց տրվեց Լոռեն՝ իր գավառով, Ագարակը[17]՝ որպես ապարանքի տեղ, նաև Շամշվիլդեն, որ իրենց

---

[13] **Իվ. Ջավախիշվիլի**, Վրաստանի սահմանները, 22:

[14] *Նույն տեղում*, 22-23:

[15] Յմմտ. Տփխիս-Տփղիս (Թբիլիսի):

[16] **Վարդան**, 119, հմմտ. **Իվ. Ջավախիշվիլի**, Վրաց ժողովրդի պատմություն, I-II, 526:

[17] Ագարակը գտնվում է Լոռու մոտակայքում: Տե՛ս **[А. Ерицов]**, Монастырь Ахтала.-

*սեփականությունն էր, վերստին տրվեց՝ գավառով հանդերձ»*[18]*:*

*Հայաստանի գրավման ժամանակ Դավիթ Շինարարը, ինչպես հայտնի է, մեծ հովանավորություն ցուցաբերեց հայերի հանդեպ: Այդ մասին, ի միջի այլոց, պատմում են Մատթեոս Ուռհայեցին*[19] *և Վարդանը*[20]*: Այդպիսի հովանավորություն Դավիթը ցուցաբերել է նաև «Հյուսիսային կողմանց» նկատմամբ, մասնավորապես այնպիսի օջախների, ինչպիսիք են Հաղբատն ու Սանահինը: Սա երևում է Հաղբատի գլխավոր եկեղեցու արևմտյան մուտքի դռան փորագրությունից, կատարված 1123-1125 թվականներին*[21]*: «Միապետ Դավիթ արքան՝ որդին Գիորգիի, որդին Բագրատի..., որը գրավեց երկրներ, «եղև խնամաւղ Հաղբատայ և Սանահնի...», Հաղբատը փրկեց խավարից ու ավերումից»*[22]*:*

*Ճիշտ այդ ժամանակ՝ Դավիթ Շինարարի և նրա որդի Դեմետրե Ա.-ի տիրակալության տարիներին, մեծապես ծավալվեց Օրբելիների շինարարական գործունեությունը Լոռի-Տաշիրում, որի հետքն այսօր էլ երևում է, այսպես կոչված, «Հնէվանք»-ի, այսինքն՝* հույների վանքի *սյունագլխի բոլորգիր արձանագրության մեջ, որտեղ հիշատակված է տաճարի վերանորոգողը՝ «Սովբատ [որդի Իվանեի] ամիրսպասալարը»*[23]*, այսինքն՝ Սմբատը՝ որդին մեծն Իվանե Օրբելու և հայրը Գիորգի Գ.-ի ժամանակակցի՝ Իվանե Օրբելու: Այս Սմբատը՝ որպես Լոռի-Տաշիրի տիրակալ, հայտնի է դարձել իր հոր՝ Իվանեի մահից հետո, որը* Ստեփանոս Օրբելյանը *թվագրում է 577=1128*

«Кавказская Старина», № 1 (1872), стр 21-22: Սխալ կարծիք այս Ագարակի մասին Ախքալայի հետ կապված տե՛ս **Վախուշտիի** ինքնակենսագրականում (Description, 142 = **Մ. Ջանաշվիլու** հրատ., 43), նույնպես՝ **П. Иоселиани**, Путевые заметки от Тифлиса до Ахталы, Тфл., 1850, стр. 23:

[18] **Օրբէլեան**, 379, **Ստեփանոս Օրբելյանի** Պատմության 66-րդ գլխի վրացական տարբերակում, որը պատրաստել ենք տպագրության, այս մեջբերումը տրված է հետևյալ կերպ. «Մեծապես սիրվեց և հարգվեց [Իվանեն] թագավորի կողմից և իր կալվածքից բացի, թագավորից ստացավ Լոռին՝ իր շրջակայքով, իբրև ապարանք, թեկուզ պալատ, ինչպես նաև Սամշվիլդեն, որը նրանց կալվածքն էր, վերստին տրվեց նրանց՝ հովիտներով հանդերձ» (տե՛ս նախկին եկեղեցական թանգարանի ձեռ. Հմր 864, էջ 6ա):

[19] **Մատթէոս Ուռհայեցի**, 356:

[20] **Վարդան**, 120:

[21] Արձանագրությունը վնասված է, ուստի ՇՀ.-57 կարելի է վերականգնել ՇՀԲ.-ՇՀԴ. 572-574, որը կտա 1123-1125:

[22] **Յովհ. Դրիմեցի**, 4 = **Երզնկեան**, 32 = **Կոստանեանց**, 28, թվագրության մասին տե՛ս **Յովհ. Դրիմեցի**, էջ 4, ծնթ. 4:

[23] Մեր կողմից 1926 թ. ամռանը կազմակերպված արշավի նյութերից, որը պատրաստում ենք հրատարակության:

*թվականով*[1]*, հետևաբար՝ դա եղել է Դեմետրե Ա.-ի գահակալության տարին: Հենց նա էլ հիշատակվում է որպես* Սմբատ սպասալար՝ *որդին մեծն Իվանե սպասալարի և հայրը* Իվանե Օրբելյան *սպասալարի, Սանահնի (այժմ գոյություն չունեցող) 622=1173 թվականի արձանագրության մեջ*[2]*, որը փորագրվել է Գիորգի Գ.-ի գահակալության ժամանակ, ի հիշատակ Իվանե Օրբելու՝ «Սանահին Սուրբ Աստուածածնիս» աղոթքի գալու», ինչի համար էլ նրան են վերադարձվել բոլոր կալվածքները*[3]*:*

*ԺԲ. դարի քսանական թվականներից մինչև ԺԳ. դարի երեսնական թվականները ներառյալ, մեկ դարի ընթացքում, անկասկած, աննշան թերությունները անտեսելով, այսպես կոչված «Հյուսիսային կողմը» Վրաստանի քաղաքական ենթակայության տակ էր գտնվում, և այս «կողմանց» կենտրոնը՝ Լոռե քաղաքը, մինչև 1177 թվականը համարվում էր Օրբելիների տիրույթ*[4]*:*

*Օրբելիների ապստամբությունը ճնշելուց և նրանց Վրաստանից վտարելուց հետո, Գիորգի Գ.-ը, ըստ «Թագակիրների պատմություն և գովասանություն» երկի՝ «ամիրսպասալար դարձրեց տոհմական բարձր ծագումով և պատերազմների բովում կոփված «Սարգիս Երկայնաբազուկին», որին Թամարը նվիրեց Լոռու իշխանությունը [և] իշխանական կալվածքը Սոմխիթիի ներսում»*[5]*, ինչը ըստ* Իվ.Ջա-

---

[1] **Օրբէլեան,** 379 և հջրդ. հմմտ. նախկին եկեղեցական թանգարանի ձեռ. Հմր 864, էջ 6ա:

[2] «Հնէվանքի» արձանագրության մեջ Սմբատ-Օրբելին հիշատակվում է՝ «որդի Իվանե ամիրսպասալարի»: Եվ քանի որ Իվանե ամիրսպասալարը, Ստեփանոս Օրբելյանի տեղեկության համաձայն, վախճանվել է 1128 թվականին, հետևաբար, այս արձանագրությունը պետք է փորագրված լինի մինչև 1128 թվականը, քանի որ Սանահինի այս արձանագրության մեջ էլ Իվանեն և Սմբատը հիշատակվում են որպես սպասալարներ (ես, Օրբէլեան Իվանէ սպասալարս, թոռն մեծին Իվանէ սպասալարին և որդի Սմբատայ սպասալարին), անպատճառ այլ եզրակացության պետք է հանգենք, որ ամիրսպասալարությունը Դավիթ Շինարարի օրոք գոյություն ուներ (հմմտ. **Իվ. Ջավախիշվիլի,** Վրաց իրավունքի պատմություն, Քութայիս, 1919, էջ 143-144, 145 (ქართული სამართლის ისტორია, ქუთაისი, 1919, გვ. 143-144, 145):

[3] **Ջալալեանց, Ա.,** 30 = Կոստանեանց, 35. այս արձանագրությունը, որը Ջալալյանցից բացի ոչ ոք չի հիշատակում, մենք տեղում չգտանք, հավանական է, որ այն ոչնչացել է 1836 թվի վերականգնման ժամանակ: (տե՛ս **Յարութիւնեան,** Սանահին.- ԱՀ, Գ., 294): Այն կասկածելի է թվագրման առումով: Ջալալեանցը այն թվագրել է ՈԼԲ. 632 = 1183, որը սակայն բոլորովին անհնար է, որովհետև Օրբելիները 1177 թ. վտարվեցին Վրաստանից, պետք է կարծել, որ թվագրության տասնավորի մեջ սխալ է թույլ տրվել, ուստի այն պետք է ճշտվի՝ ՈԻԲ. 622 = 1173 թվերով:

[4] Տե՛ս **Օրբելյան,** 378-389, հմմտ. նախկին եկեղեցական թանգարանի ձեռ. Հմր 864. էջ 5բ-10ա:

[5] **Ք. Ց.,** Թաղ., 409 = **Բրոսէ,** 282:

վախիշվիլու՝ «պետք է եղած լիներ Թամարի թագավորության հենց առաջին տարիներին, մինչ առաջին ամուսնությունը, կամ 1184-1186 թթ.»[6]:

Բայց, պարզվում է, Սարգիս Երկայնաբազուկը երկար ժամանակ չէ ամիրսպասալար եղել, որովհետև նա, ինչպես նրա գերեզմանի խաչքարի (Սանահնում) արձանագրությունն է հուշում, վախճանվել է 1187 թ.[7]: Ինչպես հայտնի է՝ 1187-1190/1191 թվականներին ամիրսպասալարը եղել է Գամրեկելի Թորելին[8]: Սակայն Գամրեկելու մահից հետո, նույն «Թագակիրների պատմություն և գովասանություն»-ի տեղեկությամբ, ամիրսպասալարի կոչումը շնորհվել է Զաքարիա Երկայնաբազուկին՝ որդուն Սարգիս ամիրսպասալարի՝ Հայաստանի թագավորի տեղապահի և Լոռու տիրակալի»[9]: Եվ սա,- Իվ. Ջավախիշվիլու կարծիքով,- 1191 թ. պետք է տեղի ունենցած լիներ, քանզի «Սանահնի վանքի 1191 թ. արձանագրության մեջ Զաքարիայի ամիրսպասալարությունն է հիշատակված»[10]:

Դրանից հետո ամբողջ «Հյուսիսային կողմերը», Լոռե քաղաքի հետ միասին, վերջնականապես Երկայնաբազուկներին են անցնում[11], նրանց ձեռքին էր նաև Անիի թագավորությունը:

Ամեն դեպքում պարզ երևում է, որ Հայաստանի և հատկապես, այսպես կոչված, «Հյուսիսային կողմանց» գրավումից հետո վրաց թագավորները իրենք իրենց հայ թագավորների ժառանգորդներ էին համարում և մինչև 1170 թվականը սեփականել էին «շահնշա-

[6] Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատմություն, I-II, 584:

[7] Ջալալեանց, Ա., 28 = Ի. Յարութիւնեան, Սանահին.- ԱՅ, Գ., 304 = Լալայեան, 391 = Կոստանեանց, 36, հմմտ. Իվ. Ջավախիշվիլի, նշ. աշխ., 590:

[8] Իվ. Ջավախիշվիլի, նույն տեղում, 590-591 և հջրդ.:

[9] Ք.Ց., Թաղ., 444 = Բրոսէ, 297:

[10] Իվ. Ջավախիշվիլի, նշ. աշխ., 597 (Սանահնի արձանագրություն. Ջալալեանց, 18 = Յարութիւնեան, նշ. աշխ., 283 = Կոստանեանց, 37):

[11] Երկայնաբազուկների պատմության մասին տե՛ս, M. Brosset, Additions et eclaircissements à l'Histore de la Georgie, Add. XVII, pp. 226-279 (Notics et details historiques sur la famille des Mkhargrdzekidze), Ղ. Ալիշան, Շիրակ, 175 (ծագումնաբանություն), Լալայեան, 319-329, Ասլան Շահնազարեան, Զաքարեան (Երկայնաբազուկ) տոհմի ծագումը, ցաղթը դէպի Չորագետ և նախորդները.- «Շողակաթ», Ա., էջմ., 1915, էջ 66-83 [հմմտ. Ն. Մառի] գրախոսություն հրատարակության մեջ: Отчет о состоянии и деятельности С. Петербургского Университета за 1908 год., Спб., 1909, отд. II, стр. 73-77: Ստ. Լիսիցեանի գրախոսությունը. Տեղեկագիր Թիֆլիզու Վանաց աւագ եկեղեցու կրօնա-պատմական թանգարանի մնայուն յանձնաժողովի 1908 ապրիլ 5, Տփղ., 1910, էջ 11-18, գրախոսությունը կցված է ռուսերեն հրատարակության առթիվ (էջ 19-24): «Վագրենավորը» Սարգիս Կակաբաձեի խմբագրությամբ, երկրորդ հրատարակություն, Տփղ., 1927 էջ XCIV (ծագումնաբանական աղյուսակ), և այլն:

*հի» (արքայից արքայի) տիտղոսը, բացի դրանից, 1171-1177 թվականներին ընդունեցին նաև «Հայոց արքա» կոչումը*[12]*: Հետաքրքիր է, որ Երկայնաբազուկները ևս համարվում էին «ամիրսպասալար Հայոց և Վրաց»: Օրինակ՝ Սարգսի գերեզմանաքարի 1187 թվի*[13] *արձանագրությունում և Զաքարիայի կողմից Ամբերդի դրավման հիշատակին փորագրված 1200 թվի արձանագրությունում, որը այժմ Ինաքլու եկեղեցու պատի մեջ է տեղադրված*[14]*:*

*Սակայն Երկայնաբազուկներին միայն ամիրսպասալար չէ, որ կոչում էին, այլ հաճախ «թագաւոր», «շահնշահ» և [իբրև ժառանգ] «յազգէ Բագրատունեան»:*

*Օրինակ՝ Անիի Ղզլար (ղզղալ) եկեղեցու անթվակիր արձանագրության մեջ հիշատակված է Սահակդուխտ «ծնաւղ Զաքարիա և Իվանէ թագաւորաց Հայոց»*[15]*: Գեղարդի 1215 թվականի արձանագրության մեջ ասված է, որ այս կաթողիկեն կառուցված է «ի ժամանակս թագաւորազնոյն Զաքարիայի և Իվանէի»*[16]*: Բայց նույն Գեղարդի չթվագրված երկրորդ արձանագրությունը Իվանե Աթաբեգին անվանում է «թագաւորազն և աշխարհակալ»*[17]*: Շիրակավանի 1228 և 1231 թվականների արձանագրությունների մեջ Իվանե Աթաբեգի կինը՝ Խոշակը, հիշատակված է որպես «Վրաց և Հայոց թագո[ւ]հի» և «վերայիշխող տանս Վրաց և Հայոց և նովին (sic) թագո[ւ]հի»*[18]*: Հաղբատի 1209*[19]*, Անիի 1206*[20]*, Շիրակի տարբեր վայրերի 1212, 1210 և 1191 թվականների*[21] *և Բջնիի 1209 թվականի*[22] *արձանագրություններում Երկայնաբազուկները հիշատակված են*

---

[12] **С. Какабадзе**, Грамота груз. царя Георгия III по поводу восстания князей Орбели в 1177г.- Изв.КИАИ, т. IV, 1926, стр.124:

[13] Տե՛ս վերը, ծնթ. 30:

[14] Հրատարակված չէ. օգտվում ենք **Գարեգին Հովսեփյանի** կողմից անձամբ փոխանցված տեղեկությունից:

[15] **Ջալալեանց, Բ.**, 13 = Ալիշան, 58 = Կոստանեանց, 41:

[16] **Ստեփաննոս Մխիթարեանց**, Ստորագրութիւն հռչակավոր մեծի ուխտին Այրիվանայ սրբոյն Գեղարդայ, Վաղ., 1873, էջ 27:

[17] **Նույն տեղում**, 16.

[18] **Ներսէս Սարգիսեան**, Տեղագրութիւն ի Փոքր և ի Մեծ Հայս, Վնտ., 1864, էջ 170 = Ալիշան, 10:

[19] **Ջալալեանց, Ա.**, 58 = **Երզնկեան**, 57:

[20] **Н. Марр**, Камень с армянскою надписью из Ани в Азиатском Музее.- Изв. АН, 1910, стр. 1151:

[21] **Ն. Սարգիսեան**, նշ. աշխ., 111, 112, 149 = **Ալիշան**, 41, 117, 164:

[22] **Շահխաթունեանց, Բ.**, 182 (§ 484):

որպես «շահնշահ»: Նմանապես Կիլիկիայի Լևոն թագավորի թղթերում ևս Զաքարիան անվանվում է «մեծ սպարապետ և շահնշահ արևելեան կողմանցն»[23]: Իսկ Հաղարծնի թվագրություն չունեցող մի արձանագրության մեջ[24] Երկայնաբազուկները հիշատակվում են որպես [ժառանգներ] «յազգէ Բագրատունեան»:

Բացի դրանից, Երկայնաբազուկների իշխանությունը ամբողջ Հայաստանի վրա ընդհանրապես և մասնավորապես՝ այսպես կոչված, «Հյուսիսային կողմանց» վրա հիշատակվում է որպես «աշխարհակալութիւն», ինչպես օրինակ՝ Բջնիի 1209 թվականի[25] և Արեգեսի անթվակիր[26] արձանագրություններում է, «աշխարհակալ տէրութիւն», ինչպես Հաղարծնի 1206 թվի արձանագրության մեջ[27] է, կամ «պետական իշխանութիւն», ինչպես Բագնայրիի 1210 թվի արձանագրության մեջ է[28]:

Բոլոր այս տեղեկությունները, կապված վրաց և հայոց պատմական գրականության բազմաթիվ ստույգ փաստերի հետ, հաստատում են, որ Երկայնաբազուկները ԺԲ. դարի վերջին և ԺԳ. դարի սկզբին, այսինքն՝ մոտավորապես Թամար թագուհու և նրա ժառանգորդների տիրակալության օրոք, փաստացի լիիրավ տերերն են եղել ընդհանրապես ամբողջ Հայաստանի և մասնավորապես, այսպես կոչված, «Հյուսիսային կողմանց»: Ամեն դեպքում, Երկայնաբազուկներն իրենք իրենց համարում էին հայ թագավորների ժառանգորդներ, թեև իրականում նրանք վրաց թագավորների տեղապահներն էին Հայաստանում:

Թե ծագումով ովքեր են եղել Երկայնաբազուկները, բավականին բարդ խնդիր է. պարզաբանման համար գիտական գրականության մեջ մի քանի փորձ կարելի է գտնել, այսպես, օրինակ, ըստ Ասլան Շահնազարյանի, նրանք Զորոգետում վերաբնակված և հայացած քաղդէացիներ էին[29], ըստ Մաղաքիա Օրմանյանի՝ Օրբելյան-

---

23 Կիրակոս, 159:

24 Շահխաթունեանց, Բ., 370 (§ 604) = Ջալալեանց, Ա., 131 = Բարխուդարեան, 366 = Մեսրոպ Տէր-Մովսիսեան, Հայկական արձանագրություններ.- ԱՅ, Իե., 1917, էջ 67:

25 Շահխաթունեանց, Բ., 182 (§ 484) = Կոստանեանց, 50:

26 Ջալալեանց, Բ., 187:

27 Շահխաթունեանց, Բ., 370 (§ 604) = Ջալալեանց, Ա., 132 = Բարխուդարեան, 366 = Մ. Տէր-Մովսիսեան, նշ. աշխ., 68:

28 Սարգիսեան, նշ. աշխ., 180 = Ալիշան, 117:

29 Ա. Շահնազարեան, նշ. աշխ.:

*ներ*[30]*, ըստ* Կարապետ Տեր-Մկրտչյանի՝ *Բագրատունիներ*[31]*, իսկ ըստ Սարգիս Կակաբաձեի՝ վրացի «Թորելիներ»*[32]*: Սակայն պակաս հետաքրքիր չէ այն, որ Երկայնաբազուկները որոշ հուշարձաններում, ինչպես արդեն նշել ենք, համարվում են «Բագրատունիներից սերած» և բարեկամական-խնամիական կապերի մեջ էին Լոռի-Տաշիրից փտարված Կյուրիկյանների դինաստիայի հետ (օրինակ, Սարգիս Զաքարի Երկայնաբազուկի դուստրը՝ Վանենին, ամուսնացած էր Մածնաբերդի Կյուրիկյանների Աբաս Թագավորի*[33] *հետ):*

*Որքանով է արդարացի ակադ.* Մ. Բրոսեն, *որ գրում է,- «regne de Thamar n'etait, pour ainsi dire, que celle des exploits des Mkhargrdzelidze, je reunirai ici tout ce que nous savons de cette famille»*[34]*, սա պարզաբանելու համար մենք այստեղ կանգ չենք առնի: Բայց մի բան պարզ է, որ ինչպես Լեոն (Առաքել Բաբախանյան) է իրավացիորեն նշում, Երկայնաբազուկներին բախտ վիճակվեց «կազմակերպել մի ուժեղ դաշնակցություն (ֆեդերացիա), որ խիտ ցանցով ծածկում է արևելյան Գուգարքը, Արցախը, Սյունիքը, Գեղարքունիքը, մինչև Արագածի և Արայի լեռները»*[35]*: Եվ մասամբ հենց այս կապով, մասամբ*

---

[30] **Օրմանեան,** Ազգապատում, էջ 1486-1487 (§ 1021), 1570 (§ 1080), 1650 (§ 1133), որտեղ Զաքարիա և Իվանե երկայնաբազուկները Օրբելյաններ են կոչվում և ոչ թե երկայնաբազուկներ:

[31] **Կարապետ եպիսկոպոս,** Ղօփեանք և Մելիք-Շահնազարեանք, 18-31:

[32] **Սարգիս Կակաբաձե,** Ով է եղել և երբ է ապրել Սարգիս Թմոգվեցին, Տփղ., 1913, **նույնի՝** Հոդվածներ և նյութեր Վրաստանի պատմության համար, Գիրք 1, Տփղ., 1914, էջ 58-65, նույնի՝ Ընծենավորը, երկրորդ հրատարակություն, էջ LXXXIX-XCIV, հմմտ. **Լ. Մելիքսեթ-Բեկ,** Հայերը վրաց հին գրականության մէջ.- «Գեղարուեստ», 7, Տփղ., 1921, էջ 40:

[33] **[И. Орбели],** Надпись Сананнского моста,- ХВ, IV, 191-192. **Լ. Մելիքսեթ-Բեկ,** Քոբեր, 67, 72-73:

[34] **M. Brosset,** Additions, 266:

[35] **Լէօ,** Սահմանավէճեր, 47. իր մեկ այլ աշխատության մեջ (Պատմութիւն Ղարաբաղի թեմական հոգևոր դպրոցի 1838-1913, Տփղ., 1915, էջ 44) հեղինակը, անդրադառնալով նույն թեմային, մեծ համակրանքով է հիշում այն «դաշնակցական միութիւնը», որը գոյություն ունի «Գուգարքի (յատկապես նրա այն մասի, որ վրացիները անուանում են Սօմխեթ) և Արցախի իշխանական տների մէջ, մի միութիւն, որի կապերը գլխաւորապէս խնամիական են»: Իսկ «այս ազգակցական կապերի տեսակէտից մի տեսակ կենտրոնի դեր կատարում է Գուգարքի հին Ձորափոր գաւառը, Աղստև (Աղստաֆա) գետի հովտում (այժմեան Դիլիջանի ձորը)»: Այս աշխատության մեկ այլ մասում **Լեոն,** խոսելով իշխանական տոհմերի միջև գոյություն ունեցող բարեկամական կապերի մասին, նշում է. «Ահա այս և ուրիշ այսպիսի ազգակցական կապերը ամրացնում են Լոռու, Խաչէնի և այլ գաւառների իշխանական դաշնակցութեան ցանցը, որի վրայ յենուած՝ Զաքարէ սպասալարը իր եղբօր հետ լցրեց աշխարհը իր զարմանալի քաջագործութիւնների փառքով» (էջ 45): Բայց դա Հիւսիսային Հայաստանի իշխանական տների ֆեդե-

*դեռևս նախորդ դարաշրջանում Կյուրիկյանների և Անեցի Բագրատունիների միջև գոյություն ունեցող ազգակցությամբ*[36] *և նույն Կյուրիկյանների ու արևելյան գավառների հայ իշխանների հետ հաստատված խնամիական կապերով պետք է բացատրել, որ, այսպես կոչված, «Հյուսիսային կողմանց» գիտագրական գործունեության մեջ, գանձակեցիներից ու անեցիներից հետո, առաջնակարգ տեղ են գրավում հենց խաչենցիները, որոնք նվիրվածությամբ ծառայում և իրենց ամբողջ կորովն ու եռանդն էին նվիրաբերում այս կողմերի փառապանծ օջախների ծաղկմանն ու հզորացմանը:*

---

րացիան չէր միայն, այլ միաժամանակ և դաշնակցութիւն Վրաց ուժեղ թագավորութեան հետ (էջ 45-46): Այս հանգամանքը հեղինակը բացատրում է նրանով, որ «Երկու քրիստոնեայ ազգութիւնները, կարծես գիտակցել էին իրենց ճակատագիրը իսլամ աշխարհի մէջ և իրար թիկունք դարձած՝ «միացած ուժերով իրենց իրաւունքներն էին պաշտպանում: Մի երևույթ, որ, դժբախտաբար չը կրկնուեց այնուհետև դարերի ընթացքում (էջ 46): Այդ միութիւնը տուեց Զաքարէին հնարաւորութիւն նուաճելու ամբողջ Արարատեան նահանգը, Անի մայրաքաղաքով միասին և այլ բազմաթիվ հայկական երկիրներ, ուր վաղուց մեռած էր հայ քաղաքական կեանքը: Կարծես վերածնւում էր հայկական անկախութիւնը, այս անգամ աւելի ընդարձակ չափերով, քան Բագրատունիների ժամանակ» (էջ 46):

[36] Խաչենցիների դերի վերաբերյալ Հաղբատ-Սանահնի պատմության մեջ տե՛ս **Լէօ,** Պատմութիւն Ղարաբաղի հայոց թեմական հոգեւոր դպրոցի, 49-50: **Լեոն** իրավացիորեն նշում է, որ «Լոռու երկու հռչակաւոր կրօնական կենտրոններում՝ Հաղբատ և Սանահին, յաճախ են երևան եկել Խաչէնցիք: Յայտնի է և Յովհաննէս եպիսկոպոս Խաչենցի, բայց աւելի յայտնին Գրիգոր Տուտէորդին էր, խաչենցի, հռչակած իր արիական պաշտպանութէամբ հայրենի եկեղեցական աւանդութիւնների, ընդդէմ ոչ միայն Կիլիկիայի հոգևորականութեան, որի գլուխն էր Ներսէս Լամբրոնացու պէս մի բազմահմուտ և տաղանդաւոր հոգևորական, այլև ընդդէմ նոյնիսկ այնպիսի մի իշխանաւորի, որպիսին էր Զաքարէ Սպասալարը: Հաղբատի և Սանահնի արձանագրութիւնները ցոյց են տալիս, որ Խաչէնի և Լոռու մէջ հաստատուած էին սերտ յարաբերութիւններ: Դրանք սահմանակից երկրներ էին, որոնց միացնողն էր Աղստափա գետի հովիտը: Շատ Խաչէնցիների համար գերեզմանատեղի են դարձել այդ երկու մեծահռչակ վանքերը: Խաչէնն ու Լոռին միացնում էին եւ յաճախակի տեղի ունեցող խնամիական կապերը» (էջ 50): Մխիթար Գոշի մասին խոսելիս **Լեոն** ասում է. «Խաչէնի իշխանների աջակցութեամբ էր որ այս վարդապետը կառուցեց Գետիկի վանքը Աղստափա գետի հովտում» (էջ 49), որը «դարձաւ Հայաստանի այն ժամանակուայ ամենայայտնի դպրոցներից մէկը» (*նոյն տեղում*):

# ԳԼՈՒԽ Ե.

## «ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄԱՆՑ» ԳԼԽԱՎՈՐ ԳԻՏԱԳՐԱԿԱՆ ՕՋԱԽՆԵՐԸ ԺԱ-ԺԳ. ԴԱՐԵՐՈՒՄ

Ինչպես երկրորդ գլխում տեսանք, «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետներ»-ի կողմից Գրիգոր Տղային ուղղված թղթի սկզբում մեկ առ մեկ հիշատակված են բոլոր այն վանքերը, որոնց ներկայացուցիչները, այսպես կոչված «հյուսիս-արևելքի եպիսկոպոսի» առաջնորդությամբ մասնակցել են այս թուղթը կազմելուն: Օրինակ՝ «Սանահինը», «Հաղբատի մետրոպոլիան», «Հաղարծինը», «Խորակերտը» և «Գետիկը», Հաղբատ-Սանահնի գաղափարական առաջնորդությամբ:

Սրանք էին գլխավոր գիտագրական կենտրոնները, որ հայտնի էին ԺԱ-ԺԳ. դարերում:

Սակայն սրանցից ամենահռչակավորները Հաղբատն ու Սանահինն էին:

Մենք արդեն գիտենք, որ վերոհիշյալ թղթում Հաղբատը հիշատակվում է որպես «մայրաքաղաք»[1]: Հովհաննես Սարկավագի «Սաղմոսագրքի» մի հին ձեռագրի հիշատակարանում այն ներկայացված է՝ «մայրաքաղաք մենաստան ի Հաղբատ»[2], իսկ Գրիգոր Տղայի թղթերում՝ «մայրավանք»[3]: Սանահինն էլ Գրիգոր Մագիստրոսի թղթերում[4] և Սանահնի 1061 թվականի մի արձանագրության[5] մեջ «մայրաքաղաք», իմա՛ <1061 թ. արձանագրության մեջ> «մայրքաղաք» է կոչվում: Հետևաբար, Հաղբատը և Սանահինը հայ իրականության մեջ նույնպիսի տեղ են զբաղեցնում, ինչպիսին օրինակ՝ Շիոմղվիմեի, Դավիթ Գարեջիի կամ Սաֆարի լավրաները Վրաստանում:

---

[1] Թուղթ ընդհ., 427 = **Տաշեան**, 950:

[2] **Գար. Զ[արբհանալեան]**, Հայկական հին դպրութեան պատմութիւն, Գ. տպ., Վնտ., 1897, էջ 614, ծնթ. 1:

[3] Նամականի, 5:

[4] **Կ. Կոստանեանց**, Գրիգոր Մագիստրոսի թղթերը, Աղէքսանդրապոլ 1910, էջ 138:

[5] **Ջալալեանց**, Ա., 28 = **Յովհ. Դրիմեցի**, 49 (առկա հրատարակություններում սխալմամբ մայրաքաղաք է գրված, պետք է լինի մայրքաղաք):

*Երկու վանքերն էլ՝ Հաղբատը և Սանահինը, պատմականորեն այնպես են կապված իրար, որ խոսել մեկի մասին մյուսից անկախ՝ անհնար է: Ահա ինչու միանգամայն իրավացի է* Սմբատ Տեր-Ավետիսյանը, *երբ նրանց մասին ասում է. «Առանց Հաղբատի հասկանալի չէ Սանահինը և առանց Սանահնի՝ Հաղբատը. այդ երկու վանքերը պատմութեան համար մի ամբողջութիւն են կազմում»[6]: Այս առումով այդ զույգ վանքի ճակատագիրը հիշեցնում է Վրաստանի Դավիթգարեջա-Նաթլիսմցեմելիի կամ Իղալթո-Ալավերդիի, կամ Սափարա-Զարմիի ճակատագիրը:*

*Պատմական աղբյուրներում նույնպես երկու վանքերն էլ համարյա միշտ մեկը մյուսից անբաժան են հանդես բերված[7]:*

Ասողիկը *(ԺԱ. դ.), խոսելով Աշոտ Բագրատունու (951-977) մասին, նշում է, որ «Յաւուրս սորա շինեցան կրօնաւորանոցք (=վանքեր), ճգնաւորականաց տեղիք Սեաւորդեաց[8] աշխարհին, հասարակեացք, միաբանականք, ըստ յառաջացեալ կանոնին սահմանադրութեան սրբոյն Բարսղի, որոնց երկոցունց տեղեացն անուանք* Հաղբատ և Սանաhին *հանդէպ միմեանց, միակրօնք[9] ի տան Աստուծոյ՝ արանց Շ.ոց (500ոց)»[10]:*

Սամուել Անեցին *(ԺԲ. դ.) գրում է. «Ի ՆԺԶ. (967) թվին շինեցաւ Հաղբատ, եւ Սանահինն՝ Ժ. (10) ամաւ յառաջ քան զՀաղբատ շինեցաւ ի Խոսրովանուշ թագուհւոյն՝ ի կնոջէ Աշոտոյ Շահնշահի»[11], նույնպես՝ «ՇԾԴ. (1105) Խզըլն էառ զԼօռէ՝ եւ զուխտսն սուրբ զՀաղբատ եւ զՍանահինն այրեաց»[12]:* Վարդանը *(ԺԳ. դ.) իր «Պատմության» մեջ գրում է. «Խոսրովանույշ շինէ զփառազարդ սուրբ ուխտսն* զՍանաhին *եւ* զՀաղբատ*»[13]: Իսկ «Աշխարհագրության» մեջ*

---

[6] Սմբատ Տեր-Ավետիսյանի "Надписи Санаина" անտիպ աշխատության առաջաբանից:

[7] Ի դեպ, սրանով է բացատրվում նաև այն հանգամանքը, որ գոյություն ունեցող գրականության մեջ նրանց նկարագրությանը նույնպես համարյա միշտ միասին ենք հանդիպում: Այդ պատճառով հին գրականության մեջ որոշ Սանահինցիներ, օրինակ՝ Անանիան և Գրիգոր Տուտեորդին, Հաղբատցի են անվանված: Գրիգոր Տուտեորդին նույնպես իր թղթերում, ուղղված Գրիգոր Տղային, մի անունով է հիշատակում՝ Հաղբատ Սանահին (**Արշակ Տէր-Միքէլեան**, Միջին դարերի կաթողիկոսների ծգտումները, էջ 88):

[8] Տե՛ս սատ, Գլ. Գ., ծնթ. 10:

[9] Միակրօնք հատկապես ասում էին երկու վանքերի միևնույն դավանական, այս դեպքում՝ հակաքաղկեդոնական ուղղությանը պատկանելու համար:

[10] **Ասողիկ**, 181:

[11] **Սամուէլ**, 100:

[12] *Նույն տեղում*, 121:

[13] **Վարդան**, 90:

սաում է. «ԶՏաշիր ի վերայ Սեւորդաց[14] Ձորոյ գետին[15] է շինեալ հոյակապ եւ հռչակաւոր սուրբ ուխտ[ք]ն Հաղբատ եւ Սանահին, զոր շինեաց Խոսրովանուշ Թագուհին՝ կինն Աշոտոյ Ողորմածին ծին ի ՆԺ. (410 961) թվին»[16]: Սամուէլի «Թ» ձեռագրի հավելողը բացատրում է. «Շինեաց ի Սեւորդիսն զհրաշալի ջուխտսն զՀաղբատ եւ զՍանահին կինն Աշոտոյ ողարմածին Խոսրովանուշ՝ վասն արեւշատութեան որդւոցն իւրոց Գուրգենայ, Սմբատայ եւ Գագկայ»[17]: Կիրակոս Գանձակեցին (ԺԳ. դ.) անդրադառնալով Կյուրիկե թագավորին՝ Դավթի որդուն և Դերենիկի թոռանը, նշում է, որ նա՝ Կյուրիկեն, «հիմնարկեաց զհռչակավոր ուխտսն՝ զՀաղբատ և զՍանահին»[18]:

Ինչպես նախորդ գլխում տեսանք, Հաղբատի 1123-1125 թվականների մի արձանագրություն Դավիթ Շինարարին հիշատակում է որպես «Սանահինի եւ Հաղբատի խնամատար»:

Հաղբատի և Սանահինի վերաբերյալ վրաց գրականության մեջ երկու աշխատություն կա՝ 1) Վախուշտիի «Աշխարհագրություն»[19] և 2) Անանուն հեղինակի կողմից 1837 թվին կազմված «Նկարագրություն Թիֆլիսի թեմերում և գավառներում գտնվող եկեղեցական ցուցակների»[20], որը ներկայացնում է Վախուշտիի բառերի պարզաբանումը՝ կապված հայ պատմիչների տեղեկությունների հետ:

Ահա այդ երկու երկերի տեղեկությունները.

| Վախուշտիի «Աշխարհագրություն»ը՝ | Անանուն հեղինակի «Նկարագրություն»ը՝ |
|---|---|
| Բայց Հաղբատը և Սանահինը վրացի արքաների կողմից են կառուցվել (տարբերակը | Հաղբատը և Սանահինը, որպես փառահեղ եկեղեցիներ, նմանապես գյուղերը, |

[14] Տե՛ս Գլ. Գ. ծնթ. 10:

[15] Հմմտ. **Վարդան**, 90 (Տաշիր Սևորդուովքն Ձորոյգետին). Նկատի է առնված, որ ուրիշ «Ձորոյգետն Անի է» ([տե՛ս **M.Saint-Martin**, նշ. աշխ., II, 418]):

[16] M. **Saint-Martin**, նշ. աշխ., II, 424:

[17] **Սամուէլ**, 100, ծնթ. 9:

[18] **Կիրակոս**, 91:

[19] Description, 138 = Ս. **Ջանաշվիլու** հրատ., 41:

[20] **Լ. Մելիքսեթ-Բեկ**, Նյութեր Թիֆլիսի և «Սոմխիթիի» հնությունների պատմության համար, «Չվենի մեցնիերեբա», № 1, Թիֆ., 1924, էջ 95 (ლ. მელიქსეთ-ბეგი, მასალები ტფილისისა და «სომხითის» სიძველეთა ისტორიისათვის, „ჩვენი მეცნიერება“, № 1, ტფ., 1924, გვ. 95).

հավելում է. սակայն հայերը գրում են, թե երբ տիրել են հայ թագավորները, նրանք են կառուցել)[21] գմբեթավոր եկեղեցիներ(ով), փառահեղ եպիսկոպոսարան(ով): Մի՞թե այստեղ հայերն են նստում, մինչդեռ Քարթլիի արքան էր նստեցնում եպիսկոպոսին՝ հոգևոր տերերի գրությամբ[22], քանի որ Քարթլիի հայ բնակիչները նրա ծխականներն են:

վրացի արքաների կողմից են կառուցվել, բայց հայերը գրում են, թե դրանք կառուցել են հայ թագավորները, ապագայի համար ճշմարիտն եմ ասում: Եւ շատ գեղեցիկ են և՛ փառահեղ: Հաղբատի եկեղեցին[23] կառուցվել է քառասունքը նշելու համար նվիրաբերած գումարներից[24] և երբ հանգուցյալին տանում են այնտեղ, այնտեղ են լինում սգակիր միաննձնուհիները, ովքեր մեկ օրում հանգուցյալի

---

[21] Քանի որ Հաղբատ-Սանահինի հիմնադրումը և սկզբնական շրջանի պատմությունը սերտորեն կապված է Լոռի-Տաշիրի Կյուրիկյանների դինաստիայի հետ, որն էլ ազգակցությամբ և խնամիությամբ կապված էր Հերեթ-Կախեթի Քորիկոզների և Բագրատունիների հետ, ուստի՝ կարող ենք ենթադրել, որ այս հանգամանքն է թելադրել **Վախուշտիին**՝ Կյուրիկյան թագավորներին վրացի հայտարարել: **Մ. Ջանաշվիլին** (**Царевич Вахушти.** География Грузии, пер. М. Джанашвили [Зап. Кавк. Отд. Рус. Геогр. О-ва, т. XXIV], Тфл., 1904, стр. XLIX, հմմտ. վրաց. բնագիրը, նույնի՝ հրատ. էջ 118] կարծում է, որ **Վախուշտին** սխալմամբ է բերել այս վանքերի արձանագրությունները, որոնք Վրաստանի թագավորներին՝ Դավիթ Շինարարին, Գիորգի Գ.-ին, Թամարին, Լաշա Գիորգիին և մյուսներին հիշատակում են որպես «ինքնակալ, բարեգործ, անպարտելի» խնամակալներ այս եկեղեցիների հարստացման, նորացման և խաղաղ զարգացման համար: Այսպես թե այնպես, ոչ մի քննադատության չի դիմանում **Զ. Ճիճինաձեի** (Հարավային Վրաստան, 14) բառերը, իբր, «Հաղբատի եկեղեցին....Վախտանգ Գորգասալն է կառուցել», բայց «այսօր հայերը զավթել են, այն իրենց սեփականությունն են համարում, թե, իբր, հայոց թագավորներն են կառուցել, սակայն իզուր», քանի որ «հայերը այս եկեղեցին զբաղեցրել են *տասնհինգերորդ* (sic՝ Լ. Մ-Բ.) դարից հետո, երբ այստեղ վրացիները սկսել են նվազել»: Կամ էլ, իբր, «Սանա[հ]նի տաճարը, վրացիների թագավորների կողմից կառուցված, մինչև այսօր պահպանված, այժմ նրան տիրել են հայերը, և հայոց պատմությունն էլ իր որդիների սեփականություն է համարում, սակայն սա ճիշտ չէ», քանի որ «վրաց տոհմի վերացման պատճառով ինչ պատահեց Հաղբատի հետ, այն էլ պատահեց Սանահնի տաճարին» (sic): Հետաքրքիր է, որ վրաց լեզվով վրաց արքաների հրովարտակներ մեզ հասել են միայն Հաղբատի մասին, այն էլ ԺԶ-ԺԷ. դարերի [(**Է. Թաղաիշվիլի**, საქართველოს სიძველენი (Վրաստանի հնությունները), I Տփղ., 1889, էջ 433 et pass, հմմտ, Մ. **Ջանաշվիլու** զեկուցումը Ахпатский монастырь и его документы на грузинском языке, Ամփոփում.- Изв. Кавк. Отд. И. Моск. Арх. О-ва, т. I, Тфл., 1915 стр. 2. прот. № 67):

[22] Այսինքն՝ հոգևոր տեր (հմմտ. Description, 139-140, n. 2, **Լ. Մելիքսեթ-Բեկ**, Նյութեր, 95, ծնթ. 2, **Նույնի**՝ Վախուշտիական «Իշխնուտրուկի» մասին, «Սախստորիո մոամբե», 1924, № 2, էջ 229): * Մինչեւ ԺԸ. դ. վերջ «Հոգեւոր տէր» կոչում էին Ամենայն Հայոց կաթողիկոսին, ինչպէս այժմ՝ «Վեհափառ» - Գ. Տ-Վ.:

[23] Պետք է լինի՝ վանք:

[24] Այս տեղեկությունը, այնպես, ինչպես ցուցմունք է տալիս Սանահնի 40 զոհասեղանի մասին (**Գիւտ Աղանեանց**, Դիւան հայոց պատմութեան, Ժ., Տփղ., 1910, էջ 372), անշուշտ, իրական փաստերի վրա պետք է հենված լինի, որը և իրազեկ կուլտուրայի մնացորդներն էլ են հաստատում: Հմմտ. մեր կարծիքը այս երևույթի

քառասունքը[25] են կատարում: Յաղբատի այս եկեղեցին այժմ այնպես փառահեղ չէ, ինչպես վաղ ժամանակներում էր: Այստեղ Վրաստանի թագավորի կամքով նստում էր եպիսկոպոսը[26], հայերի գրությամբ՝ էջմիածնի հասարակության հոգևոր տիրոջ՝[27] կաթողիկոսի (համաձայնությամբ), և նրա ծխականները Քարթլիի բնակիչ հայեր էին: Նրանց պատմելով՝ Յաղբատը և Սանահինը՝ որպես գյուղեր, նաև փառահեղ գմբեթավոր եկեղեցիները կառուցվել են 961 թ.[28] Աշոտ Երրորդ (sic) Բագրատունու՝ Ողորմած կոչված, անունու՝ Խոսորովանույշի կողմից:

*Հաղբատը և Սանահինը միմյանցից անբաժան հիշատակվում են «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» և Գրիգոր Տղայի նամակագրության մեջ, որոնցից մեկը, ինչպես տեսանք առաջին գլխում, վերնագրված է՝ «Թուղթ* վարդապետացն Յայոց հիւսիսային կողմանց, *որ ի Հաղբատ և ի Սանահին, առ պատուական կաթողիկոսն տէր Գրիգորիոս»: Սակայն Գրիգոր Տղան իր պատասխանում հանդիմանում է «Հայոց վարդապետներին», նրանց, որ «ի Սանահի՞նն խօսեցաւ, եթէ ի Հաղբատ հրապարակեցաւ* <*տպգրկ.՝ հրատարակեցաւ*>[29], *կամ «ոչ է Հաղբատեցի, կամ Սանահնեցի»*[30] *լսվում է Գրիգորի մի կշտամբանքում՝ ուղղված նույն վարդապետներին:*

Կիրակոս Գանձակեցին, *նկարագրելով Զաքարիա Երկայնաբա-*

վերաբերյալ «քառասունն»: Л. Меликсет-Беков, О междоусобице в Тифлисе в 1197 году по поводу Кривой пасхи.- Изв. КИАЛ, т. III, стр. 52-55:

[25] Յայ.՝ քառասունք = сорокоуст.

[26] Պետք է լինի՝ եպիսկոպոս, եթե, իհարկե, այստեղ նկատի չի առնվում Յաղբատի կամ Աղվանքի առանձնացած կաթողիկոսը:

[27] Տե՛ս վերը՝ ծնթ. 22:

[28] Ինչպես երևում է՝ հիմնված է Վարդանի տեղեկության վրա (տե՛ս այստեղ՝ վերը, ծնթ. 16):

[29] Թուղթ ընդհ., 437, Նամականի, 58:

[30] **Արշակ Տէր-Միքելեան**, Միջին դարերի կաթուղիկոսների ծգտումները, 78:

*զուկի որդու՝ Շանշեի օրոք Սանահնի և Հաղբատի միջև տեղի ունեցած վիճաբանությունը այն պատճառով, որ Հաղբատի վանահայր Հովհաննեսը «չինեաց բերդ մի գեղեցիկ ամրագոյն պարսպօք մէջ ընդ Հաղբատ եւ ընդ Սանահինն» «չինեաց բերդ մի գեղեցիկ ամրագոյն պարսպօք մէջ ընդ Հաղբատ՝ և ընդ Սանահինն*[31]*: Վասն որոյ գժտութիւն ընդ երկու մեծամեծ վանքերն եղեւ, որպէս թէ ի հողոյ Սանահնին իցէ. եւ վրէժխնդիր եղեւ իշխանն Շահնշահ՝ որդին Զաքարէի, Սանահնին, զի հայրն նորա անդ թաղեալ էր, եւ իւրեանց սեպհական համարէին. զի Հաղբատ ի Վրաց թագաւորացն հաշուի էր»*[32]*:*

*Հաղբատի և Սանահնի հիմնադրման հարցը վերջնականապես վճռված չէ: Ավելի ճիշտ՝ այս հարցը այժմ էլ նույն վիճակում է, ինչպես մեկ կամ կես դար առաջ, երբ Հովհաննէս Դրիմեցին իրավացիորեն եզրակացնում էր.* "На счет первоначального построения Ахпата, так же Санагина, разноречиво повествуют древние историки, по трем обстоятельствам. а) по месту и области, где монастыри построены, и как они в древности назывались, б) по времени, когда построены, и г) кем первоначально основаны»[33]*:*

*Հաղբատ-Սանահնի* նախասկզբնական հիմնադրման *հարցը, մեր կարծիքով, վճռել կարելի է միայն և միայն հայ պատմիչների տեղեկությունների հիման վրա, որոնցից վճռորոշ նշանակություն, ինքնին պարզ է,* Ասողիկին *և* Սամուել Անեցուն *պետք է տալ: Նրանց չի հակասում նաև* Վարդանի *«Աշխարհագրության» տեղեկությունը, որտեղ տարեթվի տարբերությունը միայն միավորի մեջ է, երևի այն պատճառով, որ վերջինիս միավոր արտահայտող թիվը, հնարավոր է, պատահաբար բաց է թողնված (ՆԺ[Զ]. 41[6]-ի փոխարեն՝ ՆԺ[-] 41[-] 1, որը 967-ի փոխարեն 961 է տալիս: Ամեն դեպքում, եթե Սանահինը, ըստ* Սամուել Անեցու, *Հաղբատից տասը տարի շուտ է հիմնադրվել, պարզ է, որ նրանց սկզբնական կառուցման տարեթիվը պետք է սահմանել՝* Սանահինի համար *957 թվականը, իսկ* Հաղբատի համար՝ *967 թվականը*[34]*:*

---

[31] Կիրակոս, 92:

[32] Նույն տեղում:

[33] Յովհ. Դրիմեցի, 9:

[34] Որ Սանահինը Հաղբատից շուտ է հիմնադրվել, այս մասին է խոսում նաև ժողովրդական ստուգաբանությունը, որտեղ Սանահինը «սա նա հին է» հիշատակված, այսինքն՝ այս (Սանահինը) **նրանից** (Հաղբատից) **հին** է: Ժողովրդական ստուգաբանությունից բացի, գիտական գրականության մեջ գոյություն ունի ակադ. **Մ. Բրոսեի** (Յովհ. Դրիմեցի, Appendice, 68) նույն այս բառի բացատրությունը՝

*Ինչ վերաբերում է* այժմյան կառույցներին, *մասնավորապես գլխավոր եկեղեցուն կամ կաթողիկեին, նրանց վերաբերյալ հետևյալը պետք է ասել:*

*Հաղբատի գլխավոր եկեղեցու (Սուրբ Նշան) խնդիրը լուծվում է դրսից պատի մեջ տեղադրված՝ շինարար արքաների չարձանագրված քանդակներով[35], կապված հյուսիսային պատի երկու արձանագրության հետ, որոնցից մեկը պատուհանի վերևում է, իսկ մյուսը՝ դռների: Առաջինում, ի միջի այլոց, ասված է. Ի «Նխ. թուակ[անութեան] Սիմեւոն հայրը և Տիրանուն երեց շինեցաք զեկեղեցիս [վասն] փրկութեան Սմբատա և Գուրգենա[36] 440 <=991> թվականին»: Սմբատը և Գուրգենը Անիի թագավորի՝ Աշոտ Ողորմածի որդիներն են, որոնցից երկրորդը (Գուրգենը) ավանդաբար, այսպես կոչված, Կյուրիկյանների (Լոռի-Տաշիրի) դինաստիայի հիմնադիրն է համարվում[37]: Երկրորդ արձանագրությունը նույն տաճարի կամ կաթողիկեի («զս"բ կաթողիկէ») 465 = 1016 թվականի նորացման մասին է խոսում[38]: Հետևաբար, 991 թվականին պետք է լինեն Հաղբատը կառուցող թագավորների չարձանագրված փորագրությունները, որտեղ ներկայացված են Բագրատունյաց Աշոտ «Ողորմածի» որդիները՝ Գուրգենը և Սմբատը:*

*Սակայն Սանահնի գլխավոր եկեղեցու (Ամենափրկիչ) կառուցման հարցը վճռվում է միայն և միայն նույն եկեղեցու արևելյան պատի մեջ դրսից տեղադրված՝ կառուցող թագավորների քանդակներով, որոնց վրա գրված է «[Կ]որիկէ թագաւոր, Սմբատ <իրոք՝ Սմպատ> թագաւոր»[39]: Այս Կորիկէ-Կյուրիկեն և Սմբատը (Սմպատ) անպայման Կյուրիկյանների դինաստիայի Կյուրիկեն և Սմբատը*

---

«սան հին» antique chaudire, այսինքն՝ **հին** քարայր է: Սրան համաձայն է **Մ. Ջանաշվիլին** (**Վախուշտիի** Աշխարհագրության հրատ. էջ 118): Հաղբատ անվան նշանակությունն անբացատրելի է:

[35] **Н. Марр**, О раскопках и работах в Ани летом 1906 года [ТПХ.], Спб., 1907, стр. 20-21 и рис. 16 рис.(стр. 21).

[36] **Ջալալեանց**, Ա., 79 = **Յովհ. Դրիմեցի**, 11 = **Կոստանեանց**, 10 (գոյություն ունեցող հրատարակություններում այս մակագրության բովանդակությունը խեղաթյուրված է, մասնավորապես *Գուրգենա*-յի փոխարեն ընթերցված է՝ Գուրգեայ):

[37] Սա հնագույն արձանագրությունն է Հաղբատում (հմմտ. "Изв. Кавк. Отд. И. Моск. Арх. О-ва", в т. III, 1913, стр. 75, прот. № 64):

[38] **Ջալալեանց**, Ա., 68 = **Յովհ. Դրիմեցի**, 3-4 = **Երզնկեան**, 45 = **Կոստանեանց**, 15:

[39] **Н. Марр**, Санаhинская скульптурная группа ктиторов.- ХВ, I. 1912, стр. 350, и табл. XX (գոյություն ունեցող այլ հրատարակություններում երկրորդ անվանումը սխալմամբ նշված է՝ Սմբատ):

*պետք է եղած լինեն[40], որոնց Բագրատ Դ. 1065 թվականին Քուեշի Հովտում պարտության մատնեց, և որոնք հիշատակվում են Սանահնի 512 = 1063 թվակիր արձանագրության մեջ[41]: Հետևաբար, մինչև 1065 թվականը պետք է փորագրված լինեին Սանահինը կառուցող թագավորների արձանագիր քանդակները, որտեղ ներկայացված են Կյուրիկյանների Դավիթ «Անհողին» կոչված թագավորի որդիները՝ Կյուրիկեն և Սմբատը:*

*Այսպիսով, մեր դիտարկումը Հաղբատ-Սանահնի վանքերի մասին, հանգեցրեց եզրակացության, որ այս վանքերի գլխավոր եկեղեցիների կառուցումը պետք է վերագրել տարբեր ժամանակների և տարբեր անձանց. Հաղբատինը՝ 991 թվին, Բագրատունյաց Աշոտ «Ողորմածի» որդի Սմբատին (Սմբատ Բ. Շահնշահին) և Գուրգենին (Կյուրիկե Ա.), իսկ Սանահնինը՝ ԺԱ. դարի կեսին. ոչ շուտ՝ 1048 և ոչ ուշ՝ 1065 թվականներից, Կյուրիկյանների, այսպես կոչված, Դավիթ «Անհողինի» որդի Կորիկեին (Կյուրիկե Բ.) և նրա եղբայր Սմբատին, այլ կերպ ասած՝ «Բագրատունիները» որպես այդպիսիք, բացարձակապես չեն մասնակցել Սանահնի գլխավոր եկեղեցու կառուցման աշխատանքներին, այնպես, ինչպես «Կյուրիկյանները» ծառայություն չունեն Հաղբատի գլխավոր եկեղեցու շինարարության գործում, որովհետև մի դեպքում մենք գործ ունենք մի խմբի՝ Սմբատ և Գուրգեն Կյուրիկյանների հետ, իսկ երկրորդ դեպքում՝ բոլորովին այլ խմբի՝ Կորիկե-Կյուրիկեի և Սմբատի հետ[42]:*

[40] Հմմտ. **Յովհ. Ղրիմեցի**, էջ 51, ծնթ. 4, **Ղ. Մովսէսեան**, ճշ. աշխ. 32-33:

[41] **Ջալալեանց**, Ա., 32 = **Յովհ. Ղրիմեցի**, 49 = **Կոստանեանց**, 24:

[42] Հաղբատ-Սանահնի մասին գրականությունը տե՛ս. **Ջալալեանց**, Ա., 9-52 (Սանահին), 53-80 (Հաղբատ), **[А. Муравьев]**, Грузия и Армения, II, 289-312 (Лори, Санагин, Ахпат), Նկարագրութիւն Սանահնի.- «Մեղու Հայաստանի» 1860 №№ 1, 2, 3, **Յովհ. Ղրիմեցի**, 1-46 (ч. I, О монастыре Ахпатском), 47-67 (ч. II, О монастыре Санагинском), **[А. Ерицов]**, Ахпатский монастырь.- "Кав. Старина", № 2 (1872), 49-52, № 3 (1873), 83-88, **Երզնկեան; Ի. Յարութիւնեան**, Սանահին.- ԱՀ Գ., 1898, էջ 273-275, **Գիւտ Աղանեանց**, Հնից-նորից, Հնախուզական ուղևորութիւն. Տփղ., 1900, էջ 7-21 (Զ. մի պտոյտ Հաղբատի շուրջը): **Լալայեան**, 378-395 (Սանահնի վանքը), 396-419 (Հաղբատ), Եր[ուանդ] Ս. **[Տէր-Մինասեանց]**, Հաղբատ և Սանահին.- Ա, 1901, էջ 271-277, 338-344, Н. М[арр], Санаhинская скульптурная группа ктиторов.- ХВ, I, 350 и табл. XX, Н. М[арр], Фресковое изображение парона Хут'лу-буги в Ахпате (hАг'бате).- ХВ I, 350-353, **Գաբրիէլ Յովհաննիսեանց-Քաջբերունի**, Սանահնի և Ղազախ գաւառի արձանագրութիւնները, հաւաքեց և ճշտեց **Սմբատ Տէր-Աւետիսեան**, 1903-1908 թ.- «Տեղեկագիր» Թիֆլիսի վանաց աւագ եկեղեցու կրօնապատմական թանգարանի մնայուն յանձնաժողովի, 1908 ապրիլ 5 - 1910 ապրիլ 5, Տփղ., 1910, էջ 25-99: **Ս. Տէր-Ավետիսյանի** կողմից հավաքված և ճշտված՝ Հաղբատ-Սանահնի արձանագրությունների ամբողջական ժողովածուի առաջին մասը, որը բովանդակում է Սանահինը, երկար ժամանակ է, ինչ տպագրվում է Միութենական Գիտական Ակադեմիայի կողմից:

*Երկու վանքն էլ՝ Հաղբատն ու Սանահինը, բազում կառույցներ են պարունակում, որոնցից հատուկ ուշադրության են արժանի՝ այսպես կոչված «Գրատունք»-ը*[43]*, դահլիճանման շինություններ՝ պատի պահարաններով, որոնք հետագայում վերածվեցին մատաններ: Սրանք գրապահոցներ են, ի դեպ, հիշատակված Հովհաննես Սարկավագի «Սաղմոսագրքի» հավելվածում՝ «մտեալ ի յարկեղս գրեանցն՝ որ ի Հաղբատ»*[44]*: Սրանց մասին է խոսվում նաև Հաղբատի 1179*[45] *և Սանահնի 1214*[46] *թվականների արձանագրություններում (տե՛ս նկ. № 1):*

*Հաղբատ-Սանահինը հռչակված էին իրենց քարանձավներով, որոնց մեջ հին ժամանակներից ի վեր պահպանվում էին գանձեր և, ի միջի այլոց, նաև ձեռագրեր: Հաղբատում հայտնի է՝ «Ծակ-քար», «Ջառնի էր» և «Պարնի էր», իսկ Սանահնում՝ «Աչարենց էր»*[47]*: Սրանք այն քարանձավներն են, որոնց հետ կապված է Հովհաննես Սարկավագի հետ պատահած հայտնի միջադեպը, որտեղ ասված է, որ նա՝ Հովհաննեսը, իր մերձավորների հետ (Դավիթ Ալավկա որդու և Գրիգոր Թոքակերի որդու) միասին հաճախ դուրս էր գնում Հաղբատից, ըստ* Կիրակոս Գանձակեցու՝ *[մեկ] «յայրն, ուր գրեանն էին*[48]*», որտեղ* Ղուկաս Ինճիճյանի *(ԺԸ. դ.) խոսքերով՝ «յորում նախնիք վանաց պահէին զմատեանս առ ահի*[49] *ասպատակած լեռնականացն, որոնց մասին* Ստեփանոս Օրբելեանի *«Սյունիքի պատմության» վրացերեն թարգմանության հիշատակարանում ասված է. «Այս նամակը իսկակ[անը] սկզբնական տեսքով* գտանք Սանահինի քարայրում»[50]*:*

*Քանի որ ամբողջ ԺԹ. դարում այս քարանձավներից բազմիցս*

---

43 **Լալայեան**, 388-389 (Սանահինի), 407 (Հաղբատի):

44 **Ոսկեան**, Մատ. քննութ., 34:

45 **Յովհ. Ղրիմեցի**, 16:

46 **Նույն տեղում**, 55:

47 «էր»-ը գրական նույն «այր»-ն է, որ նշանակում է՝ անձավ, քարանձավ, քարայր: Այն հիմք է հանդիսանում համարյա Հայաստանի բոլոր քարայրերի անվանման համար: **Այրավանք**, **Քվաբայր-Քոբայր**, **Հոռոմայր** (հմմտ. **Լ. Մելիքսեթ-Բեկ**, Քոբեր, 60-61): Այսպիսի գաղափար է բովանդակում **Մ. Բրոսեի** կարծիքով, ինչպես տեսանք (տե՛ս վերը, ծնթ. 34), նաև Սանահինի անվանումը (Սան)+(հին), այսինքն՝ **քարանձավ հին**:

48 **Կիրակոս**, 107-108:

49 **Ղուկաս Ինճիճեան**, Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի, մս. Ա., հտր. Ա., Վնտ., 1805, էջ 279:

50 Տե՛ս նախկին եկեղեցական թանգարանի (ԺԸ. դ.), ձեռ. Դ^{մր} 864, էջ 31ա:

*քարացած ձեռագրեր կամ նրանց կտորներ են հայտնաբերել, ա) այդ պատճառով գիտական շրջանակներում իրավացիորեն բարձրացավ այս քարանձավների ամբողջական ցուցակագրման և ուսումնասիրման հարցը, անհրաժեշտության դեպքերում (հին ձեռագրերի հայտնաբերման նպատակով)՝ նաև պեղումներ կատարելու*[51]*: Վերջին անգամ այդ քարանձավներում 1899-1900 թթ. փորձնական փնտրտուք իրականացրեց* Գյուտ Աղանյանցը*: Նա Հաղբատի, այսպես կոչված, «Ծակ-քար» և «Պարնի էր»-ի անձավներից ձեռագիր պատառիկների ամբողջ հավաքածու հայտնաբերեց, որոնք 1912-1913 թթ. հանձնեց Գիտությունների Ակադեմիայի Ասիայի թանգարանին*[52]*: Մյուս կողմից՝ Հաղբատը և Սանահինը հռչակված են իրենց պանթեոններով: Առավելապես հետաքրքիր է Հաղբատի պանթեոնը (տե՛ս № 2 նկարը), որը գտնվում է «գրապահոցի» և զանգակատան միջև, և որտեղ թաղված են «Հայոց հյուսիսային կողմանց վարդապետների» խմբակից «սոփեստոս» Հովհաննես Սարկավագը, Դավիթ Քոբայրեցին, Վարդան Հաղբատեցին և Թորոսը*[53]*, իսկ այս միջավայրից դուրս անձանցից՝ Խոսրովը, ինչպես նաև, այսպես կոչված, մայրավանքում՝ «սոփեստոս» Ստեփանոսը, Հովհաննեսը և Գևորգը: Սանահնում և այլևայլ տեղերում գտնվում են գերեզմաններ «Հայոց հյուսիսային կողմանց վարդապետների» միջավայրից՝ Գրիգոր Տուտեորդու, Գրիգոր Աբասաորդու, Դիոսկորոսի և «փիլիսոփա» Ներսեսի:*

---

[51] **Գիւտ Աղանեանց**, Դճից-Ճորից, 11-21, **С. Тер-Аветисьян**, Важность, археологического исследования пещер Ахпата и Санаина.- "Изв. Кавк. Музея", т. IX, в. 2, 1915, стр. 130-134 (հմմտ. "Изв. Кавк. Отд. И. Моск. Арх. О-ва" в. III, стр. 52, прот. № 55):

[52] Տե՛ս Изв. АН, 1913, стр. 213, прот. зас. 16. I. 1913, հմմտ. **Н. Марр**, Отчет Анийского Музея древностей за 1915 год "Анийские древности", II, Пгр., 1917 стр. 35, հմմտ. **С. Тер-Аветисьян**, նշ. աշխ., стр. 133: Քարանձավներում հայտնաբերած ձեռագրերի պատառիկների նկարագրությունը տե՛ս **Գիւտ Աղանեանց**, նշ. աշխ., 12-16, 17-18:

[53] Դենց այստեղ է նկարագրված Դովհաննես Երզնկացու կամ Ծործորեցու («Պլուզ» կոչված) գերեզմանը: Սակայն սա իրականությանը չի համապատասխանում, քանզի այս գերեզմանի արձանագրությունը փորագրված է 1824 թվականին, եփրեմ Կաթողիկոսի հրամանով (**Յովհ. Դրիմեցի**, 41 = **Երզնկեան**, 53 = **Լալայեան** 308), մինչև այդ ժամանակ, ինչպես վկայում է **Մինաս Բժշկեանցը** (Ճանապարհորդութիւն ի Լեհաստան. եւն., Վնտ., 1830, էջ 80 [§.126], այն «անգիր» է եղել: **Մ. Օրմանյանը** (Ազգապատում, էջ 1798-1800 [§ 240], հիմնվելով այն փաստի վրա, որ Դովհաննես Պլուզն իր կյանքի վերջին տարիները անցկացրել է Ծործորում և Երզնկայում, համամիտ է **Գարեգին Սրվանձտյանի** (Թորոս Աղբար, Բ., 50) կարծիքին, համաձայն որի՝ նա պետք է թաղված լինի Երզնկայի Սուրբ Նշան վանքում:

* * *

«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» թղթերում Հաղբատ-Սանահնից հետո հիշատակված են Հաղարծինը, Խորակերտը և Գետիկը:

Հաղարծինը, ԺԲ. դարի երկրորդ կեսի և ԺԳ. դարի իր շինություններով[54], Դիլիջանի մոտակայքում է և հայտնի է որպես Խաչատուր Տարոնացու գործունեության վայր:

Խորակերտը, Վախուշտիի քարտեզով՝ Խվարակերտ (ֆրանսիական հրատարակության մեջ սխալմամբ՝ Khwaraceiti), Շուլավեր գետի ակունքում է՝ Աղքյորփի գյուղի մոտ: Եկեղեցին կառուցվել է ըստ Ս. Ջալալյանց ի՝ 721=1272 թվականին, սակայն ըստ Ե. Լալայանի՝ 701=1252 թվականին[55] և հայտնի է որպես Մխիթար Խորակերտցու գործունեության վայր:

Գետիկը (Նոր Գետիկ) կամ [Մխիթար] Գոշավանքը (Գօշայ վանք) Դիլիջանի շրջանում է՝ ԺԲ. դարի Բ. կեսի և ԺԳ. դարի շինություններով[56], և հայտնի է որպես Մխիթար Գոշի գործունեության վայր, որոնցից երկրորդում է գտնվում նրա գերեզմանը:

Մյուս օջախներից, որոնք հիշատակված չեն վերոհիշյալ թղթերում, նշանակալից են՝ Ձորոգետի հովտում՝ Հոռոմայրը և Հովհան-

---

[54] **Ղուկաս Ինճիճեան**, Ստորագրութիւն հին Հայաստանեայց, Վնտ., 1822, էջ 312-313, **Շահխաթունեանց**, Բ., 370-371 (§ 604): **Ջալալեանց**, Ա., 131-136: **Քաջիկեան**, Ճանապարհորդական յիշատակարան.- «Արձագանք», 1888, № 8, էջ 101-104, **Բարխուդարեան**, Արցախ, 364-370, **Մեսրոպ Տէր-Մովսիսեան**, նշ. աշխ., ԱՀ, ԻԵ., 61-74: **Л. Меликсет-Беков**, Одна из надписей hАг'арцинского манастыря.- ХВ, т. III, 1913, стр. 197-198, հմմտ՝ **Տ. Ինասարիձե**, «Հաղարծնի վանքը», «Իվերիա», 1895 թ., № 220 (այս հոդվածում հեղինակը, ի միջի այլոց, հայերի Հաղարծին վանքը, չգիտես ինչու, համեմատում է Մեսխեթիի Սաֆարի լավրայի հետ. «Առաջին հայացքից այս վանքը.- ասում է նա Հաղարծնի մասին.- հիշեցնում է Սաֆարի վանքը, միայն մեծ տարբերությամբ, որ Սաֆարի վանքի ճարտարապետությունը վերականգնված է, ամբողջովին պահպանված է և մաքուր է: Հաղարծնի վանքի ճարտարապետությունը բավականին ցածր մակարդակի է, պատերն այստեղայնտեղ քանդված են»):

[55] **Վարդան**, 90.- **Ղ. Ինճիճեան**, Ստորագրութիւն. նյն., 131-132, 313-31: **Ջալալեանց**, Ա., 87, **Լալայեան**, 425-426:

[56] **Վարդան**, 140, **Կիրակոս**, բազմաթիվ տեղերում. **Շահխաթունեանց**, Բ., 367-370 (§. 603): **Ջալալեանց**, Ա., 136-145, **Քաջիկեան** նշ. աշխ.- «Արձագանք», 1888, № 9, էջ 116-118: **Մակար Բարխուդարեան**, Արցախ, 349-356: **Իսահակ Յարութիւնեան**, Գոշայ վանք կամ Նոր Գետիկ.- ԱՀ, 1903, էջ 5-38: **Յով. Սպենդիարեան**, Մխիթար Գօշի վանքը (ամառային յիշողութիւններից).- «Մշակ» 1911 թ. №№ 16, 17, 18, **Х. Кучук-Иоаннесов**, Сведения и заметки о старинных армянских рукописях и армянских надписях, находящихся в пределах России.- "Древности Восточные", т. IV, Москва, 1913, стр. 16-24 (V. Надписи в армянском монастыре Гошаванк).

*նաև Օձնեցու վանքը, առաջինը գտնվում է Ս. Իգահատի[57], իսկ երկրորդը՝ Ս. Արդվիի մոտակայքում, որի օջախների վերականգնման համար ԺԷ. դարի վերջում հոգում էր վրացի Հերակլ Բատոնիշվիլու որդին՝ Գիորգին[58], իսկ հին Ուտիք-Կանգարք-Գարդաբանիի (այժմյան Ղազախի և Գյանջայի գավառների) սահմաններում՝ Խորանաշատը[59], որպես Հովհաննես Վանականի (Տավուշեցու) գործունեության վայր[60], Դասնոյը՝ որպես Մխիթար Գոշի «Դատաստանագիրք Հայոցի» գրելու վայր, Խամշին[61], որպես Աղվանքի կաթողիկոսարանի հնագույն կենտրոն և Մակարավանքը[62]:*

* * *

*Վերոհիշյալ բոլոր օջախները, ինչ խոսք, «հակաքաղկեդոնական» ուղղության էին: Բայց նրանց կողքին, քաղկեդոնականության հողի վրա, ստեղծվեցին նաև «քաղկեդոնական» ուղղության մի քանի օջախներ, որոնցից ԺԱ-ԺԳ. դարերում հայտնի էին Հնէվանքը, Պղնձահանքը, Ոսկեպարը և այլն:*

Քոբերը *կամ հայերեն՝* Քոբայրը,[63] *և* Յնէվանքը[64], *որոնք նշված են*

---

[57] Միասին են հիշատակված Վարդանի «Պատմութեան» (**Վարդան**, 129) և «Աշխարհագրութեան» մեջ (**Զ. Maint-Martin**, նշ. աշխ., II, 421), տե՛ս նաև **Ջալալեանց**, Ա., 92-102:

[58] **Գիւտ Աղանեանց**. Դիւան հայոց պատմութեան, Դ., 1898, էջ 240-242: Յմմտ. Լ. Մ-Բ. «Յայոց պատմութեան արխիվ».- «Վրաստանի արխիվ», II, 1927, էջ 105:

[59] **Կիրակոս**, 311, 333, **Ղ. Ինճիճեան**, Ստորագրութիւն, 313-314, **Քաջիկեան**.- «Արձագանք», 1888, № 7, էջ 87-89, **Բարխուդարեան**, 322-324 (ինքնատիպ է ինքը՝ անվանումը՝ «Խորանաշատ», որ նշանակում է՝ բազմախորան, բազմազմբեթ):

[60] **Ղ. Ինճիճեան**, Ստորագրութիւն, 314:

[61] **Բարխուդարեան**, 309-310. «Խամշի անվանումը հիշեցնում է Կախեթից դուրս գտնվող հայտնի գյուղի «Խամշի» անվանումը», որի հետ, անշուշտ, ինչ-որ կապ պետք է լինի, ամեն դեպքում զարմանալի է, որ այս Խամշիի մոտակայքում հայտնի է նաև «**Կածարեթ**»-ը, ճիշտ այնպես, ինչպես Կախեթից դուրս Խաշմիի մոտակայքում է «**Կածարեթ**»-ը Սամեքիի վանքով հանդերձ: Երկու անվանումն էլ, ինչպես «**Կածարեթ**»-ը (**Վարդան**, 145, **Կիրակոս**, 155), այնպես էլ «Խաշմի»-ն (**Կիրակոս**, 472, 180-190, 263, 275, 276: **Մխիթար**, 65) պարզ չեն: Նրանց մասին առայժմ տե՛ս **Լևոն Մելիքսեթ-Բեկ**, Կածարեթ, «Սախստորիո մոամբե» 1924, № 2, էջ 160-161:

[62] **Կիրակոս**, 204, **Ջալալեանց**, Ա., 147-154, **Քաջիկեան**.- «Արձ.», 1888, № 10, էջ 131-134:

[63] ლ. მელიქსეთ-ბეგი,„ქობერი და მისი სომხური და ქართული წარწერები“,„ტფ. უნ. მოამბე“, VII, 60-63, 1927 (**Լևոն Մելիքսեթ-Բեկ**, Քոբերը և նրա հայերեն ու վրացերեն արձանագրությունները.- «Թիֆ. համալս. բանբեր», VII, 60-73:- Յենց այնտեղ է այս օջախի մասին եղած գրականությունը):

[64] **Л. М. Б.**, Об экспедиции в Лори-Ташир и по ущелью Машавер-и летом 1926 г.- Изв. КИАН, т. IV, Тфл., 1926, стр. 135-136, հմմտ. **Ջալալեանց**, 436:

*նաև* Վախուշտիի *քարտեզի վրա, տեղադրված են Ձորոգետի հովտում. առաջինը՝ Սանահին գյուղի և Քոլագերանի միջև, նույնանուն կիսակայարանի և գյուղատեղիի մոտակայքում, Ձորոգետի = Դեբեդչայ գետի ձախ ափին, իսկ երկրորդը՝ Քոլագերան գյուղից Լոռի տանող ճանապարհից և Ձորոգետից = Կամենկա գետից աջ (որտեղ այժմ, այսպես կոչված, Ձորահէկն է կառուցվում): Առաջինը «Քոբեր» (Քոբայր) է կոչվում այն պատճառով, որ նրա հին ամբողջությունը կոմպլեքսը ներկայացնում էր քարայր վանք (Քոբայր-Քւաբայր-Քվաբ+այր, իսկ մյուսը՝ Հնէվանք, այն պատճառով, որ եղել է «քաղկեդոնացիների» վանք (Հնէվանք, նշանակում է՝* հույների *վանք):*

*Քոբերը, ինչպես մենք արդեն պարզաբանել ենք*[65]*, նախապես «հակաքաղկեդոնականների» մենաստան է եղել (1153, 1185 և 1186 թվականների հայկական արձանագրությունները հաստատում են, որ փոքր եկեղեցին կառուցվել է 1153 թվականին), բայց հետագայում այն հանդես է գալիս որպես «քաղկեդոնականների» վանք (1292 և 1295 թվականների վրացերեն արձանագրությունները հաստատում են, որ մնացած շինությունները հենց այս ժամանակի են): Սակայն Հնէվանքը կառուցված պետք է լինի ոչ ուշ, քան ԺԲ. դարի սկզբին, քանզի գմբեթի սյունագլխի (կոզմիդի) վրացերեն ասոմթավրուլի (երկաթագիր) արձանագրությունը հուշում է, որ այն 1128 թվականից հետո նորացրել է մեծն Հովհաննես Օրբելու որդի Սմբատ ամիրսպասալարը*[66]*, սակայն ԺԲ–ԺԳ. դարերում կրկին վերանորոգվել է Երկայնաբազուկների կողմից:*

*Այս երկու վանքերի նկարագրությունները պահպանվել են վրաց գրականության մեջ, դրանց մասին մանրամասնորապես խոսում են* Վախուշտին *և նրա հետևորդը՝ 1837 թվի «Նկարագրություն»-ի* Անանուն *հեղինակը:*

Վախուշտիի «աշխարհագրություն»

[Յաղբատից և Սանահնից] վերև գտնվում է մի փոքրիկ եկեղեցի: Քոբերի նման փառահեղ: Տիրացել են հայերը: Դրանից արևմուտք գոյություն ունի Յնէվանքը իրա

Անանուն հեղինակի «նկարագրություն»

Յաղբատից վերև գտնվում է կառուցված մի փոքրիկ վանք՝ Յնէվանք անունով, որ տիրել են հայերը: Այստեղ կան (փորված) բազմաթիվ քարայրներ, որոնց ներսում՝

---

[65] Տե՛ս վերը՝ ծնթ. 63:

[66] Տե՛ս վերը՝ Գլ. Դ., ծնթ. 25:

շալի Բերդուջ (sic) գետից վերև: Նույնպես տիրացել են հայերը: Այստեղ՝ բարձր ժայռի մեջ, կան բազմաթիվ քարայրներ, և այդ քարայրների մեջ կան բազմաթիվ հին գրքեր, մինչդեռ մարդկանց բարձրանալու համար անմատչելի են[67]:

այդ քարայրների մեջ, կան բազմաթիվ հին գրքեր, և դրանց մոտ բարձրանալու համար[68] մարդկանց համար ճանապարհ չկա, ուստի և դրանք անօգտագործելի են[69]:

Պղնձահանք *անվամբ Հայտնի է երկու օջախ. մեկը այժմյան Ախթալան՝ Ձորոգետի Հովտում*[70]*, ԺԱ-ԺԲ. դարերի շինություններով, իսկ երկրորդը՝ Հին Բջնիի կողմերում (այժմյան Ծաղկաձորի կամ Դարաչիչակի մոտակայքում) ընկած Թայչարուխի այսպես կոչված, «Գյուրջիքիլիսա»-ն, (որ* վրացիների եկեղեցի *է նշանակում) ԺԲ-ԺԳ. դարի շինություններով, երկուսում էլ առկա են վրացերեն արձանագրություններ:*

Ոսկեպարը*, որ նշված է նաև* Վախուշտիի *քարտեզի վրա, գտնվում է Աղստևի = Աղստաֆայի Հովտում. ինչպես երևում է, դարձյալ ԺԲ-ԺԳ. դարերում է կառուցվել և զարդարված է որմնանկարներով ու վրացերեն արձանագրություններով*[71]*:*

[67] Description, 138, 140 = Մ. **Ջանաշվիլիի** հրատ, 4:

[68] **Լ. Մելիքսեթ-Բեկ**, Նյութեր Թիֆլիսի և «Սոմխիթի» հնությունների պատմության համար, էջ 95:

[69] [**А. Муравьев**], Грузия и Армения, II, 313-331; **П. Иоселиани**, Путевые записки от Тифлиса до Ахталы, Тфл., 1850, стр. 23-33, [**А. Ерицов**], Монастырь Ахтала.- "Кавк. Старина", №1 (1872), стр. 20-24, **Е. Такайшвили**, Грузинские надписи Ахталы.- СМК XXIX, 1901, стр. 138-145:

[70] **Շահխաթունեանց, Բ.**, 200-201, **Ղ. Ալիշան**, Այրարատ, Վնտ., 1890, էջ 258, 278-279, **Ե. Լալայեան**, Նոր-Բայազետի գաւառ.- ԱՅ, Ի., 1910, էջ 45: Այս վանքի մասին պատրաստվում են պրոֆ. Ակ. Շանիձեի հոդվածները, և մեր կողմից հավելյալ նամակներ (հմմտ. մեր զեկուցումը Միութենական Գիտությունների Ակադեմիայի Կովկ. պատմ.-հնագիտության ինստիտուտում 1925 թ. 14/XII հետևյալ վերնագրով՝ К вопросу о местоположении монастыря Медной руды):

[71] Այս տեղեկությունը ինձ հայտնել է **Մ. Տեր-Ավետիսյանը**, որը այցելել է Ոսկեպար 1926 թ. աշնանային ճամփորդության ժամանակ:

# ԳԼՈՒԽ Ջ.

## «ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄԱՆՑ ՀԱՅՈՑ ՎԱՐԴԱՊԵՏՆԵՐԻ» ԻՆՔՆՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԳԻՏԱԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

*«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» ինքնությունը երևան բերելը հնարավոր է տարբեր ճանապարհներով:*

*Նպատակին հասնելու համար առաջին հերթին պետք է նկատի ունենալ հենց այս վարդապետների թղթերը՝ ուղղված Գրիգոր Տղային, որ պետք է գրված լինեն Հաղբատում 1184-1185 թվականներին*[1]*: Նրանցում հիշատակված են՝*

«Բասիլ *եպիսկոպոս որ յարևելս հիւսիսոյ. վարդապետ,* Գրիգոր *Սանահնին, և հայր* Յօհաննէս. *վարդապետք մայրաքաղաքիս Հաղբատայ՝* Իգնատիոս, Պետրոս, Վարդան և Դաւիթ. Խաչատուր *վարդապետ Հաղարծնին.* Մխիթար *վարդապետ Խոռակերտայ. և միւս* Մխիթար *վարդապետ Գետկայ. և այլք աշակերտեալք ամենեքեան սրբոց կտակարանաց*»[2]*:*

*Կասկածից դուրս է, որ այս տեղեկությունը վերջնակետ պետք է ընդունել «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» ինքնությունն ի հայտ բերելու համար:*

---

[1] Քանի որ 1184-1185 թվականների նամականիում հիշատակված Մխիթար Գոշը «Գետիկցի» կարող էր կոչվել՝ հին Գետիկում բնակություն հաստատելու պատճառով, որը տեղի է ունեցել Թամարի թագադրումից (1184) հետո, մյուս կողմից՝ նրանում հիշատակված Բասիլ եպիսկոպոսը 1180 թվականի Հաղբատի արձանագրության մեջ (**Յովհ. Ղրիմեցի**, 5, = **Երզնկեան**, 33 = **Կոստանեանց**, 33) դեռևս որպես եպիսկոպոս չի երևում, իսկ 1185 թ. արձանագրության մեջ (**Յովհ. Ղրիմեցի**, 8 = **Երզնկեան**, 21, **Կոստանեանց**, 36) նա արդեն հիշատակված է որպես արքեպիսկոպոս, հետևաբար, նամակը գրելու թվականը պետք է սահմանափակվի *terminus a quo* 1184 թվականով և *terminus ad quem* 1185 թվականով: **Ներսես Ակինյանը** (Մատ. հետազ., 46) սա թվագրում է 1080 թվականով, թեև հարցական նշան է դնում: **Մաղաքիա Օրմանյանը** (Ազգապատում, էջ 1525 [§ 1043]) «հյուսիսարևելցի եպիսկոպոս»-ին անեցի է համարում, բայց քանի որ նամականին կազմելու գործում միայն «հյուսիսային կողմանց» հովիտների ներկայացուցիչներն են մասնակցել, իսկ Անիի և Շիրակի կողմերից՝ ոչ ոք, այդ իսկ պատճառով էլ Անիի քահանայապետի մասին այստեղ խոսք լինել չի կարող: Եվ **Մ. Օրմանյանի** սխալը, մեր կարծիքով, առաջացած պետք է լինի այն պատճառով, որ ԺԲ. դարի 80-ական թվականներին Անիում հայտնի է եղել մեկ այլ Բասիլ կամ Բասիլիոս «Բասիլիոս արքեպիսկոպոս թագաւորանիստ քաղաքին Անւոյ», տե՛ս. Թուղթ ընդհ., 274:

[2] Թուղթ ընդհանրական, էջմիածնի հրատարակություն, էջ 427, Երուսաղեմի, 308 = **Տաշեան**, Ցուցակ, 950: Այս տեղի մասին հմմտ. **Մ. Օրմանյանի** մեկնաբանությունը (Ազգապատում, էջ 1461-1462 [§ 1004]):

Ընդհանրապես «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» ինքնության պարզումը կարելի է կատարել հետևյալ երեք աղբյուրներով՝

1) ԺԱ-ԺԳ. դարերի հայ և օտար պատմիչների երկերով, 2) այլևայլ հավաքածուների ձեռագրերում տեղ գտած նյութերով, մասնավորապես՝ հիշատակարաններով, 3) տարբեր վանքերի պատերին արված փորագրություններով և մեզ հասած արձանագրություններով:

Ա. Պատմիչներից նախ և առաջ նշանակալի է ԺԲ. դարի առաջին կեսի գործիչ Մատթեոս Ուռհայեցին կամ Եդեսացին, որը նկարագրել է 952-1136 թվականների[3] դեպքերը: Մեզ համար Մատթեոսի աշխատության մի մասն է օգտակար, որտեղ նա խոսում է հայ այն գրողների մասին, ովքեր փառավորեցին Անիի թագավոր Գագիկ Բ.-ի (1042-1044 ) անունը, եւ ովքեր հանդիսացան հայոց երկրի («լուսաւորք»)[4]: Նրանց շարքում հեղինակը հիշատակում է «Դէոսկորոս Սանահնեցուն, Անանէ Հաղպատացուն <տրբրկ.՝ Խաբատացուն>[5] Քարհատի որդի Յակոբին»[6]:

Ժամանակագրական առումով Մատթեոս Ուռհայեցին հաջորդում է Սամուել Անեցուն, ԺԲ. դարի գործիչ, Հաղբատի դպրոցի ներկայացուցիչ և Հաղբատում ուսանած՝ որին պատկանում է ժամանակագրական բնույթի մի երկ՝ աշխարհի ստեղծումից մինչև 1179 թվականը[7]: Այս աշխատության մեջ հեղինակը խոսում է Հովհաննես Սարկավագի, նրա մտերիմների և աշակերտների մասին, որոնց թվում հիշատակում է նաև ինքն իրեն[8]:

Մյուս հեղինակները՝ Վարդան Արևելցին, Կիրակոս Գանձակեցին և Մխիթար Այրիվանեցին ԺԳ. դարի գործիչներ էին:

Վարդան Արևելցուն է պատկանում աշխարհի պատմությունը՝ նկարագրված սկզբից մինչև 1267 թվականը[9]: Սա նույնպես, Սա-

---

[3] **Մատթէոս Ուռհայեցի**, Պատմութիւն, Երուսաղէմ, 1869, **Մատթէոս Ուռհայեցի**. ժամանակագրութիւն, Բ. տպ. [հրատ. **Մամբրէ Մելիք-Ադամեան և Ներսէս Տէր-Միքայէլեան**], Վաղ., 1898: Մենք օգտվում ենք երկրորդ հրատարակությունից (նշում ենք՝ **Մատթէոս Ուռհայեցի**):

[4] **Մատթէոս Ուռհայեցի**, 215:

[5] Պետք է լինի (Սանահնեցի). տե՛ս վերը՝ Գլ Ե., ծնբ. 7:

[6] **Մատթէոս Ուռհայեցի**, 215:

[7] **Սամուէլ քահանայի Անեցւոյ** «Հաւաքմունք ի գրոց պատմագրաց», հրատ. **Արշակ Տէր-Միքէլեանի**, Վաղ., 1893 (նշում ենք՝ **Սամուէլ**):

[8] Նույն տեղում, 128:

[9] Մեծին Վարդանայ Բարձրբերդեցւոյ «Պատմութիւն Տիեզերական», ի լոյս ընծայեաց **Մկրտիչ Էմին**, Մոսկվա, 1861, Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի լուսաբանեալ, Վնտ., 1862: Մենք օգտվում ենք երկրորդ հրատարակությունից (նշում ենք՝ **Վարդան**):

*մուելի նման, խոսում է նույն Հովհաննես Սարկավագի, նրա մտերիմների ու աշակերտների, նաև Մխիթար Գոշի և ԺԳ. դարի մի քանի այլ գործիչների մասին*[10]:

Կիրակոս Գանձակեցուն *է պատկանում Հայաստանի պատմությունը «Հայոց դարձ»-ից մինչև 1267 թվականը*[11]*: Նրա երկը բավականին ուշագրավ է այն առումով, որ մանրամասն տեղեկություններ է հաղորդում ԺԲ-ԺԳ. դարերի հայ վարդապետների, նրանց թվում՝ «յԱրևելս արք անուանիք և գիտնականք, լուսաւորիչք եկեղեցւոյ) մասին, որոնք էին՝ Անանիա Սանահնեցին և գանձակեցիների խումբը՝ Հովհաննես Սարկավագը, Ալավկա որդի* [illegible] *որդի Գրիգորը*[12]*, ինչպես նաև Լոռիում մոտավորապես 1205 թվականին տեղի ունեցած ժողովի մասնակիցների մասին գրվածքում նրա կողմից հիշատակված են՝ «վարդապետք երեւելիք՝ Մխիթար, որ Գոշն կոչիւր, չինող* վանացն *Գետկայ, այր իմաստուն եւ հեզ, եւ վարդապետական ուսմամբ հռչակեալ, Իգնատիոս, Վարդան, Դաւիթ Քոբայրեցին ի Հաղբատայ, Յովհաննէս, հայր Սանահնին, որ էր զկնի մահուան վարդապետին Գրիգորոյ, զոր Տուտայ որդին կոչէին»*[13]*:*

*Վերջում նույն հեղինակը համեմատաբար ավելի մանրամասն խոսում է Մխիթար Գոշի և նրա աշակերտների մասին*[14]*:*

Մխիթար Այրիվանեցուն *է պատկանում «Աշխարհի ստեղծումից ի վեր» ժամանակագրությունը, որն ընդգրկում է մինչև 1289 թվականը*[15]*: Նա հիշատակել է Անանիա (Սանահնեցուն), Հովհաննես Սարկավագին, Սամուել [Անեցուն], Մխիթար Գոշին, Վանականին իր դպրոցով*[16]*: Համառոտակի պատմում է Հովհաննես Սարկավագի և*

---

[10] **Վարդան**, 121-122, 146-147 և շրնկ.:

[11] Պատմութիւն Հայոց, արարեալ Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ, ի լոյս ընծայեաց **Ոսկան Տէր-Գէորգեան Յովհաննիսեանց Երևանցի**, Մոսկվա, 1858: Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ Համառօտ պատմութիւն ի սրբոյն Գրիգորէ ցաւուրս իւր լուսաբանեալ, Վնտ., 1865: Պատմութիւն Հայոց, արարեալ Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ [ՊՄ 3], Տփղ., 1910 (արտատպված է 1858 թվականի մոսկովյան հրատարակությունից): Մենք օգտվում ենք երրորդ հրատարակությունից (նշում ենք՝ **Կիրակոս**):

[12] **Կիրակոս**, 104-108:

[13] Նույն տեղում:

[14] Նույն տեղում, 195-211:

[15] **Մխիթարայ Այրիվանեցւոյ** Պատմութիւն Հայոց, ի լոյս ընծայեաց **Մ. Էմին**, Մոսկվա, 1860: Մխիթարայ Այրիվանեցւոյ Պատմութիւն ժամանակագրական, ի լոյս ընծայեաց **Ք. Պատկանեան**, ՍՊբ., 1867: Երկրորդ հրատարակությունը ձեռքի տակ չունենալու պատճառով օգտվում ենք առաջինից, նշում ենք՝ **Մխիթար**), բացի մեկ դեպքից, երբ հիմնվում ենք երկրորդ հրատարակության վրա (տե՛ս այս գրքի երկրորդ մասի Է. գլուխը):

[16] **Մխիթար**, 23:

Դավիթ Ալավկա որդու մասին[17] ու մանրամասն տեղեկություններ է հաղորդում առաջինի դրական գործունեության վերաբերյալ[18]:

«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» վերաբերյալ տեղեկություններ կարելի է գտնել նաև հետագա շրջանի հայ պատմագիրների աշխատություններում: Բայց քանի որ վերջիններս նախորդ շրջանի պատմիչների համեմատ էապես որևէ նոր բան չեն հաղորդում, նույնիսկ շատ դեպքերում կրկնում են նրանց, այդ իսկ պատճառով այս պատմիչների նյութերից մենք հազվադեպ ենք օգտվում, այն էլ այնքանով, որքանով որ տվյալ նյութի օգտագործումը թույլատրելի է մեթոդաբանական առումով:

Ճիշտ է՝ հայկական աղբյուրների համեմատ վրացական աղբյուրները «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետներին» վերաբերող որոշակի տեղեկություն չեն տալիս. սակայն մեկ-երկու բնութագրությունները, որ գտնում ենք Դավիթ Շինարարի և Թամար թագուհու առաջին պատմիչների երկերում, բավականին ուշագրավ են և նշանակալի հենց այս «վարդապետների» դավանաբանական-գաղափարական հայացքները պարզաբանելու համար:

Պատմիչներն անդրադառնում են հայ-վրացական եկեղեցական այն բանավեճերին, որոնք տեղի են ունեցել Թիֆլիսում, հիշյալ թագավորների նախաձեռնությամբ: Մեկը՝ ԺԲ. դարի քսանական թվականներին՝ 1123-1125[19], մյուսը՝ 1197-1205 թթ.[20]: Այս երկու հեղինակները հայ ներկայացուցիչներին բնութագրում են որպես վրացիների հակառակորդների: Այսպես, Դավիթ Շինարարի պատմիչը նշում է, թե ինչպես «Մի օր արքայի (Դավթի) առաջ հավաքվեցին ցեղակիցները չարսիրտ՝ Հայոց բազմաթիվ նենգ եպիսկոպոսներ և նրանց վանքերի առաջնորդներ, ովքեր պարծենում էին, թե ինչպես են հասել ուսման և գիտության բարձունքներին»[21], իսկ Թամարի առաջին պատմիչը նշում է. Զաքարե ամիրսպասալարը «մարդիկ ուղարկեց նրանց կաթողիկոսի մոտ», <հայերի> բոլոր եպիսկոպոսները և վար-

---

[17] Նույն տեղում, 60, 61:

[18] Տե՛ս Ք. Պատկանեանի հրատ., 33:

[19] Հմմտ. պրոֆ. Կոռն. Կեկելիձե, Վրաց գրականության պատմություն, I, էջ 289:

[20] Հմմտ. Л. Меликсет-Беков, О междоусобице в Тифлисе в 1197 году по поводу Кривой пасхи.- ИЗВ. КИАИ, т. III, стр. 49-60, Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատմություն, I-II, 610:

[21] Ք. Ց. Թաղ., 325 = Բրոսե, 258: Աննա թագուհու տարբերակով, որը պատկանում է պրոֆ. Իվ. Ջավախիշվիլուն, տետր, թուղթ 3r (էջ 5): Վերջինից օգտվելու թույլտվության համար պրոֆ. Իվ. Ջավախիշվիլուն հայտնում եմ սրտագին շնորհակալություն:

դապետները և գիտնականները[22]» *և Վանի կաթողիկոսը*[23] *արձագանքեցին այս վկայությանը, որոնք գնացել էին բանավեճին մասնակցելու նպատակով*[24]*: Բանավեճը տեղի է ունեցել վրաց Իոանե կաթողիկոսի նախաձեռնությամբ և ղեկավարությամբ, Թամար թագուհու և Դավիթ Սոսլանի ներկայությամբ, քանզի պատմիչը նշում է.*

*«Երբ [կաթողիկոս Իոանեն] ներս մտավ, թագավորները ոտքի կանգնեցին և պատիվ տվեցին, նմանապես՝* հայոց քահանաները և վարդապետները»[25]*: Ինչպես տեսնում ենք, Դավիթ Շինարարի ժամանակ կայացած բանավեճը համընկնում է Հովհաննես Սարկավագի ժամանակաշրջանին, Թամար թագուհու ժամանակի բանավեճը՝ Մխիթար Գոշի ժամանակաշրջանին:*

*Հետագա շրջանի վրացական մեկ այլ աղբյուր, որը «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» խմբի որոշ ներկայացուցիչների (օրինակ՝ Վարդանի, [Մխիթար Գոշի] վերաբերյալ տեղեկություններ է տալիս,* Անտոն կաթողիկոսի *«Էրիստիկա»-ն է, մասնավորապես այդ երկի Դ. գլուխը, որի վերնագիրն է «Ահա կաթոլիկ եկեղեցու թշնամիները, անարժան քահանաները, չարիքի* վարդապետները, հայերի տոհմակիցները, *ամեն ճշմարտության դեմ մեղանչողները»*[26]*: Սակայն, քանի որ* Անտոնի *չարադրանքին, այնպես ինչպես ԺԴ–ԺԸ. դարերի հայ պատմագիրների երկերին, սկզբնաղբյուրի նշանակություն չի տրվում, նրանից մենք օգտվում ենք պայմանականորեն:*

*Բ.* Ձեռագիր նյութերը *մեր կողմից օգտագործված են այնքանով, որքանով հնարավոր էր մեր պայմաններում: Այս իմաստով մեր մենագրության հիմքում ընկած են անձամբ մեր կողմից քննված՝ Էջմիածնի թանգարանի նոր ձեռագիր հավաքածուների տեղեկությունները, մասամբ Միութենական Գիտությունների Ակադեմիայի Ասիական թանգարանի, Լենինգրադի, Երուսաղեմի Հայոց պատրիարքարանի գրադարանի (վերջինը, մեր խնդրանքով, մեզ է հանձնել* Գարեգին Յովսեփյանը)[27]*, որոնք մեկ առ մեկ նշված են համապա-*

---

[22] Ք.Յ., Թաղ., 482-483 = **Բրոսէ**, 313:

[23] Այսինքն՝ Աղթամարի. թէ հատկապես Թամար թագուհու ժամանակ ով էր Աղթամարի կաթողիկոսը, եղած աղբյուրներով, ցավոք, չի պարզվում. տե՛ս **Մեսրոպ Մաքսուդեանց**, Յաւաքարան անուանց կաթուղիկոսաց [Աղթամարայ], էջմ., 1916, **Ներսէս Ակինեան**, Գաւազանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ. Պատմական ուսումնասիրութիւն [ԱՄ ՁՋ.], Վն., 1920:

[24] **Ք.Յ.**, Թաղ., 483 = **Բրոսէ**, 313:

[25] **Ք.Յ.**, Թաղ., 483 = **Բրոսէ**, 313:

[26] **Էրիստիկա**, էջ 107 և հջրդ., օրինակ 111:

[27] Ինչպես այս նյութերի մատուցման, այնպես էլ բազմաթիվ այլ օգնություններ ցու-

*տասխան ծանոթագրություններում: Քանի որ բոլոր կարևոր նյութերի սպառումը ձեռագրերի հետ անմիջականորեն ծանոթանալու ճանապարհով անհնար էր, այդ պատճառով մենք հաճախ օգտվում ենք նաև զանազան հավաքածուների վերաբերյալ կազմված քարտագրացուցակներից, օրինակ՝ Էջմիածնի՝ ըստ* Ա. Կարինյանի, *Վիեննայի Մխիթարյան միաբանության՝ ըստ* Յակոբ Տաշյանի, *Հռոմի Վատիկանի՝ ըստ* Յ. Միսքճյանի *և այլոց, որոնք նույնպես հաստատագրված են համապատասխան տեղերում:*

*«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» մեկ առ մեկ թվարկումը հենց այս վարդապետների՝ 1184-1185 թվականների նամականու և ԺԱ-ԺԳ. դարերի պատմիչների գործերից բացի, արձանագրություններում ոչ մի տեղ գրեթե չի հանդիպում: Այս առումով, անկասկած, անգնահատելի են վերոբերյալ նամականին և* Կիրակոս Գանձակեցու *«Պատմության» տեղեկությունները, որոնց հետ թերևս համեմատվի Հաղբատում գրված Եփրեմ Ասորու մի երկի (Evangelii concordantis expositio, facta a S. Ephraemo)*[28] *հիշատակարանը, որտեղ 644 = 1195 թվականի տակ, ի միջի այլոց, գրված է.*

*«[Գրեցաւ] գիրքս այս ի գաւառիս Ձորոյգետ, ի վանքս Հաղբատ... յեպիսկոպոսութեան տեառն* Յովհաննիսի *և ի մահուան տեառն Գրիգորի Հայոց կաթողիկոսի, ի վարդապետութեանն* Դաւթի, Պետրոսի, Իգնատիոսի, *և զկնի մահուան* Վարդանայ *վարդապետի»*[29]*:*

*Գ. ԺԱ-ԺԳ. դարերի* արձանագրությունները, *որոնց մեջ տեղեկություններ են գտնվում «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» խմբակի այս կամ այն ներկայացուցչի մասին, ցրված են տարբեր վանքերի պատերին, որոնց ցուցակը բերեցինք նախորդ գլխում*[30]*: Այս արձանագրությունները կարևորագույն նշանակություն ունեն հատկապես ժամանակագրական բնույթի հարցեր պարզաբանելու համար: Դրանք հավաքվել են տարբեր ժամանակներում, տարբեր անձանց կողմից, որոնց ի մի բերելու փորձը ներկայացված է* Կ. Կոստանյանցի *կազմած ժողովածուի մեջ*[31]*:*

---

ցաքերելու համար՝ 1927 թ. փետրվարին էջմիածնում եղածս ժամանակ, մեծարգո **Գարեգինին** ի սրտե շնորհակալություն եմ հայտնում:

[28] Յմմտ. **Գար. Զ[արբհանալեան]**, Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց, Վնտ., 1889, էջ 447-449:

[29] **Ղ. Ալիշան**, Յայապատում, Բ., 383, հմմտ. հենց այսպիսի տեղեկություններ են **Յովսեփ Արղության-Երկայնաբազուկի** հիշատակարանում (**նույն տեղում**, Ա., 102):

[30] Տե՛ս վերը՝ Գլ. Ե., ծնթ. 42, 51-56:

[31] Վիմական տարեգիր. Ցուցակ ժողովածոյ արձանագրութեանց հայոց կազմեաց **Կ. Կոստանեանց** [BAG II], Спб., 1913:

* * *

*«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» ինքնությունը երևան հանելու համար կարելի է գործադրել նաև այլ միջոցներ:*

*Մեկն այն, որ համապատասխան վանքերը, հատկապես Հաղբատի պանթեոններն ունեն իրենց լեզուն[32]: Եվ այդ լեզուն, հայտնաբերված գերեզմանների արձանագրությունների միջոցով, հիմք է տալիս բացահայտելու այս կամ այն գրողի՝ այս կամ այն խմբակին պատկանելը:*

*Դրանից բացի, չի կարելի մասամբ հաշվի չառնել հին ճանապարհորդների տպավորությունները, ինչպիսիք են, օրինակ՝* Թովմաս Նուրիջանյան Վանանդեցու՝ *Գողթնի եպիսկոպոսի (ԺԷ. դ.)՝ բանաստեղծությամբ արտահայտված «Ակնարկ Հայաստանի սրբավայրերի»-ը, որտեղ Հաղբատի վեհապանծ պանթեոնի նկարագրությունը տրված է հետևյալ խոսքերով՝*

*Ի նահանգէ յԱրարատեան...*
*Անցեալ յԱլանս բարեհամբաւ*
*Ի Շամախի կեցեալ բարեաւ:*
*Անտի յուսով մեծաւ դիմեալ,*
*Ի սուրբ յուխտն Հաղբատ հասեալ,*
*Ուր են շիրիմքըն հռչակեալ,*
*Սքանչելի արանցըն լեալ:*
*Վարդապետաց անցեալ կանխաւ,*
*Ստեփաննոսի՝ որ սպանաւ,*
*Սարկաւագայ՝ որ անդ եղաւ*
*Եւ Յովհաննէս անուանեցաւ:*
*Վարդան մեկնիչըն քաջաբան,*
*Ղուկաս քարոզըն տէրունեան,*
*Ռուփինոսն անմարմնական*
*Ընդ նոսա եղեալ կայ ի տապան[33]...*

[32] Մասնավորապես Հաղբատի պանթեոնի նկարագրությունը տե՛ս **Մինաս Բժշկեանց**, Ճանապարհորդութիւն ի Լեհաստան, էջ 80 (§ 126), **Յովհ. Ղրիմեցի** 40-41 (**Крымский**, 40-41), **Երզնկեան**, 51-54, **Աղանեանց**, Հնից-նորից, 9-10, **Լալայեան**, 408-409:

[33] **Թովմայի վարդապետի Վանանդեցւոյ**, ի խնդրոյ Սահակայ և Ասլանի՝ Բան չափեալ ի սրբազան տեղիս աշխարհին Հայոց.- «Ճռաքաղ», 1860 թ., տետր Ը. և Թ., էջ 121-122:

# ԳԼՈՒԽ Է.

## «ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄԱՆՑ ՀԱՅՈՑ ՎԱՐԴԱՊԵՏՆԵՐԻ» ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՀԻՄՔԸ

*ԺԱ-ԺԳ. դարերում «Հիւսիսային կողմանք»-ն այն ոստանն էր, որտեղ Հայ եկեղեցական-ջատագովական գրականությունը քաղկեդոնական վարդապետների դեմ պայքարում հասավ զարգացման որոշակի աստիճանի, որը հետագայում՝ ԺԴ-ԺԵ. դդ., ավելի համարձակ և ուժգին գլուխ բարձրացրեց Սյունիքում: Սակայն «Հյուսիսային կողմանց» վարդապետների գործունեությունը հենվեց այն գաղափարախոսությանը, որը նրանց էր հասել անցյալ դարերից:*

*Մեր նպատակը «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» ինքնությունը ի հայտ բերելն է: Սակայն մինչ հարցի քննարկմանն անցնելը, անհրաժեշտ է, որ ընդհանուր գծերով բնութագրենք այն գաղափարախոսությունը, որը հիմք դարձավ նրանց գիտագրական ամբողջ գործունեության համար:*

*Ինքնին հասկանալի է, որ «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» գաղափարախոսության հիմքում պետք է ընկներ մոնոֆիզիտներին բնորոշ այն յուրահատուկ կարծիքը, մի փոքր տոգորված դիոֆիզիտների գաղափարներով, որը ծագել, զարգացել ու վերջնականապես ձևավորվել էր* Կյուրեղ Ալեքսանդրացու *Epistula 46 ad Succensum episcompum-ում առաջ քաշած դրույթի* ἐπὰ... τὴν ἕνωσιν μία φύσις νοεῖται τοῦ λόγου σεσαρκωμένη *հիման վրա*[1], *տիեզերական Դ. (քաղկեդոնական) ժողովից հետո, մասնավորապես՝ Զ., Է. և Ը. դարերի սկզբին, Զ. դարի սկզբին՝ 506 թվականին, Բաբկեն կաթողիկոսի ղեկավարությամբ տեղի ունեցած Դվինի ժողովում*[2], *Է. դարի սկզբին (ըստ* Իվ. Ջավախիշվիլու՝ *607-ին, իսկ ըստ*

---

[1] **Migne**, PG., t. 77, col. 240a-241a. ինչպես այս, այնպես էլ ստորև՝ 24-րդ ծանոթագրությունում նշված հրատարակությունը Թիֆլիսում չունենալու պատճառով, նրանից անհրաժեշտ տեղեկությունները մեր խնդրանքով Լենինգրադում արտագրեց և մեզ ուղարկեց պրոֆ. Գր. Ծերեթելին, որին հայտնում եմ խորին շնորհակալություն:

[2] **Կ[արապետ]** վ., Հայոց եկեղեցւոյ առաջին մասնակցութիւնը դաւանաբանական վէճերի մէջ և Բաբգէն կաթուղիկոս.- Ա, 1898, էջ 431-436, 434, **Երուանդ** վ., Բաբգէն կաթուղիկոսի ժողովի թուականը և տեղը.- Ա, 1908, էջ 690-707, նույնի՝ Հայոց եկեղեցու յարաբերությունները Ասորւոց եկեղեցիների հետ, էջմ., 1908, էջ 70,

Ն. Ակինեան *ի՝ 608-609 թվականին), Հայ-վրացական եկեղեցական պառակտման շուրջ ստեղծված բանավեճի ժամանակ*[3], *և Ը. դարի սկզբին՝ 726 թ. Մանազկերտում տեղի ունեցած ժողովում*[4]:

*Հայերի՝ քրիստոսագիտությանը վերաբերող զանազան կարծիքներ գոյություն ունեն: Սակայն ինչպիսի տարբերություն լինի կարծիքների միջև, մի բան միանգամայն պարզ է. «Հայոց եկեղեցին,- եթե կրկնենք* Երվանդ Տեր-Մինասյանցին,- *լիակատար կերպով ընդունեց Կյուրեղ Աղեքսանդրացու քրիստոսագիտությունը, բայց նա միևնույն կետի վրա անշարժ կանգնած չմնաց, այլ անցկացրեց իր մեջ միաբնութեան այն ամբողջ զարգացումը, որ սկսել էր Յուլիանոսի և Սևերոսի վիճաբանութեամբ Քրիստոսի մարմնի մասին»*[5], *թեև հետագայում Մանազկերտի ժողովը վերջնականապես նզովում էր «երկու բնութեան ուսմունքը»: Հենց նա անիծեց «թէ՛ Սևերոսի վարդապետութիւնը» և թէ՛ Յուլիանոս Հալիկառնասցուն»*[6]: *Հակաքաղկեդոնական վարդապետների ուսմունքն արտահայտող կարևոր աշխատություն պետք է համարել Ալեքսանդրիայի պատրիարքի (Ե. դ.)* Տիմոթեոս Էլուրոսի *(Αἴλουρος) կամ* Կուզի «Բան հակաճառութեան ընդդէմ քաղկեդոնեաց»*-ը, որի հայերեն թարգմանությունը, կատարված հունարենից, հայտնաբերվել է և նույնիսկ հրատարակվել*[7]: *«Բան հակաճառութեան» հայկական տարբերակը հրատարակողներ* Կարապետ Տեր-Մկրտչյանի *և* Երվանդ Տեր-Մինասյանցի *արդարամիտ կարծիքով՝ այս աշխատությունը «մեծ նշանակություն է ունեցել հայ եկեղեցական գրականության տեսանկյունից» և «հայ եկեղեցական գործիչների համար ծառայել է որպես քաղկեդոնական ուսմունքի դեմ պայքարի զենք»*[8]: *Անորոշ է միայն նրա գրու-*

---

նույնպես՝ 65-69, և այլն, հմմտ. **Л. Меликсет-Беков**, Об источниках древнеармянского права.- Изв. КИАН, т. II, Лнгр., 1927, стр. 155, прим. 2.

[3] Գիրք թղթոց, Տփղ., 1901, էջ 110-195. տե՛ս նաև. **И. Джавахов**, История церковного разрыва между Грузией и Арменией в начале VII.- Изв. АН, 1908, стр. 433-446, 511-536, **Ներսէս Ակինեան**, «Կիւրիոն կաթողիկոս Վրաց» Պատմութիւն հայ-վրացական յարաբերութեանց եօթներորդ դարու մէջ [ԱՄԿ.], Վն., 1910:

[4] **Երուանդ Տէր-Մինասեանց**, Հայոց եկեղեցու յարաբերութիւնները. Ելն., 173 և հջորդ.:

[5] **Նույն տեղում**, 89:

[6] **Նույն տեղում**, 175-176:

[7] Timotheus Älurus' des Patriarchen von Alexandrian Widerlegung der auf der Synode zu Chalcedon Festgesetzten Lehre. Armenischer Text mit deutschen und armenischen Vorwort... herausgegeben von **Karapet Ter-Mekerttchian** und **Ervand Ter-Minassiantz**, Leipzig, 1908.

[8] **Նույն տեղում**, XXI:

*թյան ժամանակը, որը տարբեր հետազոտողների կողմից տարբեր կերպ է սահմանվում, օրինակ, հենց իրենք՝ հրատարակողները, այն համարում են Զ. դ. կեսի հուշարձան*[9], Գալուստ Տեր-Մկրտչյանը *համարում է 480-484 թվականների*[10], Ներսես Ակինյանը՝ *548-577 թվականների*[11], *իսկ Ն. Մառը ոչ Ե., Զ.-ի, ոչ էլ Է. կամ Ը. դարերի, այլ հետագա ժամանակաշրջանի*[12]*:*

*Հայկական հողի վրա ծագած գրական հուշարձաններից, որոնք գրեթե պաշտոնական ձեռնարկ էին և հայ աստվածաբանական ու օրենսդրական գրականության հիմք են եղել դարերի ընթացքում, առանձնապես նշանակալից են երեք ժողովածու. 1. «Գիրք թղթոց», 2. «Կնիք հավատոյ», 3. «Կանոնագիրք Հայոց»: Դրանցից առաջին երկուսը պատշաճ կերպով հրատարակված են, իսկ երրորդը՝ անբավարար, թերի:*

«Գիրք թղթոց»-*ը*[13]*, ըստ* Մ. Օրմանյանի՝ *«Հայոց հայրապետանոցին մէջ սկսած պաշտօնական հաւաքածոյ մըն է»*[14] *և ընդգրկում է հայոց եկեղեցու նամակագրությունը ասորի, հույն և վրաց եկեղեցիների հետ հավատի և եկեղեցական ծեսերի վերաբերյալ, ինչպես նաև զանազան հեղինակների սկզբունքային բնույթ ունեցող դավանաբական-բանավիճային երկերը, սկսած Ե. դարից մինչև Ը. դարը: Ակնհայտ է՝ այն տարբեր ժամանակների գրություններ է պարունակում, քանզի նախնական տեսքով հայտնի խմբագրության*

---

[9] **Նույն տեղում**, XVII:

[10] **Գալուստ Տէր-Մկրտչեան**, Տիմոթէոս Կուզի հակաճառութեան հայ թարգմ. ժամանակը և Սուրբ Գրքի երրորդ կամ «նորաբեր» հայ թարգմանութիւնը.- Ա, 1908, էջ 564-589, 707-708, նոյնի, Հայ մատենագրութեան հնագոյն թուականները.- «Շողակաթ», Ա., Վաղ., 1913, էջ 154-159: Սրան դեմ է **Եր[ուանդ] Տէր-Մինասեանցը**. տե՛ս «Կնիք հաւատոյ» գրքի գրախոսությունը.- «Բանբեր Էջմիածնի Գիտական Ինստիտուտի», Ա-Բ., Էջմ., 1921-1922, էջ 262:

[11] **Ներսէս Ակինեան**, Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ [ԱՄ ԾԲ.], Վն., 1909, էջ 1-60:

[12] **Н. М[арр]**, Сирийская версия Возражений Тимофея Элура против Халкедонского собора.- ХВ, II, 1913, стр. 405-406, հմմտ. Изв. АН.1914, стр. 457: Տիմոթէոս Կուզի վերաբերյալ հայ գրականության մեջ տե՛ս նաև՝ **Հրաչեայ Աճառեան**, Տիմոթէոս Կուզ և Ս. Գրքի նորաբեր թարգմանութիւնը.- «Շողակաթ», Ա., էջ 1-22. հմմտ. *նույնի*՝ Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի հակաճառութեան մէջ [ԱՄ ԾԸ.], էջ 61-106:

[13] Գիրք թղթոց, Տփղ. 1901: Բաց թողնված հատվածները հրատարակված են լրացումներով [**Յ. Գիւլխանդանեան**], «Գիրք թղթոց»-ի պակասները և նրանից դուրս մնացած թղթեր.- Ա, 1902, էջ 560-569, 748-753:

[14] **Մ. Օրմանեան**, Ազգապատում, էջ 608 (§ 407): Մոտավորապես նման կարծիքի է նաև պրոֆ. **Իվ. Ջավախիշվիլին** (Վրաց հին պատմական գրականություն, երկրորդ հրատ., Թիֆ., 1921, էջ 59-60):

*հարցը պարզաբանված չէ, այսպես, հենց այդ ժողովածուի գիտական խմբագիր-հրատարակիչները (Մ. Օրմանյան, Գ. Աղանյա՞նց) այն կարծես Հովհաննես Օձնեցի կաթողիկոսի (մինչև 728 թիվը) գործն էին համարում*[15]*. ըստ Մ. Օրմանյանի՝ նույն Հովհաննեսին է վերագրվում*[16]*, ըստ Ներսես Ակինյանի՝ Մովսես եպիսկոպոս Ցուրտավեցուն (Է. դ. սկիզբ)*[17]*, ըստ պրոֆ.* Ն. Ադոնցի՝ *Կոմիտաս կաթողիկոսին (մինչև 682 թվական)*[18]*, այս կարծիքին է նաև* Կարապետ Տեր-Մկրտչյանը[19]*: Եվ այսպես՝ ոմանք Ը. դարի սկզբին են վերագրում, ոմանք՝ Է. դարի սկզբին*[20]*:*

*«Կնիք հաւատոյ»*[21]*. սա այն ձեռնարկներից է, որոնք միայն դավանաբական-բանավիճային բնույթի տեղեկություններ են պարունակում և հայտնի են եղել տարբեր վերնագրերով: Օրինակ,* Ասողիկը *վկայում է, թե «Մայրագոմեցին երեք գիրք գրեց, բայց իր անունով չստորագրեց՝ ժողովրդի կողմից ընդունված չլինելու պատճառով: Մեկի վերնագիրը* «Խրատ վարուց» *է, մյուսինը՝* «Ղաւատ-արմատ»*, իսկ երրորդինը՝* «Նոյեմակ»[22]*: Ինչպես ասված է այս ժողովածուի ենթավերնագրում, այն «յաւուրս Կոմիտաս կաթուղիկոսի համահաւաքեալ»*[23] *է, հետևաբար՝ 618-628 թվականների միջև է, որը հաստատվում է նաև բյուզանդական մատենագրության տեղեկություններով.* βιβλίων τὸ ὄνομα ἐστὶν ʾΑμαρτανάκ κατὰ τὴν ʾΑρμενίων διάλεκτον *այս ժողովածուում ասված է Կոմիտաս կաթողիկոսի վերաբերյալ հայտնի զրույց Naratio de rebus Armeniae-ում*[24]*, իսկ* ʾΑμαρτανάκ Կարապետ Տեր-Մկրտչյանի *կարծիքով*[25]*, Հա-*

---

[15] Գիրք թղթոց, էջ Ե.:

[16] **Մ. Օրմանեան**, Ազգապատում, էջ 833-834 (§ 569-570):

[17] **Ն. Ակինեան**, Կիւրիոն կաթողիկոս Վրաց, 37-44:

[18] **Н. Адонц**, Ампелий, епископ Херсонский (К критике армянской Книги посланий).- ХВ, II, 175-176.

[19] Կնիք հաւատոյ, հրատ. **Կարապետ եպ.**, էջ XXV-XXVI:

[20] Անձամբ ավելի ճշմարտացի ենք համարում **Ն. Ադոնցի** (և **Կարապետ Տեր-Մկրտչյանի**) կարծիքը, որը հիմնավորված է «Գիրք թղթոց»-ում գոյություն ունեցող 527 = 1078 թվականի հիշատակարանով. վերջինս հետևում է Կոմիտաս Կաթողիկոսի (618-628) «Վասն հաւատոյ» գրվածքին, որտեղ ասված է, որ «աւրինակ գրոցս՝ որ լեալ էր տէր Գրիգորի Վկայասիրին՝ ցայս վայր էր». տե՛ս Գիրք թղթոց, 219:

[21] Կնիք հաւատոյ ընդհանուր սուրբ եկեղեցւոյ յուղղափառ և ս. հոգեկիր հարցն մերոց դաւանութեանց, յաւուրս Կոմիտաս կաթուղիկոսի համահաւաքեալ, հրատ. **Կարապետ** եպ., էջմ., 1914, հմմտ. **Երվանդ Տեր-Մինասյանց**, Գրախոսություն այս գրքի.- «Բանբեր էջմիածնի Գիտական Ինստիտուտի», Ա-Բ., էջ 262-279:

[22] **Ասողիկ**, 87:

[23] Կնիք հաւատոյ, 3:

[24] **Migne**, PG, t. 132, col 1252a.

[25] Կնիք հաւատոյ, XVI, XXIV, XXVI, XXX, XXXI:

*ւատարմատ, վերջին հաշվով՝ Արմատ-Հաւատոյ-ի աղավաղված ձևը պետք է լինի*[26]*:*

*Կանոնագիրքը*[27] *Հայոց եկեղեցու համար եղել է նոյնը,- իրավացիորեն նշում է* Ա. Ղլտճյանը[28]*,- ինչ որ Հռոմի եկեղեցու համար Corpus iuris canonici-ն»: Այն հակաքաղկեդոնական եկեղեցու օրենսդրության աղբյուրներից միակն է, որի առաջին խմբագրությունը, ինչպես կարծում են, պետք է սկզբնավորված լիներ Կաթողիկոս Օձնեցու (717-728) ժամանակ*[29]*, չնայած գոյություն ունի նաև կարծիք, որով այս ժողովածուի առաջին համախմբան փորձը սահմանափակվում է Պարտավի 768 թվականի ժողովից ոչ շուտ կամ, թերևս, Թ-Ժ. դարերով*[30]*:*

*Այսպես ուրեմն,* Տիմոթեոս Կուզի *«Բան հակաճառութեան ընդդեմ քաղկեդոնականութեան...»-ը (հայկական տարբերակում) և որպես պաշտոնական ձեռնարկ հայտնի «Գիրք Թղթոցը», «Կնիք Հաւատոյ»-ն և «Կանոնագիրք»-ը, որոնց ծագումը հայ մատենագրության մեջ Ը. դարից չի անցնում, այն հիմնական աղբյուրներն են, որոնք, որպես հակաքաղկեդոնականություն, հիմք դարձան հաջորդ դարերի հայ դավանաբանական-բանավիճային գրականության համար:*

*Նույն միտումը, վերոհիշյալ ժողովածուների և նրանց մեջ ներառված տարբեր հեղինակների ստեղծագործություններին զուգա-*

[26] Այս կարգի ժողովածուներ հայտնի են եղել նաև հետագայում, որոնցից մեկից օգտվել է **Անտոն Կաթողիկոսը**՝ «էրիստիկա»-ն կազմելու ժամանակ: Օրինակ՝ մի տեղ **Անտոնը** հիշատակում է ոմն «Յակոբ Կեղծ-վարդապետի հայերից», որպես «Վէմ հաւատու»-ն կազմողի, «էրիստիկա», 563, բայց այս «Վէմհաւատու»-ն վրացերեն տառադարձությունն է հայերեն «Վէմ հաւատոյ»-ի:

[27] Ինչպես հարկն է հրատարակված չէ, Վիեննայի Մխիթարյան միաբանությունը նպատակադրվել է իրականացնել նրա հրատարակությունը **Յամազասպ Ոսկյանի** խմբագրությամբ (ՅԱ, 1923, էջ 480): ժողովածուի ոչ լրիվ հրատարակությունը տե՛ս Կանոն/ա/գիրք Յայոց, խմբ/ագր/եց **Արսէն Ղլտճեան** [ՂՄ 12], Տփղ., 1914, Լատ. **Ang. Mai**, Scriptorum veterum nova collectio e Vaticanis codicibus edita, t. X, pars 2, Romae 1838, pp. 269-316 [Ecclesiae Armenicae canones selecti], **Ներսէս Մելիք-Թանգեան**, Յայոց եկեղեցական իրաւունքը, Ա. գիրք. Ներածութիւն և աղբիւրներ, Շուշի, 1903, հետազոտություն. **С. Тигранян**, Древне-армянская “Книга канонов”. Очерки описания и исследования памятника. I, Описательная часть [Зап. АН, VIII сер. по ИФО, т. XIII, N 3], Пгр., 1918.

[28] **Արսէն Ղլտճեան**, Յայոց հին իրաւունքը, Ալէքսանդրապոլ, 1913, էջ 38:

[29] **Սիրական Տիգրանեան**, Կանոնագիրքը և մեր կանոնական իրաւունքը.- Ա, 1902, էջ 124-125, նույնի՝ Յայոց իրավունքի պատմության ներածություն, Յերեվան, 1924, էջ 135-178, **С. Тигранян**, “Судебная книга” Мхитара и “Книга канонов”,– Изв. КИАИ, т. III, стр. 61, **Խաչիկ Սամուէլեան**, Մխիթար Գօշի Դատաստանագիրքը և հայոց հին քաղաքացիական իրաւունքը [ԱՄ ԿԳ.], Վն., 1911, էջ 81, **Մ. Օրմանեան**, Ազգապատում, էջ 831-834 (§§ 567-568), **Н. Адонц**, Армянская литература, цит. изд. стлб. 648:

[30] **Արսէն Ղլտճեան**, Յայոց հին իրաւունքը, Ալէքսանդրապոլ, 1913, 36-38:

*Հեռ, զգացվում է նաև հայ դրականության մեջ հայտնի և բազմաթիվ ականավոր այլ գիտնական գրողների երկերում, ինչպիսիք են՝ Ե. դարում Հովհաննես Մանդակունի կաթողիկոսը[31], Զ. դարում՝ Սյունյաց Պետրոս եպիսկոպոսը[32], Զ-Է. դարերում՝ Վրթանես Քերթողը[33], Է. դարում՝ Մաթուսաղան[34], Հովհաննես Մայրագոմեցին[35], Անանիա Շիրակացին[36], Սահակ Ձորափորեցին[37], Ը. դարում՝ Խոսրովիկ Թարգմանիչը[38], Հովհաննես Օձնեցին[39], Ստեփաննոս Սյունեցին[40] և շատ ուրիշներ:*

---

[31] Տեառն Յովհաննու Մանդակունւոյ Հայոց Հայրապետի ճառք, Բ. տպ. Վնտ., 1860, **J. M. Schmid**, Reden der Johan Mandakuni, Regenburg 1871, **Բ. Սարգիսեան**, Քննադատութիւն Յովհան Մանդակունւոյ և իւր երկասիրութեանց վրայ, Վնտ. 1895, **Գալուստ Տէր-Մկրտչեան**, **Յովհան Մանդակունի**.- Ա, 1903, էջ 562-575, 662-672, 774-784, **Կարապետ եպ.**, **Յովհան Մանդակունի**, **Յովհան Մայրագոմեցի**.- «Շողակաթ», Ա., 84-136 և այլն:

[32] **Գալուստ Տէր-Մկրտչեան**, Պետրոս եպիսկոպոս Սիւնեաց.- Ա, 1902, էջ 80-98, 183-203, 368-400, **Ներսէս Ակինեան**, Պետրոս եպիսկոպոս Սիւնեաց.- ՀԱ, 1904, էջ 18-22, 77-83, 105-113:

[33] **Ներսէս Ակինեան**, Վրթանէս վարդապետ Քերդող և իւր երկասիրութիւնք.- ՀԱ, 1910, էջ 8-11, 37-46:

[34] Թուղթ Մաթուսաղայի Սիւնեաց եպիսկոպոսի, զոր գրեաց առ Հերակլ կայսր (Գիրք ժողովածոյ ընդդէմ երկաբնակաց. Նլն., Նոր Ջուղա, 1688):

[35] **Կարապետ եպ.**, **Յովհան Մանդակունի և Յովհան Մայրագոմեցի**.- «Շողակաթ», Ա., 84-136:

[36] **Անանիայի Շիրակունւոյ** Մնացորդք բանից, ի լոյս էած **Ք. Պ[ատկանեան]**, ՍՊբ., 1877, **Գալուստ Տէր-Մկրտչեան**, **Անանիա Շիրակացի**.- Ա, 1896, էջ 143 -156, 199-208:

[37] Բացայայտութիւն.... ասացեալ սրբոյ վարդապետին Սահակայ Հայոց կաթուղիկոսի և մեծի թարգմանչի՝ Ընդդէմ երկաբնակաց նեստորականացն (Գիրք թղթոց, 413-482)*:

[38] **Գարեգին Յովսէփեան**, Խոսրովիկ թարգմանիչ և երկասիրութիւնք նորին, Վաղ., 1903, **Գալուստ Տէր-Մկրտչեան**, Խոսրովիկ թարգմանիչ.- Ա, 1892, էջ 275-280, **Յակովբոս Տաշեան**, Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք, հետազօտութիւնք և բնագիրք, մ. Ա. [ԱՄ ԺԶ.], Վն., 1895, էջ 49-146, **Ներսէս Ակինեան**, Խոսրովիկ թարգմանիչ և իւր երկասիրութիւնք.- ՀԱ, 1904, էջ 262-270, 304-316, 353-361, 1905, էջ 19-22, 114 -116, 213-220, 361-370:

[39] Domini Johannis Philosophi Oznienzis Armeniorum Catholici Opera, Venetiis, 1834, Յովհաննու Իմաստասիրի Հայոց կաթուղիկոսի խոստովանութիւն անշարժ յուսոյ մարմնանալոյ Բանին. Նլն., հրատ. **Կարապետ վ. Վաղ.**, 1896, **Ներսէս Ակինեան**, Յովհաննէս կաթուղիկոս Օձնեցւոյ նորագիւտ գրուածք մը բանին մարմնաւորութեան վրայ.- «Յուշարձան», Վն., 1911, էջ 336-344:

[40] **Գալուստ Տէր-Մկրտչեան**, Ստեփաննոս Իմաստասէր.- Ա, 1902, էջ 368-400:

* * *

Մասնավորապես, Հայ-վրացական եկեղեցական պառակտման հարցի վերաբերյալ, ինչը քաղկեդոնական ժողովի կողմից ճանաչված դիոֆիզիտական քրիստոսաբանության ընդունման կամ չընդունման հարցն էր շոշափում, ուշադրության արժանի է Զ-Է. դարերի Վրթանես Քերթողի, Հայոց կաթողիկոսի տեղապահի, Սմբատ Վրկանի մարզպանի, Հայոց Աբրահամ և վրաց Կյուրիոն կաթողիկոսների նամակագրությունը «Գիրք Թղթոցում»[41], որտեղից էլ մի փաստաթուղթ, մասնավորապես՝ Աբրահամի երրորդ թուղթը առ Կյուրիոն[42], համառոտ տեսքով ներառնված է «Կնիք հաւատոյ»-ում[43], իսկ Հայ-վրացական բաժանման մասին «Գիրք Թղթոց»-ում զետեղված գրագրությունը հիմնավորապես դրված է Ժ. դարի պատմիչ Ուխտանեսի «Պատմութիւն բաժանման Վրաց ի Հայոց»[44] վերնագրով հատուկ երկում, որտեղ այս գրագրությունը գրեթե բառ առ բառ կրկնվում է, միայն թե նյութի փոքր-ինչ տարբեր դասավորությամբ, որոշ կրճատումներով, մասամբ էլ խեղաթյուրված:

Այս նույն բնագավառի գրվածքներից է Ը. դարի գործիչ Սողոմոն Մաքենացու, հետագայում՝ կաթողիկոսի, «Վասն ինն դասուց...» երկասիրությունը, որտեղ, ի միջի այլոց, առաջադրված է Հայոց պատրիարքության, Աղվանքի արքեպիսկոպոսության և վրացիների միտրոպոլիտության հարցը: Ճիշտ է՝ այս գրվածքը ուղղակիորեն մեզ չի հասել, բայց այն ամբողջությամբ պահպանել է Ժ. դարի նշանավոր պատմիչ Մովսես Կաղանկատվացին կամ Ուտիեցին[45]:

Սողոմոն Մաքենացու կողմից պարզաբանված հարցին անդրադառնում է Թ. դարի հայտնի գործիչ, հետագայում կաթողիկոս

---

41 Գիրք թղթոց, 110-195, հավելվածը տե՛ս Ա, 1902, էջ 566-569 (լրացնում է «Գիրք թղթոցի» 185-186 էջերում տեղադրված՝ Կյուրիոնի նամականին՝ ուղղված Աբրահամին):

42 Գիրք թղթոց, 108-184:

43 Կնիք հաւատոյ, 139-142:

44 **Ուխտանէս**, Յատուած երկրորդ. Պատմութիւն բաժանման Վրաց ի Յայոց = **M. Brosset**, Deux historiens armeniens, SPB, 1870, pp. 277-351: Այս երկը հայ գրականության մեջ, ինչպես իրավացիորեն նշում է պրոֆ. **Իվ. Ջավախիշվիլին** (Վրաց հին պատմական գրականություն, երկրորդ հրատ., 60), այն պահանջներով է գրված, ինչ պահանջներով որ գրվել է Արսեն կաթողիկոսի «განყოფისა-თჳს ქართლისა და სომხითისა»-ն վրաց գրականության մեջ, հատկապես որ **Ուխտանեսը** նկարագրում է «Պատմութիւն բաժանման Վրաց ի Յայոց»-ում այնպես, ինչպես **Արսենն** է նկարագրել «Բաժանումն **Վրաց** ի Յայոց»-ում (**Թ. Ժորդանիա**, ժամանակագրություններ, I, 314), հմմտ. **Իվ. Ջավախիշվիլի**, նշ. աշխ., էջ 64, ծնթ. ...":

45 **Մովսիսի Կաղանկատուացւոյ** Պատմութիւն Աղուանից [ՂՄ 8], Տփղ., 1913, էջ 309-313:

*ընտրված* Մաշթոցը *կամ* Մաշտոցը, *որին պատկանում է ընդարձակ վերնագրով հետևյալ երկը՝ «Թուղթ երանել[ւ]ոյն Մաշտոցի, նախ քան զկաթուղիկոսութիւն, առ Տէր Գէորգ Հայոց կաթուղիկոս՝ Վասն Սիւնեաց խաչին, թե է՞ր աղագաւ տուաւ <տրբրկ՝ տուեալ եղև >»*[46]:

Մովսես Ուտիեցու *«Պատմութիւն Աղուանից»-ում ուշադրություն են գրավում երկրորդ մասի 47-րդ և 48-րդ գլուխները, որոնցից առաջինը պարունակում է տեղեկություն այն մասին «Թէ որով ժամանակաւ անիծաւ ժողովն Քաղկեդոնի... [և եղև] բաժանումն Վրաց ի Հայոց»*[47], *իսկ երկրորդը՝ դատողություն «Վասն ինն դասուց...» ստորակարգության վերաբերյալ Սողոմոն Մաքենացու երկասիրութեան համաձայն*[48]:

*Նույն Ժ. դարի մեկ այլ գործչի՝ Անանիա Մոկացու տրակտատում, որի վերնագիրն է «Տեառն Անանիայի Հայոց կաթուղիկոսի՝ Յաղագս ապստամբութեան տանն Աղուանից, որ ընդ ժամանակս ժամանակս լեալ իցէ ձեռնադրութիւն արտաքոյ սուրբ Լուսաւորչի աթոռոյն»*[49], *կրկնվում է հայացքը վրաց «արքեպիսկոպոսի» կողմից Հայ կաթողիկոսին հնազանդվելը ուրանալու մասին:*

*Վրացիների՝ հայերից կախվածություն ունենալու և հայերից այդ կախվածությունը ուրանալու մասին յուրովի է մեկնաբանում Ժ. դարի նշանավոր պատմիչ* Յովհաննես *կաթողիկոս* Դրասխանակերտցին[50], *որին այս պարագայում հետևում է (համառոտ) ԺԱ. դարի նշանավոր պատմիչ* Ասողիկը[51]:

*Սակայն, ինչպես կտեսնենք, այս ստեղծագործություններից հետագա գրականության հիմքում ընկած են՝ 1)* Ուխտանեսի *պատմությունը, 2)* Սողոմոն Մաքենացու *երկասիրությանը փոխարինող* Մովսես Ուտիեցու *պատմությունը, 3)* Մաշթոցի *չարադրանքը*[52]:

---

[46] Յ. Գիւլխանդանեան, Ճշ. աշխ..,- Ա, 1902, էջ 748-753:

[47] Մովսիսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից, 306-307:

[48] Նույն տեղում, 308-313:

[49] Այս վերնագրով հրատարակել է Գալուստ Տեր-Մկրտչյանը՝ Ա, 1897, էջ 129-144, հատկապես՝ 137:

[50] Յովհաննու կաթուղիկոսի Դրասխանակերտեցւոյ Պատմութիւն Յայոց [ԴՄ 5], Տփղ., 1912, էջ 65 և հջրդ.:

[51] Ասողիկ, 83 և հջրդ.:

[52] Այս երեք փաստաթղթերն էլ որպես հայ-վրացական բաժանման գլխավոր աղբյուրներ են ճանաչված եղել նաև Ստեփանոս Օրբելյանի ժամանակ (ԺԳ. դ.), տե՛ս Օրբէլեան, 99-100:

* * *

«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» գաղափարախոսության հիմքը պարզաբանելու համար որպես փաստաթուղթ կարող են օգտագործվել նաև, այսպես կոչված, «Գաւազանագիրք» անունով հայտնի հուշարձանները, որտեղ հեղինակները ձգտում են ժամանակագրական-գաղափարական ճյուղավորումը ներկայացնել սկսած Հայոց այբուբենն «ստեղծող» Մեսրոպ Մաշտոցից մինչև իրենց օրերը: Չնայած այս «Գաւազանագրքերը» ընդհանրապես ԺԷ-ԺԸ. դարերից չեն անցնում, այդուհանդերձ դրանք չափազանց բնորոշ են այն առումով, որ դրանց կենտրոնում միշտ միայն և միայն Մխիթար Գոշն է[53]: Օրինակ՝ մեկ տարբերակով գաղափարական ճյուղը մինչև ԺԳ. դարը ներկայացվում է հետևյալ գործիչներով՝ Մեսրոպը և նրա աշակերտները՝ Մովսես Քերթողը և Դավիթ Անհաղթ փիլիսոփան, նրա աշակերտ Ղազար Փարպեցին, նրա աշակերտ Պողոսը (՞), նրա աշակերտ Աբրահամը [քերական], նրա աշակերտ Հովհաննես [Մայրա]գոմեցին, նրա աշակերտ Ներսես Կլայեցին, նրա աշակերտ Տղայ կոչված Գրիգորը, նրա աշակերտ «մեծ և երանելի րաբունապետ Մխիթարը, որ մակ [անուամբ] Քօշ ասի»: Սա գավազանը նվիրեց Հովհաննես Վանականին, վերջինս էլ՝ Վարդան Մեծին[54]: Երկրորդ տարբերակով՝ «Մեսրոպը, որը գրեր ստեղծեց հայերի, վրացիների և աղվանների համար» Մովսես Քերթողը, Դավիթ Անհաղթը, Եզնիկը, Մամբրեն, Ղազարը, Պողոսը (՞), Աբրահամը, Ներսես Մեծոփեցին, Հովհաննես Օձնեցին, Վռամը, Ներսես Կլայեցին, Գրիգորը, «Մխիթարն՝ որ մականուամբ Գօշ ասի», Հովհաննես Վանականը, Վարդանը, ևլն.[55]:

[53] Գոյություն ունեն նաև այնպիսի «Գաւազանագրքեր», որտեղ գործիչների ցուցակները սկսվում են Մխիթար Գոշից (**Տաշեան**, Ցուցակ, 431):

[54] **Տաշեան**, Ցուցակ, 1032:

[55] **Յակոբ Թօփճեան**, Ցուցակ ձեռագրաց Խաչիկ վարդապետի Դադեան, Վաղ., 1898, էջ 53:

# ԳԼՈՒԽ Ը.

## «ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄԱՆՑ ՀԱՅՈՑ ՎԱՐԴԱՊԵՏՆԵՐԻ» ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԴԻՐՔՈՐՈՇՈՒՄԸ ՎՐԱՑԻՆԵՐԻ ՀԱՆԴԵՊ

«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» գործունեությունը, ինչպես արդեն նշել ենք, ընդգրկում է ԺԱ-ԺԳ. դարերը և տևում է առնվազն մեկուկեսից երկու դար: Մեր մենագրության բուն նպատակը, ինչպես հուշում է վերնագիրը, հիշյալ վարդապետների ինքնությունը բացահայտելն է, իսկ նրանց գրական գործունեությունը մեզ հետաքրքրում է այնքանով, որքանով այդ գործունեության բնութագրումը մեզ հնարավորություն կտա ավելի հստակ պատկերացում կազմելու և վերջապես ստանալու այդ արմատական հարցի պատասխանը, նաև նշելու նրանց ծառայությունները հայ դպրության ասպարեզում: Սրա հետ մեկտեղ, քանի որ մեր նպատակը հիշատակված վարդապետների ինքնությունը պարզելն է յուրահատուկ թեքումով՝ նրանց առնչությունը հայ-վրացական հարաբերություններին, ուստի հնարավորինս մանրամասն կանգ ենք առնում հիշյալ վարդապետների կենսագրության և գիտագրական գործունեության մեկնաբանության այն պահերի վրա, որտեղ ի հայտ է գալիս հայ-վրացական հարաբերությունների գրական կամ գործնական բնույթի որևէ հարց: Բայց քանի որ բոլոր այս երևույթների հավուր պատշաճի լուսաբանումը հնարավոր չէ, ուստի մեր «մեկնաբանության մեջ» հիմնականում առաջնորդվում ենք հիշյալ տեսանկյունով:

Ինքնին խնդիրը «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» վերաբերյալ, կապված հայ-վրացական հարաբերությունների հարցերի հետ, մեր կողմից մեկնաբանված է երկու ժամանակաշրջանով, երկու մասով: Մեկում (այս մենագրության երկրորդ մասում) անդրադառնում ենք հատկապես Հաղբատ-Սանահնի խմբին ԺԱ-ԺԲ. դարերում, այսինքն՝ մոտավորապես ԺԱ. դարի կեսից մինչև ԺԲ. դարի երկրորդ կեսը, երբ բացի, այսպես կոչված, «Հյուսիսային

կողմանց» այս խմբակից, ուրիշ օջախներ կա՛մ բոլորովին գոյություն չեն ունեցել, կա՛մ եթե նույնիսկ գոյություն են ունեցել, ապա դեռևս գիտական-գրական կենտրոնների չէին վերածվել: Մենք փորձում ենք պարզել հենց այս խմբի կազմավորվելու ու նրա նախնական գոյության հարցը մինչև այն ժամանակաշրջանը, երբ այն կվերածվեր գիտագրական կենտրոնի և մինչ նրանում կձևավորվեր գիտական որոշակի դպրոց, բառիս բուն իմաստով, այսինքն՝ մինչ հանդես կգային Անանիա Սանահնեցին և Հովհաննես Սարկավագը՝ իրենց համախոհների և աշակերտների հետ միասին: Ցավոք, Հովհաննես Սարկավագի (վախճանվել է 1129 թ.) և նրա աշակերտների մասին տեղեկություններն ընդհատվում են, և հաջորդ ճյուղավորումը (ֆիլիացիան) մնում է անծանոթ: ԺԳ. դարի երկրորդ կեսին՝ մոտավորապես 80-ական թվականներին, գլուխ է բարձրացնում, այսպես կոչված, «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» առանձին խումբը՝ Բասիլ եպիսկոպոսի գլխավորությամբ, իրականում՝ Գրիգոր Տուտեորդու ղեկավարությամբ և Մխիթար Գոշի մասնակցությամբ, որոնք հայտնի որոշ գործիչների հետ «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» խմբերի ընդհանուր գործունեության երկրորդ շրջանն են բնութագրում: Եվ այս ժամանակաշրջանի բնորոշն այն է, որ Հաղբատ-Սանահնի կողքին արդեն իսկ հայտնի են դառնում հարևան օջախներ ևս՝ Խորակերտը, Հաղարծինը և Գետիկը, նաև այն, որ այս շրջանում, այսպես կոչված, «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» գործունեության կենտրոնը կամաց-կամաց դեպի արևելք է տեղափոխվում, Հաղբատ-Սանահինն ընկնում է, և նոր կենտրոններ են ծաղկում, ինչպես Խորանաշատը, որն իր արժանիքներով Հաղբատ-Սանահնի տեղն է գրավում, սակայն երբ այստեղ մարում է առողջ ստեղծագործական ոգին, գիտագրական աշխատանքի ալիքը հարավ-արևելքով տեղափոխվում է Սյունիք: Այս երկրորդ շրջանին, որի մեջ ընդգրկում ենք ԺԲ. դարի վերջին քառորդից մինչև ԺԳ. դարի երկրորդ քառորդը, այսինքն՝ մինչև մոնղոլների ներխուժման ժամանակաշրջանը, մենք նվիրում ենք հաջորդ (այս մենագրության երրորդ) մասը:

Այսպիսով, մենագրության երկրորդ մասում մենք քննարկում ենք Հաղբատ-Սանահնի դպրոցի գործունեությունը ԺԱ-ԺԲ. դարերում, իսկ երրորդ մասում՝ նույն Հաղբատ-Սանահնի դպրոցը և հարևան օջախների խմբակներինը՝ ԺԲ-ԺԳ. դարերում: Խորանաշատի դպրոցի մասնակի բնութագրումով ընդհատում ենք մեր վերլուծությունը, քանի որ ինչպես այս դպրոցի շարունակությունը,

*այնպես էլ Սյունիքի դպրոցների գործունեությունը «Հյուսիսային կողմանց վարդապետների» խմբերից ժամանակագրական և քաղաքական-աշխարհագրական տեսակետից բաժանվում է, այդ պատճառով նրա ուսումնասիրությունը Վրաստանի պետականության ոլորտում դառնում է անհնարին: Անտարակույս, նրան հարկավոր է առանձին հետազոտություն կամ հետազոտություններ, որոնցից մեկն արդեն կատարված է հանձին* Համազասպ Ոսկեանի *«Յովհաննէս Վանական և իւր դպրոցը»*[1] *մենագրության:*

*Հարցը, «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» վերաբերյալ, մենք ուսումնասիրում ենք ժամանակագրական հաջորդականությամբ, և եթե որոշ տեղերում այս կարգը խախտված է (օրինակ՝ Աբասաորդի* Գրիգոր Սանահինեցու *մասին խոսում ենք* Գետիկցի *Մխիթար Գոշից առաջ և ոչ թե հետո), սա բացատրվում է նրանով, որ Հաղբատ-Սանահնի հարևան օջախների մասին կխոսենք միայն այն բանից հետո, երբ Հաղբատ-Սանահնի դպրոցի պատմությունն ամբողջովին սպառված կլինի:*

*Ամեն դեպքում ընթերցողներին հնարավորինս կներկայացնենք «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց»-ի ամբողջական պատկերը, բայց, աշխատանքն անթերի չի կարող լինել. որի հաղթահարումը անհնարին էր սկզբնաղբյուրների անբավարար լինելու պատճառով:*

* * *

*Կա մեկ հանգամանք ևս, որին անհրաժեշտ է ուշադրություն դարձնել ի սկզբանե: Եթե մենք ուզում ենք ԺԲ-ԺԳ. դարերում տեղի ունեցած նույնպիսի բանավեճերը բնութագրելիս ճիշտ եզրակացության հանգել, ապա անպայման սկզբից ևեթ պետք է նկատի ունենանք, թե ինչ բնույթ է կրել հայ-վրացական բանավեճը մինչև Ժ-ԺԱ. դարերը:*

*Բանն այն է, որ ինչպես այժմ արդեն աքսիոմա է համարվում. «ի սկզբանե Քարթլիի եկեղեցին, հայերի հետ միասին, հարում էր մոնոֆիզիտ կամ հակաքաղկեդոնական քրիստոսադիտությանը, վեցերորդ դարի երկրորդ կեսից, սակայն տարբեր պատճառներով բյուզանդական կողմնորոշում ընդունեց և Է. դարի սկզբին վերջնականապես հեռացավ Հայաստանից՝ համառորեն պաշտպանվելով հակաքաղկեդոնականությունից»*[2]*: Ինքնըստինքյան հասկանալի է,*

[1] **Համազասպ Ոսկեան**, Յովհաննէս Վանական և իւր դպրոցը [ԱՄ ՂԳ.], Վն., 1922:

[2] **Կոռն. Կեկելիձե**, Վրաց գրականության պատմություն, I, 532:

*որ այս հանգամանքը՝ մի կողմից, հայերի՝ վրացիների հետ ու վրացիների՝ հայերի հետ եկեղեցական-քաղաքական մերձավորությունն ու հարևանությունը՝ մյուս կողմից, հնարավորություն պիտի ստեղծեին հայերի մեջ հակադիոֆիզիտական կամ հակաքաղկեդոնական գրականություն ստեղծելու համար, իսկ վրացիների մեջ՝ հակամոնոֆիզիտականի համար[3]: Բայց քանի որ Քարթլիի եկեղեցին նախապես կախվածության մեջ էր հայ եկեղեցուց[4], վրացիների անջատումը հայերը չէին հանդուրժում, այդ պատճառով նրանք ամեն կերպ առիթ էին փնտրում վրացիներին մեղադրելու, իսկ վրացիները պաշտպանվում էին և հանդես գալիս պատասխաններով: Այսպիսին է Աբրահամի և Կյուրիոնի միջև կայացած նամակագրության հիմնական բովանդակությունը, որը ներառված է «Գիրք Թղթոց»-ում: Նման եզրակացության կարելի է հանգել Աբրահամի հայտնի կոնդակից, որտեղ նա կարգադրում է իր հոտին՝ հայերին, հեռանալ վրացիներից, նրանց հետ բոլորովին չհաղորդակցվել ո՛չ աղոթքով, ո՛չ կերուխումով, ո՛չ ազգական-բարեկամական կապերով, ո՛չ մանուկների դաստիարակությամբ, ո՛չ Մանգլիսի ու Մցխեթի Ջվարիի երկրպագությունով, բացի առևտրից, ինչպես հրեաների հետ[5]: Այս բնույթի են նաև հայ-վրացական պառակտման հարցի վերաբերյալ մինչև Ժ-ԺԱ. դարերի երկերը, դրանց մեջ է մասնավորապես* Ուխտանեսի *«Պատմութիւն բաժանման Վրաց ի Հայոց» երկը: Իսկ ինչ վերաբերում է վրացական հուշարձաններին, մասնավորապես՝* Արսեն կաթողիկոսի *«Վասն բաժանման Վրաց ի Հայոց»-ին, նրանց մեջ ևս մինչև նույն Ժ-ԺԱ. դարերը հայերի հանդեպ ոչ մի ագրեսիվություն չի նկատվում[6]: Վրացիները կամ միայն իրենց էին պաշտպանում, ինչպես* Արսենի *գրվածքն է համոզում, կամ էլ առաջ քաշված հարցին այս կամ այն պատասխանն էին հակադրում հակամոնոֆիզիտական արդարացումով: Ինչպես կտեսնենք, բոլորովին այլ եղանակով է ընթանում հայ-վրացական բանավեճը ԺԲ-ԺԳ. դարերում, երբ «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» միջավայրից ելած բանավիճողները միանգամայն այլ լեզվով էին խոսում վրա-*

---

[3] Հմմտ. Նույն տեղում:

[4] Հմմտ. Н. Марр, Исторический очерк грузинской церкви с древнейших времен, “Церковные Ведемости”, 1906 г., прил., прот. пред соб. присутствия № 5, стр. 115 и прим. 2 ib.: Ն. Ակինեան, Կիւրիոն կաթողիկոս Վրաց, 169 և հջրդ.. Կոռն. Կեկելիձե, Նշ. աշխ., 36-37:

[5] Գիրք թղթոց, 194:

[6] Հմմտ. Կոռն. Կեկելիձե, Նշ. աշխ., 532-539:

*ցիների հետ, իսկ վրացիները բոլորովին այլ տոն էին օգտագործում նրանց և առհասարակ հայերի հանդեպ: Սա, իհարկե, իր պատճառն ունի, որ մենք, մի կողմից «Հյուսիսային կողմանց» Վրաստանի պետականության տարածման պայմաններով պիտի բացատրենք, իսկ մյուս կողմից՝ նույն «Հիւսիսային կողմանք»-ում քաղկեդոնականություն պրոպագանդելու ուժեղացման փաստով[7]:*

*Մի խոսքով, հայ-վրացական հարաբերությունների հարցերի հետ կապված, Թ–Թ. դարերում «Հյուսիսային կողմանց հայոց վարդապետների» թղթերում, մենք հաշվի պիտի առնենք այն հանգամանքը, թե ինչ բնույթ էին կրում բանավեճերը մինչև Ժ–ԺԱ. դարերը, և ինչ բնույթ կրեցին դրանք ԺԲ–ԺԳ. դարերում, թե ով էր հարձակվողն ու պաշտպանվողը մինչև Ժ–ԺԱ. դարը, ով դարձավ հարձակվող և պաշտպանվող ԺԲ–ԺԳ. դարերում. և եթե տեղի ունեցավ դերերի ինչ-որ փոփոխություն, ապա* ե՞րբ, ինչպե՞ս և ինչո՞ւ *տեղի ունեցավ:*

[7] Որպես «հյուսիսային կողմերում» քաղկեդոնական քարոզչության ուժեղացման փաստաթուղթ ԺԱ-ԺԳ. դարերի համար մենք կարող ենք օգտագործել այն ժամանակների հետևյալ վանքերի գոյությունը՝ Լոռու «Պղնձահանքի» (=Ախթալա), Բջնիի «Պղնձահանքի» (=Գյուրջիքիլիսա), Քոբերի, «Ձնէվանքի», Ոսկեպարի. ևն, որոնց վերաբերյալ մենք խոսեցինք Ե. գլխում: Հաղբատի վանական կյանքի և արարողության վրա վրացիների *յուրահատուկ ազդեցության* մասին է խոսում նաև **Ներսես Լամբրոնացին** (1154-1199), որը Կիլիկիայի Լևոն թագավորին ուղղված իր թղթերում հետևյալ բառերով է խոցում Հաղբատցիներին. «Հագնի՞մ **գիշտ** որպէս Հաղբատայ եպիսկոպոսն, և երկու թիզ կնկուղ **վրացի սաքուլայով**, և պատարագե՞մ հաղբատեցի սև փիլոնով, և **փակե՞մ զդուռն ի վերայս**. և ծգե՞մ զվարագոյրն, և անհաղո՞րդ առնեմ ժողովուրդն յիւրեանց Աստուծոյն քաւիչ մահուանէն» (Տն. Ներսեսի Լամբրոնացւոյ Տարսոնի եպիսկոպոսի՝ Ատենաբանութիւնն և թուղթ և ճառք [Շարք ընտիր մատենագրաց Հայոց, 8], Վնտ., 1865, էջ 218):




Նկար 3. Սանահինի վանքի պլանը

- Գրապահոց
- Գրապահոցի գավիթը
- Սուրբ Գրիգոր եկեղեցին
- Ս. Աստվածածին եկեղեցին
- Այսպես կոչված «Մագիստրոսի ճեմարանը»

6 - Ս. Ամենափրկիչ տաճարը

7 - Զանգակատուն

8 - Ս. Աստվածածին եկեղեցու գավիթը

9 - Ս. Ամենափրկիչ տաճարի գավիթը

# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

# ՀԱՂԲԱՏ-ՍԱՆԱՀՆԻ ԴՊՐՈՑԸ

# ԺԱ-ԺԲ. ԴԱՐԵՐՈՒՄ



Նկար 4. Դ. Այսպես կոչված Մագիստրոսի ակադեմիան Սանահինում (ներսից) *(վրացերեն հրապարակությունից՝ էջ 93)*



Մագիստրոսի ակադեմիան մեր օրերում (2006 թ.)

# ԳԼՈՒԽ Ա.

## ՀԱՂԲԱՏ-ՍԱՆԱՀՆԻ ԴՊՐՈՑԻ ՀԻՄՆԱԴՐՈՒՄԸ. ԴԻՈՍԿՈՐՈՍԻ ԵՎ ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

*Մեր մենագրության առաջին մասի հինգերորդ գլխում արդեն ասել ենք, որ Հաղբատը և Սանահինը պատմականորեն այնքան են կապված մեկը մյուսին, որ խոսել նրանցից մեկի մասին մյուսից անկախ, թույլատրելի է, քանզի «առանց Հաղբատի անհասկանալի է Սանահինը, առանց Սանահնի՝ Հաղբատը». «երկու վանքերը պատմության համար ներկայացնում են մեկ ամբողջություն»:*

*Պարզ է, ուրեմն, որ Հաղբատի և Սանահնի գիտագրական դպրոցների մասին խոսելառանձին-առանձին, ճիշտ չի լինի, չնայած Հաղբատի դպրոցը իր բեղունությամբ և նշանակությամբ անհամեմատ առաջ է անցել Սանահնի դպրոցից: Բայց և այնպես, ըստ էության, խոսել Հաղբատի դպրոցի մասին, եթե նախօրոք չանդրադառնանք Սանահնի դպրոցի հիմնադրմանը, անկարելի է, մանավանդ ժամանակագրորեն և ըստ պատմական աղբյուրների՝ Սանահինը ավելի վաղ է հիմնադրվել, քան Հաղբատը:*

*Սանահին-Հաղբատի, մասնավորապես՝ Սանահնի* դպրոցի ստեղծման *հարցը մշուշապատ է. ոչ մի տեղ վկայված չէ՝ վանքերի հիմնադրման ժամանակից ի վեր նրանցում կրթօջախներ բացվե՞լ են, ովքե՞ր էին առաջին գիտական-գրական գործիչները, որտեղի՞ց էին եկել և այլն: Հայտնի են միայն ԺԱ. դարի մի քանի գործիչներ, որոնց անունները կապված են Սանահնի, մասամբ Հաղբատի հետ:*

*Այսպես, առաջին հերթին, հայտնի է ոմն* Դիոսկորոս *կամ Դեոսկորոս եպիսկոպոս, որ հետագայում օծվեց կաթողիկոս, ապա և վտարվեց: Նա է* համարվում *Սանահնի դպրոցի հիմնադիրը: Նրա մասին տեղեկություններ են հաղորդում* Մատթեոս Ուռհայեցին, Կիրակոս Գանձակեցին, Վարդանը *և մի քանի վանքերի արձանագրություններ:*

Մատթեոս Ուռհայեցին *նրան անվանում է «զմեծն Դէոսկորոս՝ զհայր վանիցն [Սանահնոյ]» և «մեծ հռետորն Դէոսկորոս»*[1]*:* Կիրա-

[1] Մատթէոս Ուռհայեցի, 76:

կոսի *խոսքերով՝ «զԴէոսկորոս ումն առաջնորդ սուրբ ուխտին՝ որ կոչի Սանահին»*[2], Վարդանը *հիշատակում է «զԴէոսկորոս առաջնորդ սուրբ ուխտին Սանահնին... այր սուրբ և առաքինի»*[3]:

Մատթեոս Ուռհայեցին *մանրամասնորեն, իսկ* Կիրակոս Գանձակեցին *համառոտակի, պատմում են, թե ինչպես Անիի թագավոր Հովհաննեսը[-Սմբատ]-ը (1020-1039), ձերբակալեց կաթողիկոս Պետրոս Գետադարձին*[4], *«առաքեաց [զարս]... ի վանքն ի Սանահին»*[5]՝ *հիշյալ Դիոսկորոսին Անի բերելու համար և Պետրոսի փոխարեն նրան կաթողիկոս դրեց: Եվ Դիոսկորոսին «նստուցին զնա կաթողիկոս յաթոռ հայրապետութեանն Հայոց զտարի մի և զամիսս երկու, և ոչ ըստ Աստուծոյ հրամանացն»*[6]*: Եվ դրա համար նա՝ Դիոսկորոսը, ըստ տարեգրի՝ «Ձեռք չբերեց հայ ժողովրդի կարեկցանքը և վստահությունը, առավել ևս, որ ինքը չկարողացավ ինչպես հարկն է պաշտպանել իր գահի հեղինակությունը, 1038 թ. Աղվանքի Հովսեփ կաթողիկոսի ղեկավարությամբ Անի քաղաքում տեղի ունեցած եկեղեցական ժողովը նրան ազատեց կաթողիկոսի պաշտոնից, որից հետո,- ըստ* Մատթեոս Ուռհայեցու՝ *«գնաց ի Սանահինն, ի վանքն իւր և կարի յոյժ ամաչելով ընդ գործս իւր»*[7], *սակայն, ըստ* Սամուել Անեցու՝ *«յուղարկեալ... ի վանս իւր»*[8], Կիրակոս Գանձակեցու *տեղեկությամբ՝ «գնաց սրտմտութեամբ... ի տուն իւր ի Սանահինն, և անդ եղև վախճան կենաց նորա, և եդաւ հուպ յեկեղեցին)*[9]:

*Եթե նկատի ունենանք, որ կաթողիկոսի պաշտոնից Դիոսկորոսի հեռացումը* Կիրակոս Գանձակեցու *վկայությամբ*[10] *տեղի է ունեցել Անի քաղաքում «ընթացեալ յանդգնութեամբ ի վերայ Դէոսկորոսի, պատառեցին զքօղն յերեսաց նորա յաւուր յայտնութեան Տեառն՝ մինչդեռ օրհնէին զջուրն, քանզի քօղով վարէին յայնմ ժամանակի կաթողիկոսքն, եւ հանին անարգանօք զնա ի քաղաքէն, եւ կացու-*

2 Կիրակոս, 84.

3 Վարդան, 98.

4 Միքայել Չամչյանի «Պատմութիւն Հայոց»-ի վրացական տարբերակում Գետադարձ-ը թարգմանված է բառացի՝ գետ, որը հետ է հոսում (Վրաստանի պատմաազգագրական թանգարանի ձեռ. Յմր 3107, տետր II, էջ 3բ):

5 Մատթէոս Ուռհայեցի, 76:

6 Նույն տեղում.

7 Նույն տեղում, 76-78:

8 Սամուէլ, 107:

9 Կիրակոս, 84:

10 Նույն տեղում. նույնը կրկնում է ԺԷ. դարի պատմագիր Առաքել Դավրիժեցին (Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժցւոյ, Բ. տպ., Վաղ., 1896, էջ 622):

*ցին զՊետրոս յաթոռ իւր», իսկ ըստ* Մատթեոս Ուռհայեցու՝ *նա՝ Դիոսկորոսը*[11], *կաթողիկոսի պաշտոնը վարեց 14 ամիս, մենք անպայման կաթողիկոսի պաշտոնում նրա մնալը պետք է սահմանափակենք 1036 թ. նոյեմբերից մինչև 1038 թ. հունվարի 6-ը»*[12]*:*

*Չնայած Դիոսկորոսը 1038 թվականից այլևս կաթողիկոս չէր, սակայն մինչև մահ կրել է հայրապետի կոչումը*[13]*: Դրանով է բացատրվում, որ տարբեր վանքերի, հատկապես Սանահնի արձանագրություններում, նա մինչ իր մահը կոչվել է «հայրապետ»*[14]*՝ այս բառի պատմական նշանակությամբ: Օրինակ, 1040 թ. Թալինի արձանագրությունում*[15]*, Սանահնի այլևայլ ժամանակների արձանագրություններում՝ մինչև 1063 թ.*[16]*: Ամեն դեպքում՝ վերջին արձանագրության համաձայն՝ պարզվում է, որ 1063 թվականին Դիոսկորոսը դեռևս ողջ է եղել: Նրա գերեզմանի տեղը Սանահնում հայտնի չէ*[17]*:*

*Ինչ վերաբերում է Դիոսկորոսի գիտագրական գործունեությանը, այդ մասին գոյություն ունեցող աղբյուրներում, ցավոք, ոչինչ չկա, բացի մեզ արդեն հայտնի է* Մատթեոս Ուռհայեցու *վկայությունից, որը նրան կոչում էր «մեծ հռետոր». ինքնին հասկանալի է, դա չպետք է գործածված լինի հասարակ քարոզչի իմաստով:*

* * *

*Դիոսկորոսի ժամանակակիցն էր նույն՝ ԺԱ. դարիականավոր գործիչ* Գրիգոր Մագիստրոսը՝ *Պահլավունիների ազնվական տոհմից, ում անունը, չգիտես ինչու, կապում են Սանահնի հետ:*

---

[11] **Մատթէոս Ուռհայեցի**, 76:

[12] Այսպիսով, 1036 թ. մայիսի 10-ին Դիոսկորոսը դեռևս կաթողիկոս չէր կարող լինել, ինչպես կարծում է **Ս. Ջալալեանցը** (Ճանապարհորդութիւն, Ա., 52): Սխալ է նաև **Աբել [Մխիթարեան]**-ի (Պատմութիւն հալածչած, ուրացողաց, հերձուածողաց և բաժանելոց յեկեղեցւոյն Հայոց.- Ա, 1875, էջ 293-294) կարծիքը՝ իբր Դիոսկորոսը Անիում հակաթոռ կաթողիկոս է եղել 2 տարի:

[13] Հմմտ. Կ. **Կոստանեանց**, Տէր Պետրոս Գետադարձ, Վաղ., 1897, էջ 29:

[14] Հայերեն՝ հայրապետ = πατράρχης, ռուսերեն՝ патриарх, իսկ վրացերեն թարգմանվում է՝ **մամաթմթավարի**:

[15] **Շահխաթունեանց**, Բ., 51-52 (§ 379), որտեղ Դիոսկորոսի անունը սխալ է ընթերցված՝ Թէոսկորոս (այս արձանագրությունը մենք վկայել ենք դեռևս 1924 թ.):

[16] **Ջալալեանց**, Ա., 28, 32, 52, **Յովհ. Ղրիմեցի**, 48-49, **Յարութիւնեան**, Սանահին, 297: **Կոստանեանց**, 21, 24: Ամենուր հիշատակված է՝ **Դիոսկորոս**:

[17] Դիոսկորոսի մասին ընդհանրապես տե՛ս **Կ. Կոստանեանց**, Տէր Պետրոս Գետադարձ, 27-29, **Օրմանեան**, Ազգապատում, 1213-1214 (§ 835):

Բանն այն է, որ Սանահնի շենքի մի մասը, որ պահպանվել է մինչև մեր օրերը, կոչում են «Մագիստրոսի ճեմարան»[18]: Դա, ինչպես երևում է այստեղ զետեղված նկարներից (Հմրք 3 և 4), բավականին լայն ելումուտի միջանցք է (այժմ՝ վերացված), որ գտնվում է արևմուտք-արևելյան ուղղությամբ և, այսպես կոչված, Ամենափրկիչ տաճարի հյուսիսային և Ս. Աստվածածին եկեղեցու հարավային պատերի միջև: Այն ներառում է 6 կամար, որոնք հենվում են 6 զույգ սյուների վրա, իսկ այս սյուների արանքներում կան յոթական աթոռներ աջից և ձախից[19], յուրաքանչյուրը մեկ մարդու համար: Իհարկե, այդ շենքում «ճեմարան» հիշեցնող ոչինչ չկա, բայց հետաքրքիր է, թե Սանահնում ինչպես է առաջացել այդ կեղծ պատկերացումը «Գրիգոր Մագիստրոսի «ճեմարանի» մասին:

Սարգիս Ջալալյանցը 1842 թ. գրել է. «...Աստուածամայր եկեղեցւոյն է արձակավայր երեք խորանաւոր գաւիթ, զետեղեալ ի վերայ վեցից սեանց. յորում են գերեզմանք վեհազն և պայազատ իշխանաց Գրիգորի Վահրամեանց՝ հաւուն Մագիստրոսի»[20]: Այս տեղեկությունը մենք ստուգել ենք տեղում՝ Սանահնում, 1927 թվականի ամռանը, մեր այնտեղ գտնվելու ժամանակ. պարզվեց՝ հիշատակված գավիթը իրենից ներկայացնում է բավականին մեծ սրահ-գերեզմանատուն: Նրա առաջին շարքում ընդամենը 11 գերեզման է, որոնցից երեքը, այսինքն՝ Հմրք 1, 2 և 10, առանց մակագրությունների են, իսկ մնացած ութը՝ Հմրք 3-9 և 11, մակագրություններով, որոնք կարդացվում են հետևյալ կերպ. 3. Վաչէ Ալճեցի, 4. Համազասպ Մեծ, 5. Սարգիս Աղեկեցե[ի], 6. Սմբատ, 7. Գաւգա[ն], 8. Վահրամ Գաւգանի, 9. Գրիգոր և 11. Հասան: Այս արձանագրությունների մեջ, ի միջի այլոց, հիշատակվում են նաև՝ Գրիգոր, Հասան, Վահրամ և Սմբատ, որովհետև Գրիգոր Մագիստրոսի հոր անունը Հասան էր, հորեղբորը և տղայինը՝ Վահրամ, իսկ հորեղբորորդունը՝ Սմբատ, թերևս այդ հանգամանքն է հուշել Սանահնի միաբանության անդամներին և Ս. Ջալալյանցին, որ նրանք հիշատակված գերեզմաններում Պահլավունիների տոհմական գերեզմանոցն են փնտրել[21]: Բայց քանի որ

[18] [А. Муравьев], Грузия и Армения, II, 306-307, Ջալալեանց, Ա., 14, Յարութիւնեան, Սանահին, 295-296, Լալայեան, 382, 386 և այլն:

[19] Ա. Մուրավյովը (ճշ. աշխ.) 12 գահաթոռ է հաշվում:

[20] Ջալալեանց, Ա., 13.

[21] Մ. Չամչեանը (Պատմութիւն Հայոց, Բ., 938), չգիտես ինչու, Վահրամի գերեզմանը Սանահնում է ցույց տալիս: Դրան հակադրվում են Պահլավունիների տոհմական Մարմաշենի վանքի արձանագրությունները): (И. Орбели, Надписи Мармашена [Памятники армянской эпиграфики, I], Пгр. 1914, стр. 2-3, 5), որոնց համաձայն՝ վերջինում թաղված է թե՛ Վահրամը և թե՛ Գրիգորը:

*հետազոտողները «մագիստրոսի» տիտղոսը համարել են* գիտական աստիճան, *ոչ թե Բյուզանդական արքունիքի պատվավոր պաշտոն կամ տիտղոս*[22], *հատկապես դրա համար Պահլավունիների գերեզմանոցը ուսումնասիրելուց հետո նույն միաբանության անդամները բնականաբար պետք է փնտրեին* Մագիստրոսի ճեմարանը, *որի համար հարմար չենք ամբողջ Սանահնի եկեղեցու շրջապատում մնում էր միայն և միայն վերը նշված ելումուտի միջանցքը, առավել ևս, որ ելքի մոտ կար 7 զույգ = 14 (և ոչ թե 12, ինչպես Մուրավյովն է հաշվել՝ առաքյալների քանակին նմանեցնելով) տեղ նստելու համար, հեշտությամբ կարելի էր գտնել նստատեղերը, որտեղ պարապում էին մագիստրոսի աշակերտները*[23] *(տես Հմր 3 և Հմր 4 նկարները):*

*Այսպիսով, Սանահնում գոյություն ունեցող* «Գրիգոր Մագիստրոսի ճեմարանը» *պետք է համարվի նույնատիպ մի հեքիաթ, ինչպիսին է* Շոթա Ռուսթավելու *սենյակի գոյության մասին* ավանդագրույցը, *որ հայտնի է Իղալթոյի ակադեմիայում*[24]*:*

*Գրիգոր Մագիստրոսի կենսագրությունը, որ կազմել է Կ. Կոս*տանեանցը՝ *հիմնվելով սկզբնաղբյուրների վրա, Սանահնում չի երևում այս անհատի գործունեությունը: Ընդհակառակը, հենց* Կ. Կոստանյանցն *է պարզել*[25], *որ Գրիգորը հոգացել է Հայաստանի վանքերի նորացման գործը, որոնց մեջ առաջինը Ա. Հավուց Թառն էր (Գառնիի մերձակայքում՝ Երևանի մոտ), երկրորդը՝ Բջնիի Աստվածամոր, երրորդը՝ Կեչառիսի սուրբ Գրիգոր Լուսավորիչ (Ծաղկաձոր-Դարաչիչակ) վանքերը: Իսկ Սանահնի հետ, ինչպես և մի քանի այլ եկեղեցիների հետ, օրինակ՝ Մարմաշենի, նա սոսկ նամակա-*

---

[22] Glossarium ad scriptores mediae et infimae graecitatis, auctore Carolo du Fresne, Domino du Cange, t. I, Vratislaviae, 1891, col. 843-844. **Н. Скабаланович**, Византийское государство и церковь в XI веке, Спб., 1884, стр. 153, стр. 194, 198, **Д. Беляев**, Ежедневные и воскресные приемы византийских царей и праздничные выходы их в храм св. Софии в IX-X в. [Byzantina II], Спб., 1893, стр. 11, 14, 15, 22, 23, 26, 34, 42, 53, 61, 62, 64, 67, 205, 207, 230: **Կ. Կոստանեանց**, Գիրգոր Մագիստրոսի թղթերը, Ալեքսանդրապոլ, 1910, էջ ԽԳ-ԽԵ.:

[23] Մագիստրոսի ճեմարանի մասին լեգենդն այնքան զորեղ է Սանահնում, որ նրա գոյությանը հավատում են (**Լ. Յովհաննիսյան**, Գրիգոր Մագիստրոսը որպես XI դարու հայ բժշկության ներկայացուցիչ.- “Bulletin de l’ Université d’Etat de la R. S .S. d’Arménie”, № 1, Յերեվան, 1925, էջ 122):

[24] Յմմտ. **Մ. Ջանաշվիլի**, Կախեթում, «Սաքարթվելո» (լրագիր), 1917 թ., № 190:

[25] **Կ. Կոստանեանց**, Գրիգոր Մագիստրոսի թղթերը, էջ Թ-ԽԸ. (Պահլաւունիք և Գրիգոր Մագիստրոս), նույն տեղում՝ Գրիգոր Մագիստրոսի թղթերը: Վերջիններիս մասին տե՛ս նաև **Իսահակ Սրապեան**, Գր. Մագիստրոսի գրուածոց նոր հաւաքածոյ մը Անտոնեան հայոց մատենադարանի մէջ.- ՅԱ, 1909, էջ 110:

գրություն ուներ: Սանահնին ուղղված նրա գրություններից մեկը թղթերի ժողովածուի մեջ ունի հետևյալ վերնագիրը. «Պատասխան սրբազան եղբարցն սուրբ ուխտին Սանահին, որ գրեալ էին թուղթ օրհնութեան ի Միջագետս և մեղադրականս սակս ոչ գրելոյ թուղթ առ նոսա»[26]:

Այս թուղթը հետաքրքիր է երկու առումով. 1) դրանով հաստատվում է, որ Գրիգոր Մագիստրոսը չի պատկանել սանահինյան միաբանությանը և այդ միաբանության հետ նա միայն դրսից է նամակագրություն վարել, և 2) նրանում Գրիգոր Մագիստրոսը՝ յիշելով «զհայրական ծերոցդ ծայրագունից խնամս առ մեզ և խրատ»[27], նրանց շարքում նշում է իր վախճանված հորը և նրա եղբորը, այսինքն՝ հորեղբորը («յաղագս կատարման ծնողին իմոյ և հարազատին իւր»)[28]: Հետաքրքիր է, որ Գրիգորը Սանահինը համարում է մայրաքաղաք[29]՝ իր վարժարաններով, որտեղ «զերիտասարդացն, որք ի վարժարանսն, հռետորական և երաժշտական զնոցայն զմտաւ ածեալ»[30]):

Պակաս հետաքրքրություն չի ներկայացնում թղթակցության վերջին հատվածը, որտեղ Գրիգորը գրում է. «Այլ կամէի եւ կամիմ ձիր եւ ընծայ ինչ սուրբ ուխտիդ առաքել, որպէս պարտ է ճշմարիտ հարազատի ձեր եւ եղբաւր»[31]:

Երվանդ Տեր-Մինասյանցը միանգամայն արդարացի է, երբ այդ թղթակցությունից անում է հետևյալ եզրակացությունը. «Գրիգոր Մագիստրոսի նման ականաւոր անձնաւորութիւնը Սանահնի միաբաններին իրեն հայր և խրատող է անուանում, բոլոր արուեստից և մակացութեանց մէջ իմաստուն, ամբողջ Արամեան սեռի մէջ ականք»[32]:

Երվանդ Տեր-Մինասյանցը, չգիտես ինչու, կարծում է, «որ նոյն Գրիգոր Մագիստրոսը շատ թղթեր ունի գրած նաև Անանիա Սանահնեցուն զանազան խնդիրների համար», և որ «ժամանակի երկու նշանաւոր գիտնականները մտերմական սերտ յարաբերութիւններ ունէին, և շարունակ նամակաբերները գնում և գալիս էին միմեանց

---

[26] Կ. Կոստանեանց, Գրիգոր Մագիստրոսի թղթերը, 136 -142, հմմտ, Եր[ուանդ] Ս. [Տէր-Մինասեանց], Հաղբատ և Սանահին վանքերը.- Ա, 1901, էջ 339-340:

[27] Կ. Կոստանեանց, Նշ. աշխ., 136, հմմտ. Եր. Ս., 339:

[28] Կ. Կոստանեանց, Նշ. աշխ., 141:

[29] Կ. Կոստանեանց, Նշ. աշխ., 138, հմմտ. Եր. Ս., նույն տեղում:

[30] Կ. Կոստանեանց, Նշ. աշխ., 136, հմմտ. Եր. Ս., նույն տեղում:

[31] Կ. Կոստանեանց, Նշ. աշխ., 142, հմմտ. Եր. Ս., նույն տեղում:

[32] Եր. Ս., 340:

*մոտ»*[33]*: Որ Գրիգոր Մագիստրոսը սուրհանդակների միջոցով էր վարում թղթատարությունը սանահինցիների հետ, դա հստակ հաստատվում է վերոնշյալ նամականու*[34] *վերջին մասով: Բայց որ Գրիգորը ճիշտ Անանիա Սանահնեցու և ոչ թե մեկ ուրիշ Անանիայի հետ էր նամակագրություն*[35] *վարում, դա ոչ մի բանից չի երևում*[36]*:*

*Ամեն դեպքում, եթե Գրիգոր Մագիստրոսի ճեմարանի գոյությունը Սանահնում մենք կասկածելի ենք համարում, ապա նրա ամբողջ գործունեության վերլուծությունը, նրա իսկ վարած գրագրությունը, մասնավորապես՝ հղված Սանահնի միաբանությանը, բոլոր այդ թղթերը պարզորոշ ցույց են տալիս, որ նա՝ Գրիգոր Մագիստրոսը, Սանահնի հետ, իսկապես ինչ-ինչ կապեր ունեցել է: Պարզվում է նաև, որ Գրիգոր Մագիստրոսի գործունեության ժամանակ Սանահնում գոյություն ունեցել է հոգևոր դպրոց, որտեղ, նրա իսկ խոսքերով,- «եւ որք ի վարժարանսն՝ հռետորական եւ երաժշտական, զնոցայն զմտաւ ածեալ հանդէս եւ զմրցումն եւ զգեղեցիկ մոլութիւնս»: Եթե հենց վանքի միաբանների խմբակում ծավալվեր գիտական-գրական աշխատանք, բառիս իսկական իմաստով, և եթե այդ խմբակը համապատասխան պատրաստվածությամբ, անհրաժեշտ խորագիտություն ունեցող հեղինակավոր ղեկավար կամ ղեկավարներ ունենար, ապա եկեղեցական միաբանությունը ստիպված չէր լինի Սանահնի և Գետամեջի հարաբերությունների մեջ առաջացած ինչ-որ թյուրիմացության պատճառով դիմել դրսի այնպիսի անձնավորության, ինչպիսին այն ժամանակ Գրիգոր Մագիստրոսն էր: Միաժամանակ լիովին հասկանալի է դառնում Գրիգոր Մագիստրոսի նշանակությունը [Հաղբատ-]Սանահնի դպրոցի համար: Եթե նրան չի կարելի համարել այդ դպրոցի հիմնադիրը, ապա, վերջին հաշվով, կարելի է համարել նրա վերածնողներից կամ ոգեշնչողներից մեկը, որի պատճառով միանգամայն բնական է դպրոցի ներկայացուցիչների գործունեության գնահատությունը, Դիոսկորոսից բացի, հիշատակելով Գրիգոր Մագիստրոսի անունը, առավել ևս, որ զգացվում է՝ ինքը՝ Գրիգորը, Սանահնում է դաստիարակվել:*

---

[33] Նույն տեղում:

[34] Կ. Կոստանեանց, նշ. աշխ., 142:

[35] Նույն տեղում., 116-124:

[36] Նույն տեղում., 305-306 (ծնթ. 18), հմմտ. 123:

# ԳԼՈՒԽ Բ.

## ՄԱՏԹԵՈՍ ՀԱՂԲԱՏԵՑԻ ԵՎ ՎԱՐԴԱՆ ՍԱՆԱՀՆԵՑԻ. ՀԱԿՈԲ ՔԱՐԱԲՆԵՑԻ-ՍԱՆԱՀՆԵՑԻ

*Դիոսկորոսի ժամանակակիցներն էին* Մատթեոս Յաղբատեցին *և* Վարդան Սանահինեցին, *որոնց 1049 թվագրությամբ հիշատակում է* Մատթեոս Ուռհայեցին*:*

*Դիոսկորոսին կաթողիկոսի գահից հեռացնելուց հետո՝ 1038 թ., Անիում գումարված եկեղեցական ժողովը վերականգնեց կալանքից ազատված Պետրոս Գետադարձին: Վերջինս, ժամանակագրի տվյալներով, իր շուրջը հավաքեց ժամանակի հանրաճանաչ գործիչներին, նրանց թվում՝ Մատթեոս Հաղբատեցուն և Վարդան Սանահնեցուն «վարդապետք և իմաստասէրք և հմուտք Հին ու Նոր կտակարանացն Աստուծոյ»[1]: Այդ երկու գործիչները, ի միջի այլոց, հիշատակված են այն 18 անձանց թվում, ովքեր 1049 թ.[2] Կոստանդին Մոնոմախի հրավերով Պետրոսին ուղեկցեցին Կոստանդնուպոլիս: Այլ տեղեկություններ նրանց մասին չկան:*

* * *

*Մատթեոս Հաղբատեցուց և Վարդան Սանահնեցուց համեմատաբար լավ հայտնի է Դիոսկորոսի աշակերտ* «Յակոբոս Քարաբնեցին *կամ* Սանահինեցին», *որի մասին բավականին ընդարձակ պատմում է* Մատթեոս Ուռհայեցին. *Հայոց 534 <=1085> թվականին վախճանվեց հայոց վարդապետ Հակոբ Քարաբնեցին, որին կոչում էին Սա-*

---

[1] Մատթէոս Ուռհայեցի, 104-105:

[2] Ըստ Երվանդ Տեր – Մինասյանցի՝ «Յաղբատ և Սանահին վանքերը.- Ա, 1901, էջ 339», «Պետրոս Գետադարձ հայրապետը տեղ գնալիս՝ այդ վանքերից էր ուղեկիցներ առնում իր հետ... նորա հետ Պոլիս են գնում Վարդան Սանահնեցի և Մատթէոս Յաղբատցի վարդապետները»: Սա, սակայն, իրականությանը չի համապատասխանում, որովհետև 1049 թ. Կոստանդնուպոլիս ուղեկցած 18 անձանցից միայն երկուսն են Յաղբատ-Սանահնից. դրանից բացի, հնարավոր է, որ Մատթեոսի և Վարդանի ինքնությունը հավաստող մակդիրները՝ «Յաղբատեցի» և «Սանահնեցի», ցույց են տալիս ծագումով նրանց որտեղացի լինելը, ոչ թե գործունեության վայրը:

*նահնեցի, այր՝ հզոր և կորովի. «Սորա հասեալ ի վերայ Հին և Նոր կտակարանացն Աստուծոյ, ունեալ և հասեալ սորա ի վերայ հռետորական իմաստասիրութեանցն և տեղեկացեալ ամենայն փիլիսոփայական խորին գիտութեանցն»: Նա՝ Սանահնի հայր[-ապետ]-ի՝ մեծն Դիոսկորոսի աշակերտներից էր: Եվ սա այն Հակոբն էր, որը Սենեքերիմի որդիներին ուղեկցեց Կոստանդնուպոլիս հռոմների (այսինքն՝ հույների) իմաստասերների մոտ և խոսեց հայերի հավատքի մասին Դուկի ժամանակ*[3] *«խոսեալ վասն հաւատոցս Հայաստանեայցս, և հաճեալ ի բանս նորա ամենայն տունն Յունաց: Եւ յայսմ ժամանակիս էր ի քաղաքն յՈւռհա, և ծերութեամբ քաղաքաւարեալ զկեանս իւր»*[4]*:*

*Մասնավորապես այն դավանանքի շուրջ զրույցներին, որոնց մասնակցում էր Հակոբը, նույն տարեգիրն ասում է. «Իսկ թագաւորն Տուկիծ արար քննութիւն հաւատոյ իւր առաջի, և Յակոբոս վարդապետն՝ որ ասի Սանահնեցի, արար դիմադրութիւն բազում յամենայն հարցմունսն ընդդէմ Հոռոմոց. բայց սակաւ մի վասն երկբնութեանն Քրիստոսի ի կողմն Հոռոմոց դարձաւ: Եւ յամենայն պատճառսն հաւատոցն հաճեալ թագաւորն և հրամայեաց յայնը վերայ գիր միաբանութեան գրել ընդ Հայք և ընդ Հոռոմք. և վարդապետն Հայոց Յակոբոս գրեաց գիր միաբանութեան Հայոց և Հոռոմոց: Եւ հաճեալ թագաւորին ի գիր հաւատոյն, հրամայեաց դնել զգիրսն ի սուրբն Սոփի, զի ահա յայսմ հետէ եղիցին ի միասին միաբանեալ Հայք և Հոռոմք»*[5]*:*

*Եվ, այսպես,* Մատթեոս Ուռհայեցու *խոսքերից պարզվում է, որ Սանահնեցի անվանված Հակոբ Քարաբնեցին՝ 1) իրականում եղել է Դիոսկորոս Սանահնեցու աշակերտը, 2) նա եղել է մեկը ԺԱ. դարի այն նշանավոր և փառաբանված գործիչներից, որը Կոնստանտին Դուկասի ժամանակ (1059-1068) մասնակցել է հայերի և հույների միջև ծագած կրոնական վեճին և միացել երկաբնակների ճամբարին, որը Հաղբատ-Սանահնի դպրոցի՝ ի սկզբանե վերցրած ուղու տեսակետից իբրև թե զգալի աններդաշնակություն էր առաջացնում, 3)*

[3] Կոստանդին Դուկաս (1059-1068):

[4] **Մատթէոս Ուռհայեցի**, 227:

[5] **Նույն տեղում**, 161-162: Կարծես այս և նախորդ մեջբերման կրկնությունն է **Կիրակոս Գանձակեցու** (Կիրակոս, 351-352) տեղեկությունը ոմն «Գիտուն և մեծ վարդապետ Հակոբի» մասին, որին բարեկամության և միաբանության համար Հայոց Կոստանդին կաթողիկոսը (1221-1267) ուղարկել էր հույների թագավոր Հովհաննեսի (1222-1228) մոտ. ուրեմն՝ մոտավորապես 1222-1228 թվականներին, եթե, իհարկե, այստեղ, ժամանակագրական սխալ չկա:

*հույների հետ նրա կնքած պայմանագիրը հույների համար այնքան ձեռնտու էր և ընդունելի, որ իր մասնակցությամբ կազմված* «Գիրք հաւատոյ» *երկը պահպանվում է սուրբ Սոֆիայում, 4) նա իր գործունեության վերջին շրջանը, ամեն դեպքում՝ 1059-1068 թվականներից հետո մինչև իր մահը անցկացրել է Ուռհա քաղաքում (Եդեսիայում) և այնտեղ էլ վախճանվել է 1085 թվականին:*

*Հակոբ Քարափնեցու գործունեության բնութագրությունն ավարտուն չի լինի, եթե մենք հաշվի չառնենք, այսպես կոչված, շարականները, այսինքն՝ եկեղեցական օրհներգերը, որոնցից մեկը* Յակոբ *անունն է կրում*[6]*, իրենից ներկայացնում է ակրոստիքոս, որի սկզբնատառերը տալիս են ՅԱԿՈԲ.*

*Յանըսկըզբնական ծոցոյ Հօր խոնարհեալ...*
*Անոխակալ քաղցրութեամբ Որդի Աստուծոյ...*
*Կամաւորական մահուամբ քո լուծեր...*
*Որ փոխանակ մեղաւորաց ըզմեռանիլ...*
*Բարեբանեմք զանչափ քո ըզմարդասիրութիւնդ...*[7].

*Գրականության մեջ իշխող կարծիքը այս շարականը վերագրում է Հակոբ Քարափնեցուն*[8]*, բայց, ճիշտն ասած, չկա որևէ փաստաթուղթ, որ հաստատի կամ ժխտի սույն կարծիքը, ահա ինչու, շարականի հեղինակի հարցը առայժմ թողնում ենք բաց:*

[6] Շարական, էջմ., 1861, էջ 672:

[7] **Նույն տեղում**

[8] **Կ. Կոստանեանց**, Տէր Պետրոս Գետադարձ, էջ 47, Եր. ս., Յաղբատ և Սանահին վանքերը.- Ա, 1901, էջ 274, Շարական, էջ Բ., Шаракан, пер. **Н. Эмина**, 2-е изд., Москва, 1914, стр. 400.

## ԳԼՈՒԽ Գ.

## ԱՆԱՆԻԱ ՍԱՆԱՀՆԵՑԻ. ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՆՐԱ ԿՅԱՆՔԻ ԵՎ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*«Սանահնի փառքն ու պարծանքը, նորա ամբողջ գիտնական ուսման և ոգու ներկայացուցիչը, այն բազմիմաստ և պերճաբան վարդապետն է՝ Անանիա Սանահնեցին, որի գրուածքներն այժմ էլ կարդալիս ընթերցողն զգում է, թէ ի՛նչպիսի ուժի ու գրչի տէր է եղել նա»,- Անանիա Սանահնեցուն այսպես է բնութագրում* Երվանդ Տեր-Մինասյանցը[1]*:*

*Ցավոք, այնպիսի անհատի մասին, որպիսին* Անանիա Սանահնեցին *է, կենսագրական գրեթե ոչ մի տեղեկություն չունենք: Գիտենք միայն, որ նա Դիոսկորոսի ժամանակակիցն է, հետևաբար՝ ԺԱ. դարի կեսերի գործիչ, բայց երբ է ծնվել կամ երբ և որտեղ է իր մահկանացուն կնքել, դեռևս մնում է անորոշ*[2]*:*

*Հայ պատմագրական աղբյուրներում Անանիայի մասին տեղեկությունների հանդիպում ենք միայն* Կիրակոս Գանձակեցու *և* Վարդանի *երկերում:*

Կիրակոսը *հիշատակելով, որ «յԱրեւելս արք անուանիք և գիտնականք, լուսաւորիչք եկեղեցւոյ»*[3], *Անանիայի մասին առանձնապես ասում է. «Անանիա վարդապետ ի Սանահինն, յաւուրս Դէոսկորոսի, այր մտաւոր և հանճարեղ, գիտող տոմարական արհեստի, և գրոց աստուածայնոց մեկնող: Սորա ասեն ի մի հաւաքեալ ի մեկնութիւնն առաքելոյ զբանսն Եփրեմի և Յովհաննու Ոսկեբերանին և Կիւրղի և այլ սրբոց, արարեալ համառօտ վասն դիւրահասութեան ընթերցողաց, արար և խորհրդական և մտաւոր տեսութիւն և համեմատութիւն աւետարանացն առ օրինակս. գրեաց և լուսաւոր իմացուածս վասն խորհրդական սրբասացութեանս, որ յեկեղեցիս*

---

[1] Եր[ուանդ] ս. [Տէր-Մինասեանց], Հաղբատ և Սանահին վանքերը.- Ա, 1901, էջ 274:

[2] Ա[բրահամ] Զամ[ինեան]ը, (Պատմութիւն հայ գրականութեան, Ա., Նոր-Նախիջևան, 1915, էջ 162) նրա մահվան տարեթիվը նշել է՝ 1070, բայց, ցավոք, չի նշել աղբյուրը, եթե, իհարկե, այդպիսին գոյություն ունեցել է:

[3] Կիրակոս, 103-107:

*ուղղափառաց <այսինքն՝ Հակաքաղկեդոնականների> խաչեցարիւ ասեն, և զՆերբողեանն Շողակաթին»*[4]*:*

Վարդանը, *պատմելով Հովհաննես Սարկավագի, նրա աշակերտների և Սամուել Անեցու մասին, նշում է, որ «եւ նախ քան զսոսա Անանիա, որ զառաքեալսն համառօտեաց հրամանաւ կաթուղիկոսին Պետրոսի, Սանահնեցին»*[5]*:*

*Մի ձեռագիր ժողովածուի մեջ կա* Կիրակոսի *և* Վարդանի *տեղեկությունների միացմամբ խմբագրություն, որ ավելի ուշ ժամանակների (ԺԸ-ԺԹ. դդ.) ձգձգված խմբագրություն է հիշեցնում. «Մեկնչաց աստուածային գրոց ի մերոց վարդապետաց, թէ ո՞վ ոք է արարեալ - Անանիա վարդապետն Սանահին վանուցն. այր մտաւոր եւ հանճարեղ, գիտող տոմարական արհեստին, էր ի ժամանակս Պետրոս կաթուղիկոսին, եւ հրամանաւ նորա ի մի հաւաքեալ զբանս Եփրեմի եւ Յոհաննու Ոսկեբերանին, եւ Կիւրղի եւ այլ սրբոցն, զԴԺ.ան (14) թուղթսն Պաւղոսի առաքելոյն, համառաւտ եւ դիւրահաս ընթերցողաց»*[6]*:*

*Ինչ վերաբերում է այն իրողությանը, որ Անանիան որոշ փաստաթղթերում* Սանահնեցի *չի հիշատակվում, իսկ երբեմն կոչվում է Անանէ Հաղբատացի, ինչպես, օրինակ,* Մատթեոս Ուռհայեցու *երկում է*[7] *կամ* Ձորագետցի *(Անանիա վարդապետ Ջորագետցի), ինչպես կարդում ենք [Նրա երկի] Հովհաննես Երզնկացու տարբերակում*[8]*, սա առանձնակի բացատրություն-մեկնաբանության կարիք չունի:* Մատթեոս Ուռհայեցին Անանիային *կոչում է* Սանահնեցի, *կարծես այն միտվածությամբ, որի պատճառով, ինչպես մեկ անգամ արդեն նշել ենք*[9]*, Սանահնի որոշ նշանավոր գործիչներ հայտարարվել են* Հաղբատցիներ *(օրինակ՝ Գրիգոր Տուտեորդին)*[10]*, և եթե* Հովհաննես Երզնկացու *տարբերակում Անանիան* Ձորագետցի *է կոչված, այն պատճառով, որ, ինչպես արդեն պարզել ենք*[11]*,* Ձորագետցին *երբեմն քողարկում է* Սանահնեցուն*:*

---

[4] **Կիրակոս**, 104:

[5] **Վարդան**, 121:

[6] **Յակոբ Յ. Թօփճեան**, Ցուցակ ձեռագրաց Խաչիկ վարդապետի Դադեան, Վաղ., 1898, էջ 91բ: * Մաշտոցեան Մատենադարանի ձեռ. 3964 (ԺԸ. դ.), 47բ-5բ - Գ. Տ-Վ.:

[7] **Մատթէոս Ուռհայեցի**, 179:

[8] Տե՛ս Էջմ. թանգ. ճոր հավաք. ձեռ. Հմր 1110 [=6453], էջ 1ա:

[9] Տե՛ս այս գրքի առաջին մասի Գլ. Ե., ծնթ.:

[10] Նամականի, 5:

[11] Տե՛ս այս գրքի առաջին մասի Ա. գլխի շարադրանքի երկրորդ կեսը:

* * *

*Անանիա Սանահնեցին Հաղբատ-սանահինյան դպրոցի այն գլխավոր ներկայացուցիչն է, որի գործունեությամբ է բնութագրվում դպրոցը, այսինքն՝ եթե հետևենք* Երվանդ Տեր-Մինասյանցին, *ապա «Անանիայի ոգին Սանահնի դպրոցի ոգին է, Անանիայի ուսումը ամբողջ Սանահնի դպրոցի ուսումն է. ուրեմն Անանիայի ոգին ըմբռնելով և նրա ուսման ու հայեացքներին ծանօթանալով, մենք մասամբ ըմբռնած կլինենք Սանահնի դպրոցի ոգին ու ուսումը»*[12]:

*Ցավոք, այս գործչի երկերից ցայսօր գրեթե ոչինչ հրատարակված չէ, եթե, իհարկե, նկատի չունենանք նրա նշանակալից գրվածքներից այն մի քանի հատվածները, որոնք զետեղված են վերջին շրջանի այս կամ այն գիտական աշխատությունում:*

*Անանիա Սանահնեցու անունը հայ գրականության մեջ հուշակված է հիմնականում նրա մեկ չափազանց նշանակալից գրվածքով, որը ներկայացնում է հայ հակաքաղկեդոնական գրականության զարգացման գործընթացի գլխավոր աստիճաններից մեկը՝ այն երկերից հետո, որոնց մասին մենք խոսեցինք առաջին մասի երկրորդ գլխում: Այս երկը հիմնականում դոգմատիկական-բանավիճային բնույթի ժողովածուում է հանդիպում և հայտնի է հետևյալ վերնագրով.*

*«Անանիայի վարդապետի Հայոց՝ Բան հակաճառութեան ընդդէմ երկաբնակաց, զոր գրեաց հրամանաւ տեառն Պետրոսի Հայոց վերադիտողի»*[13]:

*Քանի որ* Կիրակոս *Գանձակեցին այս երկի մասին չի հիշատակում, ուստի հարց է ծագում. իսկապե՞ս դրա հեղինակը Անանիա Սանահնեցին է, թե՞ մեկ այլ Անանիա: Որ դա պատկանում է Անանիա Սանահնեցուն, հաստատում է Հովհաննես Երզնկացու ժողովածուն, որը ԺԳ-ԺԴ. դարերից դասագրքի նշանակություն է ունեցել*

---

[12] **Եր[ուանդ] ս. [Տէր-Մինասեանց]**, նշ. աշխ., 275:

[13] Տե՛ս էջմ. թանգարանի հին հավաքածուի ձեռ. № 567 (=518), էջ 4բ-109բ, 436 (=655), էջ 1-121, նոր հավաքածուի № 929 [5618], 1110 [=6453], և Միութենական Գիտությունների Ակադեմիայի Ասիական թանգարանի ձեռ. № 9, էջ 3-164 [ИВ, B 95]: Գրականություն. **Միաբան (Գալուստ Տէր-Մկրտչեան**, Անանիա Նարեկացի, Գիր խոստովանութեան.- Ա, 1892, էջ 275-282, **Յակովբոս Տաշեան**, Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք, հետազօտութիւնք և բնագիրք, Ա. [ԱՄ ԺՁ.], Վն., 1895, էջ 57, **Գ. Զ[արբհանալեան]**, Հայկական հին դպրութեան պատմութիւն, Գ. տպ., Վնտ., 1897, էջ 589, **Գարեգին Յովսէփեան**, Խոսրովիկ թարգմանիչ. ևլն., էջ 24, **Արիստակէս Սեդրակեան**, Հայաստանեայց եկեղեցւոյ պատկերայարգութիւնը, ՍՊբ., 1904, էջ 127-129. և այլն:

*Հայերի համար: Այդ ժողովածու-դասագիրքը ներառում է դոգմատիկական-բանավիճային բնույթի երեք երկ՝ ուղղված քաղկեդոնականների դեմ: Հենց կազմողի՝ Հովհաննես Երզնկացու վկայությամբ՝ սա ներկայացնում է «գերեք գիրս*[14]*, որ են հիմունք հաւատոյ ուղղափառութեան», այսինքն՝ 1) Անանիա Զորագետցու, 2) Խոսրովիկ Հռետորի (Թարգմանչի) և 3) Հովհաննես Սարկաւագ վարդապետի, իսկ ժողովածուն մեզ է հասել բազում ձեռագրերի տեսքով: Այդ ձեռագրերից մի տարբերակին կցված է հետևյալ ընդարձակ ներածությունը.*

*«Գիրք հակաճառութեան և ընդդիմաբանութեան ընդդէմ երկաբնակաց: Արարեալ ի վաղնջուց ժամանակաց ի մերոց նախնի երանելեաց՝ երից արանց գերիմաստից և հմտագունից: Նախ՝* Անանիայի վարդապետի Զորագետցւոյ՝ յաւուրս հայրապետութեան *տեառն* Պետրոսի Գետադարձի[15]*: Երկրորդ՝ Խոսրովկայ Թարգմանչի քաջ հռետորի (որ յառաջ է ժամանակաւ քան զԱնանիա վարդապետն): Երրորդ՝ Յովհաննէս վարդապետի Սարկաւագ կոչեցելոյ Հաղպատեցւոյ: Զորս դարձեալ յառաջ ժամանակաւ հաւաքեալ է ի մի երանելի վարդապետն մեր Յովանէս Եզնկայեցի: Իսկ նորդենիս ի յաւուրս գերիշխանական հայրպետութեան տեառն Ղուկասու սրբազնակատար կաթուղիկոսի ի հնագոյն և յընտիր օրինակէ ետու գրել վասն իմ՝ նուաստ ծառայս Քրիստոսի Աստուծոյ մերոյ և յետինս ի պաշտօնէից մօրս լուսոյ սրբոյ աթոռոյս Էջմիածնի Իսահակ վարդապետս Գեղամեցի ի թուոջ Փրկչին ՌՉՁԷ. և ի մերումս թուոջ ՌՄԼԶ.*[16]»:

*Քանի որ այս ներածականում Անանիան հիշատակվում է որպես «Անանիա վարդապետ* Զորագետցի», *իսկ Զորագետցի, ինչպես արդեն գիտենք*[17], Սանահնեցի *է նշանակում, պարզ է, որ Անանիա Սանահնեցուն վերոհիշյալ երկի հեղինակ համարելու որևէ խոչընդոտ չպետք է լինի:*

Յովհաննես Երզնկացու *խմբագրությունն ունի առաջաբան և վերջաբան: Հատկապես հետաքրքիր է վերջինը*[18]*, որից պարզվում է, որ*

---

[14] Ձեռագրում՝ «գիրքս» (sic):

[15] Այս կետը Անանիայի երկի վերնագրի կրկնությունն է:

[16] Տե՛ս Էջմ. թանգ. նոր հավաքածուի ձեռ. Յմր 1110 [=ՄՄ 6453], էջ 1ա:

[17] Տե՛ս այս գրքի առաջին մասի Ա. գլխի շարադրանքի երկրորդ կեսը:

[18] Տե՛ս **Գիւտ Աղանեանց**.- «Արձագանք» 1888, էջ 63-64, **Միաբան (Գ. Տէր-Մկրտչեան), Անանիա Նարեկացի**.- Ա, 1892, էջ 379-380, **Յ. Տաշեան**, Մատենագրական մանր ուսումնասիրութիւններ. նշն., 58-59, **Գ. Յովսէփեան**, Խոսրովիկ թարգմանիչ. նշն., 1-2, **Ե. [Տէր-Մինասեանց]**, Հաղբատ և Սանահին վանքերը, 338-339:

*Անանիան իր երկը գրել սկսել է կաթողիկոս Պետրոս Գետադարձի (1019-1036, 1037-1051/1054) հանձնարարությամբ, սակայն վերջացրել է նրա հետնորդի՝ Խաչիկ կաթողիկոսի (1054-1060) օրոք, որին էլ նվիրել է այս աշխատությունը*[19]*:*

*Եվ, այսպես, եթե Անանիա Սանահնեցու գրվածքն ավարտելու ժամանակը սահմանենք 1054-1060 թվականները, ապա կտեսնենք, որ այն համընկնում է ճիշտ այն ժամանակին, երբ Կոստանդնուպոլսում տեղի էր ունենում բանավեճ Յակոբ Քարաբնեցու մասնակցությամբ (մոտավորապես 1059-1068 թթ.)*[20] *և* Դրտիլայի *բանավեճը՝ Սոսթենես Մարմաշենցու մասնակցությամբ (1046 թ.)*[21]*: Եվ* բոլորովին սխալ չի լինի, եթե ասենք, որ այդ երկն անմիջական արդյունքը լինի հենց Դրտիլայի (Ջավախքում) 1046 թվականի բանավեճի և նրա յուրովի արձագանքը՝ հայ մատենագրության մեջ:

*Տվյալ աշխատությունը բավականին ծավալուն է և ներառում է հետևյալ հոդվածները՝*

*Ա. Վասն մեծի հինգշաբաթին:*

*Բ. Առ ապականացու ասողն է զմարմինն Տեառն:*

*Գ. Վկայութիւնք՝ 1) Պրոկղի, 2) Նորին Սքանչելագործի (sic), 3) Կիւրղի Աղեքսանդրացւոյ, 4) [Գրիգորի] Նիւսացւոյ, 5) Տեառն Եփրեմի, 6) Սրբոյն Աթանասի, 7) Սրբոյն Գրիգորի՝ Լուսաւորչին մերոյ, 8) Սրբոյն Եպիփանու, 9) Անփիլայ եպիսկոպոսի, 10) Գրիգորի Նիւսացւոյ, 11) Սրբոյն Բարսեղի, 12) Գրիգորի Աստուածաբանի, 13) Սրբոյն Յովհաննու Ոսկեբերանի, 14) Կիւրղի Աղեքսանդրացւոյ, 15) Սեբերիանոսի, 16) Պրոկղի, 17) Յովհաննու Ճգնաւորի, 18) Ոսկեբերանի, 19) Սրբոյն Աթանասի հայրապետի, 20) Դիոնէսիոսի Արիոպագացւոյ, 21) Սրբոյն Եփրեմի, 22) Սրբոյն Գրիգորի՝ Հայոց Լուսաւորչի, 23) Սրբոյն Աթանասի, 24) Բարսղի հայրապետի, 25) Փիլիքսիմա Բաքայ եպիսկոպոսի, 26) Սրբոյն Երիանոսի, 27) Կիւրղի՝*

---

[19] **Սամուել**, 294-295, ծնթ. 55:

[20] Տե՛ս այս գրքի նախորդ՝ Բ. գլխի վերջին մասը:

[21] **Կոռն. Կեկելիձե**, ორი ექვთიმე ძველს ქართულ მწერლობაში (Երկու Էքվթիմե վրաց հին մատենագրության մեջ).- «Չվենի մեցնիերեբա», № 2-3 (1923), էջ 108-114, **նույնի՝** Վրաց գրականության պատմություն, I, 541.- Սոսթենեսի հարցի պարզաբանման համար պրոֆ. **Կոռն. Կեկելիձեն** օգտագործում է մի կողմից՝ վրաց գրականության մեջ հայտնի աշխատությունը (**Մ. Սաբինինի** «Վրաստանի դրախտը», էջ 615-621) և մյուս կողմից՝ Մարմաշենի արձանագրությունները (**Ի(Յովսեփ). Օրբելի**, Մարմաշենի արձանագրությունները), բայց Սոսթենեսի ինքնությունը պարզելու համար, բացի այս երկու աղբյուրներից, հնարավոր է օգտագործել Մագիստրոսի և Սոսթենեսի գրագրությունը, որը ներառված է Գրիգորի ժողովածուի մեջ (**Կ. Կոստանեանց**, Գրիգոր Մագիստրոսի թղթերը, 101-104, հմմտ. 303-304):

*Երուսաղէմի Հայրապետի, 28) Եպիփանու Կիպրայ, 29) Աթանասի Հայրապետի, 30) Յուլիոյ՝ Հռոմայ Հայրապետի:*

*Դ. Առ ներքին անցեալսն:*

*Ե. Վասն պատկերապաշտ[ութեան]*[22]*:*

*Զ. Վասն ժողովոյն Քաղկեդոնի,*

*Է. Վասն բաժանման Վրաց*[23]*:*

*Ը. Ի յԱղուանից պատմութենէն*[24]*:*

*Թ. Պատճառ բաժանմանն Վրաց*[25]*:*

*Ժ. Վասն չորից աթոռոցն:*

*ԺԱ. Վասն մեռոնին:*

*ԺԲ. Վասն բաղարջին:*

*ԺԳ. Վասն տօնի Ծննդեան Քրիստոսի:*

*ԺԴ. Պատճառ երից սրբասացութեան, զոր Հայք ի դէմս Որդւոյ ասեն*[26]*:*

*Անանիայի գրվածքի տարբեր մասերը, ի դեպ, հաստատում է նաև* Կիրակոս Գանձակեցին: *Եվ, իսկապես, այդ դրույթի ճշմարտության մեջ համոզվելու համար բավական է վերը նշված ցուցակի վերջին հոդվածի վերնագիրը՝ «Պատճառ երից սրբասացութեան», համեմատենք* Կիրակոսի *հիշատակած համապատասխան ստեղծագործության հետ:*

*Տիմոթեոս Կուզի երկի հայկական տարբերակի հրատարակիչները՝* Կարապետ Տեր-Մկրտչյանը *և* Երվանդ Տեր-Մինասյանցը *պնդում են*[27]*, որ Անանիան բավականաչափ օգտվել է համաշխարհային հայրերի ստեղծագործություններից, մասնավորապես՝ Իրինեոսի, Գրիգոր Սքանչելագործի, Հուլիոս Հռոմայեցու, Հովհան Ոսկեբերանի, Աթանասի, Կյուրեղի, կապադովկիացի մեծերի և այլոց աշխատություններից, որոնք մեծ մասամբ նման են Տիմոթեոս Կուզի «Բան*

[22] Այդ հոդվածը ամբողջովին հրատարակել է **Արիստակէս Սեդրակեանը** (**Արիստակէս Սեդրակեան**, Հայաստանեայց եկեղեցու պատկերայարգութիւնը, ՍՊբ., 1904, էջ 127-129, նոր հայերենով թարգմանված 129-131 էջերում. «Պատկերապաշտության համար»:

[23] Այս հոդվածը տպագրում ենք հաջորդ՝ Դ. գլխում. «Վրացիների պառակտումը»:

[24] Այս հոդվածը տպագրում ենք հաջորդ՝ Դ. գլխում. «Աղվանքի պատմությունից»:

[25] Այս հոդվածը տպագրում ենք հաջորդ՝ Դ. գլխում. «Վրացիների պառակտման պատճառները»:

[26] Անանիայի երկի մասին տե՛ս **Եր[ուանդ]** ս. **[Տէր-Մինասեանց]**, Հաղբատ և Սանահին վանքերը, 275-277, **Երուանդ Տէր-Մինասեանց**, Հայոց եկեղեցու յարաբերութիւնները Ասորւոց եկեղեցիների հետ, Էջմ., 1908, էջ 299, Timmotheus Älurus'.... Widerlegung der auf der Synode zu Chalcedon Festgesetzten Lehre, էջ XX-XXI:

[27] Timotheus Älurus, XXI:

*հակաճառութեան»-ից բերված մեջբերումներին, նրանք չեշտում են հատկապես Հուլիոս Հռոմեացուն, որը Անանիայի երկերի մեջ ամբողջովին բերված է Տիմոթեոսի գրքից*[28]*, ինչպես նաև հատվածներ՝ Գրիգոր Սքանչելագործի հոդվածներից:*

Երվանդ Տեր-Մինասյանցը, *անդրադառնալով Անանիայի գիտագրական գործունեությանը, մեկ առ մեկ մատնացույց է անում այն բոլոր երկերը, որոնք Անանիա Սանահնեցու անունով մեզ են հասել ձեռագիր վիճակում և դրանց շարքում նշում է «Պօղոսի չորեքտասան թղթոց մեկնութիւնը» և «Բան հակաճառութեան ընդդէմ երկաբնակաց»-ը, բացի հետևյալներից*[29]*.*

*- Խրատ ոդեշահ, թե ո՞րպէս կարասցէ մարդ զմիտս որոշել յերկբաւորացս:*

*- Խրատ քահանայից:*

*- Ի խորհուրդ Յովհաննու մարգարէի:*

*- Դրուատ ի սուրբ Մկրտիչն Յովհաննէս:*

*- Սակս անխտիր հաղորդելոյն Յունաց*[30]*:*

*- Վասն խոնարհութեան:*

*- Վասն համբերութեան:*

*- Վասն զղջման և արտասուաց:*

*- Վասն անցաւոր աշխարհիս:*

*- Վասն ապաշխարութեան:*

*- Յաղագս Խորհրդոյ:*

*- Խրատք:*

*- Մեկնութիւն Մատթէոսի աւետարանին:*

*Այս ցուցակը, իհարկե, անհրաժեշտ է համապատասխան ձեռագրերի հետ ստուգել: Ամեն դեպքում, եթե մենք վերոթվարկյալ սկզբնաղբյուրներին, այսինքն՝* Կիրակոս Գանձակեցու *և* Վարդանի *տեղեկություններին հավատանք, ապա չենք կարող [երկն] Անանիա Սանահնեցուն չհատկացնել, նախ, որ «Վասն անխտիր հաղորդելոյն Յունաց» երկասիրությունը, որը իր ուղղվածությամբ*

[28] **Նույն տեղում**, 259-262:

[29] **Եր[ուանդ] Ս. [Տէր-Մինասեանց]**, Հաղբատ և Սանահին վանքերը, 274-275:

[30] Այս երկը «Վասն անխտիր հաղորդելոյն Յունաց» ներառված է «Կանոնագրքում», այդ մասին տե՛ս **Արշակ Տէր-Միքելեան**, Հայաստանեայց եկեղեցին և Բիւզանդական ժողովոց պարագայք, Մոսկվա, 1892, էջ 150 -151, ծնր. 1, **Յ. Տաշեան**, Ցուցակ, 655, **Արիստակէս Դաւթեան**, Կանոնք ս. ժողովոց և հարց եկեղեցւոյ, Տփղ., 1904, էջ 134-138, **С. Тигранян**, Древнеармянская «Книга канонов», стр. 92,164, բնագիրը հրատարակել է **Արիստակէս Դաւթեանը**՝ Կանոնք ս. ժողովոց, նույն տեղում (Անանիայի Հայոց վարդապետի՝ Ընդդէմ Յունաց, որ վասն յաճախ հաղորդելոյ):

*«Բան հակաճառութեան ընդդէմ երկաբնակացն» դեմ է գրված և կարծես նույն հեղինակի գործն է*[31]*, այնուհետև «Պօղոսի չորեքտասան թղթոց մեկնութիւնը» և «Մեկնութիւն Մատթէոսի աւետարանին»-ը, որոնցից վերջինը գրել է հեղինակը՝ «ընկալեալ զհրաման Տեառն... հօր Դէոսկորոսի և հոգելիր վարդապետի՝ Սանահնի սուրբ ուխտի առաջնորդի»*[32]*:*

*Չենք կարող Անանիա Սանահնեցուն չհատկացնել նաև* Կիրակոսի *հիշատակած «զներբողեանն Տողակաթին»-ը՝ հետևյալ վերնագրով՝*

*«Երանելւոյն Հօր Անանիայի հոգեվարժ <տրբրկ.՝ հոգեշնորհ> փիլիսոփային՝ Ներբողեան ասացեալք ի սուրբ Կաթողիկէ եկեղեցի, որ է ի Նոր քաղաք, որ այժմ կոչի Վաղարշապատ, յորում տեղւոջ ցուցաւ հրաշական տեսիլն մեծ նահատակի սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչի»*[33]*:*

---

[31] Տե՛ս նախորդ ծանոթագրությունը:

[32] **Եր[ուանդ] ս. [Տէր-Մինասեանց]**, Հաղբատ և Սանահին վանքերը, 275:

[33] Տպագրված է հետևյալ վերնագրով՝ Անանիայի հոգեվարժ փիլիսոփայի՝ Ներբողեան ի Կաթողիկէն Վաղարշապատու, Կ. Պօլիս, 1747, «Ճռաքաղ», 1859, հմմտ. **Ա. Ղազիկեան**, Հայկական նոր մատենագիտութիւն, Ա., Վնտ., 1912, էջ 155:

## ԳԼՈՒԽ Դ.

# ԱՆԱՆԻԱ ՍԱՆԱՀՆԵՑԻՆ ԵՎ ՆՐԱ ԹՂԹԵՐԸ ՀԱՅ-ՎՐԱՑԱԿԱՆ ՊԱՌԱԿՏՄԱՆ ՇՈՒՐՋ

*«Երկաբնակների դեմ» իր երկասիրության մեջ Անանիա Սանահնեցին շոշափում է հայ-վրացական հարցը, որին նվիրում է 3 բաժին՝ հետևյալ վերնագրերով. 1) «Վասն բաժանման Վրաց», 2) «Ի յԱղուանից պատմութենէն» և 3) «Պատճառ բաժանմանն Վրաց»:*

Առաջին *բաժինը՝ ամբողջովին կառուցված*[1] Ուխտանեսի *երկի հիման վրա, շատ թե քիչ ինքնուրույն է, այն կարելի է համարել անանիական, և հետաքրքիր է այն առումով, որ ԺԳ. դարի սկզբին, ինչպես դա կպարզվի հետագայում, այն դրվեց* Միխիթար Գոշի *հայ-վրացական բաժանման հարցին վերաբերող պատմության հիմքում:* Երկրորդը *ներկայացնում է* Մովսես Կաղանկատվացու *կամ* Ուտիեցու *«Պատմութիւն Աղուանից աշխարհի» երկի 47-րդ գլխի երկրորդ բաժնի առաջին կեսի կրկնությունը (մինչև Հայոց Աբրահամ կաթողիկոսի թղթից արված մեջբերումը)*[2]*, որը օգտագործել է նաև* Պողոս Տարոնեցին *ԺԲ. դարի սկզբին*[3]*: Իսկ* երրորդը *նույն այդ* Մովսես Ուտիեցու *«Աղուանից պատմության» 2-րդ մասի հաջորդ (48-րդ) գլխի մեծագույն մասի կրկնությունն է, որտեղ բերված է Ը. դարի վերջերի գործիչ, կաթողիկոս* Սողոմոն Մաքենացու[4] *նամակը, ինչպես նաև նույն* Մովսեսի *հավելած բառերը, բացառությամբ սկզբնամասի ոչ մեծ հատվածի*[5]*: Այն աղբյուրից, որից օգտվել է Անանիան, հետագայում օգտվել է նաև* Ստեփանոս Օրբելեանը *(ԺԳ. դարի վեր-*

---

[1] Մասնավորապես համեմատի՛ր **Ուխտանեսի՝** Բաժանման պատմության 53-րդ գլուխը՝ իբրև Պետրոս եպիսկոպոսի մասին տեղեկություններ բովանդակող:

[2] Մովսիսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի [ՂՄ 8], Տփղ., 1913, էջ 306-307:

[3] **Յով. Միսքճեան,** Ցուցակ հայերէն ձեռագրաց քահանայապետական մատենադարանին Վատիկանու ի Հռովմ.- ՀԱ, 1892, էջ 340, **Տաշեան,** Ցուցակ, 768:

[4] Սողոմոն Մաքենացու մասին տե՛ս **Մ. Չամչեան,** Պատմութիւն Հայոց, Բ., 425-426, **Օրմանեան,** Ազգապատում, էջ 911-914 (§ 626-627), հմմտ. Յովհաննու կաթուղիկոսի Դրասխանակերտեցւոյ Պատմութիւն Հայոց, Տփղ., 1912, էջ 110-111:

[5] **Մովսիսի Կաղանկատուացւոյ** Պատմութիւն Աղուանից աշխարհի, 309-313:

*ջերին) «Վասն ինն դասուց եկեղեցւոյ...» մասին խոսելիս, ինչպես հենց ինքն է պատմում*[6]*:*

*Քանի որ Անանիայի «Բան հակաճառութեան ընդդէմ երկաբնակաց» երկը, որի մեջ զետեղված են նշված հատվածները հայ-վրացական պառակտման վերաբերյալ, մինչև օրս չի հրատարակվել, ուստի, հաշվի առնելով մեր աշխատության յուրահատուկ բնույթը, նպատակահարմար ենք գտնում բոլոր այդ նյութերը, երեք մասի բաժանած*[7]*, հրապարակել այստեղ՝* Մովսես Ուտիեցու *պատմությունից վերցրած բնագրին զուգահեռ*[8]*:*

*Թեև բովանդակության առումով այս բաժիններում էական ոչինչ չկա, բայց և այնպես մինչ դրանց ծանոթանալը, հարկ է հաշվի առնել ուշադրության արժանի մեկ հանգամանք. որովհետև Անանիա Սանահնեցուն համարում ենք Դիոսկորոսի ժամանակակիցը, այսինքն՝ ԺԱ. դարի կեսերի գործիչ, ուստի ենթադրվում է, որ հայ-վրացական պառակտման մասին նրա երկը՝ «...Ընդդէմ երկաբնակաց», պետք է որ արդյունք լինի այն բանավեճի, որը տեղի է ունեցել ԺԱ. դարում, մասնավորապես Բագրատ Դ.-ի օրոք, Ղրտիլայի 1046 թ. ժողովում, վրացիների կողմից՝ Էքվթիմե Գրձելու կամ Երուսաղեմացու և հայերի կողմից՝ Սոսթենես Մարմաշենցու մասնակցությամբ*[9]*: Մեր կարծիքով՝ դրանով պետք է բացատրել և երկի բնույթը, որտեղ հեղինակը հանդես է գալիս ոչ թե հարձակվողի, այլ պաշտպանվողի դերում*[10]*:*

---

[6] **Օրբէլեան**, 99-100, «Վասն ինն դասուց...»-ի մասին տե՛ս **Օրբելյանի** «Պատմութեան» 27-րդ գլխի վերնագիրը՝ «Վասն ինն դասուց եկեղեցւոյ՝ թէ ո՞րք են և ո՞րպէս վարին» (**նույն տեղում.**, 107-112) էլ ավելի ընդարձակ է, քան **Մովսես Ուտիեցու և Անանիա Սանահնեցու** երկերում է: Ուխտանեսից, Սողոմոն Մաքինացուց և Մովսես Ուտիեցուց բացի, **Օրբելեանը** հիշատակում է նաև **Մաշտոցի** թուղթը՝ Գեորգ կաթուղիկոսին (**նույն տեղում.**, 100, 106), իսկ **Մաշտոցի** մասին տե՛ս **Գ. Զ[արբհանալեան]**, նշ. աշխ., 509-511:

[7] Բնագիրը մենք հրապարակում ենք վերականգնված տեսքով՝ համաձայն էջմ. թանգ. հին հավաք. ձեռ. Յմր 567 (=518), ԺԳ. դար, էջ 79ա-82բ, նոր հավաք. Յմր 929 [5618], էջ 424 և հջրդ., № 1110 [=6453], էջ 60բ-63ա, և Միութենական Գիտությունների Ակադեմիայի Ասիական թանգարանի № [ИВ, В 95], էջ 120-125 (վերջին երեքը ԺԵ-ԺԸ. դարերի են):

[8] **Մովսիսի Կաղանկատուացւոյ** Պատմութիւն Աղուանից աշխարհի, 306-307, 309-313:

[9] Տե՛ս այս գրքի նախորդ՝ Գ. գլխի ծնթ. 21 և շարադրանքի համապատասխան մասը:

[10] Հմմտ. Անանիայի երկի բնութագրությունը իբրև **օբյեկտիվ** երկ, **Եր[ուանդ] ս. [Տէր-Մինասեանց]**, Հաղբատ և Սանահին վանքերը, 275-277, **Ա. Զամ[ինեան]**, նշ. աշխ., 162-163, 165:

## ԱՆԱՆԻԱ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՍԱՆԱՀՆԵՑՒՈՅ ՄՈՎՍԻՍԻ ԿԱՂԱՆԿԱՏՈՒԱՅՒՈՅ

*Վասն բաժանման Վրաց*

*Իսկ ի՞նչ ասացից վասն Վրաց որոշելոյն ի մերոյ հաւատոյս, և ի ձէնջ ո՛չ ընկալեալ.* Ճ. (100) *ամ ընդ մեզ նզովեցին զժողովն Քաղկեդոնի. և մինչև ժողովեցան Հայք ի Դուին և ի Մանազկերտ և որոշեցին զհաւատն Քաղկեդոնի և հաստատեցին զնոյն հաւատ, զոր ընկալան ի սրբոյն Գրիգորիոսէ և յերից սուրբ ժողովոյն. ընդ մեզ էր և եպիսկոպոսապետն Մցխիթայի Գաբրիէլ Խաղաղացի: Եւ այսչափ ընդ մեզ միաբանեալ՝ յետոյ որոշեցան ի մէնջ, մինչ վախճանեցաւ Գաբրիէլ Խաղաղացին: Եւ կացուցին ի տեղի նորա զԿիւրիոն ոմն, որ ունէր զսերմն քաղկեդոնական հերձուածոյն ի դաղտնի. և վասն դահերիցութեան ախտացեալ և զչարեալ վասն վեհագոյն դնելոյ քան զնոսայն զԱղուանիցն և զՍիւնեացն աթոռակալութիւն, որոշեցաւ ի մէնջ յաւուրս Աբրահամու Հայոց կաթուղիկոսի. և կոչեցեալ միանգամ և երկիցս՝ ոչ հնազանդեցաւ: Եւ ապա առաքեաց զդրան եպիսկոպոսն Պետրոս, զի թէ ոչ հաւանեսցի հնազանդել, լուծցի ի կարգէն: Եւ նորա եկեալ՝ ոչ կարացեալ հաւանեցուցանել, կամեցաւ լուծանել ի կարգէն: Իսկ նա իւրով կամաւ մերկացեալ ի շնորհացն, տայր ցնա զգեստ հայրապետութեան: Եւ ընդդէմ մեր փոխարկեալ զձև կարգին, յետս ընդդէմ դարձուցեալ զամենայն զկերպս և օտարաձև զգեցեալ: Իսկ Կիւրիոն աւազակս առաքեալ զկնի նորա՝ սպանին զնա. և հասեալ ի Կանգուարս, քարկոծ արա-*

րին զՊետրոս: Եւ այսպէս արինապարտ եղեալ՝ դարձաւ ի հաւատն Քաղկեդոնի. զորս Ճ. (100) ամ ընդ մեզ հոմեալ նզովեցին. և դարձեալ ի նոյն փոխած վերստին դարձան: Այս են պատճառք Վրաց որոշելոյն ի մէնջ:

յԱղուանից պատմութենէն

Քառասներորդ ամ էր թուականին Հոռոմոց, յորժամ լուսաւորեցան Հայք ի հաւատս, և Աղուանից լուսաւորութեան Մ. և Հ. (270) ամ յառաջ: Յետ Ճ. և Ձ. (180) ամին լնլոյ հաւատալոյն Հայոց, յաղագս տիեզերակործան ժողովոյն Քաղկեդոնի եղև հանդէս ժողովոյ ի ժամանակս Բաբգենի Հայոց կաթուղիկոսի: Յոյնք և ամենայն Իտալիա, Հայք և Աղուանք, և Վիրք միաբանեալ նզովեցին զչարափառ ժողովն Քաղկեդոնի և զտումարն Լևոնի՝ հրամանաւ բարեպաշտ թագաւորացն Հոռոմոց Զենոնի և Անաստասայ: Եւ յետ ՁԷ. (87) ամի անցելոյ, ի ժամանակս Աբրահամու Հայոց կաթուղիկոսի, բաժանեցան Վիրք ի Հայոց միաբանութենէ ի ձեռն անիծելոյն Կի[ւ]րիոնի, այլև Յոյնք և Իտալիա ընդ սոսա. և Աղուանք ո՛չ քակտեցան յուղղափառութենէ և ի միաբանութենէ Հայոց. զորոց ի շրջաբերական թղթին վասն Կի[ւ]րիոնի դիմադարձութեան Աբրահամ զամբաստանականսն վասն նորա գրէ յաղագս ամենայն ի բաց կորել սրով Հոգւոյն: Եւ նախ յԱղուանս գրեաց և նզովեալ արտաքսեցաւ Կի[ւ]րիոն:

րդազգածութիւն թէ ո՞րով
կաւ անիծաւ ժողովն Քաղ-
եւ Աղուանից անխառն
նմանէ, կամ բաժանումն
Հայոց, եւ զինչ Աբրահա-
ուղիկոսի վասն Աղուանից
ասներորդ երրորդ ամ էր
նին Հոռոմոց, յորժամ լու-
ան Հայք ի հաւատս, և
նց լուսաւորութիւնն եր-
իւր և եօթանասուն (270)
ջ: Յետ հարիւր և ութսուն
լցելոյ հաւատալոյն Հայոց,
տիեզերակործան ժողովոյն
ոնի եղև հանդէս ժողովոյ ի
կս Բաբկենի Հայոց կաթու-
Յոյնք և ամենայն Իտալիա,
Աղուանք և Վիրք միաբա-
ովեցին զչարափառ ժողովն
ոնի և զտումարն Լևոնի՝
ու բարեպաշտ թագաւո-
ւոմոց Զենոնի և Անաստա-
յետ ութսուն և եօթն (87)
ելոյ, ի ժամանակս Աբրա-
այոց կաթուղիկոսի, բաժա-
իրք ի Հայոց միաբանու-
եռն անիծելոյն Կիւրիոնի,
յնք և Իտալիա ընդ նոսա:
անք ոչ քակտեցան յուղ-
թենէ և ի միաբանութենէ
ոց շրջաբերական թղթով
րիոնի դիմադարձութեան
ղ զամբաստանականս
րա գրէ յաղգս ամենայն
րելով սրով Հոգւոն: Աղ-
յԱղուանս, տայ զգիտու-

*թիւն և գրէ այսպէս ի թղթին...*[111]

*Պատճառ բաժանմանն Վրաց*

*Յաղագս Յունաց առ Հայս վասն ոչ ունելոյ զիննն դասս եկեղեցական կարգաւորութեան, եւ Հայոց ջանք՝ Աղուանից լինել ընդ նոքօք արքեպիսկոպոս, որում ոչ հաւանեալ Աղուանից. եւ դառնալն Սիւնեաց ի Հայոց յԱղուանս եւ առնուլն զձեռնադրութիւն և զձէթ*

*...Հայք համբաւէին զՅովհաննու Մայրագոմեցւոյ, եթէ ի կողմն Յունաց լեալ՝ հակառակ բերէր [Հայոց]. որոյ զրպարտութեան պատճառ էր Սողոմոն ոմն միայնակեաց, որ յետոյ Հայոց եղև կաթուղիկոս. և նորա հարցեալ զվարդապետն իւր Սողոմոն, որ Մաքենացւոցն էր հայր՝ նա գրով ուսոյց զայս, եթէ «ոչ պարտեցան Հայք ի հաւատոյ մասին. այլ այսուիկ յոյժ եղեն պարտեալք, զի ասացին Յոյնք, եթէ*

*Ասացին Յոյնք ընդ Հայս, թէ կարգաւորեաց Աստուած զեկեղեցի Թ. (9) դաս ըստ երկնայնոցն նմանութեան. պատրիարգ, որ է հայրապետն, և արքեպիսկոպոսն, որ եպիսկոպոսապետ կոչի և մետրապօլիտ, և եպիսկոպոսք, քահանայք, սարկաւագունք, կէսսարկաւագ, ընթերցօղք, և փսաղտք: Այս ամենայն միաբանեալ՝ ապա կարեն ձեռնադրել զհայրապետն, և հայրապետն՝ զամենեսեան:*

*կարգաւորեաց Աստուած զեկեղեցի իննն դասուք, որպէս ի վեր անդր երկնայինքն՝ նոյնպէս դահակալեցան ներքին խորանիս. պատրիարգ, որ է հայրապետ, և արքեպիսկոպոս, որ կոչի եպիսկոպոսապետ [և] մետրապօլիտ, և եպիսկոպոսք, քահանայք· և սարկաւագունք, կէսսարկաւագք, ընթերցողք և փսաղտք: Այսք ամենայն միաբանեալ՝ ապա կարեն ձեռնադրել զհայրապետն, և հայրապետն՝ զամենեսեան:*

*Արդ եթէ ողջամտութեան հաւատոյն էք, խոստովան եղերուք, թէ ո՞վ է պատրիարգն ձեր, զի չորք միայն կացին ի վերայ երկրի. Աղէքսանդրին՝ Մարկոսի աթոռն, Անտիոքայն՝ Մատթէոսին, Հռոմայն՝ Ղուկասուն, Եփեսոսին յԱսիա՝ Յոհաննուն, ըստ չորեքկերպեան կենդանեացն, ըստ չորեքանկեան*

*Արդ, եթէ ողջամտութեամբ հա-*

[11] Պատմութիւն Աղուանից, արարեալ Մովսիսի Կաղանկայտուացւոյ, ի լոյս ընծայեաց Կ. Շահնազարեան [«Շար հայ պատմագրաց»], Փարիզ, 1860, էջ 405-406, Մովսիսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի, ի լոյս ընծայեաց Մկրտիչ էմին, Մոսկվա, 1860, էջ 214=[ՂՄ 8], Տփղ., 1913, էջ 306:

*տիեզերացս, ըստ քառավտակ դեւտոյն Ադենայ, ըստ չորից աւետարանացն, ըստ չորից Մովսիսական օրինացն, զի երկրորդումն օրինացն որիշ համարի. և մեք ամենեցուն հնազանդ եմք. հնազանդեցարուք միում ի նոցանէ կամ ամենեցուն, որ միահաւատ լինիմք, քանզի ձեր ի Կեսարիայ եպիսկոպոսապետէն միայն ձեռնադրեցաւ՝ սուրբն Գրիգոր և որ յետ նորա մինչև ցայսօր: Ապա թէ այլ ոք եկեղեցի ուղղափառ էք զատ ի յայսցանէ, ցուցէ՛ք և զպատրիարգն ձեր, ընդ որով [illegible] մինչև ցայսօր ընդ մեօք է. ապա թէ պատրիարգ ոչ ունիք և բովանդակ զայլս կղերս եկեղեցւոյ, յայտնի ասեն խոտորեալ հերձուածող էք, ընդ Արիոս և ընդ խուժաստանս և ընդ այլ չարափառս: Այլ թէպետ յամենայն պատասխանիս զօրաւոր էին ընդդէմ յարակիրտ ճարտարացն Յունաց, որ վստահանային ի սուր լեզուս հելլենական յորդաբանութեամբն, այլ այնուիկ անպատասխանիք և պարտեալ լինէին Հայք, զի այդպիսի դպրութեամբ վարէր եկեղեցի:*

*Իսկ թագաւորեալ Յուստինոս փոխեաց զնշխարս Յոհաննու ի Կոստանդինուպօլիս, և հաստատեաց անդ աթոռ հայրապետական. և բուն աթոռն մնայ յԵփեսոս. նոյնպէս զՄատթէոսին փոխեաց յԱնտիոքայ յԵրուսաղէմ, ասէ՝ վասն զի քաղաք մեծի արքային է. և բունն մնայ յԱնտիոք: Յայնժամ շարժեցան ամենայն մեծամիտք և ուր առաքեալ էր վախճանեալ, զամե-*

*նեցուն աթոռ պատրիարգի խոստովանեցին: Անդանօր ապա մերոյս բերաւ բան ի բերան յետ զկարգ նոցա գնելոյն. և զՀայս Պարսիկք և Յոյնք բաժանեալ էին, և տէր Մովսէս էր յաթոռ սրբոյն Գրիգորի ի Դուին. և ի կողմն Յունաց Հակառակ նմա նստուցին յաթոռ զՅոհան ոմն մերձ առ նա: Իսկ յերկուանալն Հայրապետութեան խոտեցին տեարքն Սիւնեաց և ո՛չ Հաւանեցան ընդ մի ոք յերկուցն. Հրամանաւ եպիսկոպոսին իւրեանց առաքինւոյն Պետրոսի, որ Հասեալ ի վախճան՝ պատուէր ետ վիճակին իւրում առնուլ ձեռնադրութիւն յԱղուանս, և զմեռոնն օրՀնութեան, մինչև միասցի աթոռ սրբոյն Գրիգորի: Վասն այնորիկ ձեռնադրեցաւ Վրթանէս յեպիսկոպոսութիւն Սիւնեաց ի Զաքարիայ սուրբ Հայրապետէն Աղուանից. ընդ նմին և զիւղն օծութեան առնուին ամ յամէ յԱղուանից, մինչև բարձաւ Հակառակութիւն, և միապետեաց Աբրահամ զՀայրապետական աթոռն:*

*առաքեալ էր վախճանեալ՝ զամենեցուն աթոռ պատրիարգ խոստովանեցին: Անդանօր ապա և մերոյս բերաւ բան ի բերան յետ զկարգ նոցա գնելոյն: Եւ զՀայս Պարսիկք և Յոյնք բաժանեալ էին, և տէր Մովսէս էր յաթոռ սրբոյն Գրիգորի ի Դուին. և ի կողմն Յունաց Հակառակ նմա նստուցին զՅոհան ոմն մերձ առ նա: Իսկ յերկուանալն Հայրապետութեան խոտեցին տեարքն Սիւնեաց, և ոչ Հաւանեցան ընդ մի ոք յերկուցն. Հրամանաւ եպիսկոպոսին իւրեանց առաքինւոյն Պետրոսի, որ Հասեալ ի վախճան՝ պատուէր ետ վիճակին իւրում առնուլ զձեռնադրութիւն յԱղուանից և զմեռոնն օրՀնութեան մինչև միասցի աթոռ սրբոյն Գրիգորի: Վասն այսորիկ ձեռնադրեցաւ Վրթանէս յեպիսկոպոսութիւն Սիւնեաց ի Զաքարիայ սուրբ Հայրապետէն Աղուանից. ընդ նմին և զիւղն օրՀնութեան ամ յամէ առնուին Սիւնիք յԱղուանից, մինչև բարձաւ Հակառակութիւնն և միապետեաց ԱբրաՀամ զՀայրապետական աթոռն:*

*Եւ սակս Թ.* (9) *դասակարգութեան՝ գլխաւորք եկեղեցական անձնաՀաճ կամօք, ըստ նպերտ բարուց Հայաստանեայցն, կարգեն զԱբրաՀամ պատրիարգ, և զԱղուանիցն՝ արքեպիսկոպոս, և զՎրացն՝ մետրապօլիտ. խեռեցաւ Վրացն, որում Կի[ւ]րիոն կոչէին, և զՀակարակութեան բերէր վճիռ: Իսկ Հայրապետն ԱբրաՀամ ասէր լինել յառաջաՀաւատ քան զՎիրս՝ զԱղուանս, և նոցա անկ է եպիսկոպոսապետութիւն: Յայս մաքառմանէ և ի խնդիր ուղղափառութեան Հաւատոյ դարձան*

*Եւ սակս ինն դասակարգութեան՝ գլխաւորք եկեղեցական անձնաՀաճ կամօք, ըստ նպերտ (տըբրկ.՝ բիրտ) բարուց Հայաստանեայցն, կարգեն զԱբրաՀամ պատրիարգ, և զԱղուանիցն՝ արքեպիսկոպոս, և զՎրացն՝ մետրապօլիտ: Խեռեցաւ Վրացն, որում Կիւրիոն կոչէին, և զՀակառակութեան բերէր վճիռ. իսկ Հայրապետն ԱբրաՀամ ասէր լինել յառաջաՀաւատ քան զՎիրս՝ զԱղուանս, և նոցա անկ է եպիսկոպոսապետութիւն: Յայս մաքառմանէ և ի խնդիր ուղղափառութեան Հաւատոյ՝ դարձան*

9 -Մելիքսեթ-Բեկ, Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց

Վիրք և եղեն քաղկեդոնիկ: Իսկ ի
Յունական զօրավարացն գրգռեալ
զնա՝ խնդրել զգաՀերիցութիւն ի
վերայ Աղուանից, որում ոչ Հաւա-
նեալ Աղուանից՝ զայլ ումն երևե-
ցուցին կանխաւ առաքեալ եկեալ
ի յաշխարՀն Աղուանից, Եղիշա
անուն, յաշակերտացն Տեառն, քա-
րոզել անդ և եկեղեցիս շինել նախ-
կին քան ի Հայս, առաջին մայր եկե-
ղեցեացն արևելեացն՝ Գիսու եկեղե-
ցին, նորին Հիմնադրեալ, դարձան
ի Հայոց առ ինքեանս, չլինել ընդ
ումեք իշխանութեամբ: ԱՀա Հայք
վասն մեծաբանութեան Յունաց, որ
փոքրկացուցանել ջանային զկայս
Հանգստեան Թադէոսի առաքելոյն՝
չունել եպիսկոպոսապետ և մետրա-
պօլիտ, խորՀեցան առնել մետրա-
պօլիտ զՄարդապետականն եպիս-
կոպոս, տալ նմա խաչի պատիւ մե-
րոյն և ոչ առնել ձեռնադրութիւն
եպիսկոպոսի. և նորա խնդրեալ
եպիսկոպոսս երկուսս կամ երիս
լինել ընդ իւր, որում ոչ Հաւա-
նեալ գլխաւորացն, երկուցեալ թէ
մի գուցէ արդեօք այլ իմն գու-
նակ բաժանումն լինի միապետեալ
աթոռոյն: Ապա տեսանելով միշտ
աստուածերկիւղս և Հլուս և Հա-
ւանս զտեարսն Սիւնեաց, և զկղերս
եկեղեցեացն քաջուսմունս և ուղ-
ղափառս յամենայնի, նոցա ետուն
զպատիւ լինել մետրապօլիտ Հայոց
խաչանիշ մեծարանօք, և ոչ ժտել
յիրս ինչ, և ո՛չ քարոզել եպիսկո-
պոսապետ զՀայրապետն. և զայլ
աշխարՀի զառաջին սովորութիւն
իւրեանց թողին, զի մի՛ ամբոխ ինչ
լինիցի: Վասն այնորիկ չքարոզեն
եպիսկոպոսապետ Սիւնիք, և ո՛չ
գրոյն պատասխան [նամ]ակին Հա-
յոց, զի եթէ քարոզելի էր և գրե-
լի էր, բայց ո՛չ քարոզելն մեծու-

և եղեն քաղկեդոնիտք: Իսկ ի
սկան զօրավարացն գրգռեալ
խնդրել զգաՀերիցութիւնն ի
Աղուանից. որում ոչ Հաւա-
Աղուանից՝ զայլ ումն երևեցու-
անխաւ առաքեալ եկեալ յաշ-
ն Աղուանից, Եղիշա անուն,
կերտացն Տեառն ձեռնադրեալ
անէ Յակովբայ եղբօր Տեառն,
չեալ անդ և եկեղեցի շինեալ
ին քան ի Հայս, առաջին մայր
ցեացն արևելեաց՝ Գիսոյ եկե-
նորին Հիմնադրեալ և զին-
։ Նմա ալանդեալ, դարձան ի
առ ինքեանս՝ չլինելով ընդ
իշխանութեամբ: Ապա Հայք
մեծաբանութեան Յունաց, որ
ացուցանել ջանային զկայս
տեան Թադէոսի առաքելոյ՝
եպիսկոպոսապետ և մետրա-
, խորՀեցան առնել մետրա-
զՄարդապետականն եպիս-
, տալ նմա խաչ և պատիւ
և ոչ առնել ձեռնադրութիւն
ոպոսի. և նորա խնդրեալ
ոպոսս երկուս կամ երիս լի-
դ իւր, որում ոչ Հաւանեալ
որացն, երկուցեալ թէ մի
արդեօք այլ իմն գունակ բա-
մն լինիցի միապետեալ աթո-
Ապա տեսանելով միշտ աստո-
կիւղ և Հլու և Հաւանս պա-
անաց զտեարսն Սիւնեաց, և
։ եկեղեցեացն քաջուսմունս
ղափառս յամենայնի, նոցա
զպատիւն լինել մետրապօ-
յոց խաչանիշ մեծարանօք, և
ել իրս ինչ աւելի և ո՛չ քա-
եպիսկոպոսապետ զՀայրա-
և զայլ աշխարՀ ըստ առաջին
ւթեան իւրեանց թողին, զի
ոխ ինչ լինիցի: Վասն այնո-
քարոզեն եպիսկոպոսապետ
, և ո՛չ գրեն ի պատասխան

*թիւն է որպէս զոչ գրելն. և զխաչ առաջի ունել ի փառս տէրունեան է, և անուն լոկ խաչին քարոզովն է բնաւորեալ յիշատակ ոչ ուրուք ընդ նովաւ եղելոյ:*

*նամակին Հայոց եպիսկոպոսապետ, զի թէ քարոզելի էր, ապա և գրելի էր, բայց ո՛չ քարոզելն մեծութիւն է, որպէս ոչ գրելն. և զխաչն առաջի ունել՝ ի փառս տէրունեան է. և անունն լոկ խաչին և քարոզովն է բնաւորեալ յիշատակ ոչ ուրուք ընդ նովաւ եղելոյ:*

*Այսպէս զետեղեցին զինն դասս: Եւ տէրունիք ի Սիւնիս Հոգևոր տէր գրէին, և նոքա՝ ի ծառայէ: Ապա տեառն Եղիայի խակագործութիւն յԵրիցու վանս, յորժամ ի յԱղուանս երթայր՝ սակս այնր ոչ գրեցին ի ծառայէ, արգելին և նոքա զՀոգևոր[-տէր]ն. այդպէս է ստուգութիւն իրացդ:*

*Այսպէս զետեղեցին զինն դասս: Եւ տէրունիք ի Սիւնիս Հոգևոր տէր գրէին, և նոքա՝ ի ծառայէ: Ապա վասն տեառն Եղիայի խակագործութեան յԵրիցու վանս, յորժամ յԱղուանս երթայր՝ սակս այնր ոչ գրեցին ի ծառայէ, արգելին և նոքա զՀոգևոր[-տէր]ն. այսպէս [է] ստուգութիւն իրացդ*[12]

[12] Պատմութիւն Աղուանից, արարեալ Մովսիսի Կաղանկայտուացւոյ, ի լոյս ընծայեաց **Կ. Շահնազարեան** 407-412: **Մովսիսի Կաղանկատուացւոյ** Պատմութիւն Աղուանից աշխարհի, ի լոյս ընծ. Մ. Էմին, 215-219 = [ՂՄ 8], 308-313:

# ԳԼՈՒԽ Ե.

## ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԱՐԿԱՎԱԳԸ ԵՎ ՆՐԱ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Անանիա Սանահնեցին վերջին ներկայացուցիչն է Հաղբատ-Սանահինյան, մասնավորապես հաղբատյան գործիչների այն խմբի, որին պատկանում են Դիոսկորոսը, Վարդանը, Հակոբը, Անանիա Սանահնեցին, Մատթեոս Հաղբատեցին, և որոնց մենք կոչում ենք Հաղբատ-Սանահնի գործիչների առաջին սերունդ:*

*Այդ* առաջին սերնդի *գործունեությունը տեղի էր ունենում գլխավորապես Սանահնում, այն չի անցնում ԺԱ. դարից: Այդ դարի երկրորդ կեսին աչքի է ընկնում նշանավոր Հովհաննես Սարկավագը, ով համարվում է Հաղբատի դպրոցի հիմնադիրը: Նրանով մենք սկսում ենք* երկրորդ սերնդի *ներկայացուցիչների ինքնության պարզաբանումը:*

*«Անշուշտ Հաղբատի արագ յառաջ գնալուն մեծապէս նպաստեց Սանահինը. Սանահնի աջակցութեամբ այստեղ կազմուեց մի դպրոց, որի ուսուցիչներն ու սաները շարունակեցին և աւելի ևս կատարելութեան հասցրին Սանահնում սկսուածը»*[1]*:*

*«Հաղբատի դպրոցի մասին նախ քան հռչակաւոր Յովհաննէս Սարկաւագ վարդապետը տեղեկութիւն չունինք,- շարունակում է հեղինակը:- Թէև նրանից առաջ էլ գոյութիւն ունէր վանքը, բայց որովհետև իսկապէս դպրոց եղաւ Յովհաննէս Սարկաւագ-վրդ.-ի միջոցով, ուստի նրան ևս պետք է համարենք Դպրեվանքի հիմնադիրը ԺԱ. դարու Բ. կիսին»*[2]*:*

Հովհաննես Սարկավագ վարդապետը *այնքան խոշոր անձնավորություն է հայ մատենագրության բնագավառում, որ նրա կենսագրության և գիտական-գրական գործունեության վերլուծությունը արժանի է հատուկ ուշադրության:*

*Հովհաննեսի հայրենիքի և ծնողների մասին տեղեկություններ*

---

[1] Եր[ուանդ] ս. [Տէր-Մինասեանց], Հաղբատ և Սանահին վանքերը.- Ա, 1901, էջ 340:

[2] Նույն տեղում:

տնում է Վարդանը. «Յովհաննէս, որն Սարկաւագ, ի գաւառէն
ռիսոսոյ, ի քահանայական ազգէ, որոյ յիշատակք ճառագայ-
յն փայլեն մինչև ցարդ ի բանս իւր, և ի նմանէ աշակերտեալսն»[3]:
Վարդանը Հովհաննեսի աշակերտներ՝ «Երեմիա, որ և Անձրևիկ»,
մուել 'Օրոց 'Անձևացին. նաև նրանց նախնիների, արդեն հայտնի
նանիա Սանահնեցու անունը հիշատակելուց 'Հայոց՝ նշում է Հով-
ննեսի մահվան թիվը[4]:

Վարդանի տեղեկությունը կարծես համընկնում է Սամուել Անեցու
ողմից բերված՝ Սարգիս վարդապետի անվանն առնչվող մի ծանո-
ժագրության «Ի ՇՀԸ. <=1129> թվին փոխի յաշխարհէս մեծ վար-
քապետն Սարգիս, որ է ի Փառիսոսոյ, որդի քահանայի միոյ»[5]:

Սամուելի ժամանակագրության մեջ «Սարկաւագ» անվան փոխա-
րեն «Սարգիս» կարդալը արդարացիորեն առաջ է բերել մի տեսակ
կասկած, որ «Սարգիս»-ը հնարավոր է Սամուելի հնագույն ձեռագ-
րում, վնասված տեղի (Սարկ...)- ի վերականգնման հետևանքը լինի՝
Սարկ[աւագ]-ի փոխարեն գրել են՝ Սարկ[իս] -Սարգ[իս][6]:

Ամեն դեպքում՝ ինչպես Վարդանի, այնպես էլ Սամուելի տեղեկու-
թյուններում ուշադրության արժանի է, որ Հովհաննես Սարկավագի
հայրենիքը մատնանշված է Փառիսոսը: Իսկ Փառիսոսը քաղաքա-
տեղի է հին Արցախի և Սիսականի սահմանի վրա՝ Շամխոր գետի
երկու ափերին՝ բազմաթիվ եկեղեցի-վանքերի փլատակներով, որոն-
ցից մեկի վրա նշմարվում է 1271 և 1461 թվակիր մակագրություն[7]:
Ինչպես իր «Սարեկ» ոտանավորի մեջ է նկարագրում, նրան սնել և
դաստիարակել են «բարեպաշտ և իմաստուն ծնողները», և որպես
բնությունից օժտված խելացի զավակ, հենց նրանցից էլ ստացել է
նախնական գիտելիքներ.

Ի նախնեաց բարեպաշտից և յիմաստուն ծնօղաց բուսեալ,
Որք սնուցին զիս օրինօք հոգւոյն կենաց,
Առնել քան ըստ բնութեան տածիւք խնամս յառ մանկունս,
Որովք յառաջնումն հասակին դաստիարակեալ՝ յոյս տայի քա-
ջութեան[8]:

Հետագայում Հովհաննեսը ուսումը պետք է շարունակեր ժամ

---

3 Վարդան, 121:
4 Նույն տեղում:
5 Սամուէլ, 128. հմմտ. նույն տվյալները Յովհաննես Սարկավագի մահվան մա
նույն տեղում., 129:
6 Յմմտ. Ոսկեան, Մատ. քննութ., 1-3:
7 Գ. Ինճիճեան, Ստորագրութիւն հին Հայաստանեայց, 309-310, Մ. Բարխու
րեան, Արցախ, 306-308, 431, Կոստանեանց, 114, 174:
8 Ղ. Ալիշան, «Բազմավեպ», 1847, էջ 215:

*նակի վանական որևէ ուսումնարանում՝ կամ հենց Փառխոսում, կամ էլ Հաղբատ-Սանահնում: Թեև ավելի հավանական է, որ նա սկզբում սովորած լինի Փառխոսի վանքում, հետո փոխադրված լինի Սանահին, այնուհետև՝ Հաղբատ: Կամ էլ անմիջապես Հաղբատ: Եվ, խսկապես, Հովհաննեսը ուսման համար* դեգերել է վանքից վանք և, ի վերջո, հանգրվանել Հաղբատում: *Այդ մասին խոստովանում է նաև ինքը՝ այն նույն երկում, որտեղ, ի միջի այլոց, ասում է.*

*Ուստի ես դեգերմամբ ևս ի բազմաց ամաց հետէ.*

*Զի տըքնեցայ զօր ամենայն և ըզգիշերըն բովանդակ.*

*Առ իմաստս ցանգութեամբ, նա և սիրովն որ առ հանճար...:*

*Յանապատի աստ գամ նըստիմ, զի օգտեցայց հանդարտութեամբ,*

*Ասացից և իմացայց, զի մի եղէց ընդ վայրատանջ,*

*Աշխատեցայց անշահաբար ունայնաուր իմաստութեամբ*[9]*:*

*Թե ով էր կամ ովքեր էին Հովհաննեսի ուսուցիչները, այս մասին, ինչպես արդարացիորեն նշում է* Համազասպ Ոսկյանը.- *«Պատմութիւնը պատասխան չի տար, այս միայն յայտնի է, թէ գիտութեան մէջ մեծ և բազմակողմանի հմտութիւն մը կ'իւրացնէ»*[10]*:*

*Հովհաննեսի դաստիարակության և կրթության մասին սկզբնաղբյուրներում այս տեղեկություններից բացի, ավելին չի հայտնաբերվել:*

*Մեզ նոր բան չի տալիս նաև Հովհաննեսի «Վարքը», որը գրված է եղել դեռևս հնում, բայց մեզ է հասել հետագայում կազմված «Վարք Սրբոց» ժողովածուների մեջ: Օրինակ, մի այսպիսի՝ դեռևս չհրատարակված երկի համապատասխան ժողովածուում*[11]*, որի վերնագիրն է՝ «Հանդէս բանի վասն երանեալ առնն Աստուծոյ Սարկաւագին կենաց և մահուան, և այլոց սրբոց՝ հուպ յայն ժամանակս»,* Սամուէլի *հավելյալ խոսքերով՝ «երիցս երջանիկ վարդապետն Յոհաննէս և անուն բարդ՝ Սարկաւագն»....(«դաստիարակեալ առ սրբասնունդ քեռ[ւ]ոյն իւրոյ, ի վանսն Հաղբատ»)*[12]*: Այնուհետև*

---

[9] Նույն տեղում, 221-223.

[10] Ոսկեան, նշ. աշխ., 6:

[11] Տե՛ս Էջմիածնի թանգարանի հին հավաքածու, ձեռ. Հմր 2680, անթվակիր, էջ 579$ա_1$-581$բ_2$:

[12] **Նույն տեղում**, 579$ա_1$.- Հետաքրքիր են հարց և պատասխանի ձևով կազմված որոշ կենսագրական տեղեկություններ Հովհաննեսի մասին, որտեղ ասված է. (հավաքել ենք էջմիածնի տարբեր ձեռագրերից): «Հարցումն՝ Սարկաւագ վարդապետ, որ ի Հաղբատ: Պատասխանի՝ Անունն Յոհան և ի գեղջէն Մանճար, ի գետեղր...

*նկարագրում է Հովհաննեսի արտասովոր ձիրքը և վարքը՝ որպես նշանավոր պատանու, այլ պատանիների մեջ:*

*Ո՛չ պատմական աղբյուրները, ո՛չ էլ արձանագրությունները, ցավոք, մեզ ոչ մի հնարավորություն չեն ընձեռում՝ պարզելու, թե ինչ պաշտոն է զբաղեցրել Հովհաննես Սարկավագը Հաղբատի վանքում:* Ալիշանը[13], Զարբհանալյանը[14], Տեր-Մինասյանցը[15], Օրմանյանը[16] *և ուրիշներ կարծում են, որ Հովհաննեսը այդ վանքի վանահայրն է եղել: Բայց այդ մասին ո՛չ* Սամուել Անեցին, *ո՛չ* Կիրակոսը, *ո՛չ* Վարդանը *և ո՛չ էլ* Միխիթար Այրիվանեցին *խոսք չեն ասում: Թեպետ* Կիրակոսը, *նկարագրելով Ստեփանոս-Զոմզոմայի և Հովհաննեսի միջև եղած բախումը, այսպես է ներկայացնում Հովհաննեսին, թե, իբր, նա «Հրամայեց եկեղեցու վերակացուին՝ նրան ավագերեց դարձնել» («Հրամայեաց եկեղեցապանին առնել զնա <Զոմզոմա> աւագ երէց)*[17]*: Իսկ Հովհաննեսի մականունը՝ «Սարկաւագ», մենք ուղղակի իմաստով հենց սարկավագ* (διάκονος, диакон) *չպետք է հասկանանք, ինչպես կարծում են* Ալիշանը[18], Ադոնցը[19] *և շատ ուրիշներ, այլ պետք է հասկանալ որպես հատուկ կամ անձնական անուն*[20]*, - հենց այսպես, ինչպես, օրինակ, նման բառերը՝ Տէրտէր,*

---

[13] **Ղ. Ալիշան**, Յուշիկք հայրենեաց Հայոց, Բ., Վնտ., 1870, էջ 296: **Նույնի**՝ Հայապատում, Ա., 93:

[14] **Գար. Զ[արբհանալեան]**, Հայկական հին դպրութեան պատմութիւն, 608:

[15] **Եր[ուանդ] ս. [Տէր-Մինասեանց]** Ըշ. աշխ., 343:

[16] **Մ. Օրմանեան**, Ազգապատում, էջ 1307 (§ 899):

[17] **Կիրակոս**, 106:

[18] **Ղ. Ալիշան**, Յուշիկք, Բ., 281:

[19] **Н. Адонц**, Армянская литература, ц. изд., стлб. 653.- (այս Սարկաւագս՝ այր սուրբ և տեսանող, զուարթերես և լի հոգւով), **Տաշեան**, Ցուցակ, 463-464, **Ոսկեան**, Մատ. քննութ., 34:

[20] Հմմտ. **Ոսկեան**, Մատ. քննութ. 5, հմմտ. **Հր. Աճառեան**, Մի քանի սրբագրութիւններ հայ մատենագիրներու մէջ.- Ա, 1913, էջ 1144-1146.- բոլոր գրողները Հովհաննեսին **Հովհաննես Սարկաւագ** էին կոչում, Սամուէլից բացի (**Սամուէլ**, 129), որը նրան միայն **Սարկաւագ** է անվանում, իսկ «սարկավագ» ինչպես՝ հատուկ անուն հիշատակվում է ի միջի այլոց հետևյալ արձանագրությունների մեջ. 1151 թ. Հաղբատի (սարկավագի գերեզմանաքարի մակագրությունը տե՛ս ներքևում), 1233 թ. Խծկոնքի (**Սարգիսեան**, 211, **Ալիշան**, Շիրակ, 128, **Կոստանեանց**, 85), 1261 թ. Հաղբատի (**Յովհ. Դրիմեցի**, 32, **Երզնկեան**, 30, **Կոստանեանց**, 103), 1271 թ., Նորավանքի (**Ալիշան**, Սիսական, Վնտ., 1893, էջ 190, **Լալայեան**, Վայոց ձոր.- ԱՀ, ԻԶ., 1917, էջ 49: **Կոստանեանց**, 114), 1286 թ. Անիի (**Սարգիսեան**, 119: **Ալիշան**, Շիրակ, 72: **Կոստանեանց**, 129), 1307 թ., Կայծոն (**Ալիշան**, Սիսական, 107, **Կոստանեանց**, 154), առանց տարեթվի՝ Բագնայր (**Սարգիսեան**, 182, **Կոստանեանց**, 236-237): Որպես սարկավագ հայտնի է նաև Միխիթար Գոշի աշակերտը, Գետիկի ավագերեցը (**Կիրակոս**, 197) և Աղվանքի եպիսկոպոսը (**Նույն տեղում**., 168):

*Տիրացու, Երիցակ, Վանական, Վարդապետ, Հայրապետ և այլն վերածվել են* հատուկ անունների*: Եվ, ինկապես, որ այս պարագայում «Սարկավագ»-ը գործածված է որպես մականուն*[21]*, հաստատում են նաև հին գրողները, օրինակ՝ Սամուելը ասում է. «Ընթերցաք գրեալ վարդապետին մեծի, որ Սարկաւագ վերակոչի անուանեալ»*[22] *կամ՝ «Ի ՇՀԸ. <=1129> ամին փոխեցաւ ի Քրիստոս մահուամբ վարդապետն մեծ որ Սարկաւագն կոչիւր՝ ի Հաղբատ»*[23]*: Բազմաթիվ ձեռագրերում Հովհաննեսը իր երկերի վերնագրերում հիշատակում է՝ «Աղաւթք Յոհաննու սրբոյ վարդապետի որ մականուն Սարկաւագ կոչի»*[24] *կամ «Յովհաննէս վարդապետ, որը Սարկաւագ* (διάκονος) *կոչիւր»*[25]*:*

*«Սարկավագ» մականունից բացի, Հովհաննեսը տարբեր ստեղծագործություններում հիշատակվում է հետևյալ մակդիրներով՝ «մեծ վարդապետ», «մեծ//քաջ իմաստասէր», «հռետոր», «մեծ սոփեստոս», «պուէտիկոս», և այլն*[26]*: Երբեմն նա հիշատակվել է մի քանի մակդիրներով*[27] *«քաջ իմաստասէրն և սոփեստոս հռետորն Յովհաննէս վարդապետ, որ Սարկաւագ կոչիւր»*[28]*:*

Ալիշանը *արդարացիորեն նշում է, որ հայերենում «փիլիսոփա» բառը գործածվում է երեք իմաստով, մասնավորապես՝ հայ հին մատենագրության մեջ որպես «փիլիսոփայ» հայտնի է Դավիթ Անհաղթը, որպես «իմաստասէր»՝ Հովհաննես Օձնեցին, «սոփեստէս»՝ Հովհաննես Սարկավագը*[29]*, նույն այս Հովհաննեսը, ինչպես երևում է նրա իսկ մի աշխատության վերնագրից, կոչվում է «մեծ պուէտիկոս»*[30]*:*

---

[21] Հմմտ. նույն անունները նույնպես՝ Յարութիւն, Համբարձում, Գալուստ, Արքայութիւն և այլն:

[22] **Սամուէլ**, 97:

[23] **Նույն տեղում.**, 129.

[24] Տե՛ս էջմ. թանգ. հին հավաք. ձեռ. Հմր 7 (=16), էջ 71ա, **Տաշեան**, Ցուցակ, 465, 466, 467, **Հ. Աճառեան**, Ցուցակ հայերէն ձեռագրաց Սանասարեան վարժարանի, Վն., 1900, էջ 23: **Ոսկեան**, Մատ. քննութ., 34:

[25] **Տաշեան**, Ցուցակ, 397, 398:

[26] **Ղ. Ալիշան**, Յուշիկք, Բ., 285: **Տաշեան**, Ցուցակ, 397, 463-464:

[27] Հովհաննես Սարկավագի տաղանդի բնութագիրը տե՛ս **Ղ. Ալիշան**, Յուշիկք, Բ., 279:

[28] **Տաշեան**, Ցուցակ, 397 = 851:

[29] **Ղ. Ալիշան**, Յուշիկք, Բ., 307, որպես սոփեստոս է հիշատակվում նաև Հաղբատի կուսանաց վանքում թաղված Ստեփանը (Սոփեստոս Ստեփաննոս):

[30] Տե՛ս էջմ. թանգ. հին հավաք. ձեռ. Հմր 777 (=526). էջ 51բ (ԺԳ. դար), հմմտ. **Գարեգին**

Կիրակոս Գանձակեցին Հովհաննեսի կյանքից նկարագրում է երկու դրվագ, որոնք լավագույնս բնութագրում են նշանավոր գիտնականի անսպառ ունակությունները ու մեծ տաղանդը:

Առաջին դրվագում Կիրակոսը Հովհաննես Սարկավագին ներկայացնում է իր ժամանակակցի և բարեկամի՝ Ալավկա որդի Դավթի և Թոքակերի որդի Գրիգորի հետ, որոնք (երեքն էլ) Գանձակ աշխարհից էին, որտեղից էր և ինքը՝ Կիրակոսը, և պատմում է հետևյալը. «Եւ միւս եւս սքանչելի վարդապետ, զոր Թոքակերի որդի կոչէին, Գրիգոր անուն: Սոքա երեքեանս էին յաշխարհէն Գանձակայ, ուստի եւ ես: Դէպ եղեւ, զի յաւուր միում նստէին երեքեան արքս սքանչելի, եկն անդ ոմն չինական այր մի եւ ասէ ցնոսա. «Երանի՜ որ գիտէ, թէ ի ձէնջ ո՞ իմաստագոյն իցէ»: Զայս իբրեւ ծաղրական ասաց: Պատասխանի ետ Թոքակերի որդին եւ ասէ. «Ես ասեմ քեզ: Մինչդեռ էաք ի մերում աշխարհին, ես կտրող էի եւ կարող. իսկ Սարկաւագս՝ կարել միայն գիտէր. իսկ այժմ սա կտրէ եւ կարէ[31], եւ բազում նկարս յաւելու ի վերայ»: Զայս առակաբար վասն իմաստութեան նորա ասաց: Զի ա՛յնպէս փոյթ էր այրն յուսումն, մինչ զի պատահեաց յաւուր միում գնալ նմա յայրն, ո՛ւր գրեանն էին, եւ այլք ընդ նմա: Իբրեւ եկին, որ ընդ նմայն էին, եւ փակեցին զդուռն, նա թաքոյց զանձն ի ներքս, այսպէս գիտելով նոցա, եթէ նախ ել նա: Իբրեւ անցին բազում աւուրք ի վերայ, դարձեալ գնացին յայրն ի պէտս ինչ, տեսին զնա եւ սքանչացան, հարցանէին զնա, թէ՝ «Ո՞րպէս ապրեցար առանց կերակրոյ եւ ըմպելոյ»: Եւ նա եցոյց նոցա զգրեանն, զոր ընթերցեալ էր. եւ ասէ՝ «Այդ է իմ կերակուր եւ ըմպելի, զոր կերայ եւ արբի զաւուրս զայսոսիկ»»[32]:

Երկրորդ դրվագում պատմվում է, թե ինչպես Հովհաննես Սարկավագը Ստեփանոս Զոմզոմային արգելում է ժամերգություն (սուրբ պատարագ) կատարել, և հետո նա հրամայում է վերականգնել Զոմզոմայի բոլոր իրավունքները այն բանից հետո, երբ վերջինս նպատակադրվել էր սպանել Հովհաննես Սարկավագին, երբ նա՝ Հովհաննեսը, «դայր, յայրէ անտի, որ ի ներքոյ կայ վանիցն, հայելով ի վերայ գետոյն»[33]:

Պատմաբանները բավական ընդարձակ պատմում են Հովհաննե-

Յովսէփեան, Գրչութեան արուեստը հին Հայոց մէջ, մ. գ. Քարտէզ հայ հնագրութեան, Վաղ., 1913, տախտակ ԿԵ., նկ. Յմր 112:

[31] Ոսկեան, Մատ. քննութ., 10:

[32] Կիրակոս, 107-108:

[33] Նույն տեղում, 105-106.

սի՝ Դավիթ Շինարարի հետ հանդիպումների և նրանց հարաբերությունների մասին, բայց դրա վրա մենք առայժմ կանգ չենք առնի, քանզի դրան և Հովհաննեսի ու վրաց գործիչների հարաբերություններին մանրամասն և հատուկ կանդրադառնանք հաջորդ գլխում:

Այստեղ վկայենք Վարդանից մի տեղեկություն, որի համաձայն Հովհաննես Սարկավագը ներկայացվում է որպես դաստիարակ. «...էին և կանայք թագաւորազունք կրօնաւորեալք կուսութեամբ ի Քոբայրն, Խորասու <sic> և Մարիամ, առ որս գրէր սուրբ վարդապետն Սարկաւագն զգուշական խրատս»[34]:

ԺԲ-ԺԳ. դարերի հայ գրեթե բոլոր պատմիչները, բացի Մատթեոս Ուռհայեցուց, չնայած Սարկավագի մասին համեմատաբար քիչ տեղեկություններ են տալիս, վերջինիս մահվան թվականը, ոչ ոք, սակայն, չի շրջանցում, թեև նրանց տեղեկությունները բոլորովին տարբեր են:

Սամուէլ Անեցին գրում է. «Ի ՇՀԸ. <=1129> ամին փոխեցաւ ի Քրիստոս մահուամբ վարդապետն մեծ որ Սարկաւագն կոչիւր՝ ի Հաղբատ»[35]:

Կիրակոս Գանձակեցին պատմում է. «Եւ այսպիսի բարւոք քաղաքավարութեամբ կեցեալ յաշխարհի՝ փոխեցաւ ի Քրիստոս աշխատասէրն ի Հաղբատ. և թաղեցին զնա յարեւելից կուսէ եկեղեցւոյն մեծի՝ առ դուրս փոքրագոյն եկեղեցւոյն, զոր յետոյ քակեաց եպիսկոպոսն Համազասպ և շինեաց հրաշալի շինուած, ուր զզանգակսն կախէին՝ յարմարեալ ի նմին և եկեղեցիս: Եւ եղեւ վախճան սրբոյն ի ՇՀԸ. թուականին<=1129>»[36]:

Վարդանը նշում է շատ համառոտ. «Իսկ Սարկաւագ վարդապետն կեցեալ ի ժիր մշակութեան զաւուրս իւր, հանգեաւ ի հինգհարիւր ութսուն եւ ութ թուին» <1139> (տարբ.՝ 568 <=1119>)[37]:

Համաձայն Մխիթար Այրիվանեցու՝ Սարկավագ վարդապետը մահացել է 1111 և 1121 թվականների միջև[38]:

---

[34] Վարդան, 122, (Մխիթար, 62-63) 1131-1141 տարեթվի տակ (sic) նշում է. «Խորասու և Մարիամդ Քոբայրին կային կուսութեամբ», հմմտ. Լևոն Մելիքսեթ-Բեկ, Քոբեր, 62:

[35] Սամուէլ, 129:

[36] Կիրակոս, 106-107:

[37] Վարդան, 121:

[38] Մխիթար, 61, հնարավոր է, որ Մխիթարի աշխատությունում եղած տարեթվերը՝ 1111, 1121, 1131 եւն. համապատասխան տեղում չեն եղել, պետք է ենթադրել, որ յուրաքանչյուր տարեթիվ 10 տարով հետ է հաշված, այսինքն՝ 1121 թվի փոխարեն ցույց է տրված 1111 և 1121 թվի փոխարեն՝ 1131 ևլն.:

Այսպիսով, ըստ Սամուելի և Կիրակոսի՝ Սարկավագը վախճանվել է 1129 թվականին, ըստ Վարդանի՝ 1119//1139 թվականին, իսկ ըստ Մխիթարի՝ 1111-1121 թվականների միջև ընկած ժամանակամիջոցում (թերևս՝ 1119 թվականին):

Համազասպ Ոսկյանը, փորձելով պարզաբանել նման տարաձայնության պատճառները, հանգում է հետևյալ եզրակացության. «Սամուէլի դրած թուականն է ճիշդ ըստ իս, վասն զի անիկա ժամանակակից էր· իր քայլերուն հետեւած է Կիրակոս: Վարդանի պատմութիւնն այս նկատմամբ լաւագոյն բնագիր օրինակի մը կը կարօտի»[39]:

Մեր կարծիքով՝ Համազասպ Ոսկյանի մեկնությունը արժանի է ուշադրության և ընդունման հետևյալ պատճառներով. 1) Որպես Հովհաննես Սարկավագի մահվան տարեթիվ՝ 1129, Սամուելից և Կիրակոսից բացի, ցույց է տրված այդ նույն Սամուելի այն գրության մեջ, որը վերաբերում է Սարգիս Փառիսոսեցուն, և որը մենք վերագրել ենք Սարկավագ Փառիսոսեցուն[40], և այդ նույնը կրկնված է նաև Սարկավագի «Վարք»-ում[41]: 2) Թեպետ բոլոր տարեթվերը տասնավորներում տարբեր են, բայց միավորների առումով համընկնում են, այդ միավորը բոլոր տեղերում ինն է՝ 9: Ըստ Սամուելի՝ (երկու անգամ), Կիրակոսի և Սարկավագի «Վարքում»՝ 1129, Վարդանի մեկ տարբերակով՝ 1139, երկրորդով, որը ասես ամրակայում է Մխիթարի տեղեկությունը՝ 1119 (ըստ Մխիթարի՝ 1111-1121 թվականների միջև), այսինքն՝ ըստ ամենահին հեղինակ Սամուելի և այլ աղբյուրների մեծամասնության՝ 1129 թ.: 3) Մխիթարի տարեգրության համապատասխան թիվը, ինչպես նշել ենք, սահմանազատված չպետք է լինի[42] 1111-1121 թվականների միջև ընկած ժամանակահատվածով, այլ՝ 1121-1131, որովհետև, Էջմիածնի թանգարանի ձեռագրերն ուսումնասիրելիս Ներսես Ակինյանը պարզել է, որ Մխիթարի աշխատանքներում ժամանակագրությունն ընդհանրապես խախտված է. քանզի տարեթիվը տասնամյակով հետ է տարված: 4) Որ Սարկավագը 1119 թվականին վախճանված չի եղել, վկայում է այն, որ նրան Սամուել Անեցին[43], թեև առանց անունը հիշատակելու, 571-575

---

[39] Ոսկեան, Մատ. քննութ., 20-21:

[40] Տե՛ս վերը՝ ծնթ. 6 և շարադրանքի պատկան մասը:

[41] Տե՛ս Էջմ. թանգարանի հին հավաք. ձեռ. Յմր № 2680, էջ 579ա (ի ՇՅԸ.՝ 578 = 1129 թ.):

[42] Տե՛ս վերը՝ ծնթ. 38:

[43] Սամուէլ, 115 հմմտ. Ոսկեան, Մատ. քննութ, 26:

*(1122-1126 թվականների միջև) կոչել է «իմաստասէրն աստուածային», նմանապես նա հիշվում է Դավիթ Շինարարի հետ իր ունեցած հանդիպումների ընթացքում, մոտավորապես 1123-1125 թվականների միջև, ինչի վրա մեր ուշադրությունն են հրավիրում «Քարթլիս ցխովրեբայի» հայկական տարբերակը,* Կիրակոս Գանձակեցին *և այլ սկզբնաղբյուրներ*[44]*:*

*Եվ, այսպես, Հովհաննես Սարկավագի մահվան վերջնական թվականը մենք պետք է ընդունենք 1129-ը*[45]*, իսկ, ընդհանրապես, նրան պետք է համարենք Դավիթ Շինարարի և Արսեն Իղալթոեցու*[46] *ժամանակակիցը:*

*Ինչպես ասված է «Քարթլիս ցխովրեբա»-ի հայկական տարբերակում՝ Հովհաննես Սարկավագը [1123-1125] թվականներին բավականին ծեր է եղել: Ահա թե ինչու,* Մ. Չամչյանը, *միանգամայն իրավացիորեն, հանգել է եզրակացության, որ Հովհաննեսը վախճանվել է «ի բարւոք ծերութեան»*[47]*, և ստացվում է, որ նա պետք է ծնված լինի ԺԱ. դարի կեսերին կամ ավելի վաղ:* Ոսկյանը *ենթադրում է, որ Հովհաննեսն իր մահկանացուն պետք է կնքած լինի 75-85 տարեկանում, և սրանից ելնելով՝ նրա ծննդյան թվականը պետք է «ամփոփել 1044-1054 թվականների միջև»*[48]*, չնայած դա հաստատելու համար նա որևէ փաստաթուղթ չի վկայում:*

*Հովհաննես Սարկավագ վարդապետի աճյունը հանգչում է ճիշտ այն վայրում, որտեղ մատնանշում է* Կիրակոս Գանձակեցին՝ *Հաղբատի մայրավանքի փառահեղ դամբարանում՝ հայ ճարտարապետների գլուխգործոց ճանաչված հրաշագեղ զանգակատան առաջ, իր ժամանակակիցների, բարեկամների և աշակերտների շարքում (տե՛ս նկար Հմր 2, էջ 53): Գերեզմանի վրա դրված է դագաղանման սալիտակավուն ժայռաբեկոր (տե՛ս նույն տեղում վերջին գերեզմանը), որ զարդարուած է բոլորգիր հայերենով գրված հակիրճ, բայց բազմիմաստ երկտող մակագրությամբ*[49]*:*

---

[44] Տե՛ս հաջորդ գլուխը:

[45] Տարօրինակ է **Սոմալի (S. Somal,** Quadro della storia letteraria di Armenia, Venezia 1829, p. 89) կարծիքը, թե, իբր, Հովհաննես Սարկավագն ապրել (ստեղծագործել) է Գրիգոր Պահլավունու ժամանակ՝ 1157 թվականին (sic):

[46] **Կոռն. Կեկելիձե,** Վրաց գրականության պատմություն, I, էջ 287 և ծնթ.. 2 և էջ 541:

[47] **Մ. Չամչեան,** Պատմութիւն Հայոց, Գ., Վնտ., 1786, էջ 41:

[48] **Ոսկեան,** Մատ. քննութ., 3:

[49] Ստուգված է մեր կողմից: Գրականություն. **Մինաս Բժշկեանց,** ճանապարհորդութիւն ի Լեհաստան, էջ 80 (§ 126), **Տէր-Յովհաննէս Ոսկերչեանց,** Հաւաքումն արձանագրութեանց [**Տաշեան,** Ցուցակ, 984], «Կռունկ Հայոց աշխարհի», 1862,

*ԱՐՃԱՆՍ ԱՅՍ ՍԵՄԱԿԱՆ[50] Է ՍՈՓԵ*

*ՍՏՈՍԻ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ Ո.[51]:*

*«Արժանս այս սեմական է Սոփեստոսի Սարկաւագին. Ո.» 600 <1151>»[52]:*

պարիլ, **Յովհ. Դրիմեցի**, 40, **Երզնկեան**, 52, **Աղանեանց**, Հնից-նորից, 10, **Լալայեան**, 408, **Կոստանեանց**, 30, **Ոսկեան**, 39-40:

[50] Այդ բառը Ռոստոմբեկ Երզնկյանը (**Երզնկեան**, 52) և Լալայանը (**Լալայեան**, 408) կարդում են վսեմական (sic!), ոմանք էլ՝ **սեփական** (այս մասին տե՛ս **Ալիշան**, Յուշիկք, Բ., 306, **Ոսկեան**, Մատ. քննութ. 22), բայց սրանցից ոչ մեկն ընդունելի չէ, որովհետև, եթե [վ]սեմական լիներ, կիակադրվեր [ն]սեմական-ին, և ամբողջ նախադասությունը այլ կառույց կունենար՝ «արժանս այս է [վ]սեմական Սոփեստոսի Սարկաւագին. Ո.», այսինքն՝ օժանդակ բայը այս տերմինից առաջ պիտի գրեին, իսկ սեմական-ի փոխարեն սեփական կարդալը, ինչպես իրավացիորեն նշում է **Ոսկյանը**՝ նույն տեղ., «բռնի է». **Ալիշանը** (Յուշիկք, Բ., 306, հմմտ, Հայապատում, Ա., 95) ճիշտ է նկատում, որ սեմական բառը ունի սեամ հիմքը և նշանակում է, որ «այն քարն իբրև սեամ է, զոր կոխելով Սարկաւագ՝ պիտի մտնէ յանմահութեան տաճարը»: Միաժամանակ կարծիք է հայտնում, թե՝ «Ով գիտե, զուցե Սարկավագն ինքն է հանձնարարել, որ այդպես գրեն»: Սեմական տերմինի ծագումը սեմ-ից՝ **սեմ, դրունք** իմաստով, ընդունելի է համարում նաև **Ոսկյանը** (**Ոսկեան**, Մատ. քննութ., 22), բայց վերջինիս համար անհիմն է **Ալիշանի** կարծիքը այն մասում, որտեղ ասված է, իբր, Սարկավագն ինքն է կենդանության օրոք հանձնարարել, որ ժայռաքեկորի վրա այդպես գրեն, քանզի նրա կարծիքով, Սարկավագը՝ որպես համեստ անձնավորություն, չէր կարող ինքն իրեն սոփեստոս անվանել: Մակագրությունն ընթերցվում է «սեմական», ինչը **Ալիշանի** և **Ոսկյանի** մեկնաբանությամբ հնարավոր է՝ առաջացել է սեամ բառից, իսկ դա նշանակում է «շեմ», «դրունք» (հմմտ. Հայկազեան բառարան, 704):

[51] Հովհաննես Սարկավագին հայ հին գրականության մեջ, **Թովմաս Վանանդեցուց** բացի, հիշատակում է նաև **Հովհաննես Գառնեցին** հետևյալ խոսքերով՝ «եւ ապա գնացի հետի իմով ի սուրբ ուխտն Հաղբատ՝ ի վանք նորուն, եւ երկրպագեցի սուրբ խաչին եւ համբուրեցի զերկնային զանձարանն՝ զկենդանի եւ զբժշկաբաշխ զերեզման մեծի եւ տեսանող իմաստասիրին հայոց՝ սուրբ վարդապետին Յոհաննիսի, որ Սարկաւագ կոչեցեալ» (**Տաշեան**, Ցուցակ, 465, **Ոսկեան**, Մատ. քննութ, 34):

[52] Հմմտ. Նման բովանդակության արձանագրություն՝ փորագրված 673 = 1224 թ., կա Հաղբատի կուսանաց վանքում՝ «Արժանս այս սեմական է Սոփեստոսի Տէր Ստեփաննոսի» (**Յովհ. Դրիմեցի**, 36 = **Երզնկեան**, 65 = **Լալայեան**, 414, հմմտ. **Ոսկեան**, 22-23), հետևաբար, սոփեստոս է եղել նաև Ստեփանոսը, մինչդեռ վերջինս այն Ստեփանոսն է, որը հիշատակվում է **Թովմաս Վանանդեցու** բանաստեղծության մեջ և ոչ թե Զոմզոմա կոչված Ստեփանոսը:

# ԳԼՈՒԽ Զ.

## ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԱՐԿԱՎԱԳԸ ԵՎ ՎՐԱՑԱԿԱՆ ՄԻՋԱՎԱՅՐԸ

*Առանձնապես հիշատակելի է Հովհաննես Սարկավագի հեղինակությունը վրացիների մեջ և ընդհանրապես նրա կապը վրացիների հետ:*

*Ինչպես վկայում են սկզբնաղբյուրները, Հովհաննեսը՝ որպես ուսյալ և հանրաճանաչ գիտնական, սերտ կապեր ուներ ղեկավար շրջանների՝ հոգևորականության, պալատի, ինչպես նաև անձամբ իր՝ Դավիթ Շինարար արքայի հետ:*

*Այս գրքի առաջին մասի չորրորդ գլխից արդեն գիտենք, որ Հայաստանը, մասնավորապես, այսպես կոչված, «Հյուսիսային կողմերը» գրավելու ժամանակ (1123 թ.), Դավիթ Շինարարը դավանանքի առումով զգալի ներողամտություն ցուցաբերեց հայերի հանդեպ, որի մասին* Մատթեոս Ուռհայեցին *պատմում է հետևյալը. «Եւ էր Դաւիթ արքայ սուրբ և առաքինի, զարդարեալ ամենայն աստուածպաշտութեամբ և բարի արդարութեամբ, և սա երևեցաւ ընդունող և սիրող ազգին Հայոց: Ա*ռ *սա ժողովեցան մնացեալ զօրքն Հայոց. և սա շինեաց քաղաք Հայոց յաշխարհն Վրաց և հաստատեաց եկեղեցիս և վանորայս բազումս, և անուանեաց զանուն քաղաքին Գոռա (Գոռա՝ այժմյան Գորի քաղաքը), և ունէր մեծաւ ուախութեամբ և ցնծութեամբ զամենայն ազգն Հայոց»*[1]*:*

*Դավիթ Շինարարը մոտ հարաբերությունների մեջ է եղել հայոց եկեղեցու գլուխ կանգնած գործիչների, մասնավորապես Վրաստանի սահմաններում գտնվող գիտագրական հանրահայտ օջախների ղեկավարների հետ:*

*Այս առումով չափազանց հետաքրքիր է «Քարթլիս ցխովրեբա»-ի հայկական տարբերակի (ԺԲ–ԺԳ. դդ.) վերջին մասը, որը վրացերեն բնագրից հիմնականում տարբերվում է նրանով, որ եթե վրացերեն համապատասխան տեղում պատմվում է հայ-վրացական եկեղեցական պառակտման մասին՝ Դավիթ Շինարարի ժամանակ, ապա հայերեն տարբերակում այդ վիճաբանության մասին խոսվում*

[1] Մատթէոս Ուռհայեցի, 356:

*է հակիրճ, փոխարենը համեմատաբար ընդարձակ տեղ է հատկացված Դավիթ Շինարարի և Հովհաննես Սարկավագի հարաբերություններին:*

*Առանձնահատուկ հետաքրքրության համար այդ մասը բերում ենք ամբողջությամբ, վերականգնված գոյություն ունեցող բոլոր ձեռագրիպ տարբերակների հիման վրա.*

*«...Այլ և կամեցաւ [Թագաւորն Դաւիթ] միաւորել զՀայս և զՎիրս. և կոչեաց զՅովհաննէս կաթողիկոսն Քարթլայ և զԱրսէնիոս Քարթլեցի՝ զԹարգմանն Վրաց և Յունաց լեզուին, և զեպիսկոպոսս, և զվարդապետս Հայոց. և արար ժողով, և քննէին յառաւաւտէ մինչև ցերեկոյ, և ոչ հաւանէին միմեանց: Ապա ասէ Թագաւորն. «Մեք անվարժ եմք ի խորագոյն բանսդ՝ զոր արկեալ էք առաջի, և ոչ կարէք դուք ելանել ի դուրս»: Եւ ինքն պարզ և յայտնի բանիւ խաղաղացուցեալ զերկոսին կողմանսն՝ արձակեաց զժողովն:*

*Այլ ինքն սիրէր զազգն Հայոց և զեկեղեցիսն և* զոմն հռետոր վարդապետ ի Հաղբատ՝ Սարկաւագ *անուն, խոստովանէր նմա զյանցանս իւր և կորացուցեալ զպատուական գլուխն՝ աւրհնէր ի նմանէ, և նստէր ընդ նմա և փարէր զպարանոցաւ նորա, և նա ասէր. «Լուծեալ եմ և հոտեալ ի ծերութենէս, ի բաց գնա՛ յինէն, զի մի՛ աշխատ լիցիս»: Եւ Թագաւորն համբուրէր և ասէր՝ «Անպակաս լիցի հոտս այս յինէն, հա՛յր պատուական»: Եւ պարգևաց նմա գեաւղ առ ընթեր վանացն ի ծառայութիւն նմա: Եւ ի յաւրհնելն զԹագաւորն զայս ասէր, եդեալ զձեռս ի վերայ գլխոյն. «Գտի զԴաւիթ ծառայ իմ և եւղով սրբով իմով աւծի զնա» (մինչև ցտասներորդ տունն)[2]: Եւ զուարճանայր արքայն և գովէր գեղեցկակերպ Թարգմանութիւնն Հայոց»[3]:*

*Ռուսաստանի Գիտությունների Ակադեմիայի Ասիական թանգարանում պահված ձեռագրի համապատասխան պարբերությունների լուսանցքներում հավելված են ուշադրության արժանի հետևյալ վերնագրերը. առաջինի դիմաց՝ «Առնէ [Թագաւորն Դաւիթ] ժողով վասն միաւորութեան Հայոց և Վրաց», երկրորդի դիմաց՝ «Սէր*

---

[2] Սաղմոս ՁԸ., 21-33:

[3] Տե՛ս էջմիածնի թանգարանի հին հավաք. ձեռ. Հմր 1902 (=1792), ժԳ. դար, էջ 309բ-310բ՝ (սիգնատուրայով՝ Վրաց պատմութիւն) և Ռուսաստանի Գիտությունների Ակադեմիայի Ասիական թանգարանի № [ИВ, B 133], ակադ. **Մ. Բրոսեն** վերնագիրը ժԸ. դարի ոճին համապատասխան ֆրանսերեն թարգմանել է՝ Chronique Arménienne (**M. Brosset**, Additions, 60-61), ինչպես նաև Վենետիկի Մխիթարյան միաբանության, որի համաձայն հայերեն թարգմանությունը իրականացրել է **Ա. Տ[իրոյեան]ը** (Համառօտ Պատմութիւն Վրաց, Վնտ., 1884, էջ 122-123):

Դաւթի թագաւորի առ Յովհաննէս Սարկաւագ վարդապետն Հայոց»:

Իսկ Կիրակոս Գանձակեցին Հովհաննես Սարկավագի հանդեպ Դավիթ Շինարարի տածած սերը նկարագրում է հետևյալ կերպ. «Եւ կարի յոյժ սիրէր զսա թագաւորն Վրաց Դաւիթ, հայրն Դեմետրեայ, պապն Դաւթի եւ Գիորգեայ, այնքա՛ն, զի մինչ լսէր զգալուստ նորա, յոտն յառնէր եւ ելանէր ընդ առաջ նորա, եւ խոնարհեցուցեալ զգլուխն՝ խնդրէր ի նմանէ օրհնութիւն. եւ նա եդեալ զձեռն ի վերայ գլխոյ նորա, զայս սաղմոս ասէր. «Գտի զԴաւիթ ծառայ իմ եւ իւղով սրբով իմով օծի զնա: Ձեռն իմ ընկալցի զնա եւ բազուկ իմ զօրացուսցէ զնա: Մի՛ մեղիցէ նմա թշնամի[4] եւ որդի անօրէնութեան մի՛ չարչարեսցէ զնա»: Եւ ի պատճառս, սորա սիրէր թագաւորն զազգս հայոց»[5]:

«Քարթլիս ցխովրեբայի» հայկական տարբերակի և Կիրակոս Գանձակեցու խոսքերից ելնելով՝ դյուրին կարող ենք ընկալել Վարդանի այն խոսքերը, որոնք պետք է որ Դավիթ Շինարարի և Հովհաննես Սարկավագի հարաբերություններին վերաբերելիս լինեն «Եւ ոչ էր նա երկմիտ յեկեղեցւոյ և յաղօթից մերոյ. վասն որոյ բազում անգամ դնէր զգլուխ իւր 'ի ներքոյ ձեռաց մերոցն՝ խնդրելով օրհնութիւն..»[6]:

Շատ ավելի ուշագրավ է հայկական տարբերակի այն տեղեկությունը, որտեղ նշված է, որ Դավիթը՝ ի պատիվ Հովհաննես Սարկավագի նկատմամբ տածած հարգանքի և սիրո, «Եւ պարգևաց նմա գեաւղ առ ընթեր վանացն [Հաղպատայ]՝ ի ծառայութիւն նմա», որը, ասես հաստատվում է Հաղբատի գլխավոր եկեղեցու արևմտյան մուտքի բարավոր սալաքարի վրայի մակագրությամբ (գլխավոր մուտքի մոտ), որը պետք է որ փորագրված լինի 572=1123 թ. ոչ շուտ և 574=1125 թ. ոչ ուշ:

Մակագրության մեջ, որ վնասված է և հազիվ է կարդացվում, ի միջի այլոց, ասվում է. «Ի ժամանակս ինքնակալ արքային Դաւթի բարեպաշտի և յաղթաւղի՝ որդւոյ Գիորգեայ, որդւոյ Բագրատայ... որ տիրեաց գաւառս և ազինս... եղև խնամաւղ Հաղբատայ և Սանահնի... ընթացեալ քաղցր և բարեսէր աստուածպաշտութեամբ... զՀաղբատս ի մթնութենէ աւերութեանն ազատեաց, գրով և վճռով ընծայեաց ի սուրբ եկեղեցիս զայգիս..., զգեւղն... և ամենայն հողով և

---

[4] Սաղմոս ՁԸ., 21-23:

[5] Կիրակոս, 105:

[6] Վարդան, 120:

վիճակովն... զեղեալ կալուածս ամենայն վերահաստատեաց... Գրեցաւ գիրս յարքեպիսկոպոսութեան... առաջնորդի Հաղբատայ, որ է եղբայր Գրիգորի... ի թուին ՇՀ. [Բ. - Գ. -Դ.][7]:

Վրացական միջավայրի հետ Հովհաննես Սարկավագի ունեցած կապերի մասին է խոսում հրատարակված մի բավականին հետաքրքիր երկասիրություն, որը մեզ է հասել ԺԳ. դարի մեկ եզական ձեռագրի տեսքով և ունի հետևալ վերնագիրը. «Հարցմունք Վրաց եպիսկոպոսի ի Հայոց վարդապետէ Սարկաւագէն՝ Գիր[8*] գոլով յազգս ամենայն, եթէ զի՞արդ ունի երգք սաղմոսին ասացեալ՝. «Դու խորտակեցեր զգլուխ վիշապաց ի վերայ ջուրց: Դու փշրեցեր զգլուխ վիշապին և ետուր զնա կերակուր զաւրացն Հնդկաց[9]»[10]:

Բոլոր այս տեղեկությունները խոսում են այն մասին, որ Հովհաննես Սարկավագը մեծ հեղինակություն է եղել ոչ միայն հայերի, այլև վրացիների համար:

Մենք, իհարկե, այստեղ կանգ չենք առնի այն երևույթի մեկնություն-բացատրության վրա, թե ինչու են իրարից տարբերվում Դավիթ Շինարարի պատմիչի երկի և «Քարթլիս ցխովրեբա»-ի հայերեն տարբերակները. խոսքը վերաբերում է Դավթի ժամանակ՝ մոտավորապես 1123-1125 թվականներին տեղի ունեցած հայ-վրացական բանավեճերի նկարագրությանը, որ ինչպես բովանդակությամբ, այնպես էլ, առավել ևս, փաստերը վկայելու առումով հակադրվում են իրար. ըստ Դավթի պատմագրի՝ այն անցել է հօգուտ վրացիների (այսինքն՝ ըստ այս պատմիչի՝ վրացիներն են հաղթողները), իսկ հայկական տարբերակով՝ հօգուտ հայերի (այսինքն՝ այս տարբերակով էլ հայերն են հաղթողները)[11]: Ճիշտ այնպես, ինչպես վրաց Արսեն կաթողիկոսի (Թ. դ.) և հայ Ուխտանես եպիսկոպոսի (Ժ. դ.) երկերը իրենց միակողմանիությամբ հակասում են միմյանց: Մեզ համար ուշադրության արժանի է այն հանգամանքը, որ բո-

[7] **Յովհ. Դրիմեցի**, 4 = **Երզնկեան**, 32 = **Կոստանեանց**, 28, հմմտ. [**А. Ерицов**], Ахпатский монастырь.- «Кавк. старина», № 2 (1872), стр. 51: Տարեթվի մասին տե՛ս վերը՝ առաջին մասի Գլ. Դ., ծնթ. 21:

[8] * Ճիշտը՝ «գեր», հիմա՝ վեր, բարձր - Գ. Տ-Վ.]:

[9] Սաղմոս ՀԳ. 13-14:

[10] Տե՛ս Երուսաղեմի հայոց պատրիարքության գրադարանի ձեռ. Հ[մր] 1272, որը թվագրված է 739 = 1290 թ., էջ 376ա-380բ: Օգտվում ենք **Գարեգին Հովսեփյանի**՝ անձամբ մեզ տրամադրած նյութից: Նմանապես՝ հմմտ. **Գար. Զ[արբհանալեան]**, Հայկական հին դպրութեան պատմութիւն, 615 ծնթ.: 1, **Եր[ուանդ] ս. [Տեր-Մինասեանց]**, Հաղբատ և Սանահին վանքերը, 341:

[11] Հմմտ. **Ա. Տ[իրոյան]ի** ծանոթագրությունները. Համառօտ Պատմութիւն Վրաց, էջ 122-123, ծնթ. 2:

լոր վերոհիշյալների և մասնավորապես «Քարթլիս ցխովրեբա»-ի հայկական տարբերակի տեղեկություններով մենք գրեթե հնարավորություն ենք ստանում կռահելու Դավիթ Շինարարի պատմիչի՝ հայ գործիչների մասին մշուշապատ տեղեկությունը, «ովքեր հասել են ամենայն ուսմանց և գիտության», երբ նա խոսում է Դավիթ Շինարարի ժամանակ (1123-1125)[12] Տփղիսում կայացած հայ-վրացական եկեղեցական բանավեճի մասին, իր՝ Դավիթ արքայի, Հովհան կաթողիկոսի և Արսեն Իղալթոյեցու (ըստ Կոռն. Կեկելիձեի՝ Արսեն որդի Վաչեի [Մաղաշվիլու՞])[13] ներկայությամբ:

Դավթի պատմիչի երկում ասված է.

«Մի օր հավաքվեցին արքայի առաջ չարսիրտ ցեղակիցները՝ հայ բազմաթիվ նենգ եպիսկոպոսներ և նրանց վանքերի առաջնորդներ, ովքեր պարծենում էին, թե ինչպես են հասել ամենայն ուսմանց և գիտության գագաթնակետին»[14]:

Մենք գիտենք, որ 1) Դավիթ Շինարարի ժամանակակից,ականավոր կամ ավելին՝ հանրահռչակ հայոց վարդապետներից և գործիչներից էր Հովհաննես Սարկավագը, ում հանդեպ բարեկամաբար էր տրամադրված ինքը՝ Դավիթը, և ում խորապես հարգում էր. 2) Հովհաննես Սարկավագը ճիշտ և ճիշտ այն անձնավորությունն էր, ով, եթե կրկնենք Դավթի պատմիչի խոսքերը. «Հասել էր ամենայն ուսմանց և գիտության գագաթնակետին» և ով ժամանակակիցն էր Արսեն Իղալթոյեցու» (Արսեն որդի Վաչեի՞). 3) Հովհաննես Սարկավագը՝ հյուսիսային կողմանց և, մասնավորապես, Հաղբատի մայրավանքի ակնառու ներկայացուցիչը, Վրաց արքունիքին մերձավոր անձնավորությունը, այնպիսի նշանակություն ունեցող հարցի քննարկմանը, որպիսին հայ-վրացական միաբանության համար գումարված բանավեճն էր, վրաց Իոանե (Հովհան) կաթողիկոսի և Արսեն Իղալթոյեցու մասնակցությամբ, ինհարկե չէր կարող պատշաճ մասնակցություն չունենալ: Ահա ինչու, կարելի է կարծել, որ Դավթի պատմիչը երբ խոսում էր հայոց «բազմաթիվ եպիսկոպոսների և վարդապետների մասին, որոնք «պարծենում էին, թե ինչպես հասել են ամենայն ուսմանց և գիտության գագաթնակետին», նախ և առաջ նկատի ուներ Հովհաննես Սարկավագ վարդապետին, որին հիշատակում է առաջիններից (և ներկայացնում որ-

[12] Հմմտ. պրոֆ. Կոռն. Կեկելիձե, Վրաց գրականության պատմություն, I, 289:

[13] [illegible]

[14] Տե՛ս Աննա թագուհու «Քարթլիս ցխովրեբա»-ի ձեռագիրը, տետր. 3r (էջ 5), հմմտ, Ք. Ց., Թաղ., 325-326 = Բրոսե, 258:

*պեն հաղթողի) «Քարթլիս ցխովրեբա»-ի հայկական տարբերակում, իսկ հետագայում նաև նույն ժամանակաշրջանի ուրիշ հայտնի գործիչների երկերում, որպիսիք են Հովհաննես Սարկավագի ժամանակակիցներից և բարեկամներից Ալավկա որդի Դավիթը և Թոքակերի որդի Գրիգորը:*

*Ամբողջ վերոգրյալից հետո մենք չենք կարող չմիանալ* Աբրահամ Չամինյանի *գնահատանքին, որ «իր ունեցած մեծիմաստ յունագիտութեամբ՝ Սարկաւագ վարդապետը փառաւորեց Հաղբատի անունը: Նա ոչ միայն հայերէն, այլ և վրացիներէն մեծ յարգանք կը վայելէր»*[15]*:*

[15] Աբր. Չամ[ինեան], Պատմութիւն հայ գրականութեան, Ա., 169:

## ԳԼՈՒԽ Է.

## ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԱՐԿԱՎԱԳԻ ԳԻՏԱԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՎԵՐԼՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ

*Հովհաննես Սարկավագին բնութագրող մակդիրները՝ «հռետոր», «իմաստասեր», «սոփեստոս» և «պոետիկոս» («պոետ»), պարզ ցույց են տալիս, թե ինչ մեծ գիտնական և մտածող պետք է եղած լինի նա ԺԲ. դարի հայոց գիտագրական ասպարեզում:*

*Իրավացի է* Մանուկ Աբեղյանը, *որ Հովհաննեսին համարում է «մեծ գիտնական, փիլիսոփա, մատենագիր, տոմարագետ, պատմագիր, հեղինակ կրոնական ներբողյանների, ճարտասան և բանաստեղծ»*[1]*:*

Աբրահամ Չամինյանը *Հովհաննեսի աշխատությունները բաժանում է չորս գլխավոր բնագավառի՝ 1) Կրոնական, 2) Տոմարագիտական, 3) Քերթողական, 4) Պատմական*[2]*:*

Համազասպ Ոսկյանը *նպատակահարմար է գտել դրանք բաժանել 9 մասի՝ 1) Ներբողներ, 2) Ճառ քահանայության, 3) Աղոթագիրք, 4) Սաղմոս, 5) Պատմություն, 6) Ի սարեկ թռչունն, 7) Տոմարական երկեր, 8) Մանր և տարակուսական երկեր, 9) Քննություն Պրիսկեսի «Վեցօրեայքի*[3]*»: Մենք անձամբ ցանկանում ենք Հովհաննես Սարկավագի գիտագրական գործունեության վերլուծությունը ներկայացնել բոլորովին այլ սկզբունքով: Սակայն նախօրոք պետք է ստուգենք հին պատմիչների՝ տվյալ հարցին առնչվող տեղեկությունները:*

*Անանիա Սանահնեցու գործունեությունը բնութագրելուց հետո,* Կիրակոս Գանձակեցին *անդրադառնում է Հովհաննես Սարկավագին. «Սոյնպէս եւ մեծիմաստն գիտութեամբ քան զյոլովս եւ հանճարեղն*

---

1 **Մ. Աբեղյան**, Համառոտություն հայ ժողովրդական վեպի յեվ պատմության, Յերեվան, 1923, էջ 44:

2 **Աբր. Չամ[ինեան]**, Պատմութիւն հայ գրականութեան, Ա., 169:

3 **Ոսկեան**, Մատ. քննութ., 26: **Ալիշան** (Յովհաննէս Սարկաւագ-Վարդապետ.- «Բազմավէպ» 1847, № 14, էջ 218 և հջրդ): Հայապատում, Ա., 93 և հջրդ): Ներկայացված դասակարգմանը դիտմամբ չենք անդրադառնում, որովհետև դա ոչ մի քննադատության չի դիմանում:

*յամենայնի՝ մտահարուստ Յովհաննէս, Սարկաւագն կոչեցեալ, ի Հաղբատ: Սա բազում ինչ աշխատասիրեաց ի գիրս՝ յիշատակ բարի թողեալ. սա զբազմաց փափագելին եւ ո՛չ ձեռնհաս, զհաստատ եւ զանշարժ տոմարն կարգեաց հայոց փոխանակ շարժականին եւ անհաստատնոյն. արար եւ միաբանութիւն ամենայն ազգաց տոմարի ընդ հայոց. վասն զի յոյժ իմաստուն էր այրն եւ աստուածային շնորհօք զարդարեալ, նորա բանքն ամենայն իմաստասիրական ոճով, որպէս զԳրիգորի Աստուածաբանին, եւ ոչ գեղջուկ: Սա գրեաց ճառս ներբողականս ի մեծազօր արքայն Հայոց Տրդատ, եւ ի սուրբ հայրապետն Ներսէս, եւ ի սքանչելին Սահակ եւ Մեսրոպ. արար եւ շարական Ղեւոնդեանցն՝ քաղցր եղանակաւ եւ յարմար բանիւ, որոյ սկիզբն է այս. «Պայծառացան այսօր սուրբ եկեղեցիք»: Գրեաց նոցուն եւ ճառս ներբողականս. գրեաց սա եւ Գիրս աղօթից. գրեաց եւ օրինակս ստոյգ գրոց»*[4]*:*

*Այսպես ուրեմն, ըստ* Կիրակոսի՝ *Հովհաննես Սարկավագը շատ մեծ վաստակ ունի հայոց մատենագրության պատմության մեջ. «... Սա զհաստատ և զանշարժ տօմարն կարգեաց Հայոց՝ փոխանակ շարժականին և անհաստատնոյն... գրեաց ճառս ներբողականս ի մեծազոր արքայն Տրդատ, և ի սուրբ հայրապետն Ներսէս, և՛ի սքանչելին Սահակ և Մեսրոպ, արար և շարական Ղեւոնդեանցն՝ քաղցր եղանակաւ և յարմար բանիւ, գրեաց սա Գիրս աղոթից, գրեաց և օրինակ ստոյգ գրոց»:*

*Բացի սրանից,* Սամուել Անեցին *ցույց է տալիս Հովհաննես Սարկավագի պատմական այն մեկ երկը, որտեղ նկարագրված է եղել սելջուկների արշավանքի պատմությունը, որտեղից էլ* Սամուելը *վերցրել է որոշ տվյալներ. «...Այսպիսի պատճառաւ ընթերցաք, գրեալ վարդապետին մեծի՝ որ Սարկաւագ վերակոչի անուանեալ»*[5]*:*

*Մի այլ տեղ* Սամուելը, *պատմելով Մելիքշահի (1072-1092) մասին, մատնանշում է աղբյուրը. «Զայսոսիկ նշանակաւ գրոյ եցոյց մեզ իմաստասէրն մինչև ցՄելիք շահն, զոր յիւրում տեղւոջն գրեցից սորին ձեռնտութեամբ»*[6]*: «Տեսաք երբեմն գրեալ սորին <այսինքն՝ Սարկավագի> ձեռօք, ստոյգ գտակաւ»*[7]*, «զի սաէ իմաստասերն աստուածային, թէ իբրև առնոյր զփառս իշխանութեանն»*[8]*:*

[4] Կիրակոս, 104-105:

[5] Սամուէլ, 97, հմմտ. Գ. Զ[արբհանալեան], Նշ. աշխ., 609:

[6] Սամուէլ, 98, հմմտ. Գ. Զ[արբհանալեան], Նշ. աշխ., Նույն տեղում:

[7] Սամուէլ, 98, հմմտ, Գ. Զ[արբհանալեան], Նշ. աշխ, 610:

[8] Սամուէլ. 115. հմմտ. Գ. Զ[արբհանալեան], Նշ. աշխ., loc cit.

*Խաչակիրների արշավանքի և Ալեքսիոս Կոմնենոսի մասին խոսելիս* Սամուէլը *հաղորդում է, թե.«այս բանք գրեալ էր վարդապետին Սարկաւագի»*[9]*:*

*Իսկ* Կիրակոսը, *հիմնվելով* Սամուէլի *տեղեկությունների վրա, ցույց է տալիս սկզբնաղբյուրը. «...Զի մինչև ցՄելիքշահ սուլթանն գրեալ էր զպատճառս տիրելոյն նոցա <այսինքն՝ Ռուբինյանների> մեծիմաստ վարդապետին, որ Սարկաւագն կոչէր և երկրորդեալ էր Սամուէլի քահանայ»*[10]*:*

*Այս պարագայում* Սամուէլը *և* Կիրակոսը *նկատի ունեն Հովհաննես Սարկավագի կողմից շարադրված, այսպես կոչված, Պատմությունը, մինչ Մելիքշահը:*

Կիրակոսը *ծանոթ չի եղել Սարկավագի բոլոր աշխատություններին և «Օրինակ ստոյգ գրոց»-ից բացի, շրջանցում է նրա բազմաթիվ երկերը և առաջին հերթին՝ մեկնաբանական երկասիրությունները, որոնք գեղեցկացնում են հայ հին գրականությունը:*

*Ընդհանրապես Հովհաննես Սարկավագը իր գիտագրական գործունեության ընթացքում անդրադարձել է մատենագրության համարյա բոլոր ոլորտներին, և նրա աշխատությունները կարելի է քննարկել հետևյալ դասակարգմամբ՝ ջատագովություն-դավանաբանություն (որին հատկացրել ենք առանձին գլուխ), մատենագիտություն, մեկնաբանական երկեր (էգզեգետիկա), ներբողներ, ճգնակեցություն, պատարագ, պոեզիա, տիեզերաբանություն, տոմարագիտություն, պատմաժամանակագրություն:*

## ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

*«Սաղմոսարան»՝ «զի սա է գաղափարն գերունակ սուրբ վարդապետին և մեծ սոփեստոսին սուրբ ուխտին Հաղբատայ Սարկաւագին... այն՝ որ բազում ճգամբ զսաղմոսս ի թարգմանչագիր Սաղմոսարանէ գաղափարեաց»*[11]*: Ահա թե ինչու, զարմանալի չէ, որ հատկապես այս խմբագրությունը տարածվեց ամբողջ Հայաստանում. «Եւ ցրուեաց ընդ ամենայն սահմանս Հայաստանեայց զայս աւրինակ»*[12]*:*

---

[9] Սամուէլ, 120, հմմտ, Գ. Զ[արբհանալեան], Նշ. աշխ., loc cit.

[10] Կիրակոս, 78:

[11] Տաշեան, Ցուցակ, 463-465, Գ. Զ[արբհանալեան], Նշ. աշխ., 614, ծնթ., Յր. Աճառեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Սանասարեան վարժարանի, Վն., 1900, էջ 23, Ոսկեան, Մատ. քննութ, 33-35:

[12] Տաշեան, 464, հմմտ. Ոսկեան, Նշ. աշխ., 35:

## ՄԵԿՆՈՒԹՅՈՒՆ

*1. «Կարգադրութիւք գրոց սրբոց, որք ստուգաբանեցան ի Սարկաւագ վարդապետէն, և գրեցան յինէն՝ ի տէր Մխիթար վարդապետէս պատմագրէ ի մին տուփ գաւուրս ՃՀ. (170)»*[13]*: Այս ստեղծագործությունը, ցավոք, ցայժմ գտնված չէ, և եթե այսօր կարող ենք սրա մասին որոշ դատողություններ անել, ապա լոկ այն տեղեկությունների հիման վրա, որ մեզ փոխանցում է* Մխիթար Այրիվանեցին[14]*: Նոր գիտական գրականության մեջ նրան թռուցիկ են անդրադարձել* Մեսրոպ Տեր-Մովսիսյանը[15] *և* Ներսես Ակինյանը[16]*: Այդ ստեղծագործությունը հետաքրքիր է այնքանով, որ առաջին փորձն է աստվածաշնչյան և փիլիսոփայական երկերի քննության, որը իր տեսակի մեջ հիմք դարձավ բազմաթիվ այլ դասագրքերի համար և, ի միջի այլոց, նաև Աբասի որդի Գրիգորի համար (ԺԲ-ԺԳ. դդ.), այսպես կոչված, «Գիրք պատճառացի» համար*[17]*: Այն դրված է նաև* Վանականի *(ԺԳ. դ.) ցուցակի հիմքում*[18]*:*

*Այս ստեղծագործության մեջ, ինչպես նշում է* Ն. Ակինյանը, *կազմողը՝ Հովհաննես Սարկավագը, այսպես կոչված «սուրբ գրքերը» բաժանում է երեք խմբի՝ 1) «Նոր կտակարան», 2) «Հին կտակարան», 3) «Նուրբ մատյաններ»*[19]*: Վերջիններիս թվում նկատի են առնվում Փիլոնի, Պորփյուրի, Դիոնիսիոսի, Բարսեղի, Գրիգոր Աստվածաբանի, Գրիգոր Նյուսացու և ուրիշների փիլիսոփայական-այլաբանական գրությունները*[20]*:* Գ. Գալեմքեարյանը[21] *և* Հ. Ոսկեանը[22] *կարծում են՝ թերևս այդ գիրքը նկատի առնվի Հովհաննես Սարկավագի գործունեության այն մեկնաբանության մեջ, որը* Կիրակոսը

---

[13] **Մխիթարայ Այրիվանեցւոյ** Պատմութիւն ժամանակագրական, ի լոյս ընծայեաց **Ք. Պատկանեան**, ՍՊբ., 1867, էջ 33, **Գ. Գ[ալէմքեարեան]**, Մխիթար Այրիվանեցի և իւր նորագիւտ գրութիւնը.- ՀԱ, 1891, էջ 162, հմմտ, **Месроп Тер-Мовсесян**, История перевода Библии на армянский язык, СПб., 1903, стр. 239 և այլն:

[14] Տե՛ս **Մխիթարայ Այրիվանեցւոյ** Պատմութիւն ժամանակագրական, ՍՊբ., 1867, էջ 33-36, **Գ. Գ[ալէմքեարեան]**, op. cit., 163-164:

[15] **М. Тер-Мовсесян**, նշ. աշխ., 229-230, 239-240:

[16] **Ն. Ակինեան**, Սատ. հետազ., 30, 34-43:

[17] **Նույն տեղում**, 36, **Ոսկեան**, Սատ. քննութ., 36-37:

[18] **Բարսեղ Սարգիսեան**, Մայր Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանցի Վենետիկ, Ա., Վնտ., 1914, էջ 38, 22:

[19] **Ն. Ակինեան**, նշ. աշխ., 34:

[20] **Ոսկեան**, նշ. աշխ., 36:

[21] **Գ. Գ[ալէմքեարեան]**, նշ. աշխ., էջ 162, ծնթ. 1:

[22] **Ոսկեան**, նշ. աշխ., նույն տեղում:

*փոխանցում է «Օրինակ ստոյգ դրոցի» հիշատակումով:*

*2. «Մեկնութիւն Աւետարանին Ղուկասու», զոր կհիշէ իր աշակերտն* Կունդ Սարգիս[23]*:*

*3. «Հարցմունք Վրաց եպիսկոպոսէ ի Հայոց վարդապետէ Սարկաւագէն՝ գեր գոլով յազգս ամենայն, եթէ զի՞արդ ունի երգք սաղմոսին ասացեալ՝. «Դու խորտակեցեր զգլուխ վիշապաց ի վերա[յ] ջուրց». ևլն.)*[24]*:*

*[4.]* Գարեգին Զարբհանալյանը *Հովհաննես Սարկավագին է վերագրում նաև Գեորգ Պիսիդեսի «Յաղագս վեցօրեայ արարչութեան»-ի հայերեն*[25] *թարգմանությունը, բայց այդ միտքը հաստատելու փաստեր չի բերում, և ոչ էլ գոյություն ունեն*[26]*:*

## ՆԵՐԲՈՂՆԵՐ

*1. Գրիգոր Լուսավորչին. «Յովհաննու Սարկաւագ վարդապետի՝ Ներբողեան ի սուրբ Գրիգոր Լուսաւորիչն Հայոց*[27]*»:*

*2, 3, 4 և 5. «Սա գրեաց ճառս ներբողականս ի մեծազօր արքայն Հայոց Տրդատ, և ի սուրբ հայրապետն Ներսէս, և ի սքանչելին Սահակ և Մեսրոպ. արար և շարական Ղևոնդեանցն՝ քաղցր եղանակաւ և յարմար բանիւ...»,- նշում է* Կիրակոսը[28]*:*

## ՃԳՆԱԺԵՑՈՒԹՅՈՒՆ

*1. «Յովհաննու, որ մականուն Սարկաւագ կոչի՝ Յաղագս քահանայութեան և քահանային և գլխոց նոցին»*[29]*: Այս ստեղծագործության մեջ, որը ինչպես բովանդակությամբ, այնպես էլ ծավալով տարբերվում է «Ընդդեմ երկաբնակաց» երկում զետեղված համա-*

[23] **Ղ. Ալիշան**, Յուշիկք, Բ., 300, **Գ. Զ[արբհանալեան]**, նշ. աշխ., 613, **Ոսկեան**, նշ. աշխ., 49-59:

[24] Տե՛ս Երուսաղեմի հայոց պատրիարքության գրադարանի ձեռ. Հմր 1272, էջ 376ա, հմմտ. **Գ. Զ[արբհանալեան]**, նշ. աշխ., 615, ծնթ. 1:

[25] **Գ. Զ[արբհանալեան]**, Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց, 655-656:

[26] **Յակովբոս Տաշեան**, Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք, ևլն., Բ., 365-366, **Ոսկեան**, նշ. աշխ., 59-61:

[27] Հրատարակված է՝ Սոփերք Հայկականք, Ե., 1853, էջ 5-36, **Ոսկեան**, նշ. աշխ., 27-28:

[28] **Կիրակոս**, 104-105, հմմտ. **Ալիշան**, Հայապատում, Ա., 94, **Ոսկեան**, նշ. աշխ., 28-29:

[29] Հրատարակված է՝ Սոփերք Հայկականք, Գ., 1853, էջ 9-79, հմմտ. **Գ. Գալէմքեարեան**, Ցուցակ հայերէն ձեռագրաց արքունի մատենադարանին ի Միւնխէն, Վն., 1892, էջ 28, **Ե. [Տէր-Մինասեանց]**, Հաղբատ և Սանահին վանքերը, 342:

*պատասխան գլխից՝ «Վասն քահանայութեան և քահանայից», հեղինակը ըստ ամենայնի բացատրում է քահանայի կոչման ծանրությունը և ցույց է տալիս նրա պատասխանատվությունը*[30]*:*

*2. «Հարցումն ընդ սուրբ վարդապետն Սարկաւագ՝ Եթէ արժան իցէ թողուլ ի ժամանակի ինչ զեղբարս, կենակիցս և երթալ յանապատս»*[31]*:*

*3. «Նորին Յովհաննու՝ Յաղագս չորից առաքինութեանց և հետևմանց նոցին»*[32]*:*

*4. «Զգուշական խրատս» առ Քոբայրի միանձնուհիներ, Կյուրիկյան արքայադուստրեր Խորասու (?) և Մարիամ, որոնց հիշատակում է* Վարդանը. *«Խորասու և Մարիամ, առ որս գրեր սուրբ Վարդապետն Սարկաւագն զգուշական խրատս»*[33]*:*

*[5.] «Պատասխան ի հարցման Զաքարիա քահանայի»*[34]*:*

*[6.] «Բանք խրատու ուսումնասիրաց»*[35]*, կցված է № 1-ում նշված երկին, այդ իսկ պատճառով վերագրվում է Հովհաննես Սարկավագին*[36]*:*

## ԾԻՍԱԿԱՆՔ

*Աղոթքներ և մաղթանքներ 1) Աղօթք առ Աստուած Հայր, 2) Աղօթք առ Հայր, 3) Մաղթանք առ Հայրն երկնաւոր, 4) Աղօթք զղջման առ Հայր, 5) Աղօթք ի դէմս մանկանց առ Հայր Աստուած, 6) Աղօթք առ Քրիստոս Յիսուս (երկու), 7) Աղօթք ընդդէմ Հոգւոյն հայհոյութեան, 8) Աղօթք առ Հոգին Սուրբ, 9) Աղօթք առ Սուրբ Երրորդութիւն, 10) Աղօթք առ ամենասուրբ Երրորդութիւնն, 11) Աղոթք առ Որդին (յոթ), 12) Աղօթք ի դէմս Որդւոյ, 13) Աղօթք պանդխտի, 14) Ողբք, 15) Բանք մաղթանաց առ Սուրբ կոյսն Մա-*

[30] **Ե. [Տէր-Մինասեանց]**, նշ. աշխ., 342, **Ոսկեան**, նշ. աշխ., 29-31:

[31] Էջմ. թանգ. հին հավաք. ձեռ. Հմր № 777 (=513), էջ 113բ-127ա, հմմտ. **Կարինեանց**, Ցուցակ, 32, **Ե. [Տէր-Մինասեանց]**, նշ. աշխ., 341, **Ոսկեան**, նշ. աշխ., 59:

[32] Էջմ. թանգ. հին հավաք. ձեռ. Հմր 777 (=513), էջ 113բ-127ա, հմմտ. **Կարինեանց**, Ցուցակ, 32, **Ե. [Տէր-Մինասեանց]**, նշ. աշխ., 341, **Ոսկեան**, նշ. աշխ., 59:

[33] **Վարդան**, 122:

[34] F. **Macler**, Catalogue des Manuscrits armeniens et ge'orgiens de la Bibliotheque nationale, Paris, 1908, p. 162, հմմտ. **Ե. [Տէր-Մինասեանց]**, նշ. աշխ., 342, **Ոսկեան**, նշ. աշխ., 59 (**Երվանդ Տեր-Մինասեանցի** հոդվածը հիշատակելիս **Ոսկեանը** սխալմամբ նշել է Ա, 1907, պետք է լինի՝ Ա, 1901):

[35] Հրատարակված է՝ Սոփերք Հայկականք, Գ., 83-84:

[36] **Ալիշան**, Յուշիկք, Բ., 300, **Գ. Զ[արբհանալեան]**, նշ. աշխ., 613, **[Տէր-Մինասեանց]**, նշ. աշխ., 341, **Ոսկեան**, նշ. աշխ., 49:

րիամ Աստուածածին - ամբողջը՝ ընդամենը 22 հատ[37]:

Որ այս աղոթքները պատկանում են Հովհաննես Սարկավագին, հավաստում են համապատասխան ժողովածուները: Օրինակ՝ աղոթքների այսպիսի հավաքածուներում ուղղակի ասված է. «Բանք մաղթանց Յովհաննու քահանայի, որ և Սարկաւագն»[38], կամ «Բան մաղթանաց Յովհաննու քահանայի Սարկաւագ կոչեցելոյ»[39], կամ էլ «Յոհաննու Սարկաւագ վարդապետի Բան մաղթանաց»[40]: Նույն աղոթքները որոշ ձեռագրերում տրված են տարբերակներով[41]:

| | |
|---|---|
| Նորին Յովհաննու [քահանայի] Աղաւթք. սկս՝. «Արարիչ իմանալեաց»: | Յովհաննու սրբոյ վարդապետի մականուն Սարկաւագ կոչի՝ *Աղաւթք առ Աստուած Հայր:* |
| Նորին Յովհաննու քահանայի Աղաւթք. սկս՝. «Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»: | Նորին՝ *Աղաւթք առ Հայր:* |
| Նորին Յովհաննու քահանայի Աղաւթք. սկս.՝ «Որդի և Բան Հաւր, Աստուած ճշմարիտ»: | Նորին՝ *յՈրդի:* |
| և այլն: | |

Գիտական գրականության մեջ կա կարծիք, որ «Աղօթամատոյցը» Հովհաննես Սարկավագը գրել է Գրիգոր Նարեկացու երկի՝ «Ողբերգության մատյանի» ազդեցությամբ[42]:

## ՊՈԵԶԻԱ

Հովհաննես Սարկավագի գրչին են պատկանում բանաստեղծական մի քանի երկեր՝ հիմնականում հոգևոր, մասնակիորեն նաև աշխարհիկ բնույթի:

1. Վերևում տեսանք, որ Կիրակոս Գանձակեցին Հովհաննես Սար-

---

[37] Հրատարակված է՝ Սոփերք Հայկականք, ժէ., 1854, էջ 5-144, 1) 5-13, 2) 101, 3) 121-134, 4) 14-20, 5) 21-25, 6) 26-35, 36-42, 7) 43-48, 8) 49-53, 9) 54-55, 10) 56-60, 11) 61-65, 66-69, 70-73, 74-76, 77-83, 84-92, 109-112, 113-120, 12) 74-76, 13) 93-100, 14) 102-108, 15) 135-144, հմմտ. **Ոսկեան**, նշ. աշխ., 31-33. **Ե. [Տէր-Մինասեանց]**, նշ. աշխ., 342, (տեղում՝ նրանց գնահատականը) **Գ. Յովսէփեան**, Խուրովիկ, 54-56:

[38] **Գ. Յովսէփեան**, Խուսրովիկ, 54:

[39] **Կարինեան**, Ցուցակ, 34, **Ոսկեան**, նշ. աշխ., 32:

[40] **Ոսկեան**, նշ. աշխ., 32:

[41] **Գ. Յովսէփեան**, Խուսրովիկ, 55-56:

[42] **Ոսկեան**, 31:

*կավագին է վերագրում Ղևոնդյաններին նվիրված շարականը*[43]*: Այս շարականը, որը, խսկապես, սկսվում է «Պայծառացան այսօր սուրբ եկեղ[եցիք լուսաւորչօք կենդանեօք]» խոսքերով, լավ հայտնի է հայկական եկեղեցական երգարաններում կամ Շարակնոցներում*[44]*: Եվ որի հեղինակը, իրոք, Հովհաննես Սարկավագն է, հավաստում են նաև որոշ ձեռագիր ժողովածուներ, որտեղ ասված է՝*

> *«Եւ զՂևոնդեանց ՄԿ. Դ Ձ. Սարկաւագ վարդապետն [սաաց], որ ի Հաղբատ»*[45]*:*

*2. Հովհաննես Սարկավագին են վերագրում տարբեր բովանդակության*[46] *մի քանի տաղեր ևս: Ի միջի այլոց, «Ի Յարութիւն Քրիստոսի*[47]*», որից միայն մեկը իսկապես տպագրված է նրա անունով՝ «Սարկավագ վարդապետի ասացեալ մարտ ընդ Աստուծոյ»*[48]*:*

*3. Հովհաննես Սարկավագի չափածո երկերի մեջ հռչակված է նրա բավականին ծավալուն բանաստեղծությունը՝ հետևյալ ընդարձակ վերնագրով՝ «Յովհաննու Սարկաւգի իմաստասիրի և վարդապետի ասացեալ՝ Բան իմաստութեան ի պատճառս զբօսանաց առ ձագն, որ զաղօթանոցաւ նորա ճռուողէր քաղցրաձայն, որ կոչի Սարեկ»*[49]*: Սա աշխարհիկ բնույթի նրա միակ բանաստեղծությունն է, որի մեջ անց է կացվում ժամանակի համար մի յուրօրինակ գաղափար՝ ձգտումը դեպի բնություն և բնությանը նմանվելու գաղափարը:*

*Ինչպես նշում է* Մանուկ Աբեղյանը, *սա եղել է առաջին նմուշը հայ պոեզիայի մեջ, քանի որ նա՝ Հովհաննես Սարկավագը, «Արվեստը, ուրեմն և բանաստեղծությունը, նմանողության էր համարում բնության և բնականն ամենից բարձրն ու մաքուրը, ուստի և բանաստեղծն աշխատի նմանվել բնությանը»*[50]*:*

*Բացի գաղափարականից, այս քերթվածը հատկապես հետաքրքիր է նաև այն առումով, որ պարունակում է կենսագրական որոշ տվյալներ Հովհաննես Սարկավագի մասին, որոնք մենք մասնակիո-*

---

[43] Կիրակոս, 105:

[44] Շարական, 580-581:

[45] **Տաշեան**, Յուցակ, 799, 779, հմմտ. **Ոսկեան**, Նշ. աշխ., 48-49:

[46] **Ոսկեան**, Նշ. աշխ., 43-44:

[47] **Գ. Զ[արբհանալեան]**, Նշ. աշխ., 613, **Ե. [Տէր-Մինասեանց]**, Նշ. աշխ., 341, **Ոսկեան**, Նշ. աշխ., 49:

[48] Վիեննայի Մխիթարյանների միաբանության ձեռ. Ձօր 797, (**Ոսկեան**, Նշ. աշխ., 44):

[49] Հրատարակված է **Ղ. Ալիշանի** կողմից այդ նույն վերնագրով Վենետիկի Մխիթարյանների միաբանության «Բազմավէպ»-ում 1847 թ., էջ 221-225:

[50] **Մանուկ Աբեղյան**, Համառոտություն հայ ժողովրդական վեպի յեվ պատմության, Յերեվան, 1923, էջ 44-45:

*րեն օգտագործում ենք 5-րդ գլխում: Հետաքրքիր են նաև որոշ տողեր, որտեղ հեղինակը իրեն համարում է իմաստասեր և բանաստեղծ*[51]*: Իսկ առհասարակ Հովհաննեսի՝ հայ գրականության պատմության մեջ կատարած քայլը մեզ ներկայանում է իբրև մի տեսակ ելք այն ժամանակվա պոեզիայի և բնափիլիսոփայության համար:*

## ՏԻԵԶԵՐԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

*Տիեզերագիտական աշխատություններով հայ գրականության մեջ մինչև Հովհաննես Սարկավագը ճանաչված էր միայն մեկ հեղինակ՝* Անանիա Շիրակացի *ն (է. դ.)՝ հեղինակ բազմաթիվ տիեզերագիտական, տիեզերագրական և տոմարագիտական երկերի*[52]*: Ինչպես երևում է՝* Անանիա Շիրակացու *ազդեցությամբ է ԺԱ.ԺԲ. դդ. գրվել թեև փոքր, բայց բավականին ուշագրավ մի աշխատանք: Նույն թեմային է անդրադարձել նաև* Անանիան՝ *«Վասն շարժման, ասացեալ Սարկաւագ վարդապետին»*[53]*: Այդ գրվածքը կարելի է համարել մի տեսակ անցման շրջան այն սքանչելի երկի համար, որը պատկանում է ԺԳ-ԺԴ. դարերի անվանի գործչին՝ փիլիսոփա, բանաստեղծ և աստղագետ* Յովհաննես Երզնկացուն *(*Պլուզ *կոչեցյալ) հետևյալ վերնագրով՝ «Վիպասանութիւն զերկնային մարմնոց շարժմանէ, զլուսաւորացն՝ որ ի նմա, և զհաստատութենէ երկրի»*[54]*, այդ ստեղծագործությունը շարադրվել է Տփղիսում, որպես Հաղբատի հակառակորդ հայտնի «Պարոն Ումեկի եկեղեցում», հետագայում, այսպես կոչված, «Կաթուղիկե», այժմ սուրբ Գևորգ, որ գտնվում է Թաթարի հրապարակում, 1284 թ.*[55]*:*

[51] Ալիշան.- «Բազմավէպ», 1847, էջ 221, 222:

[52] Օրինակ՝ «Յաղագս երկնի», «Յաղագս երկրի», «Յաղագս ծովու», «Յաղագս երկնային զարդուց», «Յաղագս որ ի մէջ երկնի և երկրի շարժմունք», «Յաղագս կաթին ծրոյ», «Յաղագս հիւսիսային աստեղաց», «Յաղագս լուսնի», «Յաղագս արեգական», «Յաղագս կենդանատեսակաց», «Յաղագս աստղաբաշխութեան», ևն. տե՛ս Անանիայի Շիրակունւոյ Մնացորդք բանից, ի լոյս էած **Ք. Պ[ատկանեան]**, ՍՊբ., 1877, էջ 34-67:

[53] Հրատարակված է **Հ. Ոսկյանի** կողմից. **Ոսկեան**, նշ. աշխ., 53-55:

[54] Տե՛ս Տետրակ. համառօտ և իմաստախոհ բանիւք արարեալ հոգելից և իմաստուն վարդապետին Յօհաննիսի Երզնկացւոյ, որ և ասի Ծործորեցի, ևն., Ն. Նախիջևան, 1792 = Космографический трактат Иоанна Тцорзореци (XIII в.).- «Переводы и статьи **Эмина** по духовной армянской литературе» etc., Москва 1897, стр. 256-284, հմմտ, Всеобщая История Вардана Великого, пер. **Н. Эмина**, Москва, 1861, прил. 3, стр. 4-31:

[55] Տե՛ս Տետրակ համառօտ և լի. ևն., էջ IX-X (առաջաբան): Հմմտ. **И. Орбели**, Фрагмент крестного камня с арабской надписью в Тифлисе.- ХВ, т. VI, 1917, стр. 198-199, **Л. Меликсет-Беков**, О междоусобице в Тифлисе в 1197 году etc..- Изв. КИАИ, т. III, стр. 59. Նույնի՝ Тифлис, его основание и краткий исторический очерк, Тфл.,

## ՏՈՄԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Հովհաննես Սարկավագը շատ մեծ ներդրում ունի հայ տոմարագիտության մեջ, ինչը հավաստում է նաև* Կիրակոսը[56]*: 1084 թվականից նրա կազմած տոմարը կոչվում է Սարկաւագադիր: Հովհաննեսի ռեֆորմը հիմնականում արտահայտվում է նրանում, որ նրա ձեռամբ ընդունվում է անշարժ տոմարը շարժական տարով, այն դեպքում, երբ մինչ այդ բոլոր տարիները հաշվվում էին 365 օր, մինչդեռ այդ հաշվարկով շարժական տոների օրերը սխալվելու տեղիք էին տալիս*[57]*:*

*Այս ոլորտում Հովհաննես Սարկավագից հայտնի են հետևյալ աշխատությունները.*

*1. «Յովհաննու քահանայի և իմաստասիրի՝ Յաղագս ամսոյ Հայոց և տօնից և յաղագս չորեքտասանորդաց լուսնոյ Զատկի»*[58]*:*

*2. «Յովհաննու քահանայի և իմաստասիրի, որ մականուանի Սարկաւագ, ասացեալ յառաջ քան զգրութիւն իւրոյ տումարին»*[59]*:*

*3. Մեկնութիւն տոմարի և յաղագս անկիւնաւոր թուոյ*[60]*:*

*4. Բանք վասն հինգհարիւրից*[61]*:*

*5. Տոմար ժամանակաց և թուականաց*[62]*:*

## ՊԱՏՄԱԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ

*1. Հովհաննես Սարկավագին է պատկանում «Ժամանակագրութիւնը»՝ սկսած «Ադամից»: Երկը հայտնի է «Սարկաւագ վարդապե-*

1925, стр. 20: Այս Յովհաննեսի գերեզմանը Յաղբատում են ցույց տալիս (**Յովհ. Դրիմեցի**, 41, **Երզնկեան**, 53, **Լալայեան**, 408), բայց այս դրույթը, ինչպես մենք պարզել ենք (տե՛ս այս գրքի մասն առաջին, Գլ. Ե., ծնթ. 53:

[56] **Կիրակոս**, 104:

[57] Տե՛ս **Բարսեղ Սարգիսեան**, Ագաթանգեղոս և իւր բազմադարեան գաղտնիքն, Վն., 1890, էջ 353-355, **Գիւտ Աղանեանց**, Տոմար և տօնացոյց Յայաստանեայց սուրբ եկեղեցւոյ, Բ. տպ., Տփղ., 1894, էջ 25-26, **Օրմանեան**, Ազգապատում, էջ 1306-1309 (§§ 899-900), **F. K. Ginzel**, Handbuch der Mathematishen und technischen Chronologie. Das Zeitrechnungeswesen der Volker, III Band, Leipzig, 1914, § 261 (Zeitrechnung der Armenier), S. 319 (Die kleine Ara des Johannes Diaconus):

[58] **Բարսեղ Սարգիսեան**, Ագաթանգեղոս և իւր բազմադարեան գաղտնիքն, էջ 353-354, **Ոսկեան**, նշ. աշխ., 45:

[59] Յրատարակված է **Բարսեղ Սարգիսեան**, նշ. աշխ., 354-355, հմմտ. **Ոսկեան**, նշ. աշխ., 45:

[60] **Ալիշան**.- «Բազմավէպ», 1847, էջ 219, **Գ. Զ[արբհանալեան]**, նշ. աշխ., 613, **Ոսկեան**, նշ. աշխ., 45:

[61] **Գ. Զ[արբհանալեան]**, նշ. աշխ., 613, **Ոսկեան**, նշ. աշխ., 45-46:

[62] **Գ. Զ[արբհանալեան]**, նշ. աշխ., 613, **Ոսկեան**, նշ. աշխ., 46:

*տին է բանս» վերնագրով, հրատարակել է Հ.* Ոսկյանը[63], *ներկայացնում է Անանիա Շիրակացու «Ժամանակագրության» կրկնությունը, ուստի հասկանալի է, թե Զ-Է. դարերի միջնամասում, այսինքն՝ Հայոց և վրաց եկեղեցիների բաժանման ժամանակ ինչու այն չէր կարող անտեսվել: Այս «Ժամանակագրությունը» մեզ համար հատկապես հետաքրքիր է իր վերջին մասով, որտեղ ներկայացված են համառոտ տեղեկություններ հայ-վրացական եկեղեցիների հակամարտության մասին.*

*«Եւ յՀԳ.*[64] *<sic> թուականին զկնի տէր Աբրահամու ի ԽԳ.*[65] *ամին տէր Յովանիսի բնաւին ի բաց կացին Վիրք ի Հայոց միաբանութենէ և հաւանեալ Քաղկեդոնի՝ զորոմն ընկալեալ ի Կ[ի]ւրիոնէ, զոր ԾԺԳ.*[66] *ամ ընդ մեզ նզովեցին զՔաղկեդոնի ժողովն»*[67]*:*

*2. Հովհաննես Սարկավագը, ամենայն հավանականությամբ, գրել է նաև սելջուկների «Պատմությունը»՝ մինչ Մելիքշահը (1072-1092). այդ մասին վկայում են* Սամուել Անեցին *և* Կիրակոս Գանձակեցին, *որը, ցավոք, առայժմ չի հայտնաբերվել*[68]*: Ալիշանը և նրանից հետո Զարբհանալյանը ենթադրում են, որ այդ «Պատմությունը» բաղկացած է եղել երկու գրքից, ընդ որում՝ առաջինը հավանաբար բովանդակել է սելջուկների պատմությունը մինչ Ալփասլանը, իսկ երկրորդը՝ Ալփասլանի որդու՝ Մելիքշահի կյանքը և մահը*[69]*:*

*3. Երուսաղեմի Հայոց պատրիարքարանի մի ձեռագրում, ինչպես գրում է Հ.* Ոսկեանը[70], *կարդում ենք. «յԵկեղեցական պատմութենէ, զոր երկրորդեալ է Սարկաւագ վարդապետի»: Նման երկեր, որ չա-*

---

[63] **Ոսկեան**, նշ. աշխ., 46-48, հմմտ. համառոտ նկարագրություն. **Տաշեան**, Ցուցակ 172:

[64] Այսինքն՝ 73 [=551+73] =624 թ. Աբրահամ [Աղբաթանացի] որպես կաթողիկոս հայտնի է մոտավորապես 607-615 թվականներին:

[65] Այսինքն՝ 43 [=551+43] = 594 թ. Յովհան [Բագարանցի] հայտնի է Բյուզանդական Հայաստանի հակաթոռ կաթողիկոս, մոտավորապես 590-611 թվականներին:

[66] Այս դեպքում թվերը հաշվարկված են Դվինի ժողովից, որի թիվը ավանդաբար ընդունված 494 թվականի փոխարեն այժմ ընդունվում է 506 թվականը (գրականություն այս մասին տե՛ս այս գրքի մասն առաջին, Գլ. Է., է. 2): Ահա թե ինչու ճԺԴ. - 114. մենք պետք է հաշվարկենք այսպես. 506+114 = 620 (մինչդեռ ավանդական ժամանակագրության վրա հենվելով՝ 494+114 = 608):

[67] **Ոսկեան**. նշ. աշխ., 48:

[68] **Ալիշան**, Յուշիկք, Բ. 300-305: **Գ. Զ[արբհանալեան]**, նշ. աշխ., 609-611, **Ոսկեան**, նշ. աշխ., 37-41:

[69] **Ալիշան**, նշ. աշխ., 301, **Գ. Զ[արբհանալեան]**, նշ. աշխ., 609, **Ե. [Տէր-Մինասեանց]**, նշ. աշխ., 342. հմմտ. **Ոսկեան**, նշ. աշխ., 38-39:

[70] **Ոսկեան**, նշ. աշխ., 41 (ձեռ. Յ[որ] 384):

*բաղդրած լիներ Հովհաննես Սարկավագը, նրա ձեռագրերում դեռևս չեն հայտնաբերվել, ահա ինչու, ենթադրվում է, որ, թերևս, [հատվածը] եկեղեցիական պատմությունից Հովհաննեսը միայն «կրկնել է» (և ոչ թե շարադրել), ուրեմն՝ պետք է ընկալվի իբրև նրա «Ընդդեմ երկաբնակաց» ընդարձակ աշխատության գլուխներից մեկը, մանավորապես հատված Եվսեբիոս Կեսարացու «Եկեղեցիական պատմություն» Ե. գրքից՝ հետևյալ վերնագրով՝ «Եվսեբիոս Կեսարացու «Եկեղեցիական պատմություն» Ե. գրքից. նրանց համար, ովքեր ի սկզբանե հետևում էին Արտեմոնի նահատակությանն ու օրինակին և ինչպես հանդգնեցին պղծել սուրբ գրքերը*[71]:

[71] Տե՛ս էջմ. թանգ. հին հավաք. ձեռ. Չմր 567 էջ 443բ-249բ: Չմմտ, այս գրքի հաջորդ Ը. գլխում առկա թվարկումը: -

# ԳԼՈՒԽ Ը.

## ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԱՐԿԱՎԱԳԻ ՋԱՏԱԳՈՎՈՒԹՅՈՒՆԸ. «ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՂՄԱՆՑ»-ԻՑ ԴՈՒՐՍ ԱՅԼ ԽՄԲԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐԻ (ՄԱՍՆԱՎՈՐԱՊԵՍ ՊՈՂՈՍ ՏԱՐՈՆԱՑՈՒ) ՋԱՏԱԳՈՎՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Հովհաննես Սարկավագի անունը առավել հռչակված է ջատագովական և դավանաբանական-վիճաբանական բնույթի աշխատություններով:*

*Եվ նրա կարևորագույն երկը այդ բնագավառում* Խոսրովիկի *(Ը. դար) և* Անանիա Սանահինեցու *(ԺԱ. դար) երկերի հետ հիմք դարձավ ԺԳ-ԺԴ. դարերի այն դասագրքի, որը հայտնի է իբրև* Հովհաննես Երզնկացու *ժողովածու: Այն կազմված է մեկը մյուսից անկախ երկու մասերից հետևյալ վերնագրերով՝ 1) «Յովհաննու քահանայի՝ Յաղագս Նշանակ հաւատոյ Նիկէական ՅԺԸ.-իցն»*[1]*, և 2) «Նորին Յովհաննու քահանայի՝ ի խնդրոյ Գագկայ կրօնաւորի՝ Յաղագս քաղկեդոնականացն»*[2]*:*

*Որ այս ստեղծագործության հեղինակ Հովհաննես քահանան և Հովհաննես Սարկավագը նույն անձնավորությունը պետք է լինեն, պարզ երևում է* Հովհաննես Երզնկացու *ժողովածուի առաջաբանից, որտեղ* Խոսրովիկից *և* Անանիա Սանահինեցուց[3] *հետո հիշատակված է.* «երրորդ. *զՍարկաւագ վարդապետին և զմեծն իմաստասիրի զՀաղբատեցւոյ»*[4]*, իսկ այդ տեղը Սահակ Գողթնեցու ձեռագրում կար-*

---

[1] **Աղանեանց**.- «Արձագանք», 1888 թ., էջ 63, **Տաշեան**, Մատ. մանր ուսումն., 57, **Գ. Յովսէփեան**, Խոսրովիկ, 25, **Ոսկեան**, 55.- Էջմ. թանգ. հին հավաք. ձեռ. Հմր 567 (=518), էջ 174ա-187բ, նոր հավաք. № 1110 [=6453], էջ 131բ և հջրդ, Հմր 929 [5618], Գիտությունների Ակադեմիայի Ասիայի թանգարանի ձեռ. Հմր [ИВ, B 95], 1-217:

[2] **Աղանեանց**.- «Արձագանք», 1888 թ., էջ 63, **Տաշեան**, նշ. աշխ.,. նույն տեղում, **Ոսկեան**, նույն տեղում, Էջմ. թանգ. հին հավաք. ձեռ. Հմր 567 (=518), էջ 187բ-295բ:

[3] Եվ ոչ թե (**Շիրակացւոյ**), ինչպես սխալմամբ ասում է Հ. **Ոսկյանը** (**Ոսկեան**, նույն տեղում):

[4] **Աղանեանց**.- «Արձագանք», 1888 թ., էջ 63-64, **Միաբան** (**Գ. Տէր-Մկրտչեան**), Անանիա Նարեկացի.- Ա, 1892, էջ 279-280, **Տաշեան**, Մատ. մանր ուսումն, 58-59, **Գ. Յովսէփեան**, Խոսրովիկ, Նախադրութիւն գրոցս:

*դացվում է «երրորդ՝ Յովհաննէս վարդապետի Սարկաւագ կոչեցելոյ Հախպատեցւոյ»[5]: Նմանապես երկրորդ աշխատությունը որոշ ձեռագրերում հայտնի է հետևյալ վերնագրով՝ «Յովհաննէս վարդապետի մականուն Սարկաւագի՝ Ընդդէմ քաղկեդոնականացն»[6]:*

*Այս երկու աշխատությունները ձեռագրերում կա՛մ միասին են հանդիպում, կա՛մ առանձին-առանձին: Նրանք տարբեր ծավալի են, առաջինը համեմատաբար փոքր[7] է և կազմված է երեք մասից, «[Յաղագս Հօր]», «Յաղագս որդ[ւ]ոյ» և «Յաղագս Հոգ[ւ]ոյն Սրբոյ[8]»: Մինչդեռ երկրորդն ավելի ծավալուն է և բաղկացած է բազմաթիվ գլուխներից. յուրաքանչյուր գլուխ ամբողջական երկասիրություն է և ներկայացված են հետևյալ հերթականությամբ[9].*

*— Վասն մի և ոչ երկու ասել զՏէր մեր Յիսուս Քրիստոս:*
*— Վասն տօնից միաբանութեամբ և բաժանման:*
*— Վասն յիշատակաց վկայից ճշմարտութեան:*
*— Վասն մկրտութեան, և թէ զիարդ իցէ:*
*— Վասն քահանայութեան և քահանայից[10]:*
*— Վասն աշխարհականացն ժողովրդոց:*
*— Վասն տաճարաց աղօթարանաց, որ է և եկեղեցիք:*
*— Վասն վկա[յա]րանացն սրբոց և անուանելոցն միայն:*
*— Վասն սրբոյ խաչին:*
*— Ի մի Տէր մեր Յիսուս Քրիստոս:*
*— Նորին [Յովհաննու քահանայի՝] Վասն մասանց պատուոյ, յորում և վասն պատկերաց դարձեալ[11]:*

---

[5] Տե՛ս էջմ. թանգ. նոր հավաք. ձեռ. Հմր 1110 [6453], էջ 1ա:

[6] Տե՛ս էջմ. թանգ. հին հավաք. ձեռ. Հմր 568 (=519) էջ 56բ և հջրդ. (հատվածաբար է), Վատիկանի Cod. Arm. VII (Յ. **Միսքճեան**, Ցուցակ.- ՀԱ, 1892, էջ 340):

[7] Օրինակ՝ էջմ. թանգ. հին հավաք. ձեռ. Հմր 567 (=518), էջ 174ա-187բ:

[8] Տե՛ս նույն ձեռ., էջ 174ա-175բ, 175բ-184բ, 184բ-187բ:

[9] **Նույն տեղում**, էջ 187բ-295բ:

[10] Այս երկը, ինչպես հավաստիացնում է **Գ. Յովսեփյանը** (Խոսրովիկ, 56), տարբերվում է նույն վերնագրով հայտնի այլ ավելի ծավալուն երկից՝ «Յաղագս քահանայութեան և քահանայից և գլխոց նոցին., (Սոփերք Հայկականք, Գ., 1853, էջ 9-79), տե՛ս նախորդ գլխում, ճգնավորություն բաժնում:

[11] Այս գրվածքը իբրև առանձին հետազոտություն են ներկայացրել **Գ. Զարբհանալյանը**՝ «Հայկական հին դպրութեան պատմութիւն», 613, **Հ. Տաշյանը** (Ցուցակ, 767) և **Հ. Ոսկյանը՝ Ոսկեան**, 52: Եվ որ այն իսկապես գոյություն ուներ նաև առանձին, վկայում է Երուսաղեմի հայոց պատրիարքության մատենադարանի՝ 1290 թվականին գրված Հմր № 1272 ձեռագիրը, էջ 381ա-396բ: Այն ժամանակակից հայերեն ամբողջական թարգմանությամբ հրատարակված է՝ Արիստակես Սեդրակյան, Հայաստանեայց եկեղեցու պատկերահագութիւնը գրքում, ՍՊբ., 1904, էջ 131-139 (134-139), հին հրատ. տե՛ս **Գ. Զարբհանալեան**, Յաղագս բարեխօսու-

*— Նորին Յովհաննու քահանայի՝ Առ որս պիղծ զմիս վարկանեն և զանձինս ոչ արգելուն*[12]*:*

*— Նորին՝ Յաղագս եթէ ոչ է արժան ըստ մասին բաժանել զԱստուածայնոց ձայնս ի վերայ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և ոչ զաւ ի յինքենէ գործս կամ եկրս:*

*— Յաղագս եթէ ոք յետ միանալոյն երկուս ասեն բնութիւնս ի Քրիստոսի, հարկ է հետևէին նեստորկանաց մտաց:*

*— Թէ զիարդ չարչարեալ Բանն մարմին եղեալ և անչարչարելի մնացեալ, և կամ որպէս դարձեալ ձայնակցեն չարափառքն:*

*— Յարացոյցք յաղագս մի զՔրիստոս ասելոյ և անբաժանելի:*

*— Նորին [Յովհաննու քահանայի]՝ Հակաբանութիւն հնադիտական ընդդէմ անգիտակաց ոմանց յիրս գիտութեան, որք տայ յօդ*[13*] *ճառիւք <sic> հավանեցուցին զոմանս ի վայրագաց և պարզ մտաց հաւատալ անհաւաստի խուրեանց կարծեաց:*

*— Եւսեբիոս Կեսարու յԵկեղեցւոյ Պատմութենէ, ի հինգերորդ դպրութենէ՝ Վասն այնոցիկ, որ եղեն ի սկզբանէ յաղանդոյ անտի Արտեմոնի, և որով օրինակաւ էին նոքա, և թէ որպէս համարձակեցան նոքա եղծանել զգիրս սուրբս:*

*— Նորին [Յովհաննու քահանայի]՝ Յաղագս բնութեան Բանի և միաւորութեան:*

*— Նորին՝ Եթէ զիարդ ասի մի բնութիւն Բանին Աստուծոյ մարմնացելոյ, ըստ ճշմարտութեան:*

*— Յաղագս կամացն:*

*— Յաղագս ներգործութեան:*

*— Նորին՝ Յայտարարութիւն զանազան հերձուածոց յայլ և յայլ ժամանակս՝ յարանց բղջախոհաց:*

*— Նորին՝ դարձեալ:*

*— Հինգերորդ գլուխ հայհոյութեան թղթոյն Լեւոնայ:*

*— Նեստորի հերձուածողի վեցերորդ հայհոյութիւն:*

*— Նորին Նեստորի՝ յԵրրորդ մատենէն, ի տասներորդ գլխոյն:*

---

թեան սրբոց, ՎՆ., 1852, յաւելուած՝ 343-359:

[12] Երկը ձեռագրերում գոյություն ունի նաև առանձին, այսպիսին է, օրինակ, Էջմիածնի թանգարանի հին հավաքածուի Ձեռ 777 (= 526 [= 513])-ը, ժԳ. դարի մագաղաթե ձեռագիր, խառնիխուռն (տե՛ս **Գ. Յովսէփեան**, Խոսրովիկ, 53, հմմտ. **Յ. Կարինեանց**, Ցուցակ, 32): Հավանաբար հենց դրա համար են այս երկը իբրև առանձին գործ ներկայացրել նաև Ե. Տեր-Մինասյանը (**Եր. ս.**, Հաղբատ և Սանահին վանքերը, 342) և Հ. **Ոսկյանը** (**Ոսկեան**, 59) և դրանից, անշուշտ, օգտվել է Ալավկա Որդի Դավիթը իր «Կանոնագիրքը» կազմելիս. (այդ մասին տե՛ս ստորև՝ Գլ. Թ., ծնթ. 25-26):

[13*] Ճիշտը՝ «ստայօդ» («տայ յօդ»ի փխ.) – Գ. Տ-Վ.:

*– Թեոդորոս Հերձուածողի ի Հակաճառութենէ Բժ.երորդ <այսինքն՝2x10=ի 20>[14*] նզովիցն Հա[յ]հոյութիւնք:*

*– Ի սահմանէ ժողովոյն Քաղկեդովնի հայհոյութիւնք:*

*– Թէոդորիտեա[յ] Հերձուածողի հայհոյութիւնք:*

*– Եւ յետ այլոց:*

*– Նորին Թէոդորիտեա[յ]:*

*– Կայութիւնք[15*] սրբոցն, եթէ մի բնութենէ[16**] Բանին Աստուծոյ մարմնացելոյ երանելւոյն Յուղեա[յ], եպիսկոպոսապետին Հռովմա[յ], յառ Դիոնոսիսն թղթոյն:*

*– Նորին:*

*– Երանել[ւ]ոյն Աթանասի, հայրապետին Աղէքսանդրի:*

*– Երանել[ւ]ոյն Յովհաննու Ոսկեբերանի:*

*– Երանել[ւ]ոյն Տիմոթէոսի հայրապետի Աղեքսանդրի ի Հակաճառութենէ խոտեալ տումարի ժանտին Լէովնի:*

*– Սրբոյն Աթանասի:*

*Նորին՝ Ի տօնականէ երկրորդում Դիոկղիտիանոսի:*

*– Նորին՝ Ի Ե.երրորդ տօնականէն:*

*– Նորին՝ Ի [յ]աստուածերորդ* <sic>[17***] *տօնականէն:*

*– Երանել[ւոյն] Գրիգորի Նէոկեսարեա[յ] եպիսկոպոսի:*

*– Գրիգորի Աստուածաբանի:*

*– Նորին՝ Յաղագս առաքինութեան Բանին:*

*– Երանել[ւ]ոյն Կիւրղի յառ Նեստորիոս Թղթոյն:*

*«Ընդդեմ երկաբնակաց» գրքի վերլուծության կապակցությամբ անհրաժեշտ է ուշադրություն դարձնել գլուխներից մեկին, որը վերաբերում է պատկերապաշտության խնդիրներին («Վասն մասանց պատուոյ, յորում և վասն պատկերաց դարձեալ»), այն առումով, որ նրան կցված է հետևյալ հիշատակարանը. «Աղաչեմ զատացող բանից՝ զերանելլի վարդապետն Սարկաւագն և զհայեցողն ի նմանէ յիշեցէ՛ք»[18]: Նմանապես այդ նույն աշխատության մի մասը «Առ որս պիղծ զմիս վարկանեն և զանձինս ոչ արգելուն», որը ներառված է Հովհաննես Սարկավագի ժողովածուում, կցել է չափազանց հետաքրքիր մի գրություն, որտեղ, ի միջի այլոց, կարդացվում է.*

[14*] Սխալ է, համառոտումը պէտք է կարդալ՝ «երկոտասաներորդ», այսինքն՝ «տասներկուերորդ» – Գ. Տ-Վ.:

[15*] «[Վ]կայութիւնք» - Գ. Տ-Վ.:

[16**] «Բնութիւն է» - Գ. Տ-Վ.:

[17***] Կարդալի՝ «ի Աժ.երորդ»՝ տասնմէկերորդ – Գ. Տ-Վ.:

[18] Էջմ. թանգ. հին հավաք. ձեռ. № 567 (=518), էջ 195բ. հմմտ. Գ. Յովսէփեան, Խուրովիկ, 57:

*«Այս բանք քերդողականք*[19] *ասացեալ մեծի պուէտիկոսին Սարկաւագին, որ ի տիեզերահռչակ ուխտին Հաղբատ գտի ես՝ նուաստ ումն ի մանկունս եկեղեցւոյ»*[20]*:*

*Մինչդեռ այս մակագրությունը* Հովհաննես Երզնկացու *ժողովածուի առաջաբանում զետեղված տեղեկության հետ միասին ի վերջո հաստատում են, որ Հովհաննես քահանայի անունով մեզ հասած՝ «Ընդդեմ երկաբնակաց» երկը պատկանում է Հովհաննես Սարկավագ վարդապետին:*

*Այդ իսկ պատճառով, ո՛չ* Ասողիկը, *ո՛չ* Սամուել Անեցին Ուխտանեսի *գրածների մասին տեղեկություն չունեն:* Ներսես Ակինյանը *զարմացած ասում է. «Վրաց բաժանմամբ զբաղած են ԺԱ-ԺԲ. դարուն նաև Անանիա Սանահնեցի և Սարկավագ վրդ., որոնց գրուածներն սակայն ինձ մատչելի չըլլալով, աղբիւրներու մասին չեմ կրնար բան մ'ըսել»*[21]*: Այսպիսով, գիտական գրականության մեջ հարց դրվեց՝ ի հայտ բերել Անանիա Սանահնեցու և Հովհաննես Սարկավագ վարդապետի համապատասխան աշխատությունները, ինչը և մեծապես հետաքրքրեց մեզ: Հայոց ձեռագրերի տարբեր հավաքածուների բազմաթիվ քարտարաններում այս մասին ոչինչ չկար: Ահա ինչու, մենք ստիպված էինք խորամուխ լինել բուն ձեռագրերի մեջ. Էջմիածնի մատենադարանի և Միութենական Գիտությունների Ակադեմիայի Ասիական Թանգարանի ձեռագրերին ուղղակիորեն ծանոթանալիս հանգեցինք եզրակացության, որ դեռևս 1910 թ.* Ներսես Ակինյանի *արտահայտած մտքերը արդարացվեցին միայն Անանիա Սանահնեցուն վերաբերող մասով: Եվ դրանից հետո, երբ մենք Անանիա Սանահնեցու «Բան հակաճառութեան ընդդեմ երկաբնակաց» երկում հայ և վրաց եկեղեցիների պառակտման վերաբերյալ մի քանի գլուխ գոյություն ունենալու փաստը վկայեցինք, չենք կարող չբարձրաձայնել* Ն. Ակինյանի՝ *Հովհաննես Սարկավագի մասին հայտնած կարծիքի անարդարացի լինելը, որովհետև վերջինս ո՛չ «Ընդդեմ երկաբնակաց» աշխատության մեջ, ո՛չ նման մեկ այլ*

---

[19] Էջմ. թանգ. հին հավաք. ձեռ. Հմր 777 (=513), էջ 51բ. հմմտ. **Գ. Յովսէփեան**, 53-54. Նույնի՝ Գրչութեան արուեստը հին Հայոց մէջ, մասն Գ., Վաղ., 1913, տախտակ 112, հմմտ. էջ 42:

[20] Հայերեն քերդող resp. քերթող եզրույթը, որ համարժեք է հունարեն ποιητής, γραμματικός, տե՛ս **Н. Адонц**, Дионисий фракиский и армянские толкователи [BAG IV], Птр. 1915, стр. LXXIII; **Մեսրոպ Մաքսուդյանցի** գրախոսությունը այս գրքի մասին - Ա 1917, էջ 830, ծնթ. 1, հմմտ. Արսեն կաթողիկոսի աշխատությունը (Թ. Ժորդանիա, «Ժամանակագրություններ», I, 330 և ծնթ. 110):

[21] **Ն. Ակինեան**, Կիւրիոն կաթողիկոս Վրաց, 70:

ստեղծագործության մեջ բոլորովին չի խոսում «Հայերից վրացիների բաժանման մասին», եթե, իհարկե, նկատի չառնենք այն մի քանի տողերը, որ կան նրա «ժամանակագրության մեջ»:

Ինչպես Անանիա Սանահնեցու, այնպես էլ Հովհաննես Սարկավագի երկերում բերված է նախորդ շրջանի գրականությունը, ի միջի այլոց՝ նաև Տիմոթեոս Կուզի «Հակաճառությունը», որը, ի դեպ, հիմք է հայերեն գրված ամեն կարգի դավանաբանական-վիճաբանական երկերի»: Բացի դրանից, ինչպես հաստատել է Գարեգին Հովսեփյանը, Հովհաննես Սարկավագը բավականին օգտվել է Խոսրովիկից, որի որոշ կարծիքներ պարզապես կրկնում է:

Ինչ վերաբերում է հարցին, թե երբ է գրվել Հովհաննեսի աշխատությունը, որոշակի ոչինչ ասել հնարավոր չէ. կարելի է միայն ենթադրել, որ գուցե գրված լինի 1123-1125 թվականների միջև՝ կապված հայ-վրացական եկեղեցական հակամարտության հետ:

Վերջում անհրաժեշտ է նշել, որ Հովհաննես Սարկավագի անունով հայտնի է նաև ջատագովական բովանդակությամբ մի աշխատություն հետևյալ վերնագրով՝ «Սարկավագ վարդապետի բանք ընդդէմ այնոցիկ, որք վասն բաժակին մոլին», տրբրկ՝ «Յովհան Սարկավագ Վարդապետի վասն բաժակի պատարագին»[22]:

Արշակ Տեր-Միքելյանը հիշատակում է Փարիզի մի ձեռագիր՝ Հովհաննեսի երկի վերնագրի հետևյալ փոփոխակով՝ «Սարկաւագ Վարդապետի ճառ ընդդեմ նեստորականաց»[23]: Իսկ Յ. Ոսկյանը[24] հիշատակում է իբրև թե Սարկավագին պատկանող անանուն երկ, վերնագիրը՝ «Յաղագս բաղարջին[25]»:

* * *

Հովհաննես Սարկավագի վաստակը հայ դավանաբանական-վիճաբանական և ջատագովական գրականության մեջ ինչպես հարկն է գնահատված չի լինի, եթե հաշվի չառնենք նաև այն պայմանները, որոնք առաջ բերեցին ոչ միայն Հովհաննես Սարկավագի, այլև նրա նախորդի՝ Անանիա Սանահնեցու պայքարը քաղկեդոնականների կամ երկաբնակների (հույների և վրացիների) դեմ: Այդ պայման-

---

[22] Յ. Կարինեանց, 33, 35, Եր., ս. Ռշ. աշխ., 341, Ոսկեան, 58:

[23] Սամուէլ, 292, ծնթ. 40:

[24] Ոսկեան, 59:

[25] «Բաղարջ» տերմինի մասին տե՛ս Н. Марр, Предварительный отчет о работах на Синае и в Иерусалиме, в поездку 1902 г. [Сообщ. И. Прав. Палест. О-ва, т.XIV, ч.II], стр.17, հմմտ.. Изв. Кавк. отд. И. Моск. Арх. О-ва, в. III, стр. 25 (прот. № 38):

ները նոր չէին. դրանք ժամանակ առ ժամանակ ի հայտ էին գալիս՝ հենց որ հայերի բնակության վայրերում հույները և վրացիները ամեն քայլափոխի քաղկեդոնականություն էին տարածում, ինչը, բնականաբար, հաճախ ընդդիմություն էր առաջ բերում, և դա, առաջին հերթին, հայ հոգևորականների շրջանակներում, որի ծայրահեղ, պահպանողականորեն մտածող ներկայացուցիչները կենտրոնացել էին Հաղբատում և Սանահնում:

Բայց ԺԱ-ԺԲ. դարերում միայն Անանիա Սանահնեցին և Հովհաննես Սարկավագը չէին հույների և վրացիների հարձակումներից ազգային (հակաքաղկեդոնական) եկեղեցին պաշտպանում. Հաղբատ-Սանահնի առաջնորդների բարձրացրած ձայնը արձագանք էր գտնում նաև այլ վայրերում, մասնավորապես այնտեղ, որտեղ իր գործունեությունն էր շարունակում Հովհաննես Սարկավագի ժամանակակից և նրանից բոլորովին անկախ մտածող Պողոս Տարոնացին:

Պողոս Տարոնացին Սասունին մոտ գտնվող Ս. Ղազար վանքի վանահայր էր, թեև չի անդամակցել, այսպես կոչված, «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» խմբակին, մասնավորապես՝ Հաղբատ-Սանահնի գիտագրական խմբին, և որևէ կապ չի ունեցել նրանց հետ, բայց իր ողջ էությամբ և գործունեությամբ պակաս հաստատակամությամբ և եռանդով չի ծառայել հակաքաղկեդոնական աշխարհայացքի պաշտպանության գաղափարին, քան, ասենք, «Հյուսիսային կողմանց» հայ վարդապետները:

Սովորաբար այս անձնավորությանը համարում են ԺԱ. դարի գործիչ, սակայն դա իրականությանը չի համապատասխանում. նա, ինչպես վկայում է Մատթեոս Ուռհայեցին վախճանվել է 572=1123 թ. և թաղված է «ի վանս Ղազարու, մերձ ի Սասուն». նույն Մատթեոս Ուռհայեցին նրան անվանում է «երկրորդ լուսաւորիչ երեւեալ տանս Հայոց և վէմ ադամանդեայ ընդդէմ հերձուածողաց»[26]:

Պողոս Տարոնացուն են պատկանում կամ թե նրան են վերագրվում ջատագովական, դավանաբանական-վիճաբանական հետևյալ թղթերը.

1. «Թուղթ երանելւոյն Պօղոսի Տարօնացւոյ, յաղթօղ ախոյեան վարդապետի՝ Ընդդէմ Թէոփիստեայ հոռոմ փիլիսոփային»[27]:

---

[26] Մատթէոս, 356, 355:

[27] Յենց այս խորագրով 1752 թվականին հրատարակվել է Կոստանդնուպոլսում. ունի ընդամենը 357 էջ. 1-322՝ բնագիրն է, 323-324-ը՝ «Զեկուցումն առ բարեսէր ընթերցօղսդ վասն հեղինակի գրքոյս», 325-355-ը՝ «Ցանկ եւ ցուցակ նշանաւոր

*2. «Պաւղոսի Տարօնացւոյ եռամեծի և բանիբուն ուղղափառ վարդապետի ասացեալ՝ Ընդդէմ երկաբնակաց ժողովոյն Քաղկեդոնի և այլ չարափառացն՝ հերձուածողացն»*[28]:

*3. «Գործնական և արդիւնական վարդապետին Հայոց մեծին Պաւղոսի Ղազարու վանից վանականի՝ Բացայայտութիւն կարգի ժամուց աղաւթից»:*

*4. «Նորին Պաւղոս վարդապետի՝ Յաղագս եկեղեցւոյ կարգաց ցոյցք»:*

*5. «Յաղագս քառասնորդաց պահոց՝ Պաւղոսի վարդապետի Ղազարու վանիցն վանականի բացայայտեալ»:*

*6. «Յաղագս առաջաւորացն պահոց՝ Նորին Պաւղոսի ասացեալ»*[29]:

*7. Նրան է պատկանում նաև մի փոքրիկ թուղթ, որը ներկայացնում է Մովսես Կաղականտվացու կամ Ուտիեցու «Պատմութիւն Աղուանից աշխարհի» աշխատության երկրորդ մասի 47-րդ գլխի կրկնությունը, ինչը մեզ համոզում է վերնագրերի և ներածության պարզ համեմատությունը:*

| *Պողոս Տարոնացի* | *Մովսէս Ուտիացի* |
| --- | --- |
| *[Պատմութիւն] թէ ո՞րով ժամանկաւ անիծաւ չար և անօրեն (տպըրկ.՝ անարժան) ժողովն Քաղկեդոնի և բաժանումն Վրաց ի Հայոց:* | *Խորհրդածութիւն թէ որով ժամանկաւ անիծաւ ժողովն Քաղկեդոնի... և կամ բաժանումն Վրաց ի Հայոց:* |
| *Քառասներորդ երրորդ ամ էր թուականին Հոռոմոց, յորժամ լուսաւորեացն Հայք...*[30]: | *Քառասներորդ երրորդ ամ էր թուականին Հոռոմոց, յորժամ լուսաւորեացն Հայք ի հաւատս...*[31]: |

*Այս աշխատություններից ամենահետաքրքիրը առաջինն է՝*

---

իրաց սոյնոյ մատենիս», 356-357-ը՝ «Յիշատակարան տպեցման գրքոյս»:

[28] Տե՛ս **Յ. Միսքճեան**, Ցուցակ հայերէն ձեռագրաց քահանայապետական մատենադարանին Վատիկանի ի Հռովմ,- ՀԱ, 1892, էջ 340, **Տաշեան**, Ցուցակ, 578:

[29] Այս թվարկման 3-6 միավորները տե՛ս **Տաշեան**, Ցուցակ, էջ 767, 768 և 769 (վերջինում՝ 5ը և 6ը):

[30] Տե՛ս Վատիկանի ձեռ. Cod. Arm. № VII - ԺԳ. դ. - **Յ. Միսքճեան**, Ցուցակ,- ՀԱ, 1892, էջ 340, Վիեննայի Մխիթ. միաբանության ձեռ. Հմր 324. 1305 թվական - **Տաշեան**, Ցուցակ, 767-771:

[31] Մովսիսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի, Տփղ., 1913, էջ 306-307, հմմտ. Անանիա Սանահնեցու երկի հետ. տե՛ս վերը՝ այս գրքի երկրորդ մասի Գլ. Դ., ծնթ. 11-ից առաջ և հետո դրված բնագրական համեմատությունը:

*«Ընդդէմ Թէոփիստեայ», որտեղ հեղինակը, ի միջի այլոց, անցողակի անդրադառնում է հայ-վրացական եկեղեցական հակամարտության հարցին հետևյալ խոսքերով.*

*«Դարձեալ՝ Վրաց մետրապօլիտն» Գաբրիէլ տասն և հինգ եպիսկոպոսօք եկեալ յաշխարհս Հայոց՝ առ Բարդէն եպիսկոպոս[ապետ]ն, և ամենայն ուղղափառ հաւատով միաբանեալ ընդ հայրապետն մեր, նզովեաց զժողովն Քաղկեդոնի և զամենայն հաւանօղսն նորա: Եւ նզովեաց զասացօղսն երկու բնութիւն ի Քրիստոս»*[32]*:*

*Պակաս հետաքրքրիր չէ և այն մասը, որտեղ հեղինակն անդրադառնում է Քրիստոսի ծննդյան տոնին և ջանում է ապացուցել, որ «ծննդյան օրը» հունվարի վեցն է եղել, որը նրա իսկ խոսքերով՝ հավասար է հրեաների, արաբների, մակեդոնացիների, եգիպտացիների, եթովպացիների, աթենացիների, բեթանիացիների, կապադովկիացիների, վրացիների, հույների, հռոմեացիների, ասորեստանցիների և հայերի այսինչ ամսվա, այսինչ թվին, մասնավորապես վրացիների հունվար ամսվա տասնմեկին «Վրաց՝ ապանի տասն և մէկ»*[33]*:*

*Որ Պողոս Տարոնացին եղել է հայ հակաքաղկեդոնականների գլխավոր ջատագովներից մեկը, հավաստում է այն փաստը, որ նրան ճանաչում էին նաև Հայաստանից դուրս, հատկապես Հայաստանի դեմ թշնամաբար տրամադրված քաղկեդոնականների բանակում. դրանով է բացատրվում, որ նա հիշատակվում է նաև վրաց հին մատենագրության մեջ: Օրինակ՝* Անտոն *կաթողիկոսը իր «Էրիստիկայում» (տե՛ս* Պ. Կարբելովի *հրատարակությունը) մի քանի անգամ հիշատակում է նրան. մի տեղ ասում է, որ «Պողոս Տարոնացին գրքեր է գրել երկաբնակների դեմ և «Ընդդէմ Թէոփիստեայ Հռոմ փիլիսոփային» (գիրք Բ., գլուխ Դ., էջ 111), երկրորդ անգամ «Պողոս Տարոնացու կողմից ուսյալ հայոց եկեղեցին Քրիստոսի բնությունն ընդունում է երկրայնից փոխված երկնայնի» (գիրք Գ., գ. 23, էջ 601), սրանից բացի, նույն երկի սկզբում «Տարոնացի Պողոս» անունը հիշատակված է որպես աղանդավորի, <այսինքն՝ ոչ երկաբնակների կամ քաղկեդոնականների> վարդապետների շարքում (էջ 4)*[34]*:*

---

[32] Պօղոսի Տարօնացւոյ Թուղթ... ընդդէմ Թէոփիստեայ, ևն., Կ. Պոլիս, 752, էջ 133:

[33] Նույն տեղում էջ 225:

[34] Պարզ է, որ Հովհաննես Սարկավագի և «Հիւսիսային կողմանք»-ից դուրս այլ խմբակի ներկայացուցիչների, մասնավորապես Պողոս Տարոնացու ջատագովության առնչությամբ խոսել կարելի է միայն Արսեն Իղալթոեցու (ըստ **Կոռն. Կեկելիձեի**՝ Արսեն որդի Վաչեի [Մաղաշվիլո՞ւ]) հակահայկական ելույթների մասին, որոնք տեղ են գտել վրաց մատենագրության մեջ՝ Դավիթ Շինարարի օրոք: Սա չափազանց հետաքրքիր հարց է և ուշադիր դիտարկում է պահանջում: Իսկ Արսեն

# ԳԼՈՒԽ Թ.

## ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԱՐԿԱՎԱԳԻ ՄՏԵՐԻՄՆԵՐԸ ԵՎ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ, ՄԱՍՆԱՎՈՐԱՊԵՍ ԱԼԱՎԿԱ ՈՐԴԻ ԴԱՎԻԹԸ, ՍԱՄՈՒԵԼ ԱՆԵՑԻՆ ԵՎ ՍԱՐԳԻՍ «ԿՈՒՆՏԸ»

*Հովհաննես Սարկավագը համարվում է Հաղբատ-Սանահնի դպրոցի հիմնադիրը*[1]*, թեև, եթե արդարամիտ լինենք, նա ունեցել է այնպիսի նախակարապետներ, ինչպիսիք էին Անանիա Սանահնեցին և ուրիշներ:*

*«Յովհաննէս սարկաւագ վարդապետը, Հաղբատի կրօնական-գիտնական դպրոցի հիմնադիրը լինելով հանդերձ, նորա ամենանշանաւոր ուսուցիչն է ու ներկայացուցիչը, և անշուշտ բազմաթիւ պիտանի և բանիմաց մարդիկ է տուել իւր ժամանակակիցներին, որոնցից սակայն մի քանիսի անունները միայն յայտնի են մեզ այժմ, իսկ ոմանց գրուածքները մինչև այժմ էլ անյայտութեան մէջ են մնում»*[2]*:*

*Առհասարակ համեմատաբար ավելի շատ տեղեկություններ կան Սարկավագի ժամանակակիցների մասին, ում հետ նա գործակցել է Հաղբատի վանքում: Կիրակոսի տեղեկությունների համաձայն՝ դրանք են՝ գանձակեցի* Դավիթ Ալավկա որդին *և* Գրիգոր Թոքակերի որդին[3]*:*

*Այս երկու գործիչների մասին* Կիրակոսը *պատմում է Հովհաննես Սարկավագի 578=1129 թվականի մահը նշելուց հետո. «Եւ զկնի*

---

կաթողիկոսի հակահայկական գրությունների և թարգմանությունների մասին առայժմ տե՛ս К. Кекелидзе, Грузинская версия арабского Жития св. Иоанна Дамаскина.-ХВ, III, 139-141, **Կ. Կեկելիձե**, Վրաց գրականության պատմություն, I, 186-187, 298-300, Л. М.-В., Никиты Стифата, иеромонаха Студийского, «опровержение армянской ереси».- ХВ, IV, 92-93, Л. Меликсет-Беков, К вопросу о Федоре Абукуре в древнегрузинской литературе.- Изв. КИАИ, IV, 41-50, մասնավորաբար՝ 45:

[1] **Н. Адонц**, Армянская литература, ц. йзд., стлб. 653.

[2] **Եր. Ս. [Տէր-Մինասեանց]**, Հաղբատ և Սանահին վանքերը, 344:

[3] **Կիրակոս**, 107-108:

*ամի միոյ վախճանեցաւ սուրբ լուսաւորիչն Դաւիթ վարդապետն, Ալաւկայ որդի, որ գրեաց զԿանոնական օրինադրութիւնս՝ գեղեց-կայարմարս և պիտանացուս ի խնդրոյ քահանայի միոջ, որում անուն էր Արքայութիւն, ի քաղաքէն Գանձակայ: Եւ միւս ևս սքան-չելի վարդապետ, զոր Թոքակերի որդի կոչէին, Գրիգոր անուն»*[4]: *Եվ անմիջապես ավելացնում է. «Սոքա երեքեանս էին յաշխարհէն Գանձակայ, ուստի և ես»*[5]:

*Այսպես, ուրեմն, ըստ Կիրակոսի՝ Ալավկա որդի Դավիթը վախ-ճանվել է 1130 թ.*[6]:

*Հիշյալ աշխատության մեջ վանահայր «Գրիգոր վարդապետը՝ որդին Թոքակերի» և «Դավիթ՝ որդի Ալավկայ»* Կիրակոսի *կողմից հիշատակված են իբրև աղվանցիների կաթողիկոս ոմն Գագիկի ընտրությունների մասնակիցներ*[7]:

*Դրանից հետո, ըստ նույն Կիրակոսի՝ Գրիգորը արդեն երևում է ([ի] մայրաքաղաքն Գանձակ), որը ահասարսուռ երկրաշարժից ավերվեց վրաց Դեմետրե արքայի գահակալության (1125-1154) ժա-մանակ, և ճիշտ այդ ժամանակ, նրա իսկ խոսքով՝ «մեռաւ ի շարժմա-նէն մեծ վարդապետն Գրիգոր՝ հանդերձ այլ բազմութեամբ արանց եւ կանանց եւ մանկտոյ»*[8]:

*Երկրաշարժից Գանձակի ավերման և Թոքակերի որդի Գրիգորի զոհվելու ամսաթիվը* Կիրակոսը *ցույց չի տալիս: Ի դեպ՝ այդ ամսա-թիվը մենք գտնում ենք* Սամուելի *և* Վարդանի *երկերում:*

Սամուելը *գրում է. «ՇՁԸ. <= 1139> թվին, ի ԺԷ. (17) արեգ ամսոյ շարժմամբ կործանեցաւ Գանձակ քաղաք, և սուրբ վարդա-պետքն Գրիգոր և Սարգիս ընկղմեցան»*[9]:

Վարդանը *նշում է. «Ի հինգհարիւր ութսուն և ութ <=1139> թուին կործանեցաւ Գանձակ ի շարժմանէ»*[10]:

Վարդանը *Հովհաննես Սարկավագի մահվան կապակցությամբ ասում է. «Եւ զկնի ամի միոյ՝ լծակիցն իւր Ալաւկայ որդին Դա-ւիթ, որ Կանոնք գրեաց դիտահաս: Եւ Թոքակերայ որդին կոչեցեալ,*

---

[4] Նույն տեղում, 107:

[5] Նույն տեղում:

[6]. Այդուհանդերձ պարզ է, որ Դավիթը Մխիթար Գոշի ժամանակակիցը չի կարող համարվել, ինչպես կարծում է Ալիշանը (Հայապատում, Ա., 379, ծնթ. 1):

[7] Կիրակոս, 188-189:

[8] Նույն տեղում, 189:

[9] Սամուէլ, 132:

[10] Վարդան, 123:

*աշակերտ նորին, և այլ արք ճգնաւորք ի յԱղուանս, որպէս Պետրոս Խոնթկայ որդի և Յակոբ սքանչելին...»*[11]*:*

*Սարկավագի մահվան կապակցությամբ (1111-1121 թ. sic) Դավթին հիշատակում է նաև* Մխիթարը. *«Մեռաւ Սարկաւագ վարդապետն... և Դաւիթ վարդապետն Ալաւկայ որդին, որ զկանոնքն բացայայտեաց»*[12]*:*

*Եթե նկատի ունենանք* Վարդանի *նշած Հովհաննես Սարկավագի մահվան թվականը՝ 1139, ապա Ալավկա որդի Դավթի մահը, ըստ նույն* Վարդանի*՝ կսահմանվի 1140:*

*Հարցը վերջնականապես վճռելու համար, այնպես, ինչպես Հովհաննես Սարկավագի ամսաթիվը վճռելիս, ինքնին հասկանալի է, նախապատվությունը* Սամուել Անեցուն *պիտի տալ, քանզի նա հաստատապես ասում է. «ՇՁ. <=1131> թվին... Ննջեաց յայսմ ամի լուսաւորիչ և սուրբ վարդապետն Դաւիթ Ալաւկայ որդի»*[13]*:*

*Քանի որ* Սամուելի *տեղեկությունը մոտավորապես համընկնում է* Կիրակոսի *տեղեկությանը (միայն մեկ տարվա տարբերություն է), մենք կարող ենք Ալավկա որդի Դավթի մահվան թվականն ընդունել 1130//1131-ը*[14]*, իսկ Թոքակերի որդի Գրիգորինը, նույն* Սամուելի *և* Վարդանի *տվյալներով՝ 1139 թ.:*

*Մի խոսքով՝ երկու գործիչն էլ լիովին կարող են համարվել Հովհաննես Սարկավագի ժամանակակիցները:*

*Սակայն գիտագրական ասպարեզում նրանցից միայն Ալավկա որդի Դավիթն է հայտնի, որը, այսպես կոչված, «Սարգիս-գրքի» 1458 թվականի հիշատակարանի մեջ հիշատակվում է Սարկավագի հետ միասին. «Կային արևելքում Սարկավագ Հաղբատացին, Ալավկա որդի Դավիթը և ուրիշ շատերը»*[15]*:*

*Ալավկա որդի Դավթի գրչին է պատկանում տարբեր բովանդակություն պարունակող օրենքների, խրատների և խորհուրդների բավական ծավալուն մի ժողովածու, որը սխալմամբ «Կանոնագիրք»*

---

[11] Նույն տեղում, 121-122.

[12] Մխիթար, 61:

[13] Սամուել, 129-130:

[14] Կ. Կոստանեանցը (Դաւիթ վարդապետ Ալավկայ որդի.- ԱՅ, ԺԴ., 1906, էջ 106) Դավթի մահվան թվականն ընդունում է 1140-ը: Ական. Մ. Բրոսեն (Изв. АН, 1920, стр. 98), չգիտես ինչու, նրան համարում է ԺԱ. դարի գործիչ:

[15] Տաշեան, Ցուցակ, 751:

*են կոչում*[16]*: Ձեռագրերում հայտնի է հետևյալ վերնագրերով.*

| *Հիմնական բնագրում* | *Տարբերակում* |
| --- | --- |
| *Հարցումն պէսպէս խոստովանութեամբ բանից և պատահմանց եկելոց ի զգուշութիւն, զոր հարցեալ համբակ քահանայ, որոյ անուն Արքայութիւն կոչի, զԴաւիթ ոմն քահանայ գիտնական յոյժ*[17]*:* | *Դաւթի վարդապետի մականուն Ալաւկա[յ] որդի՝ Վասն պէսպէս հարցմանց խոստովանութեանց*[18]*:* |

*Ժողովածուն մեզ է հասել երկու խմբագրությամբ. նրանցից մեկը 40 հոդված է պարունակում, իսկ երկրորդը՝ 97//98*[19]*:*

*Համաձայն* Կ. Կոստանյանցի՝ *«Դավթի ժողովածուն գործողության մեջ պետք է եղած լինի նույն ԺԲ. դարում: Դա երևում է այն բանից, որ Մխիթար Գոշի «Դատաստանագրքում» կան սահ-*

---

[16] Անտիպ է. մեզ է հասել 3 ձեռագրով. 1) էջմիածնի թանգ. հին հավաք. Հձր 735 (ուսումնասիրել է **Կ. Կոստանեանցը**, նա էլ բնագիրը պատրաստել է տպագրության հենց այդ ձեռագրի հիման վրա), 2) նույն թանգ. նոր հավաք. Հձր 918/513 [5607] (ուսումնասիրված է մեր կողմից 1924 թ.), 3) գտնվում է Վիեննայի Մխիթարյան միաբանությունում՝ Հձր 256 (նկարագրված է **Հ. Տաշեանի** կողմից, Ցուցակ, 656):

[17] **Տաշեան**, Ցուցակ, 656, **С. Тиграняи**, Древнеармянская «Книга канонов», стр. 99, 141-142, 146:

[18] Տե՛ս էջմիածնի թանգ. նոր հավաքածուի ձեռ. Հձր 918/513 [5607], էջ 351ա:

[19] Այս երկի մասին տե՛ս **Ս. Չամչյան**, Պատմութիւն Հայոց, Գ., 41-42, **S. Somal**, Quadro della storia etc., 90: **Զ[արբհանալեան]**, 662 և այլն: **Մեսրոպ Տեր-Մովսիսյանցի** հրատարակած, այսպես կոչված, Եղիշեի «Կանոններում»՝ (Նախապաշարմունքներ Եղիշէ պատմագրի «Կանոններում».- ԱՀ, Բ., 1897, 295-299).- համաձայն **Ս. Տիգրանյանի** (Древне-армянская «Книга канонов», 146, пр. 1) դա, ինչպես, ոչ թե Եղիշեինն է, այլ Դավիթ Ալավկա որդունը, իսկ Եղիշեն, հավանաբար, այդ ժողովածուն արտագրողներից մեկի անունն է: Հայերեն այդ բնագիրն արդեն մի քանի տարի է՝ հանգուցյալ **Կ. Կոստանյանցը** ներկայացրել է Գիտությունների ակադեմիա, որն այն ընդունել է տպագրելու նպատակով՝ հետևյալ վերնագրով՝ «Давид Гандзакский, сын Алавика, и его Канонагирк [«Книга правил]», армянский текст с примечаниями и с особым предисловием, **К. Костаняиц**» (Изв. АН, 1920, стр. 98). Տպագրության ուղարկած բնագիրն ակադ. **Ն. Մառը** բնութագրում է այսպես. «Текст оказался интересным также лингвистически и археологически. В нем ряд редких слов, иногда... неизвестные и мало употребительные слова бытового характера. Они очень ценны для истории материальной культуры. И те и другие напрашиваются на анализ и освещение с точки зрения их связи с восточно-кавказским культурным районом». Առհասարակ հուշարձանը մեր առաջ բացում է Դավթի ժամանակի կենցաղի, նիստուկացի պատկերը, հասարակության քարոյական մակարդակը, վարք ու բարքը և այլն: Նրա մասին առայժմ տե՛ս **Կ. Կոստանեանցի** հետազոտությունը. Դաւիթ վարդապետ Ալաւկայ որդի.- ԱՀ, ԺԴ., 1906, էջ 105-132, ԺԵ., 1907, էջ 62-67:

*մանումներ, որոնք բառ առ բառ պետք է որ արտագրված լինեն Դավթի «Կանոնագրքից»:*

*Հայտնի է, որ Մխիթար Գոշը իր «Դատաստանագիրք Հայոցը» կազմելուն ձեռնամուխ է եղել 1184 թվականին, «ուրեմն, նույն գիտնականի հաշվարկներով, Դավթի մահից 44 տարի անց»*[20]*:*

*Նման հաշվարկը ճիշտ կլիներ, եթե Դավթի մահվան թվականն ընդունեինք* Վարդանի *վկայած 1140-ը: Բայց քանի որ մահվան թվականը մենք հայտարարել ենք 1130//1131-ը, այդ իսկ պատճառով մենք պետք է եզրակացնենք, որ Մխիթար Գոշը իր «Դատաստանագիրք Հայոցը» կազմելուն ձեռնամուխ է եղել Դավթի մահից 53//54 տարի հետո:*

*Ինչ վերաբերում է այն իրողությանը, թե Մխիթար Գոշի «Դատաստանագիրք Հայոցի» որոշ օրենքներ Դավթի ժողովածուից են արտագրված, «անշուշտ, պատահական երևույթ չէ»*[21]*:* Կ. Կոստանյանցը *ապացուցում է, որ «այլ սկզբաղբյուրների հետ միասին Մխիթար Գոշը ձեռքի տակ ունեցել է նաև Դավթի «Կանոնագիրքը», որը, սակայն, ինքը ոչ մի տեղ չի հիշատակում»*[22]*: Միայն որոշ եզրահանգումներ անելիս* Կ. Կոստանյանցը *բավարարվել է Դավթի ժողովածուի 21-րդ և 22-րդ հոդվածները համեմատելով Մխիթար Գոշի Դատաստանագրքի երկրորդ մասի 109-րդ և 110-րդ գլուխների հետ, նաև Դավթի երկի 17-րդ հոդվածը՝ Մխիթարի ներածական խոսքի 8-րդ գլխի հոդվածներից մեկի հետ*[23]*:*

*Հատկանշական է, որ Դավթի ժողովածուում բազում զարմանալի խորհուրդ-խրատներ են զետեղված, ինչն էլ ժամանակին հիմք է տվել* Հ. Տաշյանին*՝ հայտարարելու, որ այդ ժողովածուում «մեծ մասամբ խենթական բաներ»*[24] *են: Բայց, չնայած դրան, մենք, այդուհանդերձ, ավելորդ չենք համարում կանգ առնել որոշ «խենթական բաների» վրա, որոնք հատկապես վերաբերում են վրացիներին:*

*Դավիթ Ալավկա որդին հայերին հորդորում է չօգտագործել վրացիների մորթած միսը, ինչը առաջացրել է* Կ. Կոստանյանցի *զարմանքը և ստիպել ասելու. «Տարօրինակ է Դաւթի ԺԱ. կանոնը, որ պատվիրում է չուտել վրացու մորթած միսը. տարօրինակ է այն պատճառով, որ վրացիք, դաւանութեամբ տարբեր, սակայն քրիս-*

20 Կ. Կոստանեանց, Դաւիթ վարդապետ Ալաւկայ որդի.- ԱՅ, ժե., 64:

21 Նույն տեղում:

22 Նույն տեղում:

23 Նույն տեղում:

24 Տաշեան, Ցուցակ, 656:

*տոնեայ ազգ են»*[25]*:*

*Ահա այդ կանոնը. «Այլ վասն վրաց գենոյ (sic) զկենդանիս, մի՛ ոք կերիցէ ի մսոյն, բայց եթէ ի սովոյ հարկ լինիցի. իսկ թերախում գինի մի՛ խառնեսցի բայց ի սուրբ խորհրդոյն: Նոյնպէս և ամանքն մի՛ խառնեսցին, յորս կազմի կերակուր նոցա, բայց ի մկնանկէ և ի նապաստակէ մսոյ պղծեցելոյ»*[26]*:*

*Սա միանգամայն բնորոշ է դավանաբանական այն մոլեռանդության, որը հայ հոգևորականների միջոցով հայ իրականության մեջ սկիզբ էր առել Զ-Է. դարերում, և որին, հավանաբար, նպաստել էր Աբրահամ կաթողիկոսի նշանավոր կոնդակը (607-609), որտեղ հայ եկեղեցու հովվապետի իր հոտին թելադրում էր՝ բոլորովին «հեռանալ» վրացիներից ոչ միայն աղոթքներով, բարեկամ-խնամիությամբ, այլև ուտել-խմելու հարցում. «...մի՛ հաղորդել ընդ նոսա... մի՛ ի կերակուրս և մի՛ յըմպելիս», բացի առևտուր անելուց, «ինչպես հրեաների հետ» «բայց միայն գնել ինչ, և կամ գնոյ տալ՝ որպես հրէից»*[27]*: Մի խոսքով՝ Դավիթ Ալավկա որդին ևս Աբրահամ կաթողիկոսի նման հայերին խորհուրդ է տալիս ընդհանրապես հեռու մնալ վրացիներից, բացառությամբ այն դեպքերի, երբ ակամա պարտադրված կլինեն նրանց հետ կապի մեջ մտնել:*

*Կարող ենք Դավիթ Ալավկա որդու օրենքների այս հոդվածները մի տեսակ հիմք համարել այն միտքը հաստատելու համար, համաձայն որի՝ Դավթի ժողովածուն պետք է գրված լինի այն շրջանում, որտեղ հայերը վրացիների հարևանությամբ կամ էլ վրացիները հայերի հարևանությամբ էին բնակվում, միաժամանակ, երբ դավանաբանական անհամաձայնությունները նրանց միջև ոչ միայն ամբողջովին չէին սպառվել, այլև ժամանակ առ ժամանակ ավելի էին սաստկանում:*

*Դրանից բացի, քանի որ Ալավկա որդի Դավիթը Հովհաննես Սարկավագի ժամանակակիցն էր, կարող ենք մեզ թույլ տալ ասելու, որ այդ հոդվածները նա գրած լինի Հովհաննես Սարկավագի «Ընդդեմ երկաբնակաց» աշխատության մեջ զետեղված համապատասխան երկի՝ «Առ որս պիղծ զմիս վարկանեն և զանձինս ոչ արդելուն»*[28]*, ազդեցությամբ:*

---

[25] Կ. Կոստանեանց, նշ. աշխ., 117-118:

[26] Նույն տեղում, 118

[27] Գիրք թղթոց, 194, հմմտ. Մովսիսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի, 307:

[28] Տե՛ս վերը՝ այս մասի Գլ. Ը, ծնթ. 12:

* * *

Կիրակոս Գանձակեցու *նկարագրած՝ Հովհաննես Սարկավագի կյանքի մի դրվագում, ինչպես կտեսնենք, հիշատակված է Հովհաննեսին ժամանակակից ոմն Ստեփանոս՝ Զոմզոմա*[29] *մականունով, որին, չգիտես ինչու, Համազասպ Ոսկյանը համարում է Հովհաննեսի աշակերտը. «Սարկաւագի ուրիշ մէկ աշակերտն ալ է, կարծեմ, Ստեփաննոս Զո[մ]զոմա»*[30]*: Ցավոք, այս Ստեփանոս Զոմզոմայի ո՛չ կյանքի, ո՛չ գիտագրական գործունեության մասին որևէ տեղեկություն չի հայտնաբերվել:*

*Ինչ վերաբերվում է Հովհաննես Սարկավագի աշակերտներին, ապա նրանց մասին սոսկ կցկտուր տեղեկություն կարող ենք քաղել* Վարդանի *և* Սամուէլի *երկերից:*

Վարդանը *Հովհաննես Սարկավագի կյանքը նկարագրելիս հիշատակում է «ի նմանէ աշակերտեալսն»: «Երեմիա որ [է] Անձրևիկ և որ զամս երեսուն չորակեր եղև, այնչափ հլու եղեալ վարդապետին իւրոյ, որ և 'ի սաստելն երբեմն թէ՝ Լուռ լե՛ր, զամս երիս ոչ խօսեցաւ ընդ մարդ, բայց եթէ ընդ վարժիչն իւր ի կարիս. - և Սամուէլ երեց աշխարհի՝ որ զԳաւազանսն յօրինեաց քրոնիկոնին՝ Անեցին»»*[31]*:*

Սամուէլը, *հիշատակելով Հովհաննես Սարկավագի մահվան թվականը 578=1129, գրում է. «Եւ աշակերտ սորա Երեմիա, որ եւ յասելն վարդապետին, թէ՝ Լուռ լե՛ր, զամս Գ. (3) լուռ եկաց, ընդ միտս եւ ընդ Աստուծոյ խօսէր, որ եւ Անձրեւ կոչեցաւ: Եւ ընկերք սորա՝ տէր Խաչատուր եւ Գրիգոր եւ Յովհաննէս եւ Սամուէլ. ամենեքեան սոքա անեցիք»*[32]*:*

*Այս մեջբերումներում թվարկված անձանցից գիտագրական բնագավառում հայտնի է միայն Սամուել Անեցին, որի գրչին պատկանում է ժամանակագրական բնույթի մի երկ՝ աշխարհի արարումից մինչև 1179 թվականը, հետևյալ վերնագրով՝ «Սամուէլ քահանայի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց յաղագս գիւտի ժամանակաց անցելոց մինչև ի ներկայս»*[33]*:*

---

[29] Կիրակոս, 105-106:

[30] Ոսկեան, 17:

[31] Վարդան, 121:

[32] Սամուէլ, 128:

[33] Այս վերնագրով հրատարակվել է Վաղարշապատում 1893 թ. Արշակ Տեր-Միքելյանի կողմից: Տե՛ս. վերը՝ այս գրքի առաջին մասի Գլ. Զ., ծնթ. 7:

Չնայած հեղինակն իր երկը, ինչպես երևում է առաջաբանից[34], նվիրում է «Սրբազգեաց Գրիգորին», այդուհանդերձ չենք կարող Սամուելին համարել այդ Գրիգորի աշակերտը, որ Գրիգոր անվան տակ հետազոտողները մեկ Գրիգոր Մեղրիկին են նկատի առնում[35] (վախճանվել է 1104//1113 թ. ), մեկ՝ Հաղբատի վանահայր Գևորգին[36]: Սամուել Անեցին աշակերտել է, անշուշտ, Հովհաննես Սարկավագին և ուրիշ վանահայրերի, որոնց հետ «Սրբազգեաց Գրիգորը» որևէ առնչություն չպետք է ունենար:

Երեմիա «Անձրևիկը» այլ աղբյուրներում չի երևում: Նմանապես չեն երևում Խաչատուր, Գրիգոր և Հովհաննես Անեցիները[37]:

Բոլոր այս աշակերտներից բացի, հայտնի է «Կունտ» կոչված ոմն Սարգիս, նա իրեն Հովհաննես Սարկավագի աշակերտ է համարում: Այս Սարգսին է պատկանում «Մեկնութիւն սուրբ Աւետարանին Յովհաննու» աշխատանքը, որին կցված է իր՝ Սարգսի ընդարձակ հիշատակարանը, որտեղ ինքը, ի միջի այլոց, ասում է.

«...Շնորհիւն Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի... ես տրուպս և անպիտանս ի ժառանգաւորս եկեղեցւոյ՝ Սարգիս վարդապետ մականուն Կունտ կոչեցեալ ի գաւառէ Արարատեան...

Կատարեցաւ հոգենորոգ տառս մեկնութեան սուրբ Աւետարանին Յովհաննու, զոր կարգեալ և ուղղեալ բազում աշխատութեանբ մեծի իմաստնոյ Սարգիս կոչեցեալ, աշակերտ երիցս երանեալ սուրբ կաղղապետոի'Ծաղկաւաղ'պոչնցնալ...[38]»:

Այս հիշատակարանից նաև երևում է, որ Սարգիսը «Մեկնությունը» սկսել է գրել նոր տոմարով (այսինքն՝ Սարկավագի կազմած) 63 թվականին «Ի թուականիս նորոյ ԿԳ.»[39], ինչը համասար է 1084+ 63 = 1147 թ. Ք. ծ.:

---

[34] Սամուէլ, 3:

[35] Գ. Զ[արբհանալեան], Հայկական հին դպրութեան պատմութիւն, 672:

[36] Ոսկեան, 15:

[37] Ինքնին հասկանալի է, որ Սամուելի հիշատակած Խաչատուրը, Գրիգորը և Հովհաննեսը չպետք է լինեն «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» կողմից 1184-1185 թթ. Գրիգոր Տղային հղված թղթում հիշատակված «Սանահինի վարդապետ Գրիգորը և հայրա[պետ] Հովհաննես.... Խաչատուր վարդապետ Հաղարծնեցին» (տե՛ս այս գրքի առաջին մասի Չ. գլխի և երրորդ մասի Ա. գլխի սկիզբները), քանի որ վերջիններս իրենց գործունեությունը ծավալել էին ԺԳ. դարի սկզբին, և, ինչ խոսք, հնարավոր չէ, որ սրանք աշակերտները լինեին մի անձնավորության, ով վախճանվել է 1129 (թեկուզ 1139) թվականին:

[38] Ղ. Ալիշան, Հայապատում, Բ., 371:

[39] Ղ. Ալիշան, նշ. աշխ., նույն տեղում:

*Նույն տեղում Սարգիսը նշել է աղբյուրները՝ Եփրեմ Ասորու, Կյուրեղ Ալեքսանդրացու, Հովհան Ոսկեբերանի, Գրիգոր Աստվածաբանի, Թեոփանեսի, Եպիփան Կիպրացու, Մովսես Քերթողի, Մամբրե Վերծանողի, Ստեփանոս Սյունեցու, Գրիգոր Նարեկացու, Իգնատիոսի, Անանիայի (Սանահնեցո՞ւ), Հովհաննես Սարկավագի և այլոց երկերը*[40]*:*

*Այսպիսով՝ մենք պարզաբանել ենք Հովհաննես Սարկավագի աշակերտներից հետևյալ անձանց անունները՝ Երեմիա «Անձրևիկ», Խաչատուր, Գրիգոր, Հովհաննես, Սամուել (Անեցի) և Սարգիս «Կունտ»*[41]*:*

*Վերջում չենք կարող ուշադրություն չդարձնել հետևյալ հանգամանքի վրա. Թվում է, թե Հաղբատ-Սանահնի գործիչների խմբակը բաժանվում է տարբեր* սերունդների *և մասնավորապես ԺԲ. դարի առաջին կեսի ու միջնամասի* անեցիների *նշանավոր* սերունդը *(Երեմիա, Խաչատուր, Գրիգոր, Հովհաննես և Սամուել) նախորդում է* գանձակեցիների սերնդին *(Հովհաննես Սարկավագ, Գրիգոր Թոքակերի որդի և Դավիթ Ալավկայ որդի): Սա չափազանց հետաքրքիր երևույթ է, ինչը ասես թե օրինաչափ է, առանց որի անհնար կլիներ բացահայտել, թե ինչու ԺԲ. դարի երկրորդ կեսին և ԺԳ. դարի սկզբին Հաղբատի և Սանահնի միևնույն վանքում գանձակեցիների և անեցիների սերնդից հետո աչքի է ընկնում* խաչենցիների սերունդը, *որոնց վաստակը անջնջելի է «Հյուսիսային կողմանց» գիտագրական օջախների զարգացման պատմության մեջ*[42]*:*

---

[40] **Նույն տեղում**, 370-371, հմմտ. **Ոսկեան**, 16:

[41] Հովհաննեսի աշակերտների մասին ընդհանրապես տե՛ս **Եր. ս. [Տէր-Մինասեանց]** Հաղբատ և Սանահին վանքերը, 344, **Ոսկեան**, 14-17:

[42] Խաչենցիների առաջընթացը, անշուշտ, առնչվում է Երկայնաբազուկների առաջընթացին, որոնց հետ նրանք ունեին խնամիական կապեր: Ահա թե ինչու, հասկանալի է դառնում խաչենցիների շինարարական գործունեությունը ոչ միայն Կյուրիկյանների նախկին թագավորանիստ Սամշվիլդե քաղաքի շրջակայքում (այս մասին տե՛ս այս գրքի առաջին մասի Գլ. Ե., ծնթ. 59), այլ նաև հենց Վրաստանի մայրաքաղաք Թիֆլիսում ԺԲ-ԺԴ. դարերում (հմմտ. **Լևոն Մելիքսեթ-Բեկ**, Թիֆլիսի վանքի հիմնադրման հարցի շուրջ.- «Թիֆ. համալս. բանբեր»), IV, 1924, էջ 82-91 (ლეონ მელიქსეთ-ბეგი, ტფილისის ვანქის დაარსების საკითხისათვის, - „ტფ. უნ. მოამბე", IV, 1924, გვ. 82-91):

# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

## ՀԱՂԲԱՏ-ՍԱՆԱՀՆԻ ԴՊՐՈՑԸ

## ԵՎ ՀԱՐԵՎԱՆ ԿՐԹՕՋԱԽՆԵՐԻ ԽՄԲԱԿՆԵՐԸ

## ԺԲ-ԺԳ. ԴԱՐԵՐՈՒՄ

## ԳԼՈՒԽ Ա.

## ԺԲ. ԴԱՐԻ ՎԵՐՋԻ ԵՎ ԺԳ. ԴԱՐԻ ՍԿԶԲԻ ՎԱՐԴԱՊԵՏՆԵՐԻ ՑՈՒՑԱԿԸ. ԳԻՏԱԳՐԱԿԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ ԱՆՀԱՅՏ ԳՈՐԾԻՉՆԵՐԸ՝ ԲԱՍԻԼ, ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԱՆԱՀՆԵՑԻ, ՀՈՎՀԱՆՆԵՍ ՀԱՂԲԱՏԵՑԻ, ԻԳՆԱՏԻՈՍ, ՊԵՏՐՈՍ, ՄԽԻԹԱՐ ԽՈՐԱԿԵՐՏՑԻ ԵՎ ԳԵՎՈՐԳ ՀԱՂԲԱՏԵՑԻ

*ԺԲ. դարի վերջի և ԺԳ. դարի սկզբի «Հյուսիսային կողմանց վարդապետների» կազմը պարզելու համար ունենք չափազանց հավաստի և հատատուն մի քանի աղբյուր.*

*1) Հիշատակված* վարդապետների *թղթերը՝ 1184-1185 թթ. հղված Գրիգոր Տղային, կազմել են* «Բասիլ *եպիսկոպոսը, որը հյուսիս-արևելքից էր, վարդապետ* Գրիգոր Սանահնեցին, *Սանահնի հայր[ապետ]* Յովհաննեսը, *Հաղբատի մետրոպոլիտի վարդապետներ* Իգնատիոսը, Պետրոսը, Վարդանը, Դավիթը, *ինչպես նաև Հաղարծնի վարդապետ* Խաչատուրը, *Խորակերտի վարդապետ* Մխիթարը *և Գետիկի երկրորդ* Մխիթար *վարդապետը»*.

*2)* Եփրեմ Ասորու *1195 թ. աշխատանքներից մեկում հիշատակվում են՝ «Հաղբատի եպիսկոպոս* Յովհաննեսը *և վարդապետներ* Դավիթը, Պետրոսը, Իգնատիոսը *և նորերս վախճանված* Վարդանը».

*3)* Կիրակոս Գանձակեցու *«Պատմության» մեջ, ասկա է մոտավորապես 1205 թ. հրավիրված Լոռու ժողովի արձանագրությունը, որտեղ, ի մի միջի այլոց, հիշատակվում են «երևելի վարդապետներ՝ Գետիկի վանքը կառուցող Գոշ կոչված Մխիթարը՝ մի իմաստուն, հեզ մարդ և օրինագիտական ուսումով հռչակված.* Իգնատիոսը, Վարդանը, *Հաղբատի* Դավիթ Քոբայրեցին, *Սանահնի հայր Հովհաննեսը, որ* Գրիգոր *վարդապետի մահից հետո էր, որին* Տուտեորդի *էին կոչում...»:*

*Այս երեք աղբյուրների հիման վրա կարելի է ներկայացնել հետևյալ աղյուսակը՝*

*Ա.*

*1184-1185 թթ. համար*

*(«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների») խմբակի գլխավորները.*

1. Բասիլ *եպիսկոպոսը, «որը հյուսիս-արևելքից էր»,*
2. Գրիգոր *[*Տուտեորդի*] Սանահնեցին,*
3. Հովհաննես *Հայր(ապետ) Սանահնին,*
4. Իգնատիոս *Հաղբատեցին.*
5. Պետրոս *Հաղբատեցին,*
6. Վարդան *Հաղբատեցին,*
7. Դավիթ *Հաղբատեցին [*Քոբայրեցի*],*
8. Խաչատուր *Հաղարծնեցին [Տարոնեցի],*
9. Մխիթար *Խորակերտցին,*
10. Մխիթար *[Գոշ], Գետիկցին:*

*Բ.*

*1195 թվականի համար*

(Հաղբատի խմբակի գլխավորները*),*

*1.* *Հաղբատի* Հովհաննես *եպիսկոպոսը,*
2. Իգնատիոս *Հաղբատեցին,*
3. Պետրոս *Հաղբատեցին,*

† Վարդան *Հաղբատեցին,*

*2.* Դավիթ *Հաղբատեցին [*Քոբայրեցի*]:*

*Գ.*

*1205 թվականի համար*

(Գետիկ-Սանաhին-Հաղբատի խմբակի ղեկավարները*)*

† Գրիգոր *Տուտեորդի* Սանահնեցին,

1. Հովհաննես *Սանահնեցին,*
2. Իգնատիոս *Հաղբատեցին,*
3. Վարդան *Հաղբատեցին,*
4. Դավիթ *Քոբայրեցին (*Հաղբատեցի*),*

*5.* *[Մխիթար]* Գոշ, *Գետիկցին:*

*Այս վարդապետներից գիտագրական ասպարեզում հայտնի են՝ Գրիգոր Տուտէորդին կամ Տուտէի որդի Սանահնեցին (Ա. և Բ. ցուցակներում, երկրորդում նշված է՝ մահացած), Վարդան Հաղբատեցին (Ա. և Բ. ցուցակում), կամ երկրորդ Վարդանը՝ (Գ. ցուցակից),*

*Հաղբատի Դավիթ Քոբայրեցին (բոլոր երեք ցուցակներում), Խաչատուր Հաղարծնեցին (Ա. ցուցակում) և Մխիթար Գոշը (Ա. և Գ. ցուցակներում):*

*Բոլոր այս անձանց գործունեության մեկնաբանությանն ենք նվիրում մենագրության երրորդ մասը, որտեղ կքննարկենք նաև ԺԲ-ԺԳ. դարերի այն գիտնական-գրողների գործունեությունը, որոնք վերոբերյալ ցուցակներից ոչ մեկում չեն հիշատակվում, բայց հայտնի են այլ աղբյուրներից, որպես, այսպես կոչված, «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» խմբակի ներկայացուցիչներ և նրանց ժամանակակիցներ, օրինակ՝ Գրիգոր Աբասարդին (ԺԲ-ԺԳ. դարերում) կամ աշակերտները, օրինակ՝ Մխիթար Գոշի ժառանգորդը՝ Հովհաննես վանական Տավուշեցին իր դպրոցով (ԺԳ. դար):*

*Գիտական-գրական ասպարեզում հայտնի չեն՝ Բասիլ եպիսկոպոսը (Ա. ցուցակից), Հովհաննես Սանահնեցին (Ա. և Գ. ցուցակներից), Հովհաննես Հաղբատեցին (Բ. ցուցակից), Իգնատիոս Հաղբատեցին (բոլոր երեք ցուցակներից), Պետրոս Հաղբատեցին (Ա. և Բ. ցուցակից և Մխիթար Խորակերտցին (Ա. ցուցակից). աղբյուրներում սրանց մասին կամ ոչինչ չկա, կամ շատ քիչ տեղեկություններ են պահպանվել:*

* * *

Բասիլ եպիսկոպոսը՝ *հյուսիս-արևելքից: Սա, անկասկած, Հաղբատի եպիսկոպոս Բասիլը կամ Բարսեղն է, Գիորգի Գ.-ի և Թամար թագուհու ժամանակակիցը. նա հայտնի է Հաղբատի 1180, 1185, 1189 թվականների արձանագրություններից և* Կիրակոս Գանձակեցու *«Պատմությունից»*[1]:

*629=1180 թվականին արձանագրությունում (Գիորգի Գ. կողմից Հաղբատի կալվածքները հաստատելու մասին), ի միջի այլոց, հի-*

[1] ԺԲ. դարի Բ. կեսին հայտնի են եղել մի քանի Բասիլ-Բարսեղներ՝ օրինակ, Գրիգոր Տղայի կողմից հունաց Միխայիլ պատրիարքին հղված թուղթը, ի միջի այլոց, ստորագրել են «մայրաքաղաք Անիի արքեպիսկոպոս Բասիլը» և «Վրաստանի մայրաքաղաք Տփղիսի արքեպիսկոպոս Բասիլը»: Նրանցից առաջինը պետք է եղած լինի նույն ինքը՝ Բարսեղը, ըստ՝ **Մատթեոս Ուռհայեցու (Մատթեոս**, 220-221) և ըստ **Կիրակոսի (Կիրակոս**, 91), ըստ **Մխիթարի (Մխիթար**, 60)՝ կամ «Բարսեղը, որը արևելքից է», ըստ **Վարդանի (Վարդան**, 104), որը 1081 (այլ տարբերակով՝ 1076) թվականին համաձայն վերոհիշյալ բոլոր պատմագրերի՝ Աղվանքի կաթողիկոսի (ըստ **Ուռհայեցու** և **Վարդանի**՝ Ստեփանոսի, իսկ ըստ **Կիրակոսի** և **Մխիթարի**՝ Յովսեփի) կողմից տարվեց Յաղբատ, **Ուռհայեցու** վկայությամբ՝ ս. Գրիգորի գահին:

*շատակվում է իբրև «Տէր Բարսեղ առաջնորդ տանս Հաղբատայ»*[2]*: 634=1185 թ. Կյուրիկեի դուստր Մարիամի՝ իր ծնողների գերեզմանին կառուցած աղոթատան արձանագրությունում հիշատակված է՝ «Յառաջնորդութեան տեառն Բարսղի արհիեպիսկոպոսի»*[3]*: Իսկ 638=1189 թ. (Առանի որդի Դավթի՝ իր հոր և քրոջ գերեզմանին կառուցած եկեղեցում) կարդացվում է «Յառաջնորդութեան տեառն Բարսղի»*[4]*:*

*Կիրակոս Գանձակեցին պատմում է. «և զՍարգիս ոմն դրան երէց Կիւրիկէի՝ ձեռնադրեն եպիսկոպոս Հաղբատայ. և յայնմ հետէ եղեւ աթոռ եպիսկոպոսի»,- և նշում է,- «Եւ յետ Սարգսի եղեւ եպիսկոպոս Գէորգ. և յետ նորա Բարսեղն: Սա է՛ր այր գեղեցիկ տեսլեամբ. զսա տեսեալ թագուհին Վրաց Թամարն, մեծապէս պատուեաց զնա վասն վայելչութեան գեղոյ նորա, զի և եղբարք նորա գործակալք էին տանն արքունի»*[5]*:*

*Այս Բարսեղը կամ «Բասիլ եպիսկոպոսը, որը հյուսիս-արևելքից էր», Խաչենցի*[6]*, հետագայում տեղափոխվել է Տփղիս որպես արքեպիսկոպոս, հնարավոր է՝ սա հենց այն Բարսեղ-Բասիլը եղած լինի՝ «Բասիլիոս արք եպիսկոպոս թագաւորանիստ քաղաքին Վրաց Տփխեաց»*[7] *էր, ոչ թե այն «Բասիլիոս արք եպիսկոպոս թագաւորանիստ քաղաքի Անւոյ», որը* Վարդանի *«Պատմությունում» հիշատակված է «Բարսեղ՝ որ յարևելս»*[8] *հետագայում կարդված լինի Անիի ոչ պաշտոնական (պարտիկուլյար) կաթողիկոս:*

Սանահնի հայր(ապետ) Յովհաննեսը *Սանահնի 1181, 1184 և 1191 թվականների արձանագրություններում հիշատակված է որպես «Յովհաննէս առաջնորդ»*[9] *կամ «հայր Յովհաննէս»*[10]*: Նա մոտավորապես 1205 թվականին կայացած Լոռու ժողովի մասնակիցն է,*

---

[2] Յովհ. Ղրիմեցի, 5 = Երզնկեան, 33 = Կոստանեանց, 33, հմմտ. [А. Ерицов], նշ. աշխ., 52:

[3] Յովհ. Ղրիմեցի, 8 = Երզնկեան, 21 = Կոստանեանց, 36, հմմտ. [А. Ерицов], նշ. աշխ., loc. cit:

[4] Ջալալեանց, Ա., 74 = Յովհ. Ղրիմեցի, 7 = Երզնկեան, 25 = Կոստանեանց 37, հմմտ. [А. Ерицов], նշ. աշխ., նույն տեղում:

[5] Կիրակոս, 91-92:

[6] Ի գաւառէն Խաչենոյ, Ալիշան, Հայապատում, Բ., 382:

[7] Թուղթ ընդհ., 275 = Տաշեան, Ցուցակ, 350. հմմտ. Ալիշան, Հայապատում, Բ, 382:

[8] Եվ ոչ «յարևելս հիւսիսոյ»:

[9] Յարութիւնեան.- ԱՀ, Գ., 286 = Կոստանեանց, 33-34:

[10] Ջալալեանց, Ա., 27 = Լալայեան, 391 = Կոստանեանց, 35, Ջալալեանց, Ա., 18 = Յարութիւնեան, ԱՀ, Գ., 283 = Կոստանեանց, 37:

*ինչպես նաև 1205 թ. արձանագրությունում հայտնի «Յովհաննէս դաւառաւ խաչինեցի»*[11]:

Յովհաննես Հաղբատեցին *այլ աղբյուրներում չի հիշատակվում*[12]:

*«Վարդապետն ումամբ հռչակեալ Իգնատիոսն», ինքնին հասկանալի է, հայ գրականության պատմության մեջ հայտնի այն Իգնատիոսը չէ, ով Սև լեռան վանքում գործել է ԺԲ. դարի առաջին կեսին, և հռչակված է մեկնաբանական երկերով*[13]*: Իգնատիոս Հաղբատեցին, պարզվում է՝ 1205 թ. ողջ է եղել:* Ռ. Երզնկեանը, *հիմնվելով բանավոր տեղեկությունների վրա, նրա գերեզմանը նշում է Հաղբատի կուսանոցը*[14]*: Այլ առումով նա անծանոթ է*[15]*:*

Պետրոսը *հայտնի է որպես ուսուցիչ Դավիթ (ըստ* Ն. Ակինյանի*՝ Քոբայրեց վարդապետի) վարդապետի՝ ԺԲ. դարում, որը վերջինիս խնդրանքով գրել է Եսայու «Մարգարեության» մեկնությունը*[16]*: Ենթադրվում է, որ 1205 թ. նա արդեն վախճանվել էր: Այլ առումով նա ևս անծանոթ է:*

Մխիթար Խորակերտցին *ուրիշ աղբյուրներում չկա:*

*Վերջում մեկ-երկու խոսք* Գևորգ Հաղբատեցու *մասին, որը վերոբերյալ ցուցակներից և ոչ մեկում հիշատակված չէ, բայց, ինչպես արդեն տեսանք,* Կիրակոսը *նրան հիշատակում է Հաղբատի եպիսկոպոսական աթոռանիստի հիմնադրումից հետո՝ որպես երկրորդ եպիսկոպոսի, Սարգսից հետո և Բարսեղից առաջ*[17]*, այսինքն՝ մինչև 1184-1185 թթ.: Նա հայտնի է որպես Գրիգոր Տղայի Ներսես եպիսկոպոսին հղված ս. Սարգսի իրական պատմության մասին գրված թղթի հեղինակ: Նրա այդ թուղթը, ցավոք, մեզ չի հասել, բայց եթե այդ մասին մենք ինչ-որ բան գիտենք, ապա միայն շնորհիվ Ներսեսի պատասխանի, որը գրականության մեջ հայտնի է հետևյալ*

---

[11] Յովհ. Ղրիմեցի, 53.

[12] «Յովհաննէս առաջնորդ սուրբ ուխտին Հաղբատայ»՝ հիշատակված է Սանահնի, այսպես կոչված, Համբարձման եկեղեցու արևելյան կողմում, Գրիգոր Տուտեորդու գերեզմանի մոտ գտնվող 676 = 1227 թվականի արձանագրությունում (Լալայեան, 392), բայց, սա, ուրիշ Հովհաննես է:

[13] Գ. Զ[արբհանալեան], Հայկական հին դպրութեան պատմութիւն, 642-643, Ա. Զամ[ինեան], Պատմութիւն հայ գրականութեան, 172:

[14] Երզնկեան, 65:

[15] Ն. Ակինեան, Մատ. հետազ., 68:

[16] Երանելւոյն Յովհաննու Ոսկեբերանի Մեկնութիւն Եսայեայ մարգարէի, Վնտ., 1880, էջ ժե. հմմտ. Ղազիկեան, Հայկական նոր մատենագիտութիւն, Բ., 104, Ն. Ակինեան, Մատ, հետազ., 68:

[17] Կիրակոս, 91-92, հմմտ. Վարդան, 104:

*վերնագրով՝ «Թուղթ առ ի Ներսիսէ եպիսկոպոսէ յեղբօրէ տեառն Գրիգորիսի կաթողիկոսի Հայոց՝ Պատասխանի թղթոյն* Գէորգեայ Արեւելեան եպիսկոպոսի, առաջնորդի սրբոյ ուխտին Հաղբատի՝ *Յաղագս հետազօտելոյ առ ի ստուգութիւն զպատմութիւնս երանելւոյ նահատակին Սարգսի»*[18]:

---

[18] Սոփերք հայկականք, ԺԶ., 1854, էջ 4, այս երկը՝ **Պ. Պետերսը** (Paul Peeters, La Passion arménienne de S. Serge le Stratelate.- «Յուշարձան», էջ 186), թվագրում է 1158 թ., բայց դա սխալ է՝ 1158 թ. ասորերենից հայերեն է թարգմանվել Սարգսի «Նահատակությունը» (տե՛ս Սոփերք հայկականք, ԺԶ., 53, **Մ. Աւգերեան**, Լիակատար վարք և վկայաբանութիւնք սրբոց, Բ., Վնտ., 1881, էջ 48, հմմտ., **Л. Мелик-сет-Беков**, Грузинский извод сказания о посте «араджавор».- ХВ, VI, 99-100); բայց այս «մեկնությունը» պետք է կատարված լինի 1081-1184/1185 թվականներին:

# ԳԼՈՒԽ Բ.

## ԳՐԻԳՈՐ ՏՈՒՏԵՈՐԴԻ ԿԱՄ ՏՈՒՏԱՅԻ (ՏՈՒՏԵԻ) ՈՐԴԻ

*Գրիգոր Տուտեորդին կամ Տուտեի, նաև՝ Տուտայի որդի (Գրիգոր Տուտեորդի, նաև՝ Գրիգոր, որդի Տուտեայ), Սանահնի վանահայրն էր:*

*Գրիգորի մասին թռուցիկ խոսում է* Կիրակոս Գանձակեցին, *երբ նշում է, անեցիների՝ Սանահնում թաղված Դիոսկորոսի մասունքները «...յաւուրս իշխանութեանն Զաքարէի և առաջնորդութեան Սանահնին Գրիգոր վարդապետին՝ որդւոյն Տուտայ» գողանալու և գաղտնի Անի տանելու մասին: Այդ առթիվ Գրիգորին հիշատակում է որպես «այր երևելի», որը դեմ էր այդ քայլը կատարելուն*[1]*:*

*Մոտավորապես 1205 թ. Լոռում հրավիրված ժողովի մասնակիցների մասին խոսելիս Կիրակոսը, ի միջի այլոց, հիշատակում է «Յովհաննէս, հայր Սանահնին, որ էր զկնի մահուան վարդապետին Գրիգորոյ, զոր Տուտայ որդին կոչէին»*[2]*:*

*Այսպես ուրեմն՝ 1205 թ. Գրիգոր Տուտեորդին արդեն վախճանված էր:*

*Ներսես Լամբրոնացու կողմից Լևոն արքային հղված թղթում, հիշատակված են ժամանակի առաջնորդները՝ «և որ անդ* Տուտեորդին *և Քորայրեցին և այլքն իւրեանց տեսողք»*[3]*:*

*Գրիգոր Տուտեորդու նամակի՝ Գրիգոր Տղայի պատասխանում, ի միջի այլոց, հանդիպում ենք առաջինի հեղինակային բնութագրությանը՝ «սուտ է որդին որոտման, և* իրաւ է որդին Տուտեայ»[4]*: Այս պատասխան թղթում հատկապես Տուտեորդու անունը հիշատակվում է բազմիցս*[5]*:*

---

[1] Կիրակոս, 84-85:

[2] Նույն տեղում, 162.

[3] Ներսիսի Լամբրոնացւոյ Ատենաբանութիւնն և թուղթ և ճառք, 233:

[4] Նամականի, 21: Հմմտ. Ավետարան Մարկոսի Գ. 16-17. «Եւ եդ անուն Սիմովնի՝ Պետրոս. եւ Յակովբու Զեբեդեայ՝ եւ Յովհաննու եղբաւրն Յակովբայ՝ եդ նոցա անուանս բաներեգէս, որ է՝ որդիք որոտման»:

[5] Ներսիսի Լամբրոնացւոյ. եւն., 223, 227, 243 և հջրդ.:

*Գրիգոր Տուտեորդու անունը հիշատակվում է Սանահնի 1173, 1184 և 1197 թվականների արձանագրություններում: Այսպես՝ 1173 թվականի արձանագրությունում ասված է. «առաջնորդ էր Տուտէորդի Գրիգոր եպիսկոպոսն»[6], 1184 թ. արձանագրությունում՝ «ես Գրիգոր վարդապետ՝ որդի Տուտէ, Խաչենացի»[7], 1197 թ. արձանագրությունում՝ «ես Գրիգոր վարդապետ՝ որդի Տուտայ»[8]: Հաղբածի (Ղփչաղի) 1196 թ. արձանագրությունում ևս ասված է՝ «ես Գրիգոր վարդապետս՝ որդի Տուտայ»[9]:*

*Հատկապես հետաքրքիր է 633=1184 թ. արձանագրությունը, որը փորագրված է, այսպես կոչված, Համբարձման եկեղեցու ձախ մասում կամ հյուսիսային կողմում գտնվող՝ Գրիգորի գերեզմանի խաչքարի verzo-ին (նույն քարի recto-ն տե՛ս նկար Հ^մր 5), որտեղ, ի դեպ, ասված է. «Այս տարի, երբ վախճանվեց վրացիների արքա Գիորգին, ես՝ Գրիգոր վարդապետս՝ Տուտեի որդի Խաչենցիս, կանգնեցրի այս խաչը իմ գերեզմանի համար... Հովհաննեսի վանահայրության ժամանակ» ևլն:*

*Իսկ արձանագրությունը, որը հրապարակվել է բազմիցս, մենք կարդում ենք այսպես (17 տողանոց)[10].*

***«Յամի, յորում եղև կատարո/ւմն արքային Վրաց Գիորգէ[11], ես՝ / Գրիգոր վարդապետ որդի Տուտէ / Խաչենացի[12] որ բնակեալ ընդ հով/անեաւ սրբո Ա[ստուա]ծածնիս, կանգնեցի զ/խաչս ի վերա հանգստարանի իմո, / ակն ունելով՝ ելից կենցաղոյս: / Եւ արդ, անկեալ դնիմ առ ոտս քո՝ / Նշանդ Ա[ստուծո]յ, եւ աղաչեմ անբարբ/առ շրթամբք, զի ի մեծի երեւման / Քո լիցիս բարեխաւս անարժան ծ/առաիս Ք[րիստոս]ի: Եւ որք երկրպագէք, յի/շեցէք ի Ք[րիստո]ս Յ[իսու]ս: Կանգնեցաւ ի / հայրութեանս[13] Յովհաննեսի, յո/րում ամի նորոգեցաւ կաթու/ղիկէս ս[ուր]բ ի թու[ին] ՈԼԳ.[14]: ԶՄխիթար / կազմիչ յիշեսջիք ի Ք[րիստո]ս. ամեն»:***

---

6 **Ջալալեանց**, Ա., 30 = **Կոստանեանց**, 35. հմմտ. վերը այս գրքի առաջին մասի Գլ. Դ., ծնթ.26:

7 **Ջալալեանց**, Ա., 27 = **Լալայեան**, 391 = **Կոստանեանց**, 35:

8 **Ջալալեանց**, Ա., 26 = **Յովհ. Ղրիմեցի**, 53 = **Կոստանեանց**, 39:

9 **Աբէլ Մխիթարեան**, Պատմութիւն մենաստանին Հաղբծոյ, Տփղ., 1856, էջ 82-83, **Շահխաթունեանց**, Բ., էջ 268-269 (§ 568) = **Ալիշան**, Շիրակ, 158-159:

10 **Ջալալեանց**, Ա., 27 = **Լալայեան**, 391 = **Կոստանեանց**, 35:

11 Ըստ **Ջալալեանցի** և **Լալայեանի**՝ Գուրգէնի (sic) :

12 Ըստ **Ջալալեանցի** և **Լալայեանի**՝ Խաչենցի:

13 Ըստ **Ջալալեանցի** և **Լալայեանի**՝ հայրապետության (sic):

14 **Լալայանը** սխալմամբ կարդում է ՈԼԴ. 634 = 1185, մինչդեռ պետք է լինի՝ ՈԼԳ. 633 = 1184:



Նկար 5. Գրիգոր Տուտեորդու գերեզմանին կանգնեցրած հուշարձան-խաչքարը Սանահինում *(վրացերեն հրապարակությունից՝ էջ 184)*



Հուշարձան-խաչքարը մեր օրերում (2006 թ.)

*Ուրեմն՝ դեռևս իր կենդանության օրոք Գրիգորը պատրաստել է տվել իր գերեզմանաքարը՝ համապատասխան փորագրությամբ:*

*Ինչպես այս վերջինը՝ գրված 1184 թ., այնպես էլ վերոհիշյալ՝ 1173, 1196 և 1197 թթ. արձանագրությունները, 1184-1185 թ. Գրիգոր Տղային հղված թղթի կապակցությամբ, մեզ հնարավորություն են տալիս եզրակացնելու, որ Գրիգոր Տուտեորդին կամ Տուտեի (Տուտայի) որդին՝ 1) ծագումով խաչենցի էր, 2) 1173 թ. ունեցել է եպիսկոպոսի աստիճան և եղել է Սանահնի վանահայրը, բայց ինչ պաշտոն է ունեցել 1184 թվականին, պարզ չէ, (քանզի ինչպես այդ տարվա գրությունում, այնպես էլ Գրիգոր Տղային հղված թղթում որպես վանա(հայր) հիշատակվում է Հովհաննեսը), 3) 1197 թ. նա դեռևս ողջ է եղել, և վախճանված պետք է լինի 1197-1205 թվականների միջև:*

*Այսպիսով՝ փոքր-ինչ անհասկանալի է* Ա. Զամինյանի *միտքը, իբրև թե Գրիգոր Տուտեորդին պետք է վախճանված լինի ԺԳ. դարի առաջին քառորդում*[15]*: Նմանապես անհասկանալի է* Մ. Օրմանյանի *կարծիքը, քանզի գրում է, թե Գրիգորի մահվան թվականը համընկնում է Մխիթար Գոշի մահվան թվականին, այսինքն՝ մոտ 1213 թ.*[16]*, բայց սրա պատճառն այն է, որ վերջինիս դատողությունը բխում է այնպիսի սխալ դրույթից*[17]*, ինչպիսին է Գրիգոր Տուտեորդու նույնականացումը այն «Գրիգորէս եպիսկոպոս Հաղբատայ»-ի հետ, որը Զաքարիա [ամիր]սպասալարին ընդդիմադիր լինելու պատճառով վտարվեց. նա ստիպված էր թողնել Հաղբատի վանքը:* Կիրակոս Գանձակեցու *հաղորդմամբ՝ գնաց «ի վանքն Գետիկ, առ մեծ վարդապետն Մխիթար»*[18]*:*

*Ինչ վերաբերում է Տուտեորդու ծննդյան թվականին՝ այն անորոշ է: Սոսկ համաձայն այն իրողության, որ Գրիգոր Տղայի՝ Գրիգոր Տուտեորդուն հղված թղթում նա հիշատակվում է որպես «ծերունի հայր»*[19]*, պետք է ենթադրել, որ նա ծնված պետք է լինի ԺԲ. դարի առաջին կամ երկրորդ քառորդում:*

---

15 **Աբր. Զամ[ինեան]**, Պատմութիւն հայ գրականութեան, 175:

16 **Օրմանեան**, Ազգապատում, էջ 1578-1579 (§ 1085):

17 **Նույն տեղում**, հմմտ. **Ա. Զամինեան**, նշ. աշխ., 227:

18 **Կիրակոս**, 163:

19 **Արշակ Տէր-Միքելեան**, Միջին դարերի կաթուղիկոսների ձգտումները, 42, 43, 44, 45:

*1197 թ. գրութիւնը մասնաւորապէս հետաքրքիր է այնքանով, որ նրանում Գրիգորի կողմից Սանահնին ընծայված իրերի մեջ հիշատակվում է 8 գիրք «Ը. գիրք»*[20]*:*

* * *

*Գրիգոր Տուտեորդին գիտական-գրական ասպարեզում հայտնի է իր նամակագրութիւնով Հայոց՝ Տղա կոչված Գրիգոր կաթողիկոսի հետ (Կիլիկիա): Մեզ են հասել Գրիգոր Տուտեորդուն Գրիգոր Տղայի կողմից ուղարկված երեք թուղթ և Տուտեորդու մեկ թուղթը՝ առ Գրիգոր Տղան:*

*Գրիգոր Տղայի թղթերի վերնագրերն են՝*

*1. «Հարցումն խրատուց, զոր խնդրեալ է կաթուղիկոսն Հայոց Գրիգոր Տղայն կոչեցեալ ի* մեծապատիւ վարդապետէն Գրիգորէ որդո Տուտեայ՝ *Վասն ամբաստանութեան կաթողիկոսին Աղուանից տեառն Ստեփաննոսի, զոր գրեալ էին առ նա եպիսկոպոսքն Աղուանից, և վասն Հոռոմոց՝ որ յափշտակեցին զեկեղեցիսն Հայոց, որ յարևմուտս էին՝ յաշխարհն Հոռոմոց*[21]*»:*

*2. «Գիր ողջունի և հարցումն խրատու տեառն Գրիգորի Հայոց կաթուղիկոսի՝ Տղայն կոչեցելոյ,* առ մեծապատիւ վարդապետն Գրիգոր՝ որդի Տուտեայ, *խնդրելով ի նմանէ բան պատասխանի թղթին <ձեռ.՝ «պատասխանոյ թխտին»՝ այսպես> Հոռոմոց, որ էր գրեալ առ նա՝ ցուցանել նոցա գրով զկարգս եկեղեցական՝ զխոստովանութիւն հաւատոց մերոց»*[22]*:*

*3. «Պատասխանի թղթոյն* վարդապետին Գրիգորի Տուտէորդւոյն կոչեցելոյ ի մայրավանսն Յաղբատայ[23] *գրեալ ի տէր Գրիգոր կաթողիկոսէ Հայոց, յեղբօրորդւոյ սրբոց կաթողիկոսացն Գրիգորիսի և Ներսեսի, որ մականունութեամբ Տղայ անուանի»*[24]*:*

*Առաջին երկու նամակները հենց ինքը՝ Գրիգոր Տղան է ձեռնարկել, և Տուտեորդու պատասխանը նրանց՝ չի երևում: Երրորդ նամակը, ինչպես վերնագիրն է հուշում, Տուտեորդու նամակի պատասխանն է, բայց, ցավոք, առայժմ ոչ էլ Տուտեորդու նամակն է հայտնաբերվել:*

---

[20] Ջալալեանց, Ա., 16 = Յովհ. Դրիմեցի, 53 = Կոստանեանց, 39:

[21] Արշակ Տէր-Միքելեան, նշ. աշխ., 42 և հջրդ.:

[22] Նույն տեղում, 49 և հջրդ.:

[23] Տե՛ս վերը՝ այս գրքի առաջին մասի Գլ.Ե., ծնթ. 7 և երկրորդ մասի Գլ. Բ, ծնթ. 7-12: Յմմտ. Օրմանեան, Ազգապատում, էջ 1480 (§ 1018):

[24] Նամականի, 5 և հջրդ.:

*Տուտեորդու թղթերից մեզ է հասել միայն մեկը՝ անվերնագիր*[25], *այստեղ էլ Տղայի պատասխանը չի երևում: Թե՛ այս, թե՛ Գրիգոր Տղայի թղթերը, չափազանց հետաքրքիր են Տուտեորդու գիտական-գրական գործունեությունը բնութագրելու համար:*

*Այն փաստը, որ Հայոց եկեղեցու պետը՝ Տղա կոչված Գրիգոր կաթողիկոսը, հեռավոր Կիլիկիայից խորհրդի համար դիմում է, իր խոսքերով՝ «մեծապես պատվարժան» Սանահնի (և ոչ թե Հաղբատի, ինչպես ընթերցվում է համատեքստում) վարդապետ Գրիգոր Տուտեորդուն, մի կողմից՝ այնպիսի կարևոր հարցերով, ինչպիսիք են Աղվանքի Ստեփանոս կաթողիկոսի անհնազանդությունը և Հայոց եկեղեցիների ավերումը «արևմուտքում», այսինքն՝ հոռոմների (հույների) երկրում, մյուս կողմից՝ խնդրում նրան, որ գրավոր բացատրի նրանց (հոռոմներին) «եկեղեցու կանոնները, Հայոց եկեղեցու դավանանքը», բավական է հաստատել այն դրույթը, որ Գրիգոր Տուտեորդին եղել է ժամանակի ամենաակնառու և անզուգական գիտնականը, ինչպես նաև հակաքաղկեդոնականության ջատագովը:*

*Ի միջի այլոց, երկրորդ թուղթը, ըստ* Արշակ Տեր-Միքելյանի՝ *«Մի հրաշալի ապացույց է, թէ ինչպէս Հայոց կաթողիկոսները հրապարակ էին կանչում իրենց վարդապետներին՝ զինակից լինելու ի պաշտպանութիւն Հայաստանեայց եկեղեցու: Նա, մերժելով օտար եկեղեցու վարդապետների խօսքերը, պահանջում է Հայոց եկեղեցու ս. հայրերի գրութիւններով միայն պաշտպանել Հայոց դաւանանքը. սակայն լաւ գիտենալով, որ Հիւսիսային Հայոց վանքերը հարուստ էին հին գրչագրերով, դիմում է առ Տուտէորդին և նորանից վկայութիւններ խնդրում»*[26]*:*

*Ինչ վերաբերում է Գրիգոր Տուտեորդու թղթերին, ապա դրանք միանգամայն բնորոշ են ժամանակի Հայոց եկեղեցականների մտածելակերպին, որն ուղղված էր միայն և միայն նախնիների ավանդույթների պաշտպանությանը՝ ընդդեմ լատինասիրության, ինչը քաղկեդոնականության դեմ պայքարի նոր էտապներից մեկն էր:*

*Հեղինակն օգտվել է հայ և օտար հետևյալ հեղինակներից՝ 1) Մեսրոպ, Հովհաննես Իմաստասեր [Օձնեցի], «Անանիա մերազգի», Գրիգոր Լուսավորիչ, 2) Աթանաս Մեծ, Գրիգոր Սքանչելագործ, Պրոկղ, Երինեոս, Եփրեմ [Ասորի], Թեոդորիտոս Անկյուրացի,*

---

[25] Արշակ Տէր-Միքէլեան, նշ. աշխ., 59 և հջրդ.:

[26] Նույն տեղում, 57.

Գրիգոր Աստվածաբան, Կյուրեղ Երուսաղեմցի, Տիմոթեոս [Կո՞ւզ], Հովհան Ոսկեբերան, Դիոնիսիոս [Արիոպագացի]: Սրանցից բացի, նա օգտվել է նաև հետևյալ հեղինակների գործերից՝ 1) Վարդանի, Գրիգոր Նահատակ[ասեր]ի, [Գրիգոր նույնը՝ Գևորգ] Մեղրիկի, Կիրակոս Դրազարկեցու (՞), [Հովհաննես] Կոզեռնի, և 2) Դիոսկորոսի, Պետրոս Ուրացողի (Մկածրվեցու) և ուրիշների:

Բոլոր այս անձերից ուշադրության արժանի է հատկապես «Անանիա մերազգի»-նը, ով, թերևս, Անանիա Սանահնեցին է:

Հայ-վրացական հարաբերությունների վերաբերյալ Գրիգոր Տուտեորդու նամակը ոչինչ չի տալիս. նրանում խոսք անգամ չի առվում վրացիների մասին, եթե հաշվի չառնենք, երբ հեղինակը հայերի,՝ հրեաների և պարսիկների հետ կապված հիշատակում է նաև նրանց՝ «ընդ ո՞ւմ՝ ընդ Հայո՞ց, ընդ Վի՞րս, ընդ Եբրայեցի՞ս, թէ ընդ Պարսի՞կս»[27]:

Գրիգոր Տուտեորդին գրագրություն է ունեցել նաև Ներսես Լամբրոնացու հետ: Այս մասին մեզ հուշում է Ներսեսի պատասխանը. «Տեառն Ներսիսի Լամբրօնացւոյ եւ արքեպիսկոպոսի Տարսոնի Կիլիկ[ի]ոյ՝ Պատասխանի թղթոյն վարդապետին Տուտէորդւոյ և նորին նմանեաց Ձորագետացւոցն և Յաղբատացւոցն»[28]: Թեև իր՝ Տուտեորդու նամակը, ցավոք, չի պահպանվել:

Վերջում անհրաժեշտ է նշել, որ Ներսես Լամբրոնացու՝ Կիլիկիայի Լևոն Թագավորին հղված թղթում կա մի հատված, որտեղ ձորագետցիներին բնութագրում է որպես «տխմար և անկարգ և յիմար բանից շաղակրատողք»[29], իսկ Գրիգոր Տուտեորդուն և Դավիթ Քոբայրեցուն նույն հեղինակը բնորոշում է հետևյալ խոսքերով. «եւ ի Ձորոյգետ գերկուց արանց, որք իբրև գչունս լիրբս հաչեն...»[30]:

27 Նույն տեղում, 66.

28 Տե՛ս վերը՝ այս գրքի առաջին մասի Գլ. Ա., ծ. 11-13:

29 Ներսիսի Լամբրոնացւոյ. ևլն., 208-209, 223-224:

30 Նույն տեղում, 232:

## ԳԼՈՒԽ Գ.

## ՎԱՐԴԱՆ ՀԱՂԲԱՏԵՑԻ ԵՎ ԴԱՎԻԹ ՔՈԲԱՅՐԵՑԻ. ԵՐԿՐՈՐԴ ՎԱՐԴԱՆԸ

*«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների»՝ Գրիգոր Տղայի ն 1184-1185 թվականներին գրված թղթում, Եփրեմ Ասորու «Ճառք եւ Մեկնութիւն համաբարբառ Աւետարանաց» աշխատության հայերեն տարբերակի 1195 թ. ձեռագրի հիշատակարանում և մոտավորապես 1205 թ. Լոռում հրավիրված եկեղեցական ժողովի մասնակիցների ցուցակում, ինչպես ցույց ենք տվել վերը, միասին հիշատակվում են Վարդանը և Դավիթ Քոբայրեցին, երկուսն էլ Հաղբատից:*

*Նրանցից մեկը՝* Վարդան Հաղբատեցին, *1195 թ. հիշատակարանում ներկայացված է «նորերս վախճանված»: Ահա ինչու, մոտավորապես 1205 թ. Լոռու ժողովի մասնակիցների ցուցակի Վարդանը ուրիշ Վարդան Հաղբատեցի պետք է եղած լինի, իսկ այս Վարդանին կարելի է համարել ԺԲ. դարի գործիչ, մահվան տարին՝ որպես* terminus ad quem *(սահման առ որ) 1194-1195 թ.*[1]*:*

*ԺԲ-ԺԳ. դարերի ընթացքում մի քանի Վարդանի գոյության բացահայտումը չափազանց բարդ խնդիր է, ինչը մեկ անգամ չէ, որ առաջադրվել է գիտական գրականության մեջ*[2]*: Այս խնդիրը դեռևս լուծում չի ունեցել:*

*Հաղբատի գերեզմաններից մեկի արձանագրությունը, որ կարդացել է* Հովհաննես Ղրիմեցին, *և որը, ինչպես երևում է, նրանից հետո ոչ ոք չի տեսել, ունի հետևյալ բովանդակությունը. «Թուին ՈԻ., Վարդան»*[3]*՝ «620 <=1171>, Վարդան»: Եթե վստահենք* Ղրիմեցու

[1] **Ն. Ակինյանը** (Մատ. հետազ., 73) նրա մահը թվագրում է 1191-1194 թվականներով:

[2] Յաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի լուսաբանեալ, Վնտ., 1862, յառաջաբան, էջ Ա-ԺԱ., **Н. Марр**, Сборники притч Вардана. Материалы для средневековой армянской литературы, т. I, СПб., 1899, стр, 283-286, **Գարեգին Յովսէփեան**, Ջագավանից ժողովը.- «Շողակաթ», Ա., էջ 29-33, Կնիք հաւատոյ, էջ CX-CXVI; **Ն. Ակինեան**, Մատ. հետազ., 68-77:

[3] **Յովհ. Ղրիմեցի**, 40: Այս արձանագրությունը չեն հիշատակում **Ջալալյանցը**, **Երզնկյանը**, **Լալայանը**, **Կոստանյանցը**: Մենք նույնպես այն տեղում չգտանք:

*տեղեկությանը, կստացվի, որ Վարդանը վախճանվել է 1171 թվականին: Եթե այդպես է, պետք է ենթադրել, որ սա նույնպես ուրիշ Վարդան է և ոչ այն Վարդանը, ով 1195 թ. հիշատակվում է որպես «նորերս վախճանված»: Բայց* Ն. Ակինյանի *կարծիքով՝ հնարավոր է, որ այս արձանագրության մեջ տասնավոր արտահայտող Ի՝ 20 թվի փոխարեն եղել է Խ՝ 40*[4]*: Այս դեպքում արձանագրությունը կկարդացվեր՝ «Թուին ՈԽ., Վարդան»՝ «640 <=1191> թ., Վարդան»: Այս տարեթիվը կմոտենար Վարդան Հաղբատեցու մահվան* terminus ad *quem 1194-1195 թվականին:*

Կարապետ Տեր-Մկրտչյանը *նշում*[5] *է, որ Հաղբատ-Սանահնի խմբակում ԺԱ-ԺԳ. դարերի սահմանագծում մի քանի Վարդան է եղել, որոնցից մեկը Սանահնի 1211 թվականի արձանագրության մեջ*[6] *հիշատակված է որպես Սանահնի առաջնորդ՝ «առաջնորդ սուրբ ուխտիս հայր Վարդան»: Այս Վարդանը, նույն հեղինակի կարծիքով, «կարող էր Լոռու ժողովին մասնակից եղած լինել»*[7]*:*

*Այսպիսով, մինչև 1195 թվականը վախճանված Վարդան Հաղբատեցին չէր կարող 1205 թ. Լոռում գումարված ժողովին մասնակից լինել. «Վարդան Լօռւոյ ժողվոյն ներկայ չէ գտնուած՝ արդեն վախճանած ըլլալով»*[8]*, այսինքն՝ ԺԲ-ԺԳ. դարերի սահմանագծում հայտնի են եղել նվազագույնը երկու Վարդան Հաղբատեցի:*

*Ինչ վերաբերում է մինչև 1194-1195 թվականը իր մահկանացուն կնքած Վարդանի գիտագրական գործունեությանը, ապա այդ մասին որոշակի ոչինչ ասել հնարավոր չէ:* Ն. Ակինյանը *կարծում է, որ նա պետք է գրվածքներ ունենար, բայց «դժուարութիւնն կը ծագի յատկապէս այն հանգամանքէն, որ և իրմէ ոչ շատ վերջն, մանաւանդ թէ նոյն իսկ իրեն ժամանակ ծաղկեցան համանուն ուրիշ վարդապետներ ալ. Վարդան Այգեկցի, Վարդան Արեւելցի, որ եւ Մեծն Վարդան Բարձրաբերդցի»: Ահա թե ինչու, անհրաժեշտ է «որոշել Վարդան անուն կրող անթիւ երկասիրութեանց մէջէն իրեն գրածները»*[9]*:*

*Քանի որ այս հարցերը վճռված չեն, իսկ մենք հնարավորություն չունենք դա անելու, մեզ մնում է վկայել Վարդան Հաղբատեցու՝ հայ գրականության պատմության ասպարեզում տարբեր անձանց*

---

[4] **Ակինեան**, Մատ. հետազ., 74:

[5] Կնիք հաւատոյ, էջ CX և հջրդ.:

[6] **Ջալալեանց**, Ա., 24-25 = **Կոստանեանց**, 52:

[7] Կնիք հաւատոյ, CXI:

[8] **Ակինեան**, Մատ. հետազ., 72, ծնթ. 1, Կնիք հաւատոյ, CXI:

[9] **Ակինեան**, Նշ. աշխ., 75:

*հեղինակած գրվածքները, ինչի մասին խոսում է Ներսես Շնորհալու «Բարձրացուցէք»-ի հիշատակարանի հետևյալ տողը՝ «ի խնդրոյ Վարդան վարդապետի, որ կայ ի Հաղբատ ի դամբանի»*[10]:

*Առայժմ բավարարվում ենք այսքանով և չենք շարունակում փնտրտուքը, թե հատկապես որ Վարդանն է վախճանվել 1191 թ. մինչև 1194-1195 թվականը (ըստ* Ն. Ակինյանի՝ *1191-1194), թե ով է ողջ եղել մոտավորապես մինչև 1205 թվականը, ինչպես ենթադրում է ԺԷ. դարի գրող* Դավիթ Բաղիշեցին, *երբ հիշատակում է սաղմոսների մեկնիչ Վարդան Հաղբատեցուն՝ «Վարդան վարդապետ Հաղբատեցի, որ մեկնեաց զսաղմոսն»*[11] *կամ* Թովմաս Վանանդեցին, *ով Հաղբատում հուղարկավորվածների շարքում նշում է «Վարդան մեկնիչն քաջաբան»*[12]:

***

*Դավիթ Քոբայրեցուն, չգիտես ինչու,* Ն. Ակինյանը *համարում է Դավիթ Հաղբատեցու աշակերտը: «Դաւիթ Քոբայրեցին իւր <Վարդանի> աշակերտն էր», «Դաւիթ կ՛աշակերտի հոս <ի Հաղբատ> առ ոտս Վարդանայ և Պետրոսի», կամ «Վարդան Հաղբատացին և իւր աշակերտն Դաւիթ Քոբայրեցին»*[13]*,- ասում է առանց հիմնավորելու, եթե ոչ երկուսի հանդեպ, ամեն դեպքում՝ Վարդանի հանդեպ համոզված:*

*Եվ, իսկապես, ոչ մի տեղ չի արձանագրվել, որ Դավիթը եղել է Վարդանի աշակերտը, սակայն չէ՞ որ նա եղել է Պետրոսի աշակերտը՝ ինչը ոչ մի կասկած չի հարուցում, քանի որ Եսայու «Մարգարեության» Հովհան Ոսկեբերանի մեկնության հայերեն տարբերակի նախաբանում նա հիշատակված է իբրև «Դաւիթ ոմն վարդապետ յերկոտասաներորդ դարու, որ ի յորդորանաց Պետրոսի վարդապետի իւրոյ գրեաց զծաղկաքաղ մեկնութիւն իւր Եսայայ»*[14]*: Այս տեղեկության համաձայն՝ Վարդանը պետք է մահացած լիներ ոչ ուշ, քան 1194-1195 թվականները (կամ 1191-1194 թվականների ժամանակամիջոցում), իսկ Դավիթը մոտավորապես 1205 թվականին*

[10] **Ակինեան**, նշ. աշխ., 83-84, հմմտ., 70-71, հմմտ., **Աղանեանց**, Հնից-նորից, 14:

[11] **Գիւտ Աղանեանց**, Դիւան հայոց պատմութեան, Ժ., էջ 42:

[12] Տե՛ս վերը՝ այս գրքի առաջին մասի Գլ. Զ., ծնթ. 33. առհասարակ Վարդանի մասին տե՛ս **Ակինյան**, նշ. աշխ., 63-77:

[13] **Ակինյան**, նշ. աշխ., 68, 45, 59:

[14] Երանելւոյն **Յովհաննու Ոսկեբերանի** Մեկնութիւն Եսայեայ մարգարէի, Վնտ., 1880, էջ ԺԵ., հմմտ., Ա., **Ղազիկեան**, Հայկական նոր մատենագիտութիւն, Բ., 104, **Ակինեան**, նշ. աշխ., 50:

*կենդանի է եղել: Ուրեմն՝ կարող ենք հանգել եզրակացության, որ ժամանակագրորեն Դավիթը հաջորդում է Վարդանին, և ոչ թե հակառակը, ճիշտ այնպես, ինչպես նույն այս Դավիթը՝ իր վարդապետին կամ էլ վարդապետներից Պետրոսին:*

Ն. Ակինյանն *անդրադառնում է Դավթի մականվանը և նշում բոլոր այն ձևերը, որոնց նա հանդիպում է հայ գրականության մեջ՝ Կիրակոս Գանձակեցի՝ Քոբայրեցի, Ներսես Լամբրոնացի՝ Քոբարեցի և Գրիգոր Աբբասորդի՝ Քոբերեցի*[15]*: Այս մականունը ըստ* Ն. Ակինյանի՝ *«որ անշուշտ կ՚ուզէ նշանակել, թէ Դաւիթ իւր միանձնական կենաց սկիզբն ըրած է Ձորագետոյ ափանց վրայ՝ Այգեհատ գիւղի կից* Քոբայր (Քոբար) *կամ վրացերէն* Քոբեր *ԺԲ. դարու անուանի գեղեցկադիր մենաստանն»*[16]*: «Եղա՞ծ է Հայրենիքն ալ այս կողմերն, կը լռեն այս մասին աղբերք, ինչպես նաեւ թէ ո՚րչափ ժամանակ կրօնաւորած է հոս Դաւիթ... ԺԳ. դարու վերջերն անցած կ՚երեւայ Քոբայրէն ոչ շատ հեռու, բայց աւելի մեծ եւ հռչակաւոր, նոյնպէս Ձորոգետոյ ափանց վրայ տարածուող «մայրավանքն» Հաղբատ: Շարժառիթն, որով հեռացաւ նա Քոբայրէն ծանօթ չէ, բայց անտեղի չէ կարծել թէ հրապուրուած Հաղբատայ «մայրաքաղաք»ի անունէն, որ կենդրոնն էր ԺԲ. դարու հիւսիսային Հայաստանի հոգեւոր եւ մտաւոր բարգաւաճման և հանգստարանն Յովհաննես Սարկաւագ վարդապետի ոսկերաց»*[17]*:*

*Քոբայրը (Քոբար), Քոբեր, ինչպես արդեն պարզել ենք*[18]*, ԺԲ. դարում մայրավանք էր, ուստի տարօրինակ է* Ն. Ակինյանի *կարծիքը, թե, իբր, Դավիթն այստեղ է անցկացրել իր ճգնավորական կյանքի սկիզբը, այդ պատճառով է ընտրել Քոբայրեցի անունը: Դրանից բացի, Դավիթը կոչվել է նաև Հաղբատեցի: Պետք է ենթադրել, որ Դավիթը Քոբայրեցի է կոչվել ոչ թե վանքի պատճառով, այլ այն գյուղի անունով, որտեղ ծնվել է. Քոբեր գյուղատեղին այժմ էլ հայտնի է նույն անունը կրող երկաթուղային կայարանով:*

*Դավթի ինչպես ծննդյան, այնպես էլ մահվան թվականներն անհայտ են: Գիտենք՝ նա մահկանացուն կնքել է Լոռու ժողովից առաջ: Ուրեմն՝ 1205 թվականը համոզված կարելի է ընդունել իբրև նրա մահվան* terminus ad guem *թվական: Թաղված է Հաղբատի դամբարանում (տե՛ս նկ. Հմր 2, և նրա գերեզմանաքարի վրա երկաթագիր տառերով խառն փորագրված է՝*

---

[15] Ակինյան, Նշ. աշխ., 44:
[16] Նույն տեղում, 44.
[17] Նույն տեղում, 44-45.
[18] Լևոն Մելիքսեթ-Բեկ, Քոբեր, 60-61:

*«ՀԱՒՐ ՄԵՐՈ ՀՈԳԵՒՈՐԻ /*
*ԴԱՒԹԱ Վ[Ա]ՐԴ[ԱՊԵՏ]Ի ՔՈԲԱՅՐԵՑՈ Է ՏԱՊԱՆՍ.*
*ՅԻՇԵԱ Ի Տ[Է]Ր / Մ[ՈՒՐ]ԲՍ»*[19]:

* * *

*Դաւիթ Քոբայրեցու գիտագրական գործունեության բնութագրությունը մեծ դժվարություն ունի, քանզի նրան վերագրվող բազմաթիվ երկերից մի երկուսն են* Դավիթ Քոբայրեցու *անունով հայտնի, մյուսները պատկանում են* Դավիթ վարդապետին *կամ* Դավիթ քահանային[20], *որոնց նույնությունը Դաւիթ Քոբայրեցու հետ դեռևս պարզված չէ:*

Ն. Ակինյանը *Դաւիթ Քոբայրեցուն վերագրում է հետևյալ աշխատությունները՝ 1) Մեկնութիւն Յոբայ Գրոց, 2) Եսայեայ մեկնութիւն, 3) Ի բանն Մաղաքեայ, 4) Թելադրութիւն յաւետարանն Մատթէի՝ ի պէտս ատենաբանութեան, 5) Ի սքանչելի վկայն Քրիստոսի Յովսէփ պատանի, որ յԱյրարատայ նահանգէն, ներբողեան գովեստի, 6) Լուծմունք և պատճառք Գրիգոր Աստուածաբանի ճառից, 7) Գրիգոր Նիւսացւոյ ճառից պատճառները, 8) Բարսղի Կեսարացւոյ գրութեանց պատճառք, 9) Փիլոնի գրութեանց պատճառք, 10) Պատճառ Սահմանաց գրոց, 11) Պատճառք աւագ բարեկենդանին, 12) Պատճառ նաւակատեաց եկեղեցւոյ, 13) Ներբողեան ի սուրբ խաչն Քրիստոսի, 14) Որքանութիւն թուոնց նահապետանց և առաջնորդացն Իսրայելի յԱբրահամէ մինչև ի վերջին գերութիւնն Երուսաղէմի*[21]:

*Այդ աշխատանքներից մի քանիսը, թեկուզ 10-րդը, հիշեցնում են անունով հայտնի երկերը, ուստի, բնականաբար, կասկած է ծագում՝ դրանք Դաւիթ Անհաղթի՞ն են պատկանում, ո՞ւմ Դաւիթ վարդապետի՞, թե՞ մեկ ուրիշ Դաւիթ քահանայի: Ահա ինչու,* Ն. Ակինյանի *ներկայացրած ցուցակին մեծ զգուշությամբ պիտի վերաբերվենք:*

*Անժամբ մենք Դաւիթ Քոբայրեցուն ենք վերագրում այն երկերը, որոնք ճշտիվ Դաւիթ* Քոբայրեցու *անունն են կրում:*

*1) «Մեկնութիւն Յոբայ Գրոց». այս թեմայով հայ գրականության մեջ եղել է մի քանի երկ, դրանց թվում՝ Իսիքիոսին*[22] *և Դավ-*

---

[19] Մինաս Բժշկեանց, Ճանապարհորդութիւն ի Լեհաստան, էջ 80 (§ 126) = Յովհ. Դրիմեցի, 40 = Երզնկեան, 54 = Լալայեան, 409 = Ակինեան, 48:

[20] Ակինյան, նշ. աշխ. 48:

[21] Նույն տեղում, 48-68, 82-83:

[22] Քերովբէ Չրաքեան, Իսիքիոսի երիցու Երուսաղէմացւոյն Մեկնութիւն Յոբայ, Վնտ., 1912:

թին (Քոբայրեցո՞ւն) պատկանող, որոնցից ԺԳ. դարում օգտվել է Յովհաննես Վանականը: Վենետիկի Մխիթարյան միաբանությանը պատկանող մեկ ձեռագրում կա հետևյալ հիշատակարանը՝

«Կատարեցաւ Եւսիւքին, և այժմ Դաւիթ վարդապետին, որ Քոբայրեցի կոչիւր»[3]:

2) «Փիլոնի գրութեանց պատճառք» վերնագրի տակ նշված է, որ այն պատկանում է «Դաւթի վարդապետի Քոբերեցո»[23]:

3) «Որքանութիւն թուոցն նահապետացն և առաջնորդացն Իսրայէլի յԱբրահամէ մինչև ի վերջին գերութիւնն Երուսաղէմի. ժամանակ ունողութեան նոցա. հաւաքմունք ի Դաւթայ վարդապետէ Քոբայրեցի կոչեցելոյ»[24]:

Ի միջի այլոց, անորոշ է հեղինակը Եսայու «Մարգարեության» ծաղկաքաղ-մեկնության, որի նախաբանում ասված է. «Դաւիթ ոմն վարդապետ յերկոտասաներորդ դարու... ի յորդորանաց Պետրոսի՝ վարդապետի իւրոյ՝ գրեաց զծաղկաքաղ մեկնութիւն իւր Եսայեայ»[25]:

Գ. Զարբհանալյանին թվացել է, թե այս առաջաբանում հիշատակված «ոմն Դաւիթ վարդապետը» «Դավիթ վարդապետն է»[26] կամ «Դավիթ քահանան»[27], իսկ Ն. Ակինյանին՝ Դավիթ Քոբայրեցին[28]:

Վերջում պետք է նշել, որ Դավիթ Քոբայրեցին, Գրիգոր Տուտեորդու հետ միասին, կարող է համարվել այսպես կոչված «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» ղեկավարներից մեկը, ով պայքարեց Կիլիկիայի հայ կառավարող շրջանների և հոգևոր խմբերի՝ օտարասեր ուղղության դեմ: Հենց այդ պատճառով Դավիթը և Գրիգորը Ներսես Լամբրոնացու կողմից ենթարկվեցին այնպիսի ծաղրի, ինչպիսին է՝ «Ովքե՞ր են Ձորոգետում՝ Տուտէորդի՞ն և Քոբայրեցի՞ն»[29], կամ թե՝ «եւ ի Ձորոյգետ զերկուց արանց, որք իբրև զշունս լիրբս հաչեն»[30]:

---

[23] Ակինյան, նշ. աշխ., 65, Տաշեան, Ցուցակ, 224:

[24] Յամաձայն Սեբաստիայի հայերեն ձեռագրերի հավաքածուի Յոր 221-ի, որը նկարագրված է Թորգոմ Գուշակյանի կողմից, և դեռ անտիպ է, օգտվում ենք Ն. Ակինյանի տեղեկություններից (Ակինեան, նշ. աշխ., 83):

[25] Երանելւոյն Յովհաննու Ոսկեբերանի Մեկնութիւն Եսայեայ մարգարէի, Վնտ., 1880, էջ ԺԵ, Ա. Ղազիկյան, նշ. աշխ., Բ., 104, Ակինյան, նշ. աշխ., 50:

[26] Գ. Զ[արբհանալյան], նշ. աշխ., 703:

[27] Նույն տեղում, 704:

[28] Ակինյան, նշ. աշխ., 50, սրան հակադրված է՝ Ք. Չրաքյան, նշ. աշխ., ԼԸ-Խ., առհասարակ Դավթի մասին տե՛ս Ակինյան, նշ. աշխ., 44-68:

[29] Ներսիսի Լամբրոնացւոյ Ատենաբանութիւն. նշն., 223:

[30] Նույն տեղում, 232.

# ԳԼՈՒԽ Դ.

## ԳՐԻԳՈՐ ՈՐԴԻ ԱԲԱՍԱՅ

*Գրիգոր Աբասարդին թեև վերոբերյալ ցուցակներից և ոչ մեկի մեջ չի հիշատակվում, բայց և այնպես անդրադառնում ենք նրան՝ իբրև ԺԲ-ԺԳ. դարերի աչքի ընկնող գործիչներից մեկի, որով, ցավոք, ընդհատվում են պատմագրական տեղեկությունները Հաղբատ-Սանահնի խմբակի մասին առհասարակ:*

*Եվ, իսկապես, 1184-1185 թվականներին կազմված ցուցակի երկրորդ տեղում հիշվում է Գրիգոր Սանահնեցին, բայց այս Գրիգորը, մեր համոզմամբ, Գրիգոր Տուտեորդին է, ոչ թե Գրիգոր Աբասարդին, հետևյալ նկատառումներով. 1) Գրիգոր Տուտեորդին և Գրիգոր Աբասարդին տարբեր ժամանակների գործիչներ են, թեև նրանք երկար ժամանակով չեն հեռու իրարից, 2) Գրիգոր Աբասարդին հիշատակված չէ ո՛չ 1195, ո՛չ էլ 1205 թվականների ցուցակներում, մինչդեռ Գրիգոր Տուտեորդին, թեև վախճանված, այդուհանդերձ հիշվում է 1205 թ. ցուցակում, 3) Կիլիկիայի խմբակների դեմ սկիզբ առած վեճերում ընդհանրապես հիշատակվում է Գրիգոր Տուտեորդին, ոչ թե Գրիգոր Աբասարդին, որոնցից առաջինը, ի դեպ, հայտնի է իբրև 1184-1185 թթ. թղթի գրելուն մասնակից, նմանապես անհատական ելույթով կիլիկեցիների դեմ, 4) Գրիգոր Աբասարդու անունն առհասարակ կապված չէ այն բանավեճին, որ ԺԲ. դարում գոյություն ուներ Հաղբատ-սանահինցիների և կիլիկեցիների միջև: Բոլոր նկատառումներից ելնելով՝ անհրաժեշտ համարեցինք նշել, որ 1184-1185 թթ. ցուցակում հիշատակվածը Գրիգոր «Տուտեորդին» է, ոչ թե Գրիգոր Աբասարդին:*

*Գրիգոր Աբասարդու անունը սերտորեն առնչվում է այն կապիտալ աշխատությանը, որը կոչվում է «Գիրք պատճառաց» - Liber causarum: Մինչև* Ներսես Ակինյանի *հատուկ ուսումնասիրություն հրատարակելը*[1]*, նրա ինքնությունը ամբողջովին մշուշապատ էր: Հովսեփ Գաթրճյանը կարծում է, որ այդ աշխատությունն, այն-*

[1] Ն. Ակինեան, Մատ. հետազ., էջ 1-43: Գրիգոր որդի Աբասայ, էջ 1-11, Պատճառաց գիրք, էջ 11-43:

պես, ինչպես հասել է մեզ, անպայման պետք է գրված լինի 880 թվականից հետո[2]: Յակոբոս Տաշյանը, նկատի ունենալով, որ «Գիրք պատճառացի» հեղինակը քաջածանոթ է Դիոնիսիոս Արիոպագացու կյանքի հայերեն տարբերակին, որը բժիշկ Հովհաննեսը հունարենից թարգմանել է հայերեն 869//880 թ.,[3] եզրակացնում է, որ հիշյալ գիրք-ժողովածուն «իրականացվել է 869 կամ 880 թվականից հետո»[4], թեև Տաշյանը միաժամանակ իրավացիորեն նշում է, որ Գրիգորի աշխատության մեջ «կան նաև կէտեր՝ որ աւելի ուշ ժամանակի մէջ կը վերաբերին»[5]: Մեսրոպ Տեր-Մովսեսյանը հնարավոր է համարում «Գրիգոր որդի Աբասայ» և եղբեստրոսի վարքի» հայերեն 678 թ. թարգմանության «Աբասուն[6] Գրիգորի Ձորափորեցւոյ»[7] նույնականացում: Նա այդ աշխատությունը գրելու terminus ad guem հայտարարում է Թ. դարը. «А IX век считаем последним сроком книги Григория по той причине, что, если бы жил позже, то пользовался бы сочинениями, написанными или переведенными позже IX века»[8],- այսպես էր գրում 1902 թ.: Իսկ 1904 թ. նա ասել է. «Գրիգոր Աբասաորդի եպիսկոպոսի <sic> ժամանակաշրջանը մեզ համար տարօրինակ է. եթե նա Հռոմի Սեղբեստրոս եպիսկոպոսի վարքի թարգմանիչն է, որին անվանում են նաև «Աբաս որդի Գրիգորի <sic> և եպիսկոպոս Ձորափորեցի», ուրեմն նա յոթերորդ-ութերորդ դարերի հեղինակ է, բնականաբար նույն ժամանակի է նաև իր իսկ կազմած «Գիրք պատճառացը»,- որտեղ գտնում ենք Հովհան Ոսկեբերանի Մեկնության առաջին բնագրից մի կտոր, իսկ եթե

[2] Յ. Գաթրճեան, Սրբազան պատարագամատոյցք Հայոց, հանդերձ յաւելուածովք ի Յ. Տաշեան, Վն., 1897, էջ 178:

[3] Յմմտ. Գ. [Զարբհանալեան], Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց, 382:

[4] Տաշեան, Ցուցակ, 224:

[5] Յ. Գաթրճեան, Նշ. աշխ., էջ 178, ծնթ. 1:

[6] Այս բառը Յ. Օրբելին (И. Орбели, Две строительные надписи князей Камсараканов.- ХВ, III, 1914, стр. 305-306, прим. 4) ոչ թե որպես հատուկ անուն է ընդունում, այլ հասարակ՝ աբբա, աբաս նշանակությամբ: Յմմտ. Մխիթարայ Գոշի Դատաստանագրքի Ա. մասի 113-րդ հոդվածը (Մխիթարայ Գոշի Դատաստանագիրք Հայոց, էջ 269 և ծնթ. 588): Վրացական աղբյուրներում Աբբա-Ամբաղ Ալավերդելի էր կոչվում:

[7] Սոկրատայ Սքոլաստիկոսի Եկեղեցական Պատմութիւն թարգմանեաց Փիլոն Տիրակացի և Պատմութիւն վարուց սրբոյն Սեղբեստրոսի եպիսկոպոսին Հռովմայ, թարգմանեալ Աբասուն Գրիգորի Ձորափորեցւոյ, հատոր Ա. և Բ., աշխատասիրութեամբ Մեսրոպ Տէր-Մովսէսեանի, Վաղ., 1897, էջ ժէ., ինչպես նաև վերնագիրը 690-691 էջերի միջև:

[8] Месроп Тер-Мовсесян, История перевода Библии на армянский язык, СПб., стр. 232.

*նման մտայնությունը ճիշտ չէ, այդ դեպքում «Գիրք պատճառացի» գրության ժամանակը իններորդ դարից չի անցնում»*[9]*:*

*Մի խոսքով՝ ըստ Գաթրճյանի և Տաշյանի՝ Գրիգոր Աբասաորդին պետք է ապրած լինի Թ. դարի երկրորդ կեսից ոչ շուտ, գուցեև Ժ. դարում, իսկ Տեր-Մովսիսյանի ենթադրությամբ՝ Թ. դարից ոչ ուշ:*

*Միանգամայն իրավացի է* Ներսես Ակինյանը, *ով Գրիգոր Աբասաորդու ինքնությունը ճշտելու նպատակով դիմում է վիմագրական նյութերին, մասնավորապես՝ Սանահնի արձանագրություններին:*

Ն. Ակինյանը *նախ և առաջ ուշադրություն է դարձնում այն հանգամանքի վրա, որ անցյալում (Ե-Ը. դդ.) հայտնի հայրերից և մատենագիրներից բացի «Գիրք պատճառաց»-ում օգտագործված են «Դավիթ վարդապետի» կամ «Դավիթ վարդապետ Քոբայրեցու» անունով մեզ հասած հորդորները և նրանից ավելի ուշ՝ Մխիթար Գոշի գրվածքները*[10]*: Քանի որ Մխիթար Գոշը վախճանվել է 1213 թ., ապա այս հանգամանքը թույլ է տալիս ասելու, որ «Գիրք պատճառացի» հեղինակը ապրել և ստեղծագործել է* այդ թվականից հետո կամ ոչ ավելի վաղ, *քան հիշյալ թվականը...*[11]*:*

*Այս դրույթները զարմանալիորեն համընկնում են ԺԳ. դարի սկզբի Սանահնի և Մակարավանքի մի քանի այն արձանագրությունների հետ, որոնցում ուղղակի հիշատակված է «Գրիգոր Վարդապետ՝ որդի Աբասայ»:*

*Նախ՝ այսպիսին է Սանահնի վանքի Աստվածամոր եկեղեցու մատուռի հարավային պատի արձանագրությունը, որտեղ Գրիգորն իր մասին ասում է. «Ի թուի[ն] հայոց ՈԿԶ. <1217>, | ես՝ Գրիգոր վարդապետ, որդի Աբասայ*[12]*, առաջնորդ ս[ուրբ]ք ուխտիս, եդու | յԱ[ստուա]ծածինս խաչ մի մեծ, ԺԳ. (13)*[13] *գիրք: Գրեցաւ ինձ սրբոյն Բարսղի տաւնին ամէն | եկեղեցիքս՝ մինչ ի կատարած աշխարհի: Որք յաւժար կամաւք կատար|են գխնդիրս իմ՝ աւրհնին յԱ[ստուծո]յ, իսկ թէ ոք խափանել ջանայ՝ նզովս | առցէ յԱ[ստու-*

---

9 Մեսրոպ վ. [Տէր-Մովսէսեան], Նիւթեր ս. Գրքի ուսումնասիրութեան.- Ա, 1901, էջ 217:

10 Ակինեան, Մատ. հետազ., 4.- սրան առաջին անգամ ուշադրություն է դարձրել **Մեսրոպ Տեր-Մովսեսյանը** (Նիւթեր Ս. Գրքի ուսումնասիրութեան, 217-218):

11 Ակինեան, Նշ. աշխ., 4. հմմտ. **Բաբգէն** եպ. [Կիւլէսէրեան], Նախադրութիւն ս. Գրոց և Գէորգ Լամբրոնեցի կամ Սկեռացի.- ՅԱ, 1915, էջ 72:

12 **Ս. Ջալալյանցը** (Ա., 20) այս անվանումը սխալմամբ կարդում է՝ Սմբատայ, սրանով է բացատրվում նաև **Կոստանյանցի** սխալը (Կոստանեանց, 60), հմմտ. **Յովհ. Դրիմեցի**, էջ 57, ծնթ. 1:

13 **Ս. Ջալալյանցը**՝ Նշ. աշխ., նույն տեղում սխալմամբ կարդում է՝ ԾԴ. = 54 (sic):

*ծո]յ եւ յամենայն սրբոց: Եւու եւ այլ արդիւնք»*[14]:

*Սանահնի վանքի Ամենափրկիչ տաճարի գմբեթի ներսի արևել-յան կողմում երկու տողով կարդացվում է՝*

## ՁԳՐԻԳՈՐ ՎԱՐԴԱՊԵՏՍ ՈՐԴԻ [ԱԲԱՍ]ԱՅ ՅԻՇԵՍՋԻՔ Ի Ք՛ Ս Յ՛ Ս

*«Զ Գրիգոր վարդապետս՝ որդի [Աբաս]այ՝ յիշեսջիք ի Ք[րիստո]ս Յ[իսու]ս»*[15]:

*Աբասաորդի Գրիգորը թաղված է վերոհիշյալ ս. Աստվածածին եկեղեցու դրսի պատին մոտ և նրա գերեզմանաքարին գրված է (մեկ տող)՝*

## ԳՐԻԳՈՐ Մ՛ Բ Վ՛ԴՏ ՈՐԴԻ ԱԲԱՍԱՅ

*«Գրիգոր ս[ուր]բ վ[ար]դ[ապե]տ՝ որդի Աբասայ»*[16]:

*Մակարավանքի արձանագրության մեջ նույն Գրիգորը ասում է. «Ես՝ «Գրիգոր վարդապետ որդի Աբասա իշխանի» տվեցի [Ս. Աստվածածնին] գրքեր և խաչ... [թվին] 666 <=1217> (ուրրկ՝ 686 <=1237)»*[17]:

*Սա մեզ լիովին իրավունք է վերապահում ասելու, որ Սանահնի 1214, 1215 և 1217 թվականների արձանագրություններում հիշատակված «Գրիգոր վարդապետ»-ը*[18] *Գրիգոր Աբասաորդի վարդա-պետն է:*

*Զափազանց ուշադրավ է, թե Աբասաորդի Գրիգորը ինչպես է հիշատակված «Գիրք պատճառաց»-ում: Սրան պատասխանաշ կլի-նենք, եթե ներկայացնենք այս գրքի վերնագիրն ամբողջությամբ.*

---

[14] **Ջալալեանց, Ս.**, 20 = **Յովհ. Ղրիմեցի**, 57 = **Կոստանեանց**, 60:

[15] Այս արձանագրությունը բոլորովին անհայտ է գրականությանը: Այն 1902-1903 թթ. հայտնաբերել է **Սմբատ Տեր-Ավետիսյանը**, ով անձամբ ցույց տվեց, և մենք արձանագրեցինք, բայց **Ս. Տեր-Ավետիսյանը** այս արձանագրությունը վերագրում է Գրիգոր Տուտեորդուն, քանի որ խաթարված խոսքերը վերականգնում է «որդի [Տուտ]այ» տեսքով. իսկ մենք կարծում ենք, որ արձանագրությունը Գրիգոր Աբբասաորդունն է և նույն տեղում կարդում ենք՝ «որդի [Աբաս]այ»: Մասնակիորեն մեր ենթադրության օգտին է խոսում նույն դռան վերոբերյալ գրությունը, որտեղ հիշատակված է Գրիգոր Աբասաորդին, ոչ թե Գրիգոր Տուտեորդին:

[16] Չմմտ. **Յովհ. Ղրիմեցի**, 57:

[17] **Ջալալեանց, Ս.**, 149, **Քաջիկեան**, ճանապարհորդական յիշատակարան.-«Արձ.», 1888 թ., № 9, էջ 132.- թիվ ՈՁՁ. 686 = 1237 (**Ակինեան**. Մատ. հետազ., 78):

[18] **Ջալալեանց, Ս.**, 21, 23, 25 = **Յովհ. Ղրիմեցի**, 55-57 = **Կոստանեանց**, 55, 55–56, 58:

*«Պատճառ լայն և նուրբ[19] գրեանց՝ առեալ ի Հարցն սրբոց և ի վարդապետաց, և ի մի հաւաքեալ և հոգացեալ մեծ րաբունապետին Գրիգորի որդ[ւ]ոյ Աբասայ»[20]:*

*Այս վերնագրում գործածված «մեծ րաբունապետ» տերմինը տարբեր հետազոտողներ ընկալել են տարբեր կերպ. ոմանք՝ եպիսկոպոս, այդ խսկ պատճառով* Մեսրոպ Տեր-Մովսեսյանը՝ *«մեծ րաբունապետին Գրիգորի որդ[ւ]ոյ Աբասայ»-ն թարգմանել է* «великого епископа <*sic*> Григория, сына Абаса»[21], *ոմանք էլ՝ կաթողիկոս, ինչից ելնելով՝* Գարեգին Զարբհանալյանը *աշխատությունը վերագրել է Գրիգոր Անավարզեցուն*[22]:

Ն. Ակինյանի *կարծիքով՝ Աբասաորդի Գրիգորը ո՛չ եպիսկոպոս է եղել, ո՛չ էլ կաթողիկոս, նա պարզապես եղել է «վարդապետ» և «առաջնորդ», Սանահնի վանահայրը, ինչը լիովին համապատասխանում է «Գիրք պատճառացի» վերնագրում նշված նրա տիտղոսին՝ «Մեծ րաբունապետ»*[23]:

*Բայց Գրիգորը երբ է դարձել Սանահնի վանահայր, պատասխանը մեզ տալիս են Սանահնի արձանագրությունները:*

*1211 թ. արձանագրության մեջ հիշատակված է. «առաջնորդ սուրբ ուխտիս Հայր Վարդան եւ վարդապետս Գրիգոր»*[24]*: 1214 թվի արձանագրություններում՝ «առաջնորդ սուրբ ուխտիս Փիլիպոս Հայր և Գրիգոր վարդապետ և միաբանք»*[25]*: Երկրորդում՝ «Գրիգոր վարդապետ՝ առաջնորդ Սանահնիս,-միաբանաւք»*[26]*: 1215-ի արձանագրությունում՝ «Հայր վարդապետ Գրիգոր և Վարդան և ամենայն միաբանքս»*[27]*: Համաձայն 1217 թ. արձանագրության՝ մեկում՝*

---

[19] «Լայն»-ը և «նուրբ»-ը օգտագործված են փոխաբերական իմաստով. տե՛ս М. Тер-Мовсесян, История перевода Библии, 229, **Ակինեան**, նշ. աշխ., 30-31, 33-36:

[20] **Տաշեան**, Ցուցակ, 213, **Գ. Զ[արբհանալեան]**, Հայկական հին դպրութեան պատմութիւն, 779, **Կ[արապետ] Վ. [Տէր-Մկրտչեան]**, Մի հատուած Որոգենէսի գրուածքներից և Պատճառ լայն և նուրբ գրոց ծեռագիրը.- Ա, 1895, էջ 148, М. Тер-Мовсесян, История перевода Библии, стр. 226, 229, **Ակինեան**, Մատ. հետազ., 1:

[21] М. Тер-Мовсесян, նշ. աշխ., 226:

[22] **Գ. Զ[արբհանալեան]**, նշ. աշխ., 778-779, հմմտ. **Ակինեան**. նշ. աշխ., 9-10:

[23] **Ակինեան**, նշ. աշխ., 7:

[24] **Ջալալեանց**, Ա., 24-25 = **Յովհ. Դրիմեցի**, 54-55 = **Կոստանեանց** 52:

[25] **Ջալալեանց**, Ա., 21 = **Յովհ. Դրիմեցի**, 55 = **Կոստանեանց**, 55:

[26] **Ջալալեանց**, Ա., 33 = **Յովհ. Դրիմեցի**, 55-56 = **Կոստանեանց**, 55-56 (վերջին բառերը բոլորը սխալ են կարդացել՝ և միաբանքս, sic):

[27] **Ջալալեանց**, Ա., 25 = **Յովհ. Դրիմեցի**, 56 = **Կոստանեանց**, 58:

*«Գրիգոր վարդապետ՝ որդի Արասայ, առաջնորդ սուրբ ուխտիս»*[28], *երկրորդում՝ «առաջնորդ սուրբ ուխտիս վարդապետս Գրիգոր և միաբանք»*[29]*: 1221 թ. արձանագրությունում՝ «տէր Յովանէս և միաբանքս»*[30] *և 1222 թ-ին՝ «առաջնորդ սուրբ ուխտիս տէր Յովանէս և միաբանքս»*[31]*:*

*Այս բոլոր արձանագրությունները պարզորոշ ցույց են տալիս, որ 1211 թ. Սանահնի վանահայրը եղել է Վարդանը, 1214 թ.՝ Փիլիպոսը և Գրիգորը, 1215-1217 թթ.՝ Գրիգորը, իսկ 1221-1222 թթ.՝ Հովհաննեսը: Ուրեմն՝ Արասաորդի Գրիգորը կարող էր վանահայր դառնալ Փիլիպոսից հետո՝ 1214 թվականին, և նա որպես վանահայր կարող էր պաշտոնավարել 1214-1217 թվականներին: 1217-1221-ի միջև ոչ ոք չի հիշատակվում, իսկ 1221 թվականից հանդիպում ենք Հովհաննես անվանը:*

Ն. Ակինյանը, *ահա թե ինչու, ենթադրում է, թե «հարկ է ընդունիլ թէ 1214 տարւոյն ընթացքին մէջ վախճանելով Փիլիպպոս՝ յաջորդ կարգուած է Գրիգոր որդի Արասայ»*[32]*: Ճիշտ է, նրա իսկ խոսքերով, «Թէեւ մահուան թուականի նկատմամբ յայտնի յիշատակարան մը չունինք, սակայն 1221էն ետքը տակաւին կենդանի անհնար է ենթադրել, երբ Մենաստանիս առաջնորդ կը յիշատակուի Յովհաննէս»*[33]*: Այսպիսով՝* Ն. Ակինյանը *միանում է ակադ.* Մ. Բրոսեին[34], *որը «լաւ նկատած է, թէ հետեւելով արձանագրութեանցս Գրիգոր վախճանած պիտի ըլլայ 1217ի եւ 1221ի մէջէրը»*[35]*: Ամեն դեպքում՝ կասկածելի պետք է համարել, թե Գրիգորը կենդանի կարող էր լինել 1237 թվականին, ինչպես* Քաջիկյանն *է թվագրում Մակարավանքի արձանագրությունը:*

*Ինչ վերաբերում է «Գիրք պատճառացը» գրելու ժամանակին,* Ն. Ակինյանը *դա որոշում է՝ ելնելով Սանահնի արձանագրության տվյալից, որտեղ նշված է Գրիգոր Արասաորդու՝ Սանահնին ընծայած մեկ մեծ խաչի և 13 գրքերի մասին:* Ն. Ակինյանը *ենթադրում է, որ «Գիրք պատճառացի» հեղինակը այն պետք է ավարտած լինի*

---

[28] Ջալալեանց, Ա., 20 = Յովհ. Դրիմեցի, 56-57 = Կոստանեանց, 60:

[29] Յովհ. Դրիմեցի, 57.

[30] Ջալալեանց, Ա., 31 = Յովհ. Դրիմեցի, 57-58 = Կոստանեանց, 64:

[31] Ջալալեանց, Ա., 19 = Յովհ. Դրիմեցի, 58 = Կոստանեանց, 65:

[32] Ակինեան, Մատ. հետազ., 8:

[33] Նույն տեղում

[34] Յովհ. Դրիմեցի, էջ 57, ծնթ. 1:

[35] Ակինեան, Նշ. աշխ., 8:

մինչև 1217 թվականը, որովհետև նա վանքի գրապահոցին ընծայել է 13 գիրք[36]: Ինչպես վերը տեսանք, Գրիգորը 1217-ին գրքեր է նվիրաբերել նաև Մակարավանքին: Բայց մի՞թե այս կամ այն վանքին գրքեր նվիրելու փաստով կարելի է այնպիսի հարց վճռել, ինչպիսին «Գիրք պատճառացը» գրելու ժամանակի հարցն է: Իհարկե՛, ոչ: Ուստի միանգամայն արդարացի է Ն. Ակինյանի երկրորդ ենթադրությունը, այն է՝ Գրիգորը այդ աշխատության վերնագրում «Մեծ Րաբունապետ» է կոչված, իսկ Սանահնի արձանագրությունում՝ «Առաջնորդ և «Վարդապետ», ուրեմն՝ հիշյալ երկը նա պետք է գրած լինի իր «առաջնորդութեան միջոցին», հնարավոր է մինչև 1217 թ., այսինքն՝ նախքան վանքի մատենադարանին գրքեր ընծայելը[37]:

Հովսեփ Գաթրճյանը, անշուշտ, լիովին իրավացի է, երբ Գրիգոր Աբասաորդու «Գիրք պատճառացը» համարում է եզակի երևույթ ամբողջ հայ մատենագրության մեջ՝ «Գիրք պատճառաց գործը բովանդակ հայ մատենագրության մէջ եզական երևույթ մըն է»[38]: Մենք՝ հայերս, «Ունեցած ենք «պատմագրութիւններու, Ս. Գրոց եւ Ս. Հարց գրուածոց բազմաթիւ մեկնութիւններու, հոգեւոր ճառերու ճոխ մատենագրութիւն, բայց ի զուր պիտի որոնենք Գրիգորի Աբասայ որդւոյ ձեռնարկութեան համապատասխան երկրորդ երկասիրութիւն մը»[39]: «Մեր նախնիք առ հասարակ սիրած են «Գրոց գիտութեան անեզր եւ անհաս ծովու (Գիրք պատճառաց, Յուշք.), վրայ նաւել, կարդալ գրքեր, պատմագրել ժամանակակից կամ անցեալ դէպքեր, ուսումնասիրել Ս. Գրոց միթին տեղեր եւն, բայց Գրիգորէն զատ, ոչ ոք, եւ այս կարելի է ըսել բացարձակապէս, խորհած է ուսումնասիրել գրքի պատմութիւնը, ի մի ամփոփել հեղինակի մ' անձին, գրութեանց թուոյն, չարժառթին (պատճառին) եւն մասին ցրիւ ըսուածները՝ աւանդութիւնն, պատրաստել քննական-համեմատական տեսութիւններ անոնց վաւերականութեան կամ անվաւերականութեան վրայ, կատարել վերջապէս գործ մը, որ այսօր «Մատենագրութեան պատմութիւն» յօրինողի մը պաշտօնն կը համարուի»[40]: Այսպիսով՝ Գրիգոր Աբասաորդին առաջինն է, որ

[36] Ն. Ա[կինեան], Նոննոսի մեկնութիւնք Գրիգոր Աստուածաբանի հինգ ճառից.- ՀԱ, 1904, էջ 144, ծնթ. 4, հմմտ. Նույնի Մատ, հետազ., 9:

[37] Ակինեան, Մատ. հետազ. 9:

[38] Գաթրճեան, Սրբազան պատարագամատոյցք Հայոց, 178:

[39] Ակինեան, Մատ. հետազ., 11:

[40] Նույն տեղում, 11-12.

*թեև բավականին ուշացումով, ԺԳ. դարում մտել է այս ասպարեզ, «եւ յայժմ կը կայնայ* Պատճառաց գրոց եզականութիւնն»[41]*: Մի խոսքով՝ ըստ* Ն. Ակինյանի՝ «*Գործս իսկապէս* Մատենագրութեան Պատմութեան *փորձ 'մ է, թէպէտ մասնական ծրագրով*»[42]*: Ըստ* Հակոբ Տաշյանի՝ «*Գիրք պատճառացի*» *հեղինակը «դիտած է այսու տալ մատենախօսութիւն մ' իւր ժամանակի տեսութեանց համաձայն Ս. Գրոց եւ եկեղեցւոյ գլխաւոր վարդապետաց գրութեանց վրայ, մեծաւ մասամբ որչափ ծանօթ էին հեղինակին հայերէն թարգմանութեամբ*[43]»:

*«Գիրք պատճառացը» առայժմ հրատարակված չէ, եթե չհաշվենք տպագրված մի քանի հատվածները*[44]*, չնայած գրականության մեջ գտնում ենք նրա մանրամասն նկարագրությունները*[45] *ու ուսումնասիրությունները*[46]*:*

*«Գիրք պատճառացից» մեզ է հասել ընդամենը երեք օրինակ, որոնցից մեկը՝ հնագույնը, ԺԳ-ԺԴ. դդ. պահպանվում է Էջմիածնի թանգարանում (նկարագրված է* Կարինյանի, Կ. Տեր-Մկրտչյանի *և* Մ. Տեր-Մովսեսյանի *կողմից), իսկ երկուսը՝ ավելի ուշ ժամանակների՝ պահպանվում են Վիեննայի Մխիթարյան միաբանության գրապահոցում (նկարագրված է* Հ. Տաշյանի *և* Ն. Ակինյանի *կողմից): Տեղեկություններ կան նաև չորրորդ օրինակի մասին, 1725 թ., բայց հայտնի չէ, թե որտեղ է*[47]*:*

*Այս նկարագրությունները հուշում են, որ Գրիգոր Աքասարդու երկը բաղկացած է 12 գրքից*[48]*.*

*Գիրք առաջին՝ Հնոց Կտակարանաց.*

*Գիրք երկրորդ՝ Նոր Կտակարանաց.*

*Գիրք երրորդ՝ Սկիզբն և Պատճառ սքանչել[ւ]ոյն Փիլոնի գրոցն.*

*Գիրք չորրորդ՝ Պատճառ Դիոնէսիոսի.*

*Գիրք հինգերորդ՝ Ա. Պատճառ Գրիգորի Աստուածաբանի.*

[41] **Նույն տեղում**, 12.

[42] **Նույն տեղում**

[43] **Յ. Գաթրճեան**, Նշ. աշխ., նույն տեղում:

[44] **М. Тер-Мовсесян**, История перевода Библии, 223-237, **Յ. Ճախխաթունեանց**, Բ., 217-220, 221-223. ծնթ.:

[45] **Տաշեան**, Ցուցակ, 213-233, **Կարինեանց**, Մայր Ցուցակ, 178, **Կ[արապետ] Վ. [Տէր-Մկրտչեան]**, Մի հատուած Որոգենէսի գրուածքներից և Պատճառ լայն և նուրբ գրոց ձեռագիրը.- Ա, 1895, էջ 146-148:

[46] **Ակինեան**, Մատ. հետազ. 11-43 և այլն:

[47] **Ակինեան**, Նշ. աշխ., 15:

[48] **Տաշեան**, Ցուցակ, 213-233:

*Գիրք վեցերորդ՝ Պատճառք ծառիցն սրբոյն Գրիգորի Նիւսացւոյ գրոցն.*

*Գիրք եօթներորդ՝ Առաջին Գիրք Տեառն Բարսղի Պահոց գրոցն.*

*Գիրք ութերորդ՝ Երկրորդ Գիրք Տեառն Բարսղի.*

*Գիրք իններորդ՝ Երրորդ Գիրք Տեառն Բարսղի.*

*Գիրք Ժ.երորդ՝ Պատճառ Եւագրի գրոց.*

*Գիրք մետասաներորդ՝ Դաւթի Անյաղթ փիլիսոփայի.*

*Գիրք ԲԺ.աներորդ՝ [Սրբոյն Յակոբայ]:*

*Գրականության մեջ «Գիրք պատճառացի» մասին կա երկու իրաբամերժ կարծիք. մեկն արտահայտել է* Մեսրոպ Տեր–Մովսեսյանը, *իսկ մյուսը՝* Ներսես Ակինյանը*:*

Մ. Տեր–Մովսեսյանը *գրում է՝*

Книга епископа <*sic*> Григория, которая, по отзызву Гатрчяна, «во всей армянской литературе исключительное явление», составлена по плану и образцу той литературы, которая возникла в Византии со второй половины *V* столетия известна под названием литературы Катенов, т. е. она представляет выбор отрывков из толкований великих писателей предыдущих столетий. Была-ли раньше Григория у армян доступна и применяема такая литература и насколько потом она вкоренилась и расцвела, очень итересный и заслуживающий внимания вопрос, но пока мы должны его оставить в стороне, и довольствуемся замечанием, что у Григория мы уже находим сознательно обработанный и оброзцово-выполненный труд. Цель этого труда состояла в следующем: дать очерк церковной литературы в дословном приведении мнений и рассуждений великих отцов церкви и почитаемых писателей древних времен.

Распределение св. Писания и церковних книг по группам имело свое практическое применение и дальнейшее развитие у армян средних веков, как выяснеяется из работ Григория и других писателей. Григорий употребляет для таких групп два термина: *լայն եւ նուրբ* в дословном переводе – *широкие и тонкие* книги, что я по смыслу, по примеру Патканова, перевожу *священные и философские* книги. Эти термины с таким же подразделением книг находим в «Распределении св. Книг» монаха Саркавага...»[49]:

*Այնուհետև* Մ. Տեր–Մովսեսյանը *հատկապես կանգ է առնում «նուրբ»*[50] *եզրի պարզաբանման վրա:*

[49] Тер-Мовсесян, նշ. աշխ., 229-230:

[50] Тер-Мовсесян, նշ. աշխ., 229.

Ներսես Ակինյանի *կարծիքով՝ «Գիրք պատճառացի» նյութերը կարելի է բաժանել երկու մասի, որոնցից մեկը ներկայացնում է «Ներածութիւն ի Ս. Գիրս», («Introductio in Scripturam sacram»), իսկ երկրորդը՝ «Հայրախօսութիւն՝ Պատրոլոգիա-պատրիստիկա» («Patrologie-Patristik»)*[51]*: Առաջին մասը սահմանափակվում է Ա. և Բ. գրքերով, իսկ երկրորդը՝ մնացածով (Գ-ԺԲ.)*[52]*:* Ն. Ակինյանը *նպատակահարմար չի գտել այդպիսի կազմություն ունեցող գիրքը անվանել Catenae «այս յորջորջումս այնչափ յարմար չի թուիր մեզ ընդհանուր բովանդակութեան»*[53]*, քանզի սովորական Catenae-ում՝* «Շղթայք կամ Յատուածընտիր» *միշտ «ս. հարց խօսիլ կու տայ, մինչ հոս նշանաւոր տեղ կը գրաւեն նաև Գրիգորի խոսքերը»*[54]*:*

Մ. Տեր-Մովսիսյանը *Գրիգոր Աբասարդու «Գիրք պատճառացը» որոշ չափով կապում է Սարկավագի «Սուրբ գրքերի կարգացուցակ»-ի հետ, որ ինքը ռուսերեն անվանում է* «Распределение св. Книг», *(հայերեն՝ «Կարգադրութիւնք գրոց սրբոց»)*[55]*: Այս դրույթը* Ն. Ակինյանն *իրավացի է համարում: Նա միայն նշում է, որ «Հաբևանցի ակնարկն իսկ պիտի պարզէ մեր աչաց, թէ Գրիգորի ցանկին մէջ կը պակսին շատ մը գրքեր, որոնք Սարկաւագի ցանկին մէջ կը տեսնուին: Սակայն այս չարգելուր զմեզ ընաւ պնդելու թէ Գրիգոր հետեւած է Սարկաւագի»*[56]*: Որ Գրիգորն է օգտվել Սարկավագի երկերից, ոչ թե Սարկավագը՝ Գրիգորից, սա ինքնին պարզ է, որովհետև ժամանակագրորեն Գրիգորն է հաջորդում Սարկավագին, և այն էլ համարյա մեկ դարի հեռավորությամբ:*

*Գրիգոր Աբասարդու ինքնությունը վերջնականապես ճշգրտելու համար վճռորոշ կարող է լինել այն փաստը, որ Գրիգորն օգտվել է նաև Դավիթ Քոբայրեցու, կամ, ինչպես ինքն է ասում՝ «Դաւթի վարդապետի Քոբերեցո»*[57] *և [Մխիթար] Գոշի (Գոշին)»*[58] *երկերից: Դավիթ Քոբերեցին կամ Քոբայրեցին մոտավորապես 1205 թվին դեռևս կենդանի էր, իսկ Մխիթար Գոշը վախճանվել է 1213 թվա-*

[51] Ակինեան, Մատ. հետազ., 19:

[52] Նույն տեղում, 19-20, 33-41:

[53] Նույն տեղում, 22:

[54] Նույն տեղում, 22:

[55] Тер-Мовсесян, Նշ. աշխ., 229-230:

[56] Ակինեան, Մատ. հետազ., 42, հմմտ. 30, Ոսկեան, Մատ. քննութ., 36-37:

[57] Տաշեան, Ցուցակ, 224, Կարինեանց, 178:

[58] Տաշյան, Նշ. աշխ., Նույն տեղում:

*կանին: Ուրեմն՝ ապացուցված պետք է համարել, որ «Գիրք պատճառացի» հեղինակը՝ Գրիգոր Աբասաորդին, չէր կարող ապրել Թ. դարում: Նա ԺԳ. դարի առաջին քառորդի հեղինակ է:*

*Ինչ վերաբերում է Գրիգոր Աբասաորդու «Գիրք պատճառացը» կազմելու համար օգտագործած սկզբնաղբյուրներին, ապա որպես դրանց բանալի, առաջին հերթին, կարող է ծառայել ձեռագրերից մեկի առաջաբանը, որտեղ տրված է տվյալ գրքի համառոտ գլխացանկը.*

*«Գիրք Պատճառաց, նորում [այսպէս] ընձեռին Պատճառք և Նախադրութիւնք Հնոց և Նորոց Կտակարանաց. այլ և գրոց ոմանց Հայրապետաց սրբոց և վարդապետաց եկեղեցւոյ, այսինքն է գրոցն աքանչելի[ւ]ոյն Փիլոնի, սրբոյն Գրիգորի Նիւսացւոյ, Եւագրի, Դաւթի Անյաղթ փիլիփոսայի՝ Բարձրացուցէքն և Սահմանացն, ընթերցուածին սրբոյն Յակոբայ. հաւաքեցեալ և չարադրեցեալ մեծ բաբունւոյն Գրիգորի որդւոյն Աբասայ»[59]:*

*Իրականում Գրիգոր Աբասաորդին, բացի Հին և Նոր կտակարաններից, օգտվել է նաև հայ և համաշխարհային հայրերի երկերից: Համաշխարհային հայրերի՝ Եփրեմ [Ասոր]ու, Աթանաս Մեծի, Եպիփանոս Կիպրացու, Գրիգոր Նյուսացու, Հովհան Ոսկեբերանի, Որոգինեսի, Եվթաղի, Կյուրեղ Ալեքսանդրացու, Փիլոնի, Գրիգոր Աստվածաբանի, Բարսեղ Կեսարացու, Դիոնիսիոս Արիոպագացու, Հիւպքիոսի և ուրիշների. բ) հայ հայրերից՝ Եղիշեի, Դավիթ Փիլիսոփայի, Ստեփանոս [Սյունեց]ու, Գևորգ «Կաղի» (Գէորգ կաղ), Դավիթ Քոբերեցու կամ Քոբայրեցու, [Մխիթար] Գոշի և ուրիշների[60]:*

[59] Նույն տեղում, 213:

[60] Չմմտ. Ակինեան, Մատ. հետազ., 26-27, Կ[արապետ] Վ. [Տէր-Մկրտչեան], Մի հատուած Որոգենէսի գրուածքներից. նշն., 148:

# ԳԼՈՒԽ Ե.

## ԽԱՉԱՏՈՒՐ ՏԱՐՈՆԱՑԻ

Այսպես կոչված «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետ-
ների»՝ Գրիգոր Տղայի գրված թղթում բացի Հաղբատ-Սանահնի
խմբակի անդամներից, հիշատակված են Խաչատուր վարդապետը՝
Հաղարծնից, Մխիթար վարդապետը՝ Խորակերտից և երկրորդ Մխի-
թար վարդապետը՝ Գետիկից: Մոտավորապես 1205 թվականին Լո-
ռու ժողովի մասնակիցների ցուցակում սրանցից հիշատակված է
միայն «Գօշն կոչիւր, շինող վանացն Գետկայ, այր իմաստուն և
հեզ»: Խաչատուր Հաղարծնեցին և Մխիթար Խորակերտցին այլևս
չեն երևում:

Մխիթար Խորակերտցու ինքնությունը, ինչպես նշեցինք, մշու-
շապատ է, մինչդեռ Խաչատուր Հաղարծնեցու մասին այնուամենայ-
նիվ երկու խոսք կարելի է ասել:

* * *

Խաչատուր վարդապետ Հաղարծնին, անշուշտ, պետք է լինի հայ
գրականության պատմության մեջ հայտնի Խաչատուր Տարոնացին,
որի մասին կան բավականին տեղեկություններ, մի կողմից՝ Կիրակոսի
Պատմության մեջ, մյուս կողմից՝ Հաղարծնի արձանագրություննե-
րում: Բոլոր տվյալներով հաստատվում է, որ Խաչատուր Տարոնա-
ցին Հաղարծնի վանքի վանահայրն է եղել:

Նոր Գետիկի հիմնադրման և օծման ժամանակ Կիրակոս Գան-
ձակեցին, մոտավորապես 1191 թ. գրությամբ մեզ պատմում է՝ եկե-
ղեցու տոնախմբության ժամանակ ներկա էր նաև մարդ՝ սուրբ և
առաքինի և գիտությամբ հռչակված, մանավանդ երաժշտական
արվեստում: «Սա պայծառացոյց զսուրբ ուխտն, յորում առաջնորդ
էր ինքն, որ յառաջ քան զգալն նորա՝ ամայի էր և խամրացեալ: Զսա
պատուէր մեծապէս թագաւորն Վրաց Գիորգի, հայր Թամարին: Եւ
ետ եկեղեցւոյն ձեռնագրովն իւրով զերկուս գիւղսն՝ զԱբասաձոր և
զՏանձուտն, և այգի մի ի Միջնաշինին: Սա եբեր զխաչն ի կողմանս
Արեւելից, զանմարմին եղանակսն ի մարմին ածել, զարարեալսն

*իմաստնոց, որ զայն ժամանակ չեւ էր սփռեալ ընդ աշխարհս»*[1]*:*

*Հաղարծնի արձանագրություններում Խաչատուրը հիշատակվում է երեք անգամ. առաջին անգամ՝ 1181 թ., երկրորդ անգամ՝ 1184 թ., և երրորդ անգամ՝ 1194-ին:*

*1181 թ. արձանագրությունում, ի դեպ, հիշատակվում է Գիորգիի թագավորությունը և «յառաջնորդութեան սուրբ վարդապետին Խաչատրո»*[2]*:*

*1184 թվականի արձանագրությունում կարդում ենք՝ «Ի ՈԼԳ.<=1184>*[3] *թուիս հայոց, ի թագաւորութեան Ափխազաց Գէրգեա, ի հայրապետութեան Հայոց տեառն Գրիգորիսի ես՝ Խաչատուր վարդապետ եւ Սուքիաս նորոգեցաք զՍուրբ Գրիգորս հրամանաւ թագաւորին եւ իւր մեծամեծ իշխանացն Սարգսի ամիր[սպասալարի], Անտոն Ծղոնդիդելի*[4]*, Եղբեկին եւ և [ուրիշների] կարգադրութեամբ»*[5]*:*

*1194 թվականի*[6] *արձանագրությունում հիշատակվում են Իվանեի կառավարությունը և Խաչատուր վարդապետի հայրապետությունը. «յառաջնորդութեան Խաչատուր վարդապետին»*[7]*:*

*Եթե վստահենք* Ի. Սպենդիարյանին՝ *Խաչատուր վարդապետը և ումն Բարսեղ հիշատակվում են Գոշավանք գյուղի Ս. Հռիփսիմեի անվան աղոթատան գմբեթի արձանագրությունում՝ որպես «շինողք եկեղեցւոյ»*[8]*:*

*Բոլոր այս փաստարկները բավարար են եզրակացնելու, որ*

---

[1] **Կիրակոս**, 199-200:

[2] **Մեսրոպ Տէր-Մովսէսեան**, Հայկական արձանագրութիւններ.- ԱՀ, ԺԴ., 1914, էջ 69-79, հմմտ. **Ջալալեանց**, Ա., 133 = **Կոստանեանց**, 33:

[3] Ըստ **Ս. Ջալալեանցի**, **Մ. Բարխուդարեանի** և **Կոստանեանցի**՝ ՈԴ. 604 = 1155 (sic), **Տեր-Մովսեսյանի**, ՈԼԴ. 634 = 1185, բայց սրանցից ոչ մեկը չի համապատասխանում իրականությանը. պետք է լինի՝ ՈԼԳ. 633 = 1184 (այս մասին մանրամասն տե՛ս **Л. Меликсет-Беков**, Одна из надписей hАг'арцинского монастыря.- ХВ, т. III, стр. 197-198):

[4] Այս բառը **Ս. Ջալալյանցի**, **Մ. Բարխուդարյանի** և **Կոստանյանցի** հրատարակություններում բաց է թողնված, **Մ. Տեր-Մովսեսյանը** կարդում է՝ «ծպուծտելի» և հավելում, որ իր կողմից ընթերցված «պ»ն կարող է ընկալվել նաև Ղ կամ Դ:

[5] **Ջալալեանց**, Ա., 135 = **Բարխուդարեան**, 367 = **Քաջիկեան**.- «Արձ»., 1888 թ., Համր 8, էջ 103 = **Կոստանեանց**, 31, **Մեսրոպ Տէր-Մովսէսեան**, Հայկական արձանագրութիւններ, էջ 71, հմմտ. **Л. Меликсет-Беков**, Одна из надписей hАг'арцинского монастыря, loc. cit:

[6] Ըստ **Մ. Բարխուդարեան**ի՝ ՈՂԳ. 693 = 1244, (sic), պետք է լինի՝ ՈԽԳ.:

[7] **Մեսրոպ Տէր-Մովսէսեան**, նշ. աշխ., 67, հմմտ. **Ջալալեանց**, 134 = **Բարխուդարեան**, 368 = **Կոստանեանց**, 38:

[8] **Յ. Սպենդիարեան**, Մխիթար Գօշի վանքը.- «Մշակ», 1911 թ., Համր 17:

*«Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» թղթերում, Կիրակոսի Պատմության մեջ և Հաղարծնի արձանագրություններում հիշատակված Խաչատուրը միևնույն անձնավորությունն է, այսինքն՝ Խաչատուր Հաղարծնեցին, նույն ինքը Խաչատուր Տարոնացին: Մասնավորապես պարզվում է, որ Խաչատուրը՝ 1) ծագումով տարոնացի է եղել, հենց դրա համար նրան կոչել են՝ Տարոնեցի, Տարոնացի. 2) 1184-1194 թթ., ամենայն հավանականությամբ, եղել է Հաղարծնի վարդապետը, այդ պատճառով կոչվել է նաև Հաղարծնեցի (Հաղարծնին). 3) հավանական է, որ մոտավորապես 1205 թվին նա կենդանի չի եղել, քանի որ Լոռում հրավիրված ժողովի մասնակիցների ցուցակում չի հիշատակվում. 4) որպես Հաղարծնի առաջնորդ՝ մոտ հարաբերությունների մեջ է եղել Վրաց արքա Գիորգի Գ.-ի հետ, 5) նախաձեռնել և կանոնակարգել է հայոց հոգևոր երգը «հյուսիսային կողմերում»:*

***

*Խաչատուր Տարոնացին հայ գրականության պատմության մեջ հայտնի է միայն և միայն իր բանաստեղծական երկերով, և այս առումով նրան կարելի է համարել Հովհաննես Սարկավագի հետևորդը*[9]*: Հատկապես մեծ է նրա ավանդը հայոց շարականագրության մեջ, որի մասին, ի դեպ, հպանցիկ նշված է նաև* Կիրակոսի *Պատմության մեջ:*

*Հայոց հոգևոր պոեզիայի ամենահայտնի ստեղծագործություններից մեկը՝ «Խորհուրդ խորին անհաս անսկիզբն, որ զարդարեցեր զվերին պետութիւնդ» շարականը, պատկանում է Խաչատուր Տարոնացուն և ստեղծման օրից ցայժմ կատարվում է պատարագից առաջ*[10]*:*

*Ըստ էության՝ ութ տողից բաղկացած այդ շարականը ակրոստիքոս է, և սկսվում է հետևյալ տառերով՝ Խ-ա-չ-ա-տ-ո-ւ-ր*

*«Խորհուրդ խորին անհաս անըսկիզբն...*
*Անճառահրաշ զաւրութեամբ...*
*Չարչարանաւք քո սուրբ միածնիդ...*
*Անձրևածին բաժակ հրահոսան...*
*Տան քում վայել է սրբութիւն...*

---

[9] **Դ. Խաչկոնց**, Հայոց կրօնական բանաստեղծութիւն, Տփղ., 1904, էջ 79-80 (§ 121):

[10] **Յ. Գաթրճեան**, Սրբազան պատարագամատոյցք Հայոց, էջ 621-622, Շարական, 557-558, հմմտ. զ., Шаракан, пер. Н. Эмина, 2-ое изд., 334-335 և ծնթ. 20, **Խաչկոնց**, նշ. աշխ., նույն տեղում, հմմտ. **Տաշեան**, Ցուցակ, 311, 684:

*Որ զարարչագործ բազուկըս քո...*
*Ի խսմամբ թագ ի գլուխ պատեցես...*
*Ռամից բոլորից տիրապէս աստուածպետական...»*[11]:

*Հետազոտողները ենթադրում են՝ Խաչատուրը, իբր, այդ շարականը առաջին անգամ հանպատրաստից ասել է Հաղարծնում, Զաքարիա ամիրսպասալարի*[12] *ներկայութեամբ:*

*Խաչատուրին է պատկանում նաև հանրահայտ շարականը, որ կատարում են հարսանեկան հանդեսների ժամանակ՝ «Շարական հանդերձ օրհնելոյ հարսանեաց»*[13]*: Սա ևս ակրոստիքոս է, թեև բաղկացած է վեց տողից՝ Խ-ա-չ-ա-տ-ո[ւ]-ր.*

*«Խաչանիշ դրոշմամբ նշանի պարագրական փառաւք պսակեալ...*
*Արեամբ ծաղկեալքս պատմուճանի գերարդախոց բըղխմամբ վտակաց...*
*Զարչարանաւք սուրբ կենարարին չորեքնիւթեայ փառաւք պանծացեալ...*
*Այսաւր նոր խորհուրդ սաւառնեալ եկեղեցւոյ մաւր մեր Սիոնի...*
*Տո՛ւր, Տէ՛ր, զշնորհս քո զաստուածային զԱրդարոււ...*
*Որ ի Կանայ Գալիլիացւոց ի Կղէոպանց խնջոյսն ընթացեալ...»*[14]:

*Մնացյալ շարականները, որոնք վերագրվում են Խաչատուրին, հետևյալներն են՝ 1) Ծննդեան*[15]*, 2) Աւետեաց*[16]*, 3) Ոսկեանց*[17]*, 4) Ղևոնդեանց*[18]*, 5) Աւագ ուրբաթուն*[19]*, 6) Թաղման Ծրագալուցին*[20]*, 7) Մանկանց Բեթղեհեմի*[21]*, 8) Գէորգայ զօրավարի*[22]*, 9) Խա-*

---

[11] Շարական, 557-558:

[12] **Մ. Չամչեան**, Պատմութիւն Հայոց, Բ., 182, **Գ. Զ[արբհանալեան]**, Հայկական հին դպրութեան պատմութիւն, 699, **Խաչկոնց**, նշ. աշխ., 80:

[13] «Բազմավէպ» 1882, էջ 319, հմմտ., **Սահակ Ամատունի**, Հին և նոր պարականոն կամ անվաւեր շարականներ, Վաղ., 1911, էջ 171-172:

[14] **Սահակ Ամատունի**, նշ. աշխ., նույն տեղում:

[15] **Տաշեան**, Ցուցակ, 421, 424:

[16] **Նույն տեղում**, 424, **Ս. Կանայեանց**, Ցուցակ հայերէն ձեռագրերի Թիֆլիզի Ներսիսեան հոգևոր դպրանոցի, Տփղ., 1893, էջ 12:

[17] **Տաշեան**, Ցուցակ, 421:

[18] **Նույն տեղում**, 422:

[19] **Նույն տեղում**, 422, 425:

[20] **Նույն տեղում**, 422, 428, **Ս. Կանայեանց**, Ցուցակ, նշ. աշխ.:

[21] **Տաշեան**, Ցուցակ, 424, հմմտ., «Բազմավէպ» 1894, էջ 249-250:

[22] **Տաշեան**, Ցուցակ, 423, 436, **Ս. Կանայեանց**, Ցուցակ, 15:

*չին*[23], *10) Բարսղի Հայրապետին*[24], *11) Մարտիրոսաց*[25], *12) Առաքելոց*[26], *13) Դաւթի մարգարէին*[27], *14) Դաւթի Մարգարէին և Յակոբոս առաքելոյն*[28], *15) Տեառընդառաջի*[29], *16) Բարսղի Կեսարացւոյ*[30], *17) Յարութեան*[31] *և ուրիշներ*[32]:

*Խաչատուրին է* վերագրվում *նաև տարբեր բովանդակության մի քանի «Բանք»*[33]:

[23] Տաշեան, Ցուցակ, 425, 436:

[24] Նույն տեղում, 423.

[25] Նույն տեղում, 425:

[26] Նույն տեղում, 425, 436, 758:

[27] Նույն տեղում, 423, 758:

[28] Նույն տեղում, 758:

[29] Նույն տեղում, «Բազմավէպ». 1894, էջ 77-78:

[30] Ս. Կանայեանց, Ցուցակ, նույն տեղում:

[31] Նույն տեղում, 14:

[32] Տաշեան, Ցուցակ, 1097, Ա. Ղազիկեան, Հայկական նոր մատենագիտութիւն, Ա., 1128:

[33] Ա. Ղազիկեան, նշ. աշխ., նույն տեղում:

# ԳԼՈՒԽ Զ.

## ՄԽԻԹԱՐ ԳՈՇԸ ԵՎ ՆՐԱ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Հայ գրականության պատմության մեջ հայտնի են երկու Հովհաննես Տավուշեցի. մեկը՝ ԺԲ. դարում, մյուսը՝ ԺԳ. դարում:*

*Մեկին միայն անունով գիտենք, իսկ մյուսին՝ և՛ անունով, և՛ գործունեությամբ: Երկուսն էլ կապված են Մխիթար Գոշի անվան հետ. առաջինը՝ որպես Գոշի ուսուցիչ և Գետիկի վանքի վարդապետ, երկրորդը՝ որպես նրա աշակերտ և Խորանաշատի վանքի և հենց Խորանաշատի գիտագրական դպրոցի հիմնադիր: Առաջինին «Յովհաննէս Տաւուշեցի» են անվանում, երկրորդին՝ «Յովհաննէս Վանական Տաւուշեցի» կամ, պարզապես, «Վանական»*[34*]*:*

*Հովհաննես Տավուշեցի - Մխիթար Գոշ - Վանական և այլոց մենք ներկայացնում ենք որպես մեր կողմից անվանակոչված «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետներ» խմբակի ճյուղերից մեկը, որոնց կազմում հիմնական ճյուղը պետք է համարել Հաղբատ-Սանահնի դպրոցը:*

*Մխիթար Գոշը ԺԲ-ԺԳ. դարերի սահմանագծում այն հեղինակավոր անձն էր, ով արտահայտիչն էր վերոհիշյալ դպրոցի գաղափարական ամբողջականության և տարաբնույթ օջախների միջև ընդհանուր կապերի: Հենց դրա համար նա արժանի է հատուկ ուշադրության:*

* * *

*Մխիթար Գոշի կենսագրությունը բավական ընդարձակ տրված է* Կիրակոս Գանձակեցու *Պատմության մի քանի գլուխներում, որոնք ունեն հետևյալ վերնագրերը.*

*1) «Վասն վարդապետին Մխիթարյայ՝ թէ ուստի էր և կամ որպիսի ոք»*[35]*:*

*2) «Վասն շինութեան վանացն Նորն Գետկայ»*[36]*:*

---

[34*] Իրականում այս վարդապետի անունը եղել է սոսկ «Վանական», որի վրայ Տաւուշեցի միւս վարդապետի «Յովհաննէս» անուան յաւելումը միջնադարում առաջացած շփոթի հետեւանք է - Գ. Տ-Վ.:

[35] **Կիրակոս**, 195-199:

[36] **Նույն տեղում**, 199-205:

3) «Թե ո՞յք էին որք երեւելիք էին յաշակերտսն նորա»[1]:

4) «Վասն վարդապետին վախճանի մեծին Մխիթարայ՝ որ Գոշն կոչի»[2]:

Անշուշտ, Կիրակոսի տվյալների վրա է հիմնված «Վարք և պատմութիւն Գօշին Մխիթարայ» երկը[3]:

Առաջին գլխում Կիրակոսը պատմում է. «Հռչակաւորն այն եւ մեծիմաստն գիտութեամբ՝ էր ի քաղաքէն Գանձակայ, քրիստոնեայ ծնողաց զաւակ, որք եւուն զնա յուսումն Գրոց Սրբոց. եւ իբրեւ եհաս նա յարբունս հասակի, ձեռնադրեցին զնա քահանայ կուսակրօն: Եւ պաշտեալ զքահանայութիւնն յոլով ամս՝ ցանկացաւ նա հմուտ լինել մտաց Գրոց Սրբոց եւ առակաց խորնոց, որ կան ի նոսա: Եւ հանդիպեցաւ նմա Յովհաննէս վարդապետն՝ Տաւուշեցի անուանեալ, որ ի ժամանակին յայնմիկ երեւելի էր նա գիտութեամբ...»: Մխիթարը, երկար տարիներ մնալով նրա մոտ, աստվածաբանական գրքերի ուսումնասիրությամբ էր զբաղվում: Նրա և ուրիշ ոմանց մոտ հետագայում Մխիթարը վարդապետ է ձեռնադրվում.

«Կացեալ առ սմա Մխիթարայ, և առ այլ ոմանս՝ էառ նա զանուն վարդապետական: Եւ այնու ո՛չ շատացաւ, այլ չոգաւ նա յարեւմուտս կոյս յաշխարհն, որ կոչի Սեաւ լեառն, առ վարդապետսն որք էին անդ ուսուցիչք, և զայն ինչ ի վեր ոչ հանեալ՝ թէ իցէ նորա առեալ զայն պատիւ, այլ բազում ինչ օգտեալ ի նոցանէ, եկն նա ի Կարնոյ քաղաք: Եկ անդ գտանէ նա զբարեպաշտ իշխանն զանուանեալն Քուրդ, եւ հաւատովն քրիստոնեայ, որ ընդ այն ժամանակս անդ լինէր, սարտուցեալ ի Թագաւորէն Վրաց. և եղեալ նորա ծանօթ, սիրեցաւ ի նմանէ իբրև զհայր: Եւ յետ այսորիկ դարձաւ նա յաշխարհս իւր:

Եւ եղ համբաւ իմաստութեան նորա ընդ համայն աշխարհս, և բազումք աշակերտէին նմա յուսումն վարդապետութեան: Եւ ապա նեղեալ ի Տաճկաց, ի սադրելոյ կաթողիկոսին Աղուանից Ստեփանոսի, եւ եկեալ նորա յաշխարհն Խաչենոյ՝ առ Վախթանկ իշխանն Հաթերքոյ, և առ եղբարս նորա, որք բազում պատուով պատուեցին զնա, և անդ դադարեալ ամս ինչ»:

Եվ երբ Մխիթարը լսում է, որ Թամար թագուհին մեծարանքների է արժանացրել նրան և վերադարձրել հայրենի վայրերը՝ Կայանը և

---

[1] Նույն տեղում, 205-206:

[2] Նույն տեղում, 207-209:

[3] Տաշեան, Ցուցակ, 181-182, Մեսրոպ Սմբատեան, Տեղագիր Գեղարքունի ծովազարդ գաւառի, Վաղ., 1895, էջ 380-386:

ՄաՀկանաբերդը, «...եկն նա առ նա վասն առաջին սիրոյն և միաբանութեանն, որ առ միմեանս. և բնակեցաւ նա ի վանքն որ կոչիւր Գետիկ, ի գաւառին Կայենոյ, ի վերայ գետոյն մեծագունի զոր անուանեն Աղստևոյ գետ, յաջմէ կողմանէ գետոյն: Եւ էր առաջնորդ վանիցն վարդապետն, որ Սարկաւագ անուանիւր, աշակերտ նորին, որ բազում ուրախութեամբ ընկալաւ զնա, և ինքն սպասաւորեր նմա. և անդ դադարեալ յոլով ժամանակս»:

ԱյնուՀետև Կիրակոսը նկարագրում է այն սարսափելի երկրաշարժը, ինչի Հետևանքով ավերվեց Գետիկ վանքը, որն այնուՀետև վերականգնել Հնարավոր չեղավ. «Ապա եղեւ շարժ սաստիկ, որ զբազում տեղիս կործանեաց և տապալեաց զբարձրաբերձ շինուածս, ընդ որս խախտեցաւ և եկեղեցին Գետակայ սաստիկ յոյժ. մինչ զի ոչ լինեբ Հնար վերստին նորգել»:

Երկրորդ գլխում Կիրակոսը գրում է. «Սկսաւ այնուՀետեւ վարդապետն աջանչելի Հանդերձ միաբանօք իւրովք ձեռն ի գործ արկանել շինութեան վանիցն եւ եկեղեցւոյ ի վերաասացեալ ձորն Տանձուտայ՝ Հրամանաւ մեծ իշխանին Իւանէի... Յասմ ամի եղեւ աւարտ Հռչակաւոր եւ խնդատես եկեղեցւոյն Գետկայ, զոր շինեաց վարդապետն Մխիթար իւր միաբանօքն՝ ձեռնտուութեամբ Վախթանկայ Խաչենեցւոյ՝ տեառն Հաթերքոյ, եւ եղբարց իւրոց...

Յոլով ձեռնտու եղեն մեծ զօրավարքն Զաքարէ և եղբայրն իւր Իւանէ. քանզի նոքա ունէին զիշխանութիւն գաւառին, և զսուրբ վարդապետն յոյժ սիրէին. քանզի Զաքարէ խոստովանութեամբ որդի էր նորա Հոգևոր... Եւ ինքն (Գոշ) քանզի սիրեր զանապատ եւ զմայութիւն, արար իւր տուն բնակութեան բացագոյն ի վանիցն. շինեաց և անդ փոքրագոյն եկեղեցի մի փայտակերտ յանուն Սուրբ Հոգւոյն: Եւ ի ժամանակի ծերութեան, ի գլուխ վանիցն յաջմէ կողմանէ շինեաց եկեղեցի մի՝ չիրիմ գերեզմանի իւրոյ, կրով և վիմօք մածուցեալ սրբագործ՝ յանուն Համբարձման Քրիստոսի»:

Երրորդ գլխում Կիրակոսը Հաղորդում է. «Բազումք էին որք աշակերտեցան ի նմանէ վարդապետական բանին. քանզի Համբաւ իմաստութեան նորա Հռչակեցաւ ընդ ամենայն տեղիս, և գային առ նա յամենայն կողմանց»: Դրանից Հետո Կիրակոսը նշում է, որ Մխիթարը շատերին էր մխիթարում, «Քանզի ըստ անուանն իւրոյ մխիթարէր զամենեսեան, քանզի էր նա մխիթարական որպէս զԲառնաբաս, և նշանավոր ի մէջ ժողովրդոց, որպէս զԱնտոն. եւ բանք նորա արդիւնականք, լի շնորՀօք և ամենայն ոք փափագէր տեսանել զնա եւ լսել ի նմանէ, վասն այսպիսի Համբաւոյ բազումք,

որ էին ի կարգի վարդապետաց ծածկէին զինքեանս և գային, ի կարգի աշակերտաց կալով՝ ուսանէին ի նմանէ»:

Չորրորդ գլխում Կիրակոսը հավելում է. թե՝ երբ Մխիթարը «եհաս ի խորին ծերութիւն... և տկարացաւ ի զօրութենէ մարմնոյն... կոչեաց նա զընակիչս ուխտի վանիցն Նորն Գետկայ... եւ զմի ոմն ի նոցանէ ընտրեալ՝ Մարտիրոս անուն նորա, որ աշակերտեալ էր նմա և ընտանի էր նմա, կացոյց զնա առաջնորդ նոցա... գրեաց կտակ առ մեծ Հազարապետն Իւանէ, եղբայրն Զաքարէի, և յանձնեաց ի նա զվանսն և զառաջնորդն. և ինքն փոխեցաւ յաստեացս առ Քրիստոս՝ ալեւորեալ և լի աւուրբք... եւ տարեալ հանգուցին զնա առաջին դրան եկեղեցւոյն փոքրագունի, որ կայ ի գլուխ վանիցն՝ յարեւմտից կողմանէ»:

Վերջում Կիրակոսը բերում է մի դրվագ և տեղեկացնում, թե ինչու է Մխիթարի մականունը Գոշ, և ինչ է դա նշանակում: «Դէպ եղեւ երբեմն,- գրում է Կիրակոսը,- զի պաշտօնեայք նորա գային գրաստուք՝ բարձեալ գինի ի պէտս վանիցն: Վրացի ոմն, Բասիլա անուն, եկեալ՝ բռնութեամբ կամէր առնուլ ի նոցանէ ի գինւոյ անտի, զի գործակալ էր նա Իւանէի ի վերայ մայրոյն, որ պահէր զտեղի իշխանի նորա: Եւ պաշտօնեայքն ասեն ցնա. «Մի՛ նեղեր զմեզ, քանզի Գոշին եմք»: Զի այսպէս կոչէին զնա մականուամբ, քանզի հեղգագոյն եկին ալիք նորա»:

Մի այլ տեղ Կիրակոսը Զաքարիա և Իվանե Երկայնաբազուկների՝ Հայաստանում տիրակալության և վանքերի ու եկեղեցիների նկատմամբ ցուցաբերած հոգատարության մասին խոսելիս, ի միջի այլոց, ասում է, որ «Յայսմ ամի եղեւ աւարտ հռչակաւոր և խնդատես եկեղեցւոյն Գետկայ, զոր շինեաց վարդապետն Մխիթար»[4], և որին կոչում էին Գոշ:

Մխիթարի մահվան տարին Կիրակոսը ցույց է տալիս 662=1213 թ.: Սրան լիովին համընկնում է Վարդանի տեղեկությունը, որ Մխիթարը վախճանվել է Զաքարե ամիրսպասալարի մահից մեկ տարի հետո: Եվ, իսկապես, Վարդանը, Զաքարեի մահը նշելով «ի վեցհարիւր վաթսուն և մի թուին»[5], հավելում է. «Եւ զկնի միոյ ամի կատարեցաւ սուրբ եւ սքանչելի վարդապետն Մխիթար, մականուն Գոշ, Գանձակեցին, եւ թաղեցաւ յիւրում ձեռակերտին ի Գետիկ, զոր շինեաց հրամանաւ Իւանէի՝ քեռորդւոյն մեծի իշխանին Քրդին»[6]:

[4] Կիրակոս, 155:

[5] Վարդան, 140:

[6] Մխիթարի մահվան տարի՝ 1213 թ., ցույց են տալիս հետագա տարիների պատմագիրները, օրինակ, Առաքել Դավրիժեցին (Առաքել վարդապետի Դավրիժեցւոյ

Կիրակոսի տվյալների համաձայն, ինչպես արդեն նշել ենք վերը և կտեսնենք հետո, Մխիթարը մահացել է խոր ծերության հասակում («ի խորին ծերութեան, այլևորեալ եւ լի աւուրբք»): Այստեղից, ergo, եզրակացություն. նա ծնված պետք է լինի ԺԲ. դարի առաջին կեսին, կամ, ինչպես կարծում է Հ. Ոսկեանը, 1130-1140 թվականներին[7]: Ըստ Բաստամեանցի՝ Մխիթարը վախճանվելիս 70-80-ից ավելի մեծ տարիքում պիտի լիներ[8]:

Մխիթարին կոչում էին Գոշ, Գետիկցի, կամ էլ Գանձակեցի: «Գօշ, գուցէ քօշի նմանութենէն առնուած... Գետիկցի, վասն զի Հին Գետիկ վանքի միաբան և Նոր Գետիկ մենաստանին հիմնադիր ու անդամ եղած է: Իր ծննդավայրէն կոչուած է նմանապէս Գանձակեցի»[9]:

Բոլոր այս տվյալների համաձայն կարելի է հանգել հետևյալին՝

1) Մխիթարը գանձակեցի «քրիստոնյա ընտանիքի» զավակ էր.

2) Տարրական կրթությունն ստացել է ծննդավայրում՝ Գանձակ քաղաքում, որտեղ, հասունանալով, ձեռնադրվել է քահանա.

3) Ուսումը շարունակելու և խորացնելու նպատակով գնացել է ժամանակի (ԺԲ. դ.) նշանավոր գիտնական Հովհաննես Տավուշեցու և ուրիշ վարդապետների մոտ, նրանց հետ անցկացրել բազում տարիներ և վերջում ստացել «վարդապետի» կոչում.

4) Վարդապետ դառնալուց հետո մեկնել է Սև լեռ՝ հայտնի գիտնականների մոտ, հետո՝ Կարին, որտեղ հանդիպել է Վրաստանից վտարված Քուրդ կառավարչին.

5) Հայրենիք վերադառնալուց հետո նա Ստեփանոս Աղվանից կաթողիկոսի պահանջով մեկնել է Խաչենի կողմերը՝ Հաթերքի տիրակալ Վախթանգի մոտ, այնտեղ մնացել որոշ ժամանակ.

6) Քուրդ առաջնորդի՝ իր հայրենիք Կայեն վերադառնալուց հետո, ում Թամար թագուհին հանձնել էր նրան պատկանող կալվածքները, Մխիթարը մեկնել է Կայենի կողմերում՝ Աղստևի (Աղստափա) հովտում գտնվող Գետիկ անվանյալ վանք, որի վանահայրը իր աշակերտ Սարկավագն էր. վերջինս իր ուսուցչին՝ Մխիթարին է զիջել վանահայրությունը.

---

Պատմութիւն Հայոց, Բ. տպ., 623) և Հարությունն Խալփաեանը (Գիւտ Աղանեանց, Դիւան հայոց պատմութեան, Ժ., 123): Տարօրինակ է **Դավիթ Բաղիշեցու (նույն տեղում.**, 42) տվյալը՝ 1219 թ. S. Somal-ին (Qnadro della storia letteraria di Armenia, 100) և Neuman-ի (Versuch einer Geschichte der armenishen Litteratur, Leipzig, 1836, S. 176) այսպիսի տվյալ ունի՝ 1207 թ., բայց սրանցից և ոչ մեկը ճիշտ չէ:

[7] **Ոսկեան**, Մատ. քննութ., 123:

[8] **Մխիթարայ Գօշի** Դատաստանագիրք Հայոց, Յառաջաբան, 91:

[9] Հմմտ. **Ոսկեան**, Մատ. քննութ., 124.:

*7) Երկրաշարժից Գետիկ վանքի հիմնահատակ ավերվելուց հետո տեղափոխվել է Տանձուտի կիրճ, Զաքարե և Իվանե Երկայնաբազուկների աջակցությամբ կառուցել Նոր Գետիկը, վերջնականապես հիմնավորվել այնտեղ և հենց տեղում էլ սկսել է գիտագրական գործունեությունը.*

*8) Վախճանվել է Նոր Գետիկում և հուղարկավորվել տեղում.*

*9) Նա թողել է բազմաթիվ աշակերտներ:*

*Կիրակոսն ընդգծում է, որ Մխիթարը մտերիմ է եղել Զաքարե և Իվանե Երկայնաբազուկների հետ, հատկապես առաջինի, որի «խոստովանահայրն» էր համարվում:*

*Լոռու ժողովի մասին խոսելիս* Կիրակոսն *ուղղակի մատնանշում է Զաքարեի մոտ Մխիթարի ունեցած մեծ հեղինակության մասին: Երբ Զաքարեն վտարում է Հաղբատի եպիսկոպոս Գրիգորին կամ Գրիգորեսին, սա ստիպված թողնում է վանքը և փախչում «յաշխարհն Կայենոյ <ձեռագրում՝ Կարին, sic>, ի վանքն Գետիկ առ մեծն վարդապետն Մխիթար, պաշտինութեան աղագաւ, զի գիտէր, թէ մեծ հանարձակութիւն ունի նա առ Զաքարէ»[10]:*

*Ահա ինչու պարզ է դառնում, որ երբ հայոց բանակում հարց է ծագում վրացիների (կամ քաղկեդոնականների) նման աղոթք անել երկնքի տակ՝ շարժական վրանում, այդ կերպ ծիսակատարություն անելու համար, Զաքարեն,* Կիրակոսի ասելով, *հարցում է անում Գոշ անվանյալ մեծ վարդապետ Մխիթարին, որ Գետիկ վանքի կառուցողն էր և իր խոստովանահայրը[11]»:*

*Զաքարե ամիրսպասալարի կողմից մոտավորապես 1205 թ. Լոռիում, իսկ 1207 թ. Անիում հրավիրված եկեղեցական ժողովների մասնակիցների մեջ առաջին շարքում, որպես աչքի ընկնող վարդապետներից մեկի, նշվում է «Գօշն կոչիւր, շինող վանացն Գետկայ, այր իմաստուն եւ հեզ»[12]:*

*Որ Մխիթար Գոշը մեծ հեղինակություն էր վայելում մի կողմից՝ ժամանակի հայ հոգևորականության մեջ, մյուս կողմից՝ Զաքարե ամիրսպասալարի աչքում, երևում է այն բանից, որ 1207 թվին Անիում հրավիրված ժողովը նրա բացակայության պատճառով համարյա տապալվում էր:* Կիրակոսն *ուղղակի ասում է, որ Զաքարեն Մխիթար վարդապետին հրավիրեց ներկայանալ ժողովին»[13], վեր-*

---

[10] Կիրակոս, 163:

[11] Նույն տեղում, 158:

[12] Նույն տեղում, 161-162:

[13] Նույն տեղում, 164:

*ջինս մերժեց, պատճառաբանելով «զհիւանդութիւնն եւ զանկարութիւնն »*[14]*: Այս հանգամանքը մեծ հուզմունք առաջացրեց ժողովի մասնակիցների մեջ, որոնք Զաքարեի առաջադրած ծիսական հարցերը չէին կարող քննարկել «առանց մեծ վարդապետին» Մխիթարի*[15]*: Եվ նրանք երկրորդ անգամ աղաչանքով դիմեցին նրան՝ Մխիթարին, որ անպայման՝ «գալ ի ժողովն, զի միաբան պատասխանի արասցեն զօրավարին»*[16]*:*

*Զաքարեն ամեն միջոցի դիմում էր, որ Մխիթարը ժողովի գնալուց առաջ նախ իրեն ներկայանար: Այս իրողությունը այնպիսի շփոթմունք է առաջացնում հայ հոգևորականության մեջ, որ նրանք զայրանում են, թե այն ամենը, ինչ զորավարն անում է իրենց նկատմամբ, նրա խորհրդով է անում. «Զայս ամենայն, զոր գործէ զօրավարն ընդ մեզ, խրատու նրա գործէ»*[17]*:*

Կիրակոսի *և* Վարդանի *Պատմություններից բացի, Մխիթարը հիշատակվում է 1184-1185 թթ. «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» թղթերի վերջում միայն՝ «Մխիթար վարդապետ Գետկայ»*[18]*: Դա բացատրվում է նրանով, որ այդ ժամանակ Մխիթարը համեմատաբար երիտասարդ էր, վաստակը՝ քիչ:*

*Մխիթարը հիշատակվում է նաև Նոր Գետիկի մի արձանագրության մեջ, որտեղ, ի միջի այլոց, կարդում ենք՝ «640 <=1191> թվին Սալաադինի կողմից Երուսաղեմը գրավելուց չորս տարի անց Նոր Գետիկում սկսեցին սուրբ վանքի կառուցումը, որը կառուցվում էր 7 տարի՝ Մխիթար վարդապետի աջակցությամբ՝ «ձեռամբ վարդապետին Մխիթարայ», Վարդանի հայր[ապետ]ության ժամանակ»*[19]*:*

*Այս արձանագրությամբ, ի դեպ, հաստատվում են* Կիրակոսի *խոսքերը Մխիթարի ծավալած շինարարական գործունեության մասին Նոր Գետիկում, որտեղ նա թաղված է:*

*Մխիթարի շիրմաքարը այժմ էլ ցույց են տալիս, այսպես կոչված, Ս. Համբարձման եկեղեցու ավագ մուտքի մոտ*[20]*: Տապանաքարը արձանագրություն չունի, չնայած* Յ. Սպենդիարյանը *համոզում է, թե «նրա վրա այժմ հազիվ կարելի է կարդալ* «Մխիթար» *անունը*[21]*:*

[14] **Նույն տեղում:**
[15] **Նույն տեղում,** 165:
[16] **Նույն տեղում:**
[17] **Նույն տեղում,** 166:
[18] Թուղթ, ընդհ., 427:
[19] **Շահխաթունեանց,** Բ., էջ 367 (§ 803), **Մեսրոպ Սմբատեանց,** Տեղեկագիր Գեղարքունի ծովազարդ գաւառի, 173, **Բարխուդարեան,** Արցախ, 350, **Կոստանեանց,** 37-38, հմմտ. **Յ. Սպենդիարյան,** նշ. աշխ., «Մշակ», 1911, Հմր 16:
[20] **Ի. Յարութիւնեան,** Գոշայ վանք կամ Նոր Գետիկ, ԱՅ, Ժ., 1903, էջ 37-38:
[21] **Յ. Սպենդիարեան,** Մխիթար Գօշի վանքը, «Մշակ», 1911 թ., Հմրք 16, 17, 18, հմմտ.,

Ավարտին լրացուցիչ դիտողություն Մխիթար Գոշի մասին:

Մխիթար Գոշ անհատի վերաբերյալ, մեր կարծիքով, կարելի է վկայել Թամար թագուհու առաջին պատմիչի այն տեղեկությունը, որը վերաբերում է Թամարի և Դավիթ Սոսլանի ներկայությամբ Տփղիսում կայացած հայ-վրացական բանակռվին, որտեղ հիշատակված են հայ վարդապետներ և գիտնականներ: «Զաքարիա [ամիրսպասալարը] կաթողիկոսին ներկայացրեց մարդկանց, հանձինս նրանց՝ <այսինքն՝ Հայերի>, և եպիսկոպոսներին բոլոր, վարդապետներին և գիտնականներին», կամ՝ «Եկան Վանի կաթողիկոսը և բոլոր եպիսկոպոսները, և վարդապետները»: Կամ՝ «արքայի գալուն պես «նստեցրին... վանահայրերին և վարդապետներին հայոց»[22]: Հայկական աղբյուրներից հայտնի է, որ մոտավորապես 1205-1207 թվականներին տեղի ունեցած եկեղեցական անջատողական ժողովների ղեկավարությունը հրավիրել է Մխիթար Գոշին: Մխիթարը, Զաքարե և Իվանե ամիրսպասալարների հանձնարարությամբ, ինչպես կտեսնենք ստորև՝ Թ. գլխում, առնվազն երկու անգամ ընդարձակ շրջաբերականով դիմել է նաև Վրաց կաթողիկոսին: Ահա ինչու, կարելի է ենթադրել, որ 1197-1205 թվականներին Տփղիսում կայացած հայ-վրացական բանակռիվը պետք է տեղի ունեցած լիներ Մխիթար Գոշի անմիջական մասնակցությամբ:

Ուրեմն՝ երբ Թամար թագուհու առաջին պատմիչն ասում է, որ հայերի և վրացիների միջև բանավեճը կազմակերպելու համար Զաքարեն, Վանի կաթողիկոսից և եպիսկոպոսներից բացի, հրավիրել է նաև գիտնական վարդապետների, այդ միտքը մենք, անշուշտ, այնպես պիտի հասկանանք, որ նա՝ Զաքարեն, հայերի կողմից բանավեճին հրավիրել է այն ժամանակի հայտնի վարդապետ-գիտնականներին, որոնց պարագլուխը համարվում էր Մխիթար Գոշը, և, ապխսով, ինչպես 1205-1207 թթ. Լոռու և Անիի ժողովներում, այնպես էլ 1197-1205 թթ. Տփղիսի հայ-վրացական բանավեճում գլխավոր դերը կատարել էր Մխիթար Գոշը:

---

Х. Кучук-Иоаннесов, Сведения и заметки о старинных армянских рукописях и армянских надписях, находящихся в пределах России. V. Надписи в армянском монастыре Гошаванк, «Древности Восточные», т. VI, стр. 23:

[22] Տե՛ս վերը՝ այս գրքի առաջին մասի Գլ. Զ., ծնք. 19-26 ծնք-ներին վերաբերող հատվածը:

# ԳԼՈՒԽ Է.

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱԿՆԱՐԿ ՄԽԻԹԱՐ ԳՈՇԻ ԳԻՏԱԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Մխիթար Գոշի՝ հայ գրականության հարուստ գանձարանում ներդրած երկերը գնահատելու համար, անշուշտ, պետք է հիմք ընդունենք* Կիրակոս Գանձակեցու *այն խոսքերը, որ նա ասել է Գոշի մահից հետո. «Եւ եթող նա (Մխիթարը) յիշատակ եւ արժան գերեզմանի գիրս իմաստախոհս յօգուտ ուսումնասիրաց՝ Համառօտ մարգարեութէանն* <sic> *Երեմիայի՝ գեղեցկագիր կարգօք, եւ սուղ ինչ կանոնս վասն ապաշաւորելոյ մարմնոյ եւ արեան Տեառն, թէ որպէս պատշաճ իցէ, կամ որպիսի կարգօք. եւ գիրք մի՝ Ողբք ի վերայ բնութեանս՝ ի դիմաց Ադամայ, առ որդիս նորա, եւ ի դիմաց Եւայի, առ դստերս նորա. եւ գիրք մի՝ Յայտարարութիւն Ուղղափառութեան (այսինքն՝ հակաքաղկեդոնականների) հաւատոյ ընդդէմ ամենայն հերձուածողաց, ի խնդրոյ մեծ զօրավարին Զաքարէի եւ եղբօր իւրոյ [Իվանեի], եւ այլ թուղթս խրատականս»*[1]*:*

*Այսպիսով, Մխիթար Գոշին են պատկանում հետևյալ երկերը.*

*1) «Համառօտ[ութիւն] մարգարէութեանն Երեմիայի».*

*2) «Կանոնք վասն ապաշաւորելոյ, մարմնոյ և Տեառն՝ թէ որպէս պատշաճ իցէ, կամ ո՞րպիսի կարգօք».*

*3) «Ողբք ի վերայ բնութեանս՝ ի դիմաց Ադամայ առ որդիս նորա և ի դիմաց Եւայի առ դստերս նորա».*

*4) «Գիրք մի յայտարարութիւն ուղղափառութեան հաւատոյ ընդդեմ ամենայն հերձուածողաց՝ ի խնդրոյ զօրավարին Զաքարէի և եղբօր իւրոյ [Իւանեի]».*

*5) «Թուղթք խրատականք այլ և այլ»:*

*Այս ցուցակում, ինչպես ժամանակին իրավացիորեն նշել է* Ի. Յարությունյանը, *հիշատակված չեն նրա «Դատաստանագիրք» [Հայոց], և «Առակք»*[2]*, հիշատակված չեն նաև «Աղոթքները»:*

---

[1] Կիրակոս, 208-209:

[2] Ի. Յարութիւնեան, Գոշայ վանք կամ Նոր Գետիկ.- ԱՅ, Ժ., 15:

Թե ինչու չեն հիշատակված Մխիթարի «Առակքը» և «Աղոթքները», այդ մասին առայժմ մենք ոչինչ ասել չենք կարող: Մինչդեռ «Դատաստանագիրք Հայոց»-ի չնշելը կարելի է բացատրել նրանով, որ այս գիրքը, որպես հատուկ Աղվանքի կաթողիկոսարանի համար կազմված[3], պաշտոնական բնույթ էր կրում, և, հավանաբար, հենց այդ պատճառով Կիրակոս Գանձակեցին այն Գոշի սեփական աշխատություն չի համարել կամ գուցե համարել է Մխիթարի այն երկերից մեկը, որը Կիրակոսի կողմից հիշատակված է «Կանոնք վասն սպասաւորելոյ մարմնոյ և արեան Տեառն՝ թէ որպէս պատշաճ իցէ, կամ ո՞րպիսի կարգօք» վերնագրով:

Ըստ Գ. Զարբհանալյանի և Ղ. Ալիշանի՝ Մխիթար Գոշի երկերն են՝ 1) «Դատաստանագիրք» [Հայոցը], 2) «Առակքը», 3) «Համառոտ[ութիւն] մարգարէութեանն Երեմիայի», 4) «Աղոթքները»[4]: Բացի այդ, նրանք հիշատակում են Կիրակոսի նշած «Գիրք մի յայտարարութիւն ուղղափառութեան հաւատոյ...», իսկ Գ. Զարբհանալյանը մասնավորապես նշում է, որ Էջմիածնում գտնվում է Մ. Գոշի անունը կրող մի ճառ՝ «Ղազարոսի յարութեան վրայ»[5]:

Հ. Ոսկյանը Մխիթար Գոշի երկերը մեկնաբանում է հետևյալ շարքով.

1) Դատաստանագիրք, 2) Պատմություն, 3) Մեկնություն Երեմիայի, 4) Առակներ և 5) Մանր երկեր[6]:

Անհրաժեշտ մենք նպատակահարմար ենք գտնում Մխիթար Գոշի երկերը ցուցակագրել հետևյալ հերթականությամբ.

1) «Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց»[7], որը բաղ-

[3] Բաստամեանցը (Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց, Յառաջաբան, 178-179) հնարավոր է համարում, որ Մխիթարի «Դատաստանագիրք Հայոց»-ը Խաչեն-Աղվանքից բացի, ընդունված է եղել նաև Լոռում, բեկուզ սույնը հաստատելու համար փաստեր չի բերում:

[4] Գ. Զ[արբհանալեան], Հայկական հին դպրութեան պատմութիւն, 691-696, Ալիշան, Հայապատում, Ա., 101:

[5] Զ[արբհանալեան], նշ. աշխ., 697-698:

[6] Ոսկեան, Մատ. քննութ., 145 և հջրդ.:

[7] Տարբեր հավաքածուներում պահպանված բազմաթիվ ձեռագրերի նկարագրությունը տե՛ս Ոսկեան, նշ. աշխ., 151-175, նույն տեղում՝ Բաբգէն եպ. [Կիւլեսէրեան], Մխիթար Գօշի վերաբերյալ ձեռագիրք Երուսաղէմի սրբոյ Յակոբեանց ձեռագրաց մատենադարանի մէջ, 158-175, Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց. Իրաբանական հետազօտութիւնք հանդերձ ծանօթութեամբք Վահան Բաստամեանց, Վաղ., 1880, էջ 180+442+ԺԲ. գրականությունը՝ M. Brosset, Rapport sur un Manuscrit armenien Mkhitar-Gosh.- "Bulletin de l'Academie des Sciences", t. VI, 380-382, "Melanges Asiatiques", t. I, 1848-1852, pp. 150-152: Я. Тер-Иоаннисян, Древне-армянское законадательство по Мхитару Гошу.- "Юридическое Обозрение",

*կացած է Նախադրութիւնից*[8] *և երկու մասից, նրանցից առաջինն է «եկեղեցական կանոնք»*[9]*, իսկ երկրորդը՝ «աշխարհական օրէնք»*[10]*, վերջում դրված է՝ «կատարեցաւ դպրութիւն դատաստանաց թագաւորաց և իշխանաց և ամենայն դատաւորաց»*[11]*:*

*2) «Առակք առասպելականք և բարոյականք, որ կերպարանէ զճշմարտութիւն, ասացեալ սուրբ վարդապետին Մխիթարայ, որ մականուն Գոշ ասեն սորոյն»*[12]*:*

*3) «Եռամեծի և քաջ վարդապետի Մխիթարայ Գոշի խրատակրօն ճգնաւորի և բանիբուն հռետորի ասացեալ զԱղաւթս»*[13]*:*

*4) «Մխիթարայ վարդապետի մականուն կոչեցեալ Գոշ՝ Ներբողեան ասացեալ ի նոր վկայն կոչեցեալն Խոսրով»*[14]*:*

*5) «Մխիթարայ Գոշի՝ Մեկնութիւն Մարգարէութեանն Երե-*

---

1884 г., № 191, **С. Арцруни**, Кодекс Мхитара Гоша.- "Юрид. Обозрение", 1885 -1886 гг., № 226, 230, 251, 254, 255, 260, 264, 290, его-же, Историко-догматическое значение "Судебника" Мхитара Гоша, Тфл., 1890, стр. 1-16, **J. Karst**, Armenisches Rechtsbuch. Zweiter Band. Sempadscher Kodex aus dem 13. Jahrhundert in Verbindung mit dem Grossarmenishen Rechtsbuch des Mechithar Gosch (aus dem 12. Jahrhundet) etc., Strassburg, 1905, S.S. 1-424, **Խաչիկ Սամուէլեան**, Մխիթար Գօշի Դատաստանագիրքն ու հին հայոց քաղաքացիական իրաւունքը [ՍՄ ԿԳ.], Վն., 1911, էջ 1-344:

[8] **Մխիթարայ Գօշի** Դատաստանագիրք Հայոց, 5-75:

[9] **Նույն տեղում**, 81-294:

[10] **Նույն տեղում**, 299-442:

[11] **Նույն տեղում**, 442:

[12] Վիեննայի, Վենետիկի, Էջմիածնի և Երուսաղեմի բազմաթիվ ձեռագրերում (տե՛ս **Ոսկյան**, 189, հմմտ., **Տաշյան**, Ցուցակ, 165, 831, հրատարակված է երկու անգամ, առաջինը՝ Առակք և ոտանաւորք խրատականք, առացեալ ի նախնեաց մերոց ի հրահանգ ուսումնասէր համբակաց, Վնտ., 1790, էջ 1-154, երկրորդ անգամ՝ Առակք Մխիթարայ Գօշի և Ողոմպիանու, Վնտ., 1842, էջ 1-172, երրորդ անգամ, բայց նույն վերնագրով՝ Վնտ., 1854, էջ 1-164, թարգմանությունը՝ արդի հայերենով՝ **Խորէն քահ. Միրզաբէկեանց**, Բագու, 1878, ֆրանսերենով՝ **Fr. Macler**, Choix des fables arméniènnes attribuées à Mechitar Gosh.- «Journal Asiatique», ser. IX, t, XIX, 1902. pp. 457-487, և առանձին՝ Paris 1902, թերի թարգմանությամբ՝ **Le Vailiant le Florivat**, Coup d'œuil sur l'Arménie, Paris, 1846, pp. 42-45:

[13] Նկարագրած է **Գ. Սրուանձտեանց**, Թորոս Աղբար, Բ., Կ. Պոլիս, 1885, էջ 396, **Տաշեան**, Ցուցակ, 686, նույնի՝ Ցուցակ հայերէն ձեռագրաց արքունի մատենադարանին ի Միւնխէն, Վն., 1892, էջ 17, 10 և այլն: Հրատարակված է՝ Գիրք աղօթից, Կ. Պոլիս, 1847, էջ 353-360 (Համառօտութիւն աղօթից եռամեծի և քաջ վարդապետի Մխիթարայ Գօշի խստակրօն ճգնաւորի և բանիբուն հռետորի՝ ասացեալ ի սուրբ պատարագին):

[14] Նկատի ունի 1167 թ. հունվարի 10-ին մահկանացուն կնքած Խոսրով Գանձակեցուն: Ճառընտիրից վերցրածը հրատարակել են՝ առաջին անգամ՝ **Գալուստ Տեր-Մկրտչյանը**՝ նույն վերնագրով.- Ա, 1897, էջ 37-41, երկրորդ անգամ՝ **Հ. Մանանդյանը** և պրոֆ. **Հր. Աճառյանը** «Հայոց նոր վկաները», գիտ. հրատ., Վաղ., 1903, էջ 32-39:

*միայի մարգարէի»*[15]*: Այս՝ անշուշտ,* Կ. Գանձակեցու *կողմից հի-շատակածն է՝ «Համառօտութիւն մարգարէութեանն Երեմիայի» (Հմր 1):*

*6) «Ճառ վասն յարութեան Ղազարու, ի Մխիթար Գոշէ»*[16]*:*

*7) «Փիլոնի յաղագս նախախնամութեան. բան առաջին, առ Աղէքսանդրոս, Գոշին ասացեալ պատճառ»*[17]*, զետեղված է Աբասարդի Գրիգորի «Գիրք պատճառաց»-ում: Հնարավոր է, որ այս նամակը* Կիրակոս Գանձակեցու *հիշատակած «Ողբք ի վերայ բնութեանս»-ի ներքո լինի (Հմր 3):*

*8) Պատմական ակնարկ, որը կցված է «Դատաստանագրքին», և որտեղ պահպանված է ԺԲ. դարի Աղվանից կաթողիկոսների ցուցակն ու դեպքերի նկարագրությունը*[18]*:*

*9) Գծագրութիւն... յաղագս Վրաց*[19]*:*

*Անհասկանալի է* Կիրակոսի *հիշատակած «Կանոնք վասն սպասաւորելոյ մարմնոյ և արեան Տեառն» (Հմր 2), «Գիրք մի յայտարարութիւն ուղղափառութեան հաւատոյ» (Հմր 4)*[20] *և «Թուղթ խրատանքը» (Հմր 5):*

*Մխիթար Գոշը վրաց գրականության մեջ լավ հայտնի է իր «Դատաստանագիրք Հայոց»-ով, որը ԺԸ. դարի սկզբին որոշ կրճատումներով ու փոփոխություններով Վախտանգ Զ.-ի հրամանով փոխադրվեց վրացերենի՝ համաձայն այն ձեռագիր օրինակի, որը հատուկ Թիֆլիսի համար դուրս էր գրվել Էջմիածնից: «Դատաստանագիրք Հայոց»-ի վրացերեն տարբերակը ներառված էր «Վախ-*

[15] Բազմաթիվ ձեռագրերի տեսքով գտնվում են հետևյալ գրապահոցներում՝ Էջմիածնի ( **Յ. Կարինեանց**, Մայր Ցուցակ, 152, 153, **Մեսրոպ վ. [Տէր-Մովսէսեան]**, Նիւթեր Ս. Գրքի ուսումնասիրութեան.- Ա, 1904, էջ 215), ինչպես նաև Բարձրահայացի (**Գ. Սրուանձտեան**, նշ. աշխ., Բ., 394), Վիեննայի Մխիթարեան Միաբանության (**Տաշեան**, Ցուցակ, 19), Զմյուռնիայի (**Ոսկեան**, Մատ., քննութ., 188) և այլն: Հրատարակված չէ:

[16] Էջմիածնի թանգարանի ձեռագրում (**Յ. Կարինեանց**, Մայր Ցուցակ, 153), հմմտ. **Գ. Զ[արբհանալեան]**, նշ. աշխ., 697-698: Հրատարակված չէ:

[17] **Տաշեան**, Ցուցակ, 224: Հրատարակված չէ:

[18] Հրատարակված է Ղ. Ալիշանի կողմից (Հայապատում, Բ., 384-391, հմմտ. Ոսկյան, նշ. աշխ., 180-184:

[19] Էջմիածնի թանգարանի երկու չնկարագրված ձեռագրերի համաձայն հրատարակվել է անանուն հեղինակի (Կարապետ Տեր-Մկրտչյանի՞) կողմից, «Արարատ» ամսագրում, չակերտների մեջ առնված հետևյալ վերնագրով՝ («Թուղթ Մխիթար վարդապետին, որ Գոշն կոչիւր».- Ա, 1900 թ., էջ 497-504, 562-568, 1901 թ., էջ 55-61,121-127): (Մենք ստուգել, զուգադրել ենք հին հավաքածուի Հմր 631 ձեռագրի հետ, էջ 17ա-45բ):

[20] Այս «հայտարարության» մասին տեղեկություն կա ქართველთათვის («Վրացիների համար») գրվածքում (Ա, 1900, էջ 497):

*թանգի օրենքներ» ժողովածուի մեջ՝ «Կանոնագիրք Հայոց»*[21] *պարզունակ վերնագրով:*

*Գոշը վրաց գրականության մեջ հայտնի է նաև այլ առումով. Անտոն կաթողիկոսը նրան հիշատակում է իր «Էրիստիկա»-ի 4-րդ գլխում, որտեղ բնութագրում է «կաթոլիկ եկեղեցու թշնամիներին, անարժան քահանաներին, չարամիտ վարդապետներին, այն հայերին, որոնք ամբողջովին գործում են ընդդեմ ճշմարիտ դավանանքի» և ի միջի այլոց ասում է. «*Գոշիկ Վանական. *սա ասում էր անարդար և արդար հոգիների մասին, որոնք երկրի վրա և մարդկանց միջև բնակվում են համատեղ»*[22]*: Իսկ իր երկի նախաբանում բացատրում է. «Տեսա ես գրքերը հայ վարդապետների՝ և՛ Հովհան Օձնեցու, և՛ Պողոս Տարոնացու, և՛ Ստեփանոս Սյունեցու, և՛* Գոշիկ Վանականեցու[23]*, և՛ Վարդանի, և՛ Սարգսի, և՛ Մաշտոցի, և՛ Հովհան Որոտնեցու, և՛ Գրիգոր Տաթևացու, և՛ Գրիգոր Կեչառեցու, և՛ Ղազար Ջահկեցու և՛ Հակոբ Ակնեցու: Դրանց մի մասը պակաս եմ ուսումնասիրել, մյուս մասը՝ ամբողջովին, բայց բոլորն էլ մեզ էին ուղղված հայհոյանքներով, ուստի վիրավորվեցի և ես էլ սկսեցի վերը նշված* այդ հերետիկոսների դեմ *հանդես գալ»*[24]*:*

*Թե Մխիթար Գոշի որ գրվածքը կամ գրվածքները նկատի ունի* Անտոն *կաթողիկոսը, դժվար է ասել. պարզ է միայն, որ նրան կոչում է «Գոշիկ Վանական», resp. «Գոշիկ վանականեցի», այսինքն՝* Գոշիկ[25] կրոնավոր*: Նա նրան համարում է հերձվածող և հիշատակում է՝ հայ «հերետիկոս» (այսինքն՝ հակաքաղկեդոնիկ) վարդապետների շարքում:*

---

[21] Հրատարակված է հետևյալ վերնագրով. «Սամարթալի սոմխուրի» (Կանոնագիրք Հայոց): Վրացերեն տարբերակ, իրականացվել է Վախտանգ Զ.-ի հրամանով: Հրատ. Լևոն Մելիքսեթ-Բեկը [Monumenta Georgica. IV. Leges, № 2], Տփղ., 1927, էջ 42-156, სამართალი სომხური. ქართული ვერსია, შესრულებული ვახტანგ VI-ის ბრძანებით, გამოსცა ლეონ მელიქსეთ–ბეგმა [Monumenta Georgica. IV. Leges, № 2], ტფ. 1927, გვ. 42-156, հատկապես տե՛ս Առաջաբանը, էջ IX-X: Հենց այնտեղ՝ 240-245 էջերում, բերված է հայերեն և վրացերեն բնագրերի ամփոփիչ աղյուսակը, իսկ 249-250 էջերում՝ գրականությունը:

[22] Էրիստիկա, 111:

[23] Պետք է լինի «վանականի», քանզի «վանականեցին» ցույց է տալիս որտեղացի լինելը: Թվում է՝ -կան-ը -կանին տեղանունն պետք է լինի, մինչդեռ այն կրոնավոր է նշանակում:

[24] Էրիստիկա, 4:

[25] Սովորական վերջավորություն է -իկ-ը, ինչպես, օրինակ, Յուսիկ, Խաչիկ, Գագիկ, Գառնիկ, Թոռնիկ, Մեղրիկ ևն:

# ԳԼՈՒԽ Ը.

## ՄԽԻԹԱՐ ԳՈՇԻ «ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ»-Ը ԵՎ ՎՐԱՑԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՆՐԱՆՈՒՄ

«Դատաստանագիրք Հայոց»-ը, որը կարելի է Մխիթար Գոշի լավագույն երկը համարել, քննության արժանի է բազմաթիվ կողմերով, գլխավորապես այն առումով, որը պետք է փնտրենք Վրաստանի պետականության պայմաններում:

«Դատաստանագիրք Հայոց»-ը հայ հին գրականության առավել բարձրարժեք հուշարձաններից է: Չնայած այն չնչին չափով կրում է Դավիթ Ալավկա որդու «Կանոնագրքի» ազդեցությունը[1], այնուամենայնիվ, շատ մեծ նշանակություն ունի՝ որպես միանգամայն ինքնուրույն երկ, և ներկայացնում է հայ հին իրավաբանական գրականության հիմնայունը, և որի հիման վրա ԺԳ. դարում ստեղծվեց Կիլիկիայի Սմբատ Սպարապետի «Յաղագս դատաստանաց թագաւորացն» և այլ Դատաստանագրքեր՝ Մոլդովա-Վալախիա-Գալիցիա-ում, Լեհաստանում, Ղրիմում, Վրաստանում և Հարավային Ռուսաստանում[2]: Նրա մասին շատ է գրվել և դեռ էլի կգրվի:

Այս երկը մեզ համար նշանակալից է և այն աղբյուրների առումով, որոնց վրա նա հիմնվել է, և որոնք թվարկված են նրա Նախադրության Ժ. գլխում:

«Առաջին՝ հաւատարիմ համարիմք ի բնաւորական օրինացն առնուլ, զոր ունէին նահապետքն Աբրահամ և այլքն առանց գրոց...

Երկրորդ՝ առնումք յամենայն ազգաց Քրիստոնէից իբրև հարազատ եղբարց, զոր լուաք և տեսաք ի նոսա բարւոք դատաստանս՝ հաւաքեմք ի գիրս:

Երրորդ՝ առնումք և ի մահմետականաց, ո՛չ զոր նոքա ուսան ի Մահմետայ զախտաւոր բանս կամ զդատաստանս, այլ զոր առին ի Մովսիսի օրինացն՝ մեք զայնս ընտրեմք և առնումք...

Այս են ազգքն, յորոց ընտրեմք և հաւաքեմք զդատաստանս:

---

[1] Տե՛ս վերը՝ այս գրքի երկրորդ մասի Թ. գլխի 20-25-րդ ծնթ. վերաբերող մասը:

[2] Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց, 21-63, 104-108:

*Իսկ ի գրոց - առաջին՝ յԵլից և յԵրկրորդ Օրինացն, և յայլ ևս գրոցն, որ է ստոյգ Աստուծոյ օրէնք և դատաստանք...*

*Երկրորդ՝ ի կանոնական գրոց, զի և անդ ոչ միայն զօրութեամբ գտանի դատաստան...*

*Երրորդ՝ առնումք յամենայն Գրոց ի Հին և ի Նոր Կտակարանաց, ...յառաջ յառաքելոցն եղաւ և ապա ի Նիկիա, և յառաջ քան զնա այլք, և ապա յայլ և յայլ ժամանակս ի ժողովոց և ի Հարց, որք զհետ եկին...»*[3]*:*

*Այսպիսով, Մխիթար Գոշի «Դատաստանագիրք Հայոց»-ի հիմքում ընկած աղբյուրները բաժանվում են հինգ կարգի՝ 1) Բնավորական օրենքներ, 2) Քրիստոնեական ազգերի իրավունք, 3) Մահմեդական իրաւունք (ի Մովսիսի օրինացն), 4) Հին և Նոր Կտակարաններ և 5) Հայոց [եկեղեցական] կանոնական գրքեր*[4]*:*

*Ճիշտ է, Մխիթար Գոշը տեղ-տեղ ցույց է տալիս իր աշխատության այս կամ այն հոդվածի մեջ օգտագործած սկզբնաղբյուրը, բայց այդ սկզբունքին նա միշտ չէ, որ հետևում է: Ահա թե ինչու, խնդիր է ծագում, որ մեկ առ մեկ փնտրենք Մխիթար Գոշի «Դատաստանագիրք Հայոց»-ի սկզբնաղբյուրները: Այս աշխատանքը հնարավորինս կատարել է «Դատաստանագիրք Հայոց»-ի գիտական հրատարակության հեղինակ* Վահան Բաստամյանցը*:* Վահան Բաստամյանցը *որքան մանրամասն է քննել Հին ու Նոր Կտակարանների և եկեղեցական կանոնական գրքերից գրանցումները երկում, նույնքան թույլ է ներկայացրել, այսպես կոչված, բնավորական օրենքները նույն երկում: Համեմատաբար լավ է պարզաբանված «Դատաստանագիրք Հայոց»-ի և, այսպես կոչված, «Կանոնական գրքերի ժողովածուի» փոխհարաբերության հարցը, որը քննարկված է* Սիրական Տիգրանյանի *հոդվածում*[5]*:*

*Բայց մենք ցանկանում ենք ուշադրություն հրավիրել հատկապես Մխիթարի վերոբերյալ հայտարարության այն մասի վրա, որտեղ ասված է, թե նա՝ Մխիթարը, ինչ լավ բան որ լսել և տեսել է քրիստոնեական ազգերի օրենքներում, բոլորը վերցրել է ինչպես հարազատ եղբայրներից՝ «իբրև ի հարազատ եղբարց»:*

*Նախ և առաջ, այստեղ, իհարկե, նկատի են առնված հույներն ու վրացիները: Որ Մխիթար Գոշը հույներին, ավելի ճիշտ, բյուզան-*

3 Նույն տեղում, 65-66.

4 Չմմտ. Խ. Սամուելյան, նշ. աշխ., 43-45:

5 Сиракан Тигранян, "Судебная Книга" Мхитара и "Книга Канонов".- Изв. КИАЙ, т. III, стр. 61-72.

*դացիներին նկատի ունի, սա միանգամայն բնական է և սպասելի: Բայց որ վրացիներն էլ որոշակի տեղ են զբաղեցրել նրա գրքում, ճիշտ է, զարմանալի չէ, սակայն որոշ բացատրություն-մեկնաբանություն է պահանջում: Մենք չենք կարծում, թե այս իրողությունը պայմանավորված է միայն և միայն հայերի ու վրացիների հարևանության փաստով, որովհետև հարևանությունից բացի, մենք գործ ունենք նաև այնպիսի գործոնի հետ, ինչպիսին է այն ժամանակվա Վրաստանի պետականությունը:*

*Մենք գիտենք, որ Մխիթար Գոշը վախճանվել է 1213 թվականին, իսկ «Դատաստանագիրք Հայոց»-ը, ինչպես ինքն է վկայում «Նախադրության» վերջում, կազմել է 1184 թվականին:*

*«Բայց ձեռնարկութիւն մեզ յայսմ իրողութիւն եղև ի թուականութեանս Հայոց ՈԼԳ. … յամս անիշխանութեան թագաւորութեան մերոյ ի վաղնջուց, ի ժամանակի մնացելոց սակաւ իշխանաց ի կողմանս Խաչենոյ, ընդ ժամանակս… Հասանայ կրօնաւորեցելոյ և որդւոյ նորա Վախտանգայ, ի դղեկին որ անուանի Հայթերք, գլխաւորի այլոց իշխանաց, և կողմանցն Կիւլիկիայ մեծի իշխանին Ռուբէնին,* յամի որում մեռաւ յաղթող թագաւորն Վրաց Գէորգի, *ի Հայրապետութեան տեառն Գրիգորի Հայոց Մեծաց և ի դիտապետութեան տեառն Ստեփաննոսի տանս Աղուանից, յաշխարհիս Առանայ, ի նահանգիս որ կոչի մայրաքաղաքին Գանձակ, յանապատս և յեղբարանոցս անուանեալ Դասնոյ, սկզբնաւորեալ ի լեռնակողմն մենաստանին կոչեցելոյ Հոռոմաշէն, ընդ հովանեաւ սրբոց եկեղեցեաց կուսաստանացն յիշեցելոց, ձեռնտուութեամբ Հօր Յովսէփայ, և եղբօր Պաւղոսի յորդորմամբ յառաջարկութիւնս…[6]:*

*Այսպիսով, «Դատաստանագիրք Հայոց»-ը սկսել է 633 = 1184 թվականին, Գիորգի Գ.-ի մահվան տարին, Կիլիկիայում Ռուբեն Մեծի թագավորության, Գրիգոր Տղայի Հայոց հայրապետության և Ստեփանոսի Աղվանից կաթողիկոսության ժամանակ, Առանաց երկրի Դասինի վանքում, հայր[ապետ] Հովսեփի և մերձավոր եղբայր Պողոսի աջակցությամբ՝ «եղբօր Պաւղոսի ձեռնտուութեամբ»: Սա նշանակում է, որ, նախ՝ հիշյալ «գիրքը» կազմվել է 1184-1213 թվականների միջև կամ Թամարի թագավորության ժամանակ, երբ, այսպես կոչված, «Հյուսիսային կողմերը» ամբողջովին Վրաստանի սահմանների մեջ էին մտցված, և, երկրորդ, որ Մխիթարը մինչև 1184 թվականը դեռևս Հին Գետիկում չէր հիմնավորվել, ուստի*

[6] Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց, 69-74:

*նրան գետիկցի չէին կարող կոչել, ինչպես հիշատակված է «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների»՝ Գրիգոր Կաթողիկոսին հղված թղթում:*

***

*Ճորտատիրական ինստիտուտի մասին «Հյուսիսային կողմեր»-ում ընդհանրապես շատ քիչ տեղեկություն ենք հանդիպում, այն էլ հիմնականում այս կամ այն վանքի արձանագրության ցրիվ տրված մեկ-երկու տերմինի տեսքով*[7]*: Այս առումով Մխիթար Գոշի «Դատաստանագիրք Հայոց»-ը պահպանել է ուշադրության արժանի որոշ տեղեկություններ, որոնք հասկանալու բանալին, ըստ* Գալուստ Տեր-Մկրտչյանի՝ *պետք է փնտրենք Վրաստանի պետականության մեջ*[8]*: Դրանք են՝ Բ., 1, մասնակիորեն (ըստ* Բաստամյանցի *հրատարակության՝ էջ* $317_{13-15}$*) = վրց. տարբերակով՝ 152 (մեր հրատարակությամբ՝ էջ* $49_{24-26}$*) կամ 430 (մեր հրատարակությամբ՝ էջ* $156_{11-13}$*), Բ., 20 =վրց. 204, Բ., 21 = վրց, 205, Բ., 22 =վրց. 206*[9]*: Կասկածից դուրս է, որ այս հարցը հատուկ քննարկում է պահանջում. այդ պատճառով բավարարվում ենք միայն գոյություն ունեցող կարծիքի արձանագրմամբ*[10]*:*

*Մի հոդված (Բ., 71) կարծես հիշեցնում է մայրիշխանության այն ինստիտուտը, որի մասին մեզ պատմում է մ. թ. ա. Գ. դարի հույն նշանավոր գրող* Ապոլլոնիոս Հռոդոսցին *իր* Ἀργοναυτικά*-ում (Գ., 200-209), երբ խոսում է կոլխիդացիների մասին. «Կոլխիդացիների մեջ,- նշում է* Ապոլլոնիոսը,- *մեծ սրբապղծություն է համարվում տղամարդկանց դիակներն այրելը. նրանց դիակները ո՛չ հողում թաղել կարելի է, ո՛չ վրան հող լցնել կարելի է. նրանց դիերը փաթաթում են եզի անմշակ կաշվով և քաղաքից դուրս՝ հեռու մի տեղ, կախում ծառից, և հողն էլ իրենը վերցնում է այնպես, ինչպես՝ օդը,*

---

[7] Համմտ. **Կոստանեանց**, Վիմական տարեգիր:

[8] **Գալուստ Տէր-Մկրտչեան**, Հայկականք Ա-ԺԲ. (Armeniaca I-XII), Վաղ. 1894, էջ 8-11, **Վ. Բաստամեանց** (Մխիթար Գօշի Դատաստանագիրք Հայոց, էջ 317, ծնթ. 683): Իզուր է նա ձգտում այս երևույթը բացատրել Մխիթարի *անհատական վերաբերմունքով* հանդեպ Զաքարե և Իվանե Երկայնաբազուկների կամ Վրաստանի այլ պաշտոնյաների:

[9] **Մխիթարայ Գօշի** Դատաստանագիրք Հայոց, 320-321, 317, 335-336, 336, 337 Կանոնագիրք Հայոց, 59, 70, 70, 70-71 (სამართალი სომხური, 59, 70, 70, 70-71):

[10] Պրոֆ. Ս. Եղիազարովի (**С. Егиазаров**, Исследование по истории армянского права публичного и частного, в. I, Киев 1919, стр. 8-9) կարծիքով՝ Հայաստանում ճորտատիրությունը Բյուզանդիայից և Վրաստանից պետք է անցած լիներ, հակառակ կարծիքը տե՛ս Записки Коллегии Востоковедов, т. I, Лнгр., 1925, стр. 488:

*քանի որ հողին հանձնում են կանանց դիերը: Այսպիսին է նրանց <այսինքն՝ կոլխիդացիների> մեջ արմատավորված սովորույթը»*[11].

*Այս դրույթը ԺԲ-ԺԳ. դարերում ընդունել է հետևյալ տեսքը (մահապարտների համար):*

*Ըստ Մխիթար Գոշի «Հայոց Դատաստանագրքի»՝*
*Բ. 71 (Յաղագս դատաստանաց մահապարտաց մեռելոց):*

*Եւ եթէ հասանիցեն ումեք մեղք մահապարտութեան, և մեռանիցի, կախեսջիք զնա զփայտէ, և մի՛ ագանիցէ մարմին նորա ի փայտին, այլ թաղելով թաղեսջիք զնա ի նմին աւուր, զի անիծեալ յԱստուծոյ է ամենայն որ կախիցէ զփայտէ:*

*Զի թէպէտ ամենայն օրինադրութիւնս ոչ միայն առ ճառն, այլ և առ ի միտսն բազում ունի պատճառս, այլ մեզ որքան հարկաւորն է իրաւանց դատաստանի առնլի է: Եւ զի անդ Իսրայէլի զազգայինոցն ասացաւ թաղել զմարմինս, և զի մերոց թագաւորաց ոչ հրամայեցաւ զհաւատացեալ սպանանել, բայց միայն խրատել: Իսկ եթէ այլազգի պատահի ի մահ դատապարտելն, ոչ է արտաքոյ իրաւանց, զընութիւնս պատուելոյ աղագաւ թաղել տալ հրաման՝ յորում աւուր և իցէ»*[12]*:*

*Նույնը վրացերեն տարբերակով՝ 263*

*Եթե մեռնի որևէ մեկը մահվան արժանի մահով, նրան չպիտի կախեն ծառից և ոչ էլ նետեն մի կողմ, նույն օրը պետք է հողին հանձնեն: Անիծված է կախողը: Եվ եթե այլ ազգից լինի մեռնողը, նրան չպիտի պահեն: Արդար կլինի, որ հողին հանձնեն նույն օրը*[13]*:*

*Ինչպես այս հոդվածը, այնպես էլ* Ապոլլոնիոս Հռոդոսցու *աշխատության հիշատակված դրույթը, իհարկե, արժանի են առանձնակի*

[11] В. Латышев, Известия древних писателей греческих и латинских о Скифии и Кавказе, т. I, стр. 418. Չպետք է մոռանանք, որ Մխիթարի «Դատաստանագիրք Հայոց»-ի հնագույն ձեռագրում, էջմ. հին հավաք. № 488 (=492) 1295 թ., այս պարագրաֆը, ինչպես ժամանակին իրավացիորեն նշել է Վ. Բաստամեանցը (Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց, էջ 386, ծնթ. 827) ամբողջությամբ չի պահպանվել, բայց մնացած ձեռագրերում կա:

[12] **Մխիթարայ Գօշի** Դատաստանագիրք Հայոց, 386-387:

[13] Կանոնագիրք Հայոց, 91 („სამართალი სომხური", 91):

քննության երկրորդ կանոնագրքի ԻԱ. գլխի 22-րդ և 23-րդ հոդվածների համեմատությամբ: Այդ պատճառով այստեղ մենք դրա վրա կանգ չենք առնում:

* * *

Մխիթար Գոշի «Դատաստանագիրք Հայոց»-ում կա մի քանի հոդված («Նախադրության» 6-րդ գլուխը մասնակիորեն, Ա. 65, Ա. 06, Բ. 1 մասնակիորեն), որտեղ այս կամ այն հարցը պարզաբանելիս նկատի է ունեցել վրացիների որոշ սովորույթներ:

Դրանց թվում մեկը՝ (Ա. 65) առելությամբ է ներարկված քաղկեդոնականության դեմ և շատ լավ է բնորոշում հեղինակի գաղափարական դիրքորոշումը:

Մխիթարն ասում է.

«Եթէ ոք զքառասունսն պահեսցէ սուրբս և Զատկի հինգշաբթի օրն քան զհաղորդել օրինացն և բաժակին սրբոյ աւելի ինչ համարձակեսցի ուտել, զպահսն զոր պահեաց՝ ընդունայն է և ի մեծ ժողովոյն նզովեալ:

Զայս և ի Նիկիայ ժողովն եդին - յայնմ աւուր սակաւ չորակեր լինել:

Լուիցեն Յոյնք և Վիրք զդատաստան կերողաց զօրն մեծ, զի ոչ Գանգրային ժողովեալք և ոչ Նիկիային Հայք էին, այլ յամենայն ազգաց, մանաւանդ Յունաց: Եւ այս դատաստան անլուծանելի է ի վերայ նոցա, զի ոչ յարժանաւոր ժողովոյ լուծանել, այլ ի խոտորեալ և յանարգեալ ժողովոյն Քաղկեդոնի»[14]:

Մենք չենք անդրադառնա այն հանգամանքին, թե այս հոդվածում առաջադրված մեղադրանքը որքանով է համապատասխանում իրականությանը, նաև այն, թե ինչով է հարուցված այս մեղադրանքը[15]: Մեզ համար էական նշանակություն ունի միայն այն փաստը, որ Մխիթարը՝ որպես ուղղափառ հակաքաղկեդոնական, նույնիսկ «Դատաստանագիրք Հայոց»-ում չի խուսափում Քաղկեդոնի ժողովի քննադատությունից, որին հետևողները հույներն ու վրացիներն են եղել: Եվ հենց դրանով է բացատրվում այն, որ, Մխիթարի երկի վրացերեն թարգմանության մեջ այդպիսի հոդվածի ներառումը անններելի կլիներ: Այդ պատճառով, այս հոդվածի բովանդակությունը փոխեցին, և հույների, վրացիների ու Քաղկեդոնի ժողովի

[14] Մխիթարայ Գօշի. նշմ., 164-167:

[15] Վ. Բաստամեանց (նույն տեղում., էջ 165-167, հմմտ. 322, 323): Այս մասը թյուրիմացության արդյունք է համարվում:

*հիշատակումի մասը հանելով՝ նրան տվեցին հետևյալ տեսքը (հայ. Ա. 65 = վրց. 306):*

*«Եթե որևէ մեկը 40 օր պահպանի և Հարության Մեծ հինգշաբթի սուրբ հաղորդությամբ ընդունվածից ավելի պաս ուտի, քան մինչ այդ պասը պահել է, նա բոլորովին վատն է և մեծ ժողովից անիծված և նմանապես՝ Նիկիայի ժողովից: Քանզի եթե մինչ այդ օրը պահել է, այդ օրն առավել ևս պետք է պահի և վարվի այսպես. չոր հաց ուտի. ամեն քրիստոնյա պետք է իմանա ուտելու կանոնը Մեծ Հարության օրը»*[16]:

*«Նախադրության» 6-րդ գլխում,* որը վրացերեն տարբերակում *չենք գտնում*[17], *Մխիթարը խոսում է այն մասին, «թէ ո՞րպէս պարտ է լինել դատաւորաց, և չարախօսաց և դատախազաց» և մանրակիրեն անդրադառնում է գործի քննարկմանը մասնակցած դատավորների կազմին:*

*Նա ասում է. «...այժմ երկոտասան կարգեցին դատաւորս՝ ըստ երկոտասան առաքելոցն, ոչ միայն զի ի բազմացն քննութենէ ճշմարիտ և իրաւ լիցի դատաստանն, այլ զի ի բազմացն վկայութենէ ճշմարիտ, անկասկած և ահաւոր լիցի առեան դատաստանին: Իսկ* Յոյնք *երեք կացուցին զդատաւորսն,* նոյնպէս և Վիրք՝ ի նոցունց ուսեալք, *ըստ Թուոյ Երրորդութեանն կամ ըստ համարոյ վկայիցն: Եւ մեզ նոյնս է հաճելի երեքն, զի այլ բազում քան զայս զդժուարաւ գտանի յամենայն տեղի»*[18]:

*Մեկ հոդված (Ա. 106), հատուկ նվիրված է Վրաստանի «ազատներին»*[19]*: Այն մոտավորապես ճիշտ է վրացականացված, տարբերությունը սոսկ այն է, որ թարգմանության մեջ անտեսվել է վերջում զետեղված հետևյալ նախադասությունը. «լուիցեն ազատք որ ի Վիրս, զի այսպիսի լուծին զուղիղ և զնախագոյն կանոնական հրաման»:*

*Ի վերջո, Մխիթարի գրքում հանդիպում ենք նաև այսպիսի հոդվածի (Բ. 1 մասնակիորեն՝* <Վ. Բաստամյանցի *հրատարակմամբ էջ*

---

[16] Կանոնագիրք Հայոց, 105 (სამართალი სომხური, 105):

[17] Հմմտ. Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց, Յառաջաբան, էջ 100, 118-119:

[18] Նույն տեղում, 30-31:

[19] «Ազատ» տերմինի մասին տե՛ս **И. Джавахов**, Государственный строй древней Грузии и древней Армении, т. I, [ТР VIII], Спб., 1905, стр. 59-60, 132-133, **Յակոբ Մանանդյան**, Դիտողություններ հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում.- «Bulletin de l'Université d'État de la R.S. S. d'Arménie», № I, Յերևան, 1925, էջ 27-45:

*317$_{4-6}$>), որը բաց է թողնված վրացական տարբերակում և որը եթե այնտեղ լիներ, կզետեղվեր հետևյալ հոդվածի տակ՝ 152 (մեր հրատարակությամբ՝ էջ 49$_{20}$, նախադասությունների միջև) = 429 (մեր հրատարակությամբ՝ էջ 156$_5$-ից հետո, մինչև 157$_6$ը): Նրանում նշված է, թե «որքան անարդար են այն տերերը, ովքեր հավատացյալներին ստիպում են տուրք վճարել, ինչպես այլազգիները՝ <մահմեդականներն> են պարտադրում, քանզի տուրք այլազգիներից պետք է վերցնել և ոչ թե նրանցից՝ հավատացյալներից» և ավելացնում է, թե այդպես վճարել են տալիս (վերցնում են)* վրացիները *«որպէս և առնեն Վիրք»*[20]:

[20] **Մխիթարայ Գօշի** Դատաստանագիրք Հայոց, 317, այս հոդվածի պարզաբանման մասին տե՛ս Հակոբ Մանանդյան, Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում.- "Bulletin de l'Institut des Sciences et des Arts de le Republique S. S. d'Arménie", № 1, Յերևան, 1926, էջ 9:

# ԳԼՈՒԽ Թ.

## ՄԽԻԹԱՐ ԳՈՇԸ ԵՎ ՆՐԱ «ԳԾԱԳՐՈՒԹԻՒՆ... ՅԱՂԱԳՍ ՎՐԱՑ»- Ը

*Մխիթար Գոշը ակներև ներկայացուցիչն է այն «Հայոց վարդապետների», ովքեր գործունեության նպատակ են համարել հակաքաղկեդոնականության հաղթանակը և քաղկեդոնականության պարտությունը: Նա այն չորս գլխավոր հենասյուներից մեկն է (1. Անանիա Սանահնեցի, 2. Հովհաննես Սարկավագ, 3. Գրիգոր Տուտեորդի, 4. Մխիթար Գոշ), որոնք արտահայտում են, այսպես կոչված, «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» գաղափարախոսությունը: Դրա հետ մեկտեղ, նա իր էրուդիցիայով անհամեմատ ավելի ուժեղ է վրաց քաղկեդոնականության դեմ պայքարում կամ հայ հակաքաղկեդոնականությունը վրացիներից պաշտպանելիս, քան* Անանիա Սանահնեցին *և վերջիններիս նախորդները՝* Մովսէս Ուտիեցին և Ուխտանեսը:

*Հայոց հակաքաղկեդոնականությունը վրացիներից պաշտպանելու նպատակով Մխիթարը կազմել է մի ընդարձակ երկ, որը մեզ է հասել անվերնագիր, Նախադրությունում հեղինակը այն կոչում է «Գծագրութիւն... յաղագս Վրաց»*[1]*: Առաջին հայացքից այն սխալվում է* Կիրակոսի *հիշատակած «Գիրք մի յայտարարութիւն ուղղափառութեան հաւատոյ ընդդէմ ամենայն հերձուածողաց» երկը: Մեր կարծիքի օգտին խոսում է այն, որ թե՛ առաջինը և թե՛ երկրորդը գրվել են Զաքարե և Իվանե Երկայնաբազուկների հորդորով. «Ի խնդրոյ զաւրավարին Զաքարէի և եղբաւր իւրոյ»*[2]*, իսկ երկրորդի առաջաբանում Մխիթար Գոշը դիմում է. «Աստուածա-*

---

[1] Մեզ է հասել երկու ձեռագրի տեսքով, որոնք պահպանվել են Էջմիածնի հին հավաքածուում, և որի համաձայն՝ այն հրատարարակել է անանուն հրատարակիչը (Կարապետ Տեր-Մկրտչյանը՞) հենց Էջմիածնում չակերտներում առնված հայերեն վերնագրով՝ Թուղթ Մխիթար վարդապետին, որ Գո(օ՞)շն կոչիւր (Ա, 1900, էջ 497-504, 562-568, 1901, էջ 55-61, 121-127), թեև, ցավոք, ձեռագրերը չեն համարակալվել: Ձեռագրերից մեկը մենք վերականգնեցինք Գարեգին Յովսեփյանի օգնությամբ. դա ժէ. դարի Յմր 631 ձեռագիրն է, որտեղ Մխիթարի երկասիրությունը զետեղված է 17ա-45բ էջերում: Ստորև ամենուր նշել ենք ձեռագրի էջերը՝ հրատարակության հետ համեմատելով:

[2] Կիրակոս, 209:

*սէր և բարեպաշտ իշխանք իշխանաց Զաքարէ և Իւանէ»[3], որոնց վերջաբանում ասում է՝ «դուք իշխանք էք Հայոց և Վրաց կամաւքն Աստուծոյ»[4]: Բայց նման եզրահանգման դեմ վկայում է այն փաստը, որ «Գծագրութիւն... յաղագս Վրաց»-ում Մխիթարը հիշատակում է «Թուղթ Հաւատոյ խոստովանութեան», որպես ավելի վաղ գրված փաստաթղթի. Մխիթարը Վրաց կաթողիկոսին է դիմում հետևյալ խոսքերով. «զոր գրեալ եմք ի թղթիդ՝ վասն Հաւատոյ խոստովանութեան»՝ սա է ճշմարտութիւնը, և թող Տերը դատի ինձ, եթե Հայերի մասին որևէ բան սուտ եմ գրել»[5]:*

*Ցավոք, Մխիթարի հիշատակած «Թուղթ Հաւատոյ խոստովանութեանը», որ մեր կարծիքով* Կիրակոսի *աշխատությունում անվանված «Գիրք մի յայտարարութիւն ուղղափառութեանը» <այսինքն՝ Հակաքաղկեդոնականության> պետք է լինի, մեզ չի հասել, ուստի նրա մասին ոչինչ ասել չենք կարող: Ուրեմն՝ մնում է միայն «Գծագրութիւն... յաղագս Վրաց»-ը, որը հայ-վրացական հարաբերությունների, մասնավորապես՝ հայ-վրացական եկեղեցիների բաժանման հարցը ուսումնասիրելու համար չափազանց նշանակալից և յուրօրինակ աղբյուր է, նաև հարուստ նյութ է պարունակում:*

*Մեր մենագրության առանձնահատկությունը պարտավորեցնում է այս հարցը ներկայացնել այնպես, ինչպես մենք վարվեցինք Անանիա Սանահնեցու երկի դեպքում, թեև Անանիայի և Մխիթարի միջև տարբերությունն այն է, որ առաջինն առանձին աշխատություն չի նվիրել հայ-վրացական բանավեճին, այլ ընդհանուր՝ «...Ընդդէմ երկաբնակացը», մինչդեռ երկրորդը այս հարցին անդրադառնում է հատուկ հանձնարարությամբ՝* 1197-1205 *թթ. Թիֆլիսում և* 1205-1207 *թթ. Լոռում և Անիում հրավիրված եկեղեցական ժողովների հետ կապված:*

*Երկն սկսվում է հետևյալ «Նախադրութիւնով». «Զայս գծագրութիւն սակաւուք հարկաւոր կարծեաւք եդաք յաղագս Վրաց, որ ոչ սակաւ թշնամութեամբ ընդ մեզ վարին քան զՅոյնս, աշակերտելով նոցա: Եւ արդ, զի նախ առ ձեզ է նախադրութիւն բանիս, ով աստուածասէր և բարեպաշտ իշխանք իշխանաց Զաքարէ՛ և Իւանէ՛, ծնունդք սիրոյ Աստուծոյ ի բարեզարդ ծնողաց. զի ես յամենայնի նուաստս Մխիթար, ի բանս և ի գործս սպասաւորաց բանին, որ յաւուրս մեր՝ տեսանելով և լսելով զբամբասանս Վրաց*

---

[3] Ա, 1900, էջ 497:

[4] Նույն տեղում, 1901, էջ 127:

[5] Նույն տեղում, 1900, էջ 497:

*ի դաւանութիւնս մեր Հաւատոյ և կարգաց եկեղեցւոյ, յոյժ խոցեալ լինէի Հոգի, մանաւանդ զի Հաւանելի թուելով ձեզ ասացեալքն առ ի նոցանէ, յայսոսիկ եկի միտս՝ գրել սակաւուք զճշմարիտ Հաւատոյս մերոյ զաւրինակ, և զոր ամբաստանիմք, թէ ոչ միաբանիմք ընդ Յոյնս և ընդ Վիրս ցուցանել փութացաք զանհնարութիւն...»*[6]:

*Այս «Նախադրությանը» զուգահեռ բերված է նաև «Հիշատակարանը», որտեղ, ի միջի այլոց, ասված է. «...Եւ արդ, թէպէտ բարեպաշտ թագաւորք[ն] մեր չեն բաւական՝ Թամար և Դաւիթ, տիեզերական ժողով առնել ամենայն ազգաց, վասն հեռաւորութեան Յունաց և Հռոմայեցւոց և այլոց ազգաց, այլ Աստուծոյ շնորհաւքն կարող են զՀայոց և զՎրաց թշնամութիւնն բառնալ, որ զՔրիստոս չհայհոյեն. զի այն Քրիստոսի է ատելութիւն, [և թշնամութիւն], որ զխաչ և զխատ*[7] *և զեկեղեցի միմեանց հայհոյեն և նախատեն: Եւ որպէս ցուցաք յառաջագոյն՝ այն էր Աստուծոյ հաճոյ և Քրիստոսի կամք, զի ամենայն ազգ քրիստոնէից միակրաւն էին լեալ, բայց չէ հնար <տրբրկ.՝ արժան է>, որպէս գրեցաք, այլ զկարելին չէ հնար խափանել: Զի դուք իշխանք էք Հայոց և Վրաց կամաւքն Աստուծոյ, և թէ կամիք՝ ծանուցանէք աստուածասէր թագաւորացդ, որ արքայական իշխանութեամբ սաստ դնեն, որ ոչ զեկեղեցի Աստուծոյ <տրբրկ.՝ Հայոց> չքակեն և զխաչ այրեն, և այսմ ժամանակեայ իշխանութեամբս և յաւիտենական թագաւորութիւնն առնուն ընդ բարեպաշտ թագաւորացն՝ ընդ Կոստանդիանոսին, ընդ Թէոդոսի և ընդ Տրդատայ և ընդ նախնի թագաւորացն ինքեանց, աստուածասիրացն Բագրատունեաց...»*[8]:

*«Նախադրությանը» հաջորդում է բավականին ընդարձակ շարադրանք, որն ասես վերնագիր էլ ունի՝ «Փոքր ինչ և թղթոյ աւրինակս»*[9]:

*«Գծագրութիւն... յաղագս Վրաց»-ը հասցեագրված է վրաց կաթողիկոսին և սկսվում է բավականին ընդարձակ «Մուտքով», որտեղ, ի միջի այլոց, ասված է. «Աստուածարեալ և հոգևոր Տեառնդ, քրիստոսապսակ կաթողիկոսիդ հաւատացելոցդ ի Քրիստոս Վրաց*

---

[6] Էջմ. թանգ. հին հավաք. ձեռ. Հմր 631, էջ 17ա = Ա, 1900, էջ 497:

[7] Խատ, վրացերեն նույն “ხატი”-ն («խատի») է: Այս մասին տե՛ս **Н. Марр**, Арк'аун, мангольское название христиан в связи с вопросом об армянах-халкедонитах.- “Византийский Временник”, т. XII, 1905, стр. 40 и прим. 1 там-же, նույնի՝ Религиозные верования абхазов.-ХВ, т. IV, 1915, стр. 126, прим. 2, նույնի՝ Еще о термине xati q'at-i *образ, подобие.*- ХВ, IV, 313-314 և այլն, **Օրբէլեան**, 380:

[8] Ձեռ. Հմր 631, 45ա-45բ = Ա, 1901, էջ 126-127:

[9] Ձեռ. Հմր 631, 17բ = Ա, 1900, էջ 497:

և աստուածապատիւ եպիսկոպոսաց և Հարց Հոգևորաց, եղբայրանոցաց և կուսաստանաց, և խաչակրաւն միանձանց, և Համարակ եկեղեցական կարգաց, - նուաստս ի Քրիստոս և սպասաւոր Բանին Աստուծոյ, գծողս այսմ մատենի՝ աղաչանաւք ծանուցանեմ»[10]:

Այնուհետև Մխիթարը հիշատակում է վրաց կաթողիկոսի հետ ունեցած իր անձնական թղթակցությունը և, ի միջի այլոց, ասում է. «Եւ զոր գրեալ եմք ի թղթիդ՝ վասն հաւատոյ խոստովանութեանն՝ ճշմարտութեամբ այսպէս է, և դատիմ ի Տեառնէ, թէ վասն Հայոց երեսաց ես սուտ ինչ գրել եմ»[11]:

Մխիթարը կաթողիկոսին Հանդիմանում է այն բանի Համար, որ ինչ նա գրել է Հայերի մասին, իրականությանը չի Համապատասխանում, և դիտողություն է անում նրան, որ դրանք նա Հույներից, այսինքն՝ Հոռոմներից է լսել՝ «զայդ ի Հոռոմէն էք լսել»[12], և միմյանց չՀասկանալու Հետևանք է, որ վրացիները Հայերին են մկրտում, Հայերը՝ վրացիներին՝ «վրաց զՀայ մկրտեն և թէ Հայ զվրացի»[13]:

Նախադրությունը Մխիթարը վերջացնում է Հետևյալ բառերով. «Թէ Հաճոյ ձեզ առնէ Աստուած զսակաւ պատճառ ի բանս թղթիդ, դուք աննախանձ կամաւք աստուածասէր թագաւորացդ յայտնեցէ՛ք, զի և դոքա նախանձաւորին խաղաղութեան և սիրոյ առ ի միմեանս Հաւատացելոց: Գիտեմք և զձեզ վշտակից կամաւք Հոգալ. թէև ոչ է միաբանելոյ Հնար, այլ Հնար է զՀայՀոյութիւնն բառնալ և խափանել զմկրտութիւնդ, որ յոյժ անՀաճոյ է Քրիստոսի և ամենայն սրբոց նորա: Ապա թէ ոչ՝ թողութիւն առնէք մեզ, զի ոչ յանդգնութեամբ, այլ վշտանալով գրեցաք»[14]:

Այսպիսով, այժմ քննարկված նախա- և վերջա- բաններից և ներածությունից պարզվում է, որ՝ 1) Հայ-վրացական Հարաբերություններ Հարցի շուրջ Մխիթարը գրել է առնվազն երկու թուղթ, որոնցից մեկը՝ «Թուղթ վասն Հաւատոյ խոստովանութեան» կամ «Ընդդեմ Հերձվածողաց» <այսինքն՝ Հակաքաղկեդոնականների>, իսկ երկրորդը՝ «Գծագրութիւն... յաղագս Վրաց», 2) վերջինս Հիմնված է առաջինի վրա, որը, սակայն, մեզ չի Հասել, և որի գոյության մասին տեղյակ է եղել Կիրակոս Գանձակեցին, 3) «Գծագրութիւն ...յաղագս Վրաց»-ը Հեղինակը գրել է Զաքարե և Իվանե Երկայնաբազուկ-

[10] Ձեռ. Դմր 631, 17բ = Ա, 1900, էջ 497:

[11] Ձեռ. Դմր 631, 17բ = 18ա = Ա, 1900, էջ 497:

[12] Ձեռ. Դմր 631, 18ա = Ա, 1900, էջ 498:

[13] Ձեռ. Դմր 631, 18ա = Ա, 1900, էջ 498:

[14] Ձեռ. Դմր 631, 18ա-18բ = Ա, 1900, էջ 498:

*ների հանձնարարությամբ՝ ի պատասխան վրաց հոգևորականնե-րի, 4) այս թուղթը ուղղված է վրաց կաթողիկոսի (որոշակի ում՝ նշված չէ), նրանց եպիսկոպոսների, հոգևոր հայրերի, վանական-ների, ճգնավորների և եկեղեցու բոլոր ծեսերը կատարողների դեմ, 5) դրանով նա ոչ թե նպատակ ունի հարձակվել վրացիների վրա, այլ հայերին պաշտպանել վրացիների պարսավանքներից, 6) հեղի-նակը խնդրում է Զաքարե և Իվանե Երկայնաբազուկներին ու վրաց կաթողիկոսին, որպեսզի նրանք իրենց հեղինակավոր ձայնը բարձ-րացնեն «աստվածասեր» Թամար թագուհու և Դավիթ [-Սոսլան]-ի առաջ, որ վերջիններս էլ «արքայական իրավունքով» վրացիներին արգելեն հայերին զրպարտելն ու դադարեցնեն հալածանքները:*

*Միաժամանակ պարզվում է, որ այդ թուղթը հետևանք էր այն իրադարձությունների, որ տեղի ունեցան Թամարի թագավորու-թյան ժամանակ, օրինակ՝ 1197 թվականի հայ-վրացական բախում-ների*[15]*, կամ, այսպես կոչված, «Առաջավորաց պահքի» մասին շա-րադրված պամֆլետների*[16]*:*

* * *

*«Գծագրութիւն... յաղագս Վրաց»-ում հայոց եկեղեցական կյան-քի տեսական ու գործնական բազմաթիվ հարցեր են շոշափվում, և այս առումով շատ է հիշեցնում Արսեն կաթողիկոսի «Վասն բա-ժանման Վրաց ի Հայոց» տրակտատը:*

*Սկզբում հեղինակը պատմում է եկեղեցական տիեզերական ժո-ղովների մասին, մասնավորապես՝ Քաղկեդոնի ժողովի, կապված հերետիկոսության հարցերին: Այնուհետև նա անդրադառնում է հայոց եկեղեցու տեղական ժողովներին ու այն փաստին, թե ինչու հայերը «վտարանդվեցին հույներից և վրացիներից»*[17]*:*

*Մասնավորապես Դվինի առաջին (հայոց տեղական եկեղեցու հինգերո՞րդ) ժողովի մասին*[18] *Մխիթարը պատմում է համաձայն*

---

[15] **Л. Меликсет-Беков**, О междоусобице в Тифлисе в 1197 году по поводу Кривой пасхи.- Изв. КИАЙ, т. III, стр. 49-60:

[16] ՔՑ., Թաղ., 481-482 = Բրոս., 313-314, հմմտ. **Л. Меликсет-Беков**, Грузинский извод сказания о посте "араджавор".-ХВ, V, 73-111, նույն տեղում՝ նյութի գրականությունը, տե՛ս նաև **Մեսրոպ Մաքսուդեանցի** գրախոսությունը այս գրքի մասին.- Ա, 1918, էջ 148-150, **Ա. Մատիկեան**, Դիցաբանական շունը յարաբերութեամբ Միքայէլ-Գաբրիէլ հրեշտակներու և ս. Սարգսի.- ՀԱ, 1927, էջ 43-55, **Կոռն. Կեկելիձե**, Պրո-վոկացիա՞, թե՞ կարճատեսություն = "პროვოკაცია თუ სიბეცე"? (Ալ. Ռեմիզովը և հայերի «սուրբ Սարգիսը).- «Սաքարթվելո» (լրագիր), 1916 թ., № 124, **նույնի**՝ Վրաց գրականության պատմություն, I, 539:

[17] Ձեռ. ՀՁր 631, 22ա = Ա, 1900, էջ 501:

[18] Տե՛ս վերը՝ այս գրքի առաջին մասի Գլ. Է., ծնթ. 2. հմմտ. **Л. Меликсет-Беков**, Об

*«Գիրք թղթոց»-ում զետեղված* Յովհան Օձնեցու *երկի՝ «Սակս ժողո-վոց՝ որ եղեն ի Հայս», միայն թե կրճատումներով:*

*Ըստ Մխիթար Գոշի՝*

*Հինգերորդ ժողով արար Բար-գէն ի Քաղաքի դաշտի, ի ԺԸ. ամի Կաւատայ արքայի, յաղագս չար հերձուածոյն Ակակայ և Բարդու-ծանայ, որք Նեստորին ունէին. վասն որոյ գիր արարեալ, սահ-մանս կարգելով՝ ասեն. Մեք՝ Հայք և Հոռոմք և Վիրք մի խոստովա-նութեամբ հաստատեալ եմք, զոր աւանդեցին Գ. ժողովն»[19]:*

*Ըստ Հովհան Օձնեցու՝*

*Հինգերորդ ժողով արար Բար-գէն ի Քաղաքուղաշտի, ի յԺԸ.ե-րորդ ամի թագաւորութեանն Կաւատայ արքայի, յաղագս չար հերձուածոյն Ակակայ և Բարսու-մայի, որք պիղծ աղանդաւն վար-ժեալ՝ անիծեալ ախտիւն Նեստո-րի, ջանային շիջուցանել զուղ-ղափառ հաւատս կողմանց արևե-լից և տնկել զժանդացեալ որոմն դաղձին վնասակարի Նեստորի անիծելոյ: Վասն որոյ գիր արա-* [illegible] *պելով, թէ ի՛ւ պատրեալ խաբեա-ցեն զձեզ բանք դոցա, քանզի մեք Հայք և Հոռոմք, Վիրք և Աղուանք մի խոստովանութեամբ եմք հաս-տատեալ ճշմարիտ հաւատով ի լաւ անդր, զոր աւանդեցին մեզ սուրբ հարքն յերիս ժողովսն...*[20]:

*Իսկ հայ կաթողիկոսների անունները թվարկելիս Մխիթարը, ի միջի այլոց, նշում է, որ «Տէր Աբրահամ ամս ԻԳ., առ որով վիրք ի բաց կացին ի միաբանէ հայոց»*[21]:

*Հայոց և վրաց եկեղեցիների բաժանման պատմությունը Մխի-թարը շարադրում է համաձայն* Անանիա Սանահնեցու *«Վասն բա-ժանման վրաց»*[22] *երկի՝ գրեթե բառ առ բառ կրկնությամբ.*

*Եւ այլ վասն Վրաց բաժանելոյն զի՛նչ ասացից. զի ի Քրիստոսէ մինչ ի չար ժողովն Քաղկեդոնի ՅՀԴ. (374) ամք են, և ընկալաւ ամենայն եկեղեցի յառաքելոցն զմի դաւանութիւն հաւատոյ անբա-*

источниках древнеармянского права.- Изв. КИАИ, т. II, Лнгр., 1927, стр. 154, 155, прим. 2:

[19] Ձեռ. Յմր 631, 22բ = Ա, 1900, էջ 502:

[20] Գիրք թղթոց, 220-221:

[21] Ձեռ. Յմր 631, 23ա = Ա, 1900, էջ 502:

[22] Հրատարակված են այս գրքի երկրորդ մասի Դ. գլխի 10-րդ ծնր.-ն հաջորդող շարադրանքի մեջ:

*ժանելի. և յետ Յէ. (305) ամի ընկալան Հայաստանեայք զքարոզու- թիւնն ի սրբոյն Գրիգորէ, և Վրաց ազգն ընդ մեզ նզովեցին զժո- ղովն Քաղկեդոնի զամս Հարիւր, մինչև ի ժողովն Հայոց ի Դուին և ի Մանազկերտ, ուր որոշեցին զեդեալ Հաւատն ի Ք[աղկեդոն] և Հաստատեցին զերից սուրբ ժողովոյն, և Գաբրիէլ Մցխիթայի եպիս- կոպոսն ընդ մեզ, որ էր Խախուացի, և յետոյ բաժանեցան ի մէնջ: Մեռաւ Գաբրիէլ և եկաց ի տեղի նորա Կիւրիոն, որ ունէր ի ծածուկ զաղանդն Քաղկեդոնի, և նախանձեալ ընդ պատւոյ աթոռոյն Սիւ- նեաց և Աղուանից քան զիւրն՝ որոշեցաւ ի մէնջ յաւուրս Աբրա- Համու Հայոց կաթուղիկոսի, և այլ և այլ կոչեցաւ և ոչ Հնազան- դեցաւ: Ապա առաքէ զՊետրոս զդրան եպիսկոպոսն իւր, զի թէ ոչ Հնազանդեսցի՝ լուծցէ զնա. իսկ նա կամաւք զդեստն մերկացել տա[յ] զնա. ապա ի դաղտնի զկնի առաքելոյ, զի մախայր <տարբկ. մախէր> սպանանել զնա քարամբ, և ինքն երթայ ի Հաղորդութիւն առ աղանդն Քաղկեդոնի՝ չար մտաց Հաղորդեալ ի կամս չարին, և քարկոծի Պետրոս ի լեառն Կանկուար, Համդերձ երկու կրաւնաւո- րաւք: Եւ զայս կարճաբանելով ասացաք և առաւել վասն Յունաց և Վրաց, որ ամբաստանեն զմէնջ՝ թէ Հայաստանեայք միայն ոչ ըն- դունին զժողովն Քաղկեդոնի: ԱՀա ցուցաք, զի բազում ազգ ոչ ընդունին զժողովն Քաղկեդոնի: Զի աւելորդ էր զկնի Գ.ից սուրբ ժողովոյն և այն ժողով»[23]:*

Մխիթարը բավականին ընդարձակ է ներկայացնում Հայոց եկե- ղեցու դավանաբանությունը: Բայց մինչ այդ Հարցին անդրադառ- նալը, նա քննարկում է տարբեր ժողովուրդների՝ մասնավորապես Հույների, վրացիների և Հայերի որոշ սովորույթներ՝ ժամասացու- թյունը, պատարագը, պասերը (այդ թվում՝ «Առաջավորաց պաՀքը»), փրկության, խաչերի, սրբապատկերների պաշտամունքի Հարցերը[24]:

Հայ քրիստոսաբանության մասին խոսելով՝ Մխիթարը Հաճախ վկայում է տիեզերական Հայրերին՝ Աթանասին, Կյուրեղ Ալեքսանդ- րացուն, Գրիգոր Նյուսացուն, Հուլիոսին, ՀովՀան Ոսկեբերանին, Հոնորիոս Հռոմայեցուն, Բարսեղ Կեսարացուն, Գրիգոր Աստվածա- բանին, Եփրեմին և այլոց, իսկ Հայոց Հայրերին՝ պակաս չափով: Ի դեպ, Հիշատակում է նաև Սոկրատ-[Սքոլաստիկոս]-ին:

Քրիստոսաբանությունը լուսաբանելիս Մխիթարը անդրադառ- նում է նաև Հայերի տոնագիտությանը (էորտոլոգիա), մասնավորա- պես՝ Քրիստոսի ծննդյան և մկրտության տոներին (6-ը Հունվարի)

[23] Ձեռ. Դմր 631, 23բ-24ա = Ա, 1900, էջ 503:
[24] Ձեռ. Դմր 631, 24բ-25ջ = Ա, 1900, էջ 504, 562:

*և վերջինիս առնչվող մնացած հանդիսություններին, որոնցում հայերը «տարբերվում են» հույն-վրացիներից[25]: Նմանապես վերստին խոսում է հույն-վրացիների և հայերի միջև եղած «տարբերություններից»՝ պասի և փրկության հարցերում[26]:*

*Առանձնապես խստորեն քննադատում է քաղկեդոնական եկեղեցու պրակտիկայում ամրապնդված երկու երևույթ. այսպես կոչված զոհերի համար պատարագը շարժական վրանում (օդայում), որոնցից վերջինը, ինչպես արդեն գիտենք, քննության հատուկ առարկա էր դարձել 1205-1207 թթ. Լոռու և Անիի ժողովներում: Նման նորարարություն Մխիթարին հնարավոր է թվում միայն որոշակի դեպքերում, այսինքն՝ ռազմական արշավանքների ժամանակ. «զվրանս վասն զաւրաց թոյլ ետ կանոնքն»[27]:*

*Այնուհետև Մխիթարն անդրադառնում է եկեղեցիների և սրբությունների օծման[28] ժամանակ հույների, վրացիների և հայերի միջև եղած «տարբերությանը», կրկին՝ պասերի, միս ուտելու կամ չուտելու հարցերին[29] և մասնավորապես կանգ է առնում, այսպես կոչված, «Առաջավորաց պահքի» վրա:*

*«Եւ վասն առաջաւորացն պահոցն առաւել գայթակղին Յոյնք և Վիրք ի մեզ, զի յիշատակ տաւնի սրբոյն Սարգսի անդ պատահեաց, և կարծի այն պահք նմա լինել, և անգիտանան զի պատմութիւն նորա յԱսոր[ւ]ոց է. զի ի Պասս նա վկայեաց, և անտեղեակ են պատմութեանն»[30]:*

*Կամ՝ «Յոյնք և Վիրք բամբասեն զՀայս վասն տաւնի սրբոյն Սարգսի և առաջաւորացն պահոց, զոր և Ասորիք տաւնեն»[31]:*

*Քաղկեդոնականների և մասնավորապես վրացիների «սովորույթները» քննադատելուց հետո Մխիթարը ջանում է բնութագրել «բոլոր ազգերի» գովելի կողմերը: Բայց այստեղ, մինչ նման բնութագիր տալը, ցանկանում է այս ազգերին միացնող մի ընդհանուր միջոց գտնել: Եկեղեցու տիեզերական ժողով հրավիրելը, նրա կարծիքով, անիրագործելի է[32], առավել ևս, որ վրաց արքաները՝ Թամարը և Դա-*

---

[25] Ձեռ. Յմր 631, 31ա-31բ = Ա, 1900, էջ 567-568:

[26] Ձեռ. Յմր 631, 33բ = Ա, 1901, էջ 57:

[27] Ձեռ. Յմր 631, 34բ = Ա, 1901, էջ 58:

[28] Ձեռ. Յմր 631, 35ա, 37ա, 38բ = Ա, 1901, էջ 58, 60, 61:

[29] Ձեռ. Յմր 631, 36բ = Ա, 1901, էջ 59-60:

[30] Ձեռ. Յմր 631, 37ա = Ա, 1901, էջ 60:

[31] Ձեռ. Յմր 631, 25ա = Ա, 1900, էջ 562:

[32] Ձեռ. Յմր 631, 39բ-40ա = Ա, 1901, էջ 122:

*վիթ [Սուլան]ը, դրան կողմնակից չեն[33]: Այդ պատճառով Մխիթար Գոշը առաջարկում է, որ քաղկեդոնականները և ոչ թե հայերը փոխզիջման ուղին ընտրեն եթե ոչ մանրուքներում, գոնե գլխավոր հարցերում[34]: Ի դեպ, Մխիթարը համոզված է, որ տիեզերական ժողովի հիմքը դրել է հիմնականում չորս ժողովուրդ՝ հույները, հռոմեացիները, հայերը և ասորիները, չորս ավետարանիչի նմանողությամբ. ահա ինչու, աշխարհում ընդամենը չորս պատրիարքություն կա, որոնց շարքում են նաև հայերը, մինչդեռ վրացիները հատուկ տեղ չունեն, քանզի նրանք դնում են հույների հետևից[35]:*

*Այնուհետև սկսվում է Գոշի գրվածքի, եթե կարելի է այսպես ասել, դրական մասը՝ հետևյալ բառերով. «Այլ զի թերին ասացաք զամենայն ազգաց, և այժմ զգովելին ասացից»[36], և շարունակում է հակառակորդներին «հաճոյախոսություններ» անել. «Յոյնք իմաստունք են և ողորմածք, ուսեալք ի Յովհաննէ Ոսկեբերանէ. Հռոմք՝ զգաստք են աղալթից և հնազանդ առաջնորդաց, ասորիք խոնարհք են և ճգնողք, հայք պահողք են և ողորմածք գերելոց և եկեղեցեաց, սրբութեան սիրողք. վիրք սրբոց և վանօրեից մեծարողք և անբամբաս առաջնորդաց»[37]:*

*Ցավոք, Մխիթարը շատ շուտ մոռանում է ընտրած ուղին և նորից անցնում քննադատության:*

*Նախ և առաջ նա վրացիներին մեղադրում է «Առաջավորաց պահքին» վերաբերող հարցում. «Յոյնք և Վիրք այնքան բամբասողք են Հայոց, զի զեկեղեցի զաւրհնեալ քակեն և զսեղան, յորոյ վերայ պատարագեալ է Քրիստոս, արտաքս ձգեն, և ասեն չուն զենուլ յեկեղեցի Հայոց, և այնպէս զաւրհնութիւն հանել զՀայոց. զայդ միայն Յուլիանոս արար ուրացողն Քրիստոսի՝ զմկրտութիւն իւր չան արեամբ կամեցաւ լուծանել...»[38]:*

*Դրանից հետո Մխիթարը մեկ առ մեկ թվարկում է տարբեր հավատքներ և դավանանքներ և բոլոր այն ծեսերը, այս կամ այն տարբերությամբ, որ ըստ հարմարության պետք է կատարվեն եկեղեցիներում՝ «մոնողների», այսինքն՝ տարբեր կարգի հերձվածողների ու «հերետիկոսների» համար, իսկ հրեաների ու հեթանոսների հա-*

[33] Ձեռ. Դմր 631, 45ա = Ա, 1901, էջ 126:

[34] Ձեռ. Դմր 631, 39բ-40ա = Ա, 1901, էջ 122:

[35] Նույն տեղում

[36] Ձեռ. Դմր 631, 40ա = Ա, 1901, էջ 122:

[37] Ձեռ. Դմր 631, 40ա = Ա, 1901, էջ 122:

[38] Ձեռ. Դմր 631, 41բ-41ա = Ա, 1901, էջ 122-123, հմմտ. վերը՝ այս գլխի ծ. 16:

*մար՝ այլ կերպ: Այդ ծեսերը, ըստ Մխիթարի՝ չպետք է վերաբերեն հույներին, վրացիներին ու հայերին: Ահա թե ինչու, նա սրտի ցավով է նշում հույների ու վրացիների հանցանքը հայերի հանդեպ, և հայերի հանցանքը՝ հույների ու վրացիների հանդեպ, երբ նրանք «մկրտում են» մեկմեկու[39]: Իսկ նման երևույթի պատճառը իրար անարգացի վատաբանելն է.*

*«Հայք ամբաստանեն զՅոյնս և զՎիրս վասն երկու բնութիւն ասելոյն անմիաւոր՝ զՆեստորին ունել, և նոքա զՀայս բամբասեն զԵւտիքէին ունել վասն մի բնութիւն ասելոյն. և ահա յայտ է և գիտելի է, զի մի բնութիւն ասեմք՝ ոչ զմարդկութիւնն ուրանամք, որպէս Եւտիքէս, այլ վասն անճառելի միութեան մի ասեմք, և նոքա անգիտաբար դայթակղին»[40]:*

*Մխիթարը վրացիներին մեղադրում է Քաղկեդոնի ժողովի դավանությունն ընդունելու համար, իսկ քաղկեդոնականությունը քողարկված նեստորականություն է. «Թէ ծածկութիւն Նեստորի է ժողովոյն Քաղկեդոնի խոստովանութիւնն, զոր ընդունին յոյնք, և վիրք նոցայ աշակերտեալք»[41]:*

*Հույների, վրացիների ու հայերի միասնությունը, ըստ Մխիթար Գոշի, խաթարվեց անգիտության, ամբարտավանության և չարասիրության պատճառով[42]: Ուստի՝ նա եզրակացնում է (հավանաբար նկատի է ունեցել Իվանե Երկայնաբազուկի «վրացացումը»), թե՝ «Արդ, յայտնի է զի որք ի հայոց ի յոյնս կամ ի վիրս դառնան՝ վասն փառաց աշխարհի է և վասն հեշտութեան մարմնոյն՝ թողեալ զփառս Աստուծոյ, զաշխարհի և զմանդկան առնուն»[43]:*

*Վերջում Մխիթար Գոշը խոսում է քրիստոնյա ազգերի՝ հայերի, հույների, վրացիների, ասորիների և հռոմեացիների միասնության մասին՝ հակադրելով տաճիկներին ու հրեաներին[44]: Նա տհաճություն է զգում, երբ որևէ քրիստոնյա «զտաճիկն և զջահուտուտն լաւ ասէ քան զհայն. այնպիսի ասացողքն չունին թողութիւն ոչ աստ և ոչ ի հանդերձեալքն, թէ չապաշխարին»[45]:*

---

39 Ձեռ. Յմր 631, 43ա = Ա, 1901, էջ 124-125:
40 **Նույն տեղում:**
41 Ձեռ. Յմր 631, 43ա = Ա, 1901, էջ 125, հմմտ. նաև այստեղ՝ նախորդ՝ Ը. գլխի ծ. 14-17 ծնթ-ների վերաբերող մասը:
42 Ձեռ. Յմր 631, 43բ = Ա, 1901, էջ 125:
43 Ձեռ. Յմր 631, 43բ = Ա, 1901, էջ 125:
44 Ձեռ. Յմր 631, 44ա = Ա, 1901, էջ 125:
45 Ձեռ. Յմր 631, [illegible] = Ա, 1901, էջ 12[illegible]:

# ԳԼՈՒԽ Ժ.

## ՄԽԻԹԱՐ ԳՈՇԻ ՄՏԵՐԻՄՆԵՐԸ ԵՎ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՎԱՆԱԿԱՆԸ ԵՎ ՆՐԱ ԴՊՐՈՑԸ

*«Դատաստանագիրք Հայոց»-ի «Նախադրության» վերջում, ինչպես տեսանք, Մխիթարը նշում է, որ գիրքը կազմելուն ձեռնամուխ է եղել 1184 թվականին, Դասինի վանքում, «ձեռնտուութեամբ հօր Յովսէփայ և եղբօր Պաւղոսի»*[1]:

*Ուրեմն,* Հովսեփը *և* Պողոսը *եղել են Դասինի միաբանության անդամներ, գրական հարցերով հետաքրքրվողներ, որոնք համարվում են Գոշի մտերիմները:*

***

*Մխիթարի բազմաթիվ աշակերտներից՝ մեզ հասած սկզբնաղբյուրների համաձայն, հայտնի են ընդամենը մի քանիսը, դրանց թվում՝ Սարկավագը, Թորոսը, Վանականը և Մարտիրոսը*[2]:

*Սարկավագը հիշվում է որպես Հին Գետիկի վանահայր, որի մոտ Գոշը գնացել է երկար դեգերումներից հետո: Նրա մասին* Կիրակոս Գանձակեցին *գրում է. «Եւ էր առաջնորդ վանիցն [Գետիկի] վարդապետն՝ որ Սարկաւագ անուանիւր, աշակերտ նորին <այսինքն՝ Մխիթարի>, որ բազում ուրախութեամբ ընկալաւ զնա <Մխիթարին>, և ինքն սպասաւորեր նմա»*[3]:

Թորոսի *և* Վանականի *մասին* Գանձակեցին *ասում է.*

*«Վասն այսպիսի համբաւոյ բազումք, որ էին ի կարգի վարդապետաց, ծածկէին զինքեանս եւ գային, ի կարգի աշակերտաց կալով՝ ուսանէին ի նմանէ եւ առնուին վերստին հրաման: Եւ բազումք յաշակերտաց նորա հասին ի պատիւ վարդապետական: Բայց երկուք ոմանք ի նոցանէ իմաստնագոյնք էին քան զայլսն, որք կարող էին եւ զայլս օգտեցուցանել. առաջնոյն՝ Թորոս անուն, ի սահմանացն*

---

[1] Տե՛ս վերը, այս՝ երրորդ մասի Ը. գլխի 5-9 ծնթ-ներին վերաբերող մասը:

[2] **Հ. Ոսկյանը** (Յովհաննէս Վանական և իւր դպրոցը, 112-113), հիշատակում է նաև ուրիշ Պողոսի և Կիրակոսի, թեև առանց հիմնավորելու:

[3] **Կիրակոս**, 197-198:

Մելիտինոյ Հայոց, Հայր նորա Հայկազն եւ մայր նորա ասորի, այր Հեզ եւ խոնարհ, առաքինի եւ աղքատասէր յոյժ, ասպնջական օտարաց եւ առատ ի տուրս, որ զժամանակս կենաց իւրոց բարւոքապէս վարեալ՝ ի ծերութիւն պարարտութեան յաւելաւ առ Հարս իւր եւ կայ թաղեալ ի Հռչականուն վանքն Հաղբատ, ի գլուխ վանիցն, ի գերեզմանս եպիսկոպոսացն եւ վարդապետացն, որոյ յիշատակն օրՀնութեամբ եղիցի, եւ աղօթք սորա պարիսպ Հաւատացելոց: Եւ երկրորդին՝ Վանական անուն, այր սուրբ եւ պարկեշտ եւ յամենայն գործս բարիս յառաջադէմ, ողջախոՀ եւ զգաստ յամենայնի եւ վարդապետական բանիւ քան զամենեսին, որ ի ժամանակին էին, գերազանցեալ, ծննդական մտօք եւ յարմար բանիւք: Վասն որոյ բազումք դեգերէին առ նա ուսման աղագաւ ո՛չ միայն վարդապետական բանի, այլ ամենայն կեանք նորա եւ շարժումն անգիր օրէնք էին տեսողացն: Եւ զայս ո՛չ թէ ականջալուր միայն ասեմ, այլ եւ ականատես, զի բազում ժամանակս կացաք մեք առ նմա ի վարժս կրթութեան ի սաՀմանս Տաւուշ բերդոյ, յանապատի անդ, զոր ստացաւ իւր բնակութիւն եւ աղբիւրաբար արբուցանէր ամենեցուն զբանն վարդապետական»[4]:

Մարտիրոսի մասին գրում է, որ նա ամենից արժանավորն էր, որպեսզի լիներ Գոշի Հետևորդը Նոր Գետիկում «եւ զմի ումն ի նոցանէ ընտրեալ՝ Մարտիրոս անուն նորա, որ աշակերտեալ էր նմա եւ ընտանի էր նմա, կացոյց զնա առաջնորդ նոցա. մանուկ տիօք, բայց կատարեալ իմաստութեամբ, այր քաղցրաձայն յերգս պաշտամանն, եւ առատամիտ ընթերցող, եւ երագ ի գրչութիւն»[5]:

Բոլոր այս անձանցից գիտագրական բնագավառում Հայտնի է միայն մեկը՝ Վանականը, որին Համարում են Խորանաշատի դպրոցի Հիմնադիրը և որի ժառանգորդներն են ԺԳ. դարի Հանրահայտ պատմիչներ Վարդան Արևելցին, Կիրակոս Գանձակեցին և Մաղաքիա աբեղան:

Գետիկ-Խորանաշատի դպրոցը, ինչպես նշեցինք վերը, մի ճյուղն է այն խմբի, որը պայմանականորեն անվանեցինք «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետներ», և որի Հիմնական ճյուղը սկզբնավորվել է Հաղբատ-ՍանաՀնի դպրոցում: Այս փաստը, ի դեպ, Հիմնավորվում է կապով, որը աղոտ նկարագրված է Գետիկ-Խորանաշատցիների և Հաղբատ-ՍանաՀինցիների ընդՀանուր տրամադրվածության մեջ:

---

4 Նույն տեղում, 205-206.
5 Նույն տեղում., 207:

*Այս առումով բավական է հիշենք Թորոսին, որը, ըստ Կիրակոսի, թաղված է Հաղբատում, հաղբատցի նշանավոր գործիչների կողքին*[6], *նաև Վանականը, որի մտերմությունը Սանահնի խմբակի հետ երևում է Տավուշի Ավետարան համարվող 1236 թ. ձեռագրի հիշատակարանից, որտեղ, ի դեպ, գրված է. «Ես՝ Վանականս, դրեցի իմով ձեռամբս ի Տփղիս քաղաքի, ի դրան Սուրբ Քառասնիցս, զի գերեալ էր Աւետարանս ի Տաւըշոյ ի Մուղան, ի թաթարէն, եւ յետ երից ամաց աստ բերեալ անվնաս վաճառեցին ի ՈՁԵ. թուիս»*[7]*:*

*Այս հիշատակարանը հետաքրքիր է այն առումով, որ վկայում է Հովհաննես Վանականի Թիֆլիսում «Սուրբ Քառասնիցս» եկեղեցում 1236 թ. լինելը, քանզի «Սուրբ Քառասնիցս» եկեղեցին, արդեն պարզել ենք, այսպես կոչված «բերդի փոքր» կամ «Հրեշտակապետաց» եկեղեցին է՝ բաղնիքների մոտ, որը հնագույն ժամանակից* Սանահինի *վանքի հակառակորդն էր Վրաստանի մայրաքաղաքում*[8]*: Ահա ինչու, համոզիչ պետք է համարել Վանականի մերձավորությունը Հաղբատ-Սանահնի, մասնավորապես, Սանահնի խմբակին*[9]*:*

*Խորանաշատի դպրոցը մեծ ծառայություն է մատուցել հայ գրականության պատմությանը: Բայց այդ դպրոցի ներկայացուցիչներից, միակ ղեկավարից՝ Վանականից բացի, այսպես կոչված, «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետների» խմբակին ոչ ոք չի պատկանել: Այդ պատճառով դրանց վրա կանգ չենք առնում, առավել ևս, որ նրանց ու ղեկավարի գիտագրական գործունեությունը մանրամասն քննարկել է* Համազասպ Ոսկյանը *իր «Յովհաննէս Վա-*

---

[6] Հմմտ., **Մ. Բժշկեան**, նշ. աշխ., էջ 417, (§ 624), **Երզնկեան**, 52:

[7] **С. Тер-Аветисьян**, Автограф Иоанна (Ованеса) Ванакана Тавушского, армянского писателя монгольской эпохи.- Изв. КИАИ, т. IV, стр. 52 и табл. I, հմմտ. Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Բ., 275, Ալիշան, Հայապատում, Բ., 463, Ոսկեան, Յովհաննէս Վանական. եւն., 15, **Л. Меликсет-Беков**, О междоусобице в Тифлисе в 1197 г. по поводу Кривой пасхи.- Изв. КИАИ, т. III, стр. 52: * *Այս ձեռագիրն այժմ Մաշտոցեան Մատենադարանի Հձր 4823ն է, 1224 թ. գրուած երեւի Խորանաշատում, մոնղոլներն այն գերեվարել են 1236 թ., Վանականը Թիֆլիսում փրկագնել է 1238 թ. - Գ. Տ-Վ.:*

[8] Այս մասին տե՛ս **Л. Меликсет-Беков**, նշ. աշխ., 49-60:

[9] Հաղբատի վանքի նման հակառակորդ Տփղիսում համարվում էր նաև, այսպես կոչված, «պարոն Ումեկի»-ն, հետագայում՝ «բերդի մեծ»-ը, «Կաթողիկէ Աստուածածին»-ի կամ «Սուրբ Գէորգ» եկեղեցին՝ Թաթարի հրապարակում, որտեղ Հովհաննես Երզնկացին 1284 թ. խոսում է իր հայտնի ճառը՝ «Յաղագս երկնային շարժմանն...», և որտեղ, ըստ ավանդության, 1795 թ. սպանվել է Հաղբատի վանական Սայաթ-Նովան, տե՛ս **Л. Меликсет-Беков**, նշ. աշխ., հմմտ. **И. Орбели**, Фрагмент крестного камня с арабскою надписью в Тифлисе.- ХВ, т. VI, стр. 198-199:

*նական և իւր դպրոցը»*[10] *Հրաշալի մենագրության մեջ:*

*Հովհաննես Վանականի բազմաթիվ գրվածքներում, որոնց մենք այստեղ չենք անդրադառնում, իրենց մեջ հայ-վրացական հարաբերությունների մասին շատ քիչ նյութ են պարունակում:*

*Հատկանշական է.*

*1) «Պատճառք վասն առաջաւորաց պահոցն, արարեալ Վանական վարդապետի՝ վասն հակառակացն և այպանողացն զուարթ պահս»*[11]*:*

*2) «Վանական վարդապետին ասացեալ Բան հաւատալի ազգիս մերում»*[12]*:*

*Վերջինիս մեջ, ինչպես արդարացիորեն նշել է նաև* J. Muylder-mans*-ը, ուշադրություն է գրավում այն տեղը, որտեղ հեղինակը մատնացույց է անում վրացիների երախտամոռությունը հայերի հանդեպ, չնայած հայ Մեսրոպը վրացիներին պարգևել է այբուբեն և այնպիսի մասունք, ինչպիսին է Վարձիայի խաչը*[13]*:*

*Վանականը գրում է. «...Վիրք այլ նախատեն զմեզ և ուրանան: Մեսրոպ ետ նոցա գիր, և զՎարձիոյ խաչն Մեսրոպ է աւրհնել, և յաջ թևին կայ հայ գիր, և զայն ոսկով ծածկեալ են...»*[14]*:*

*Այս տեղեկությունից հետագայում օգտվել է* Վարդանը, *որը Վարձիայի խաչի մասին գրում է. «Ի Դպրավանից տարան զխաչն, որ յանուն սուրբ Աստուածածնին, որ արդ Վարձիոյ կոչի, յանժամ Ճոնեանց կոչիւր... վասն որոյ և առին, ի Հայոց. և է սրբոյն Մեսրոպայ օրհնեալ... և ունի գիր հայերէն յաջ թեւն»*[15]*:*

***

*Այսպիսով, տեսնում ենք, որ Հաղբատ-Սանահնից բացի, գիտական-գրական աշխատանք է ծավալվել նաև ԺԲ. դարի երկրորդ կե-*

---

[10] **Համազասպ Ոսկեան**, Յովհաննէս Վանական և իւր դպրոցը, [ՄՄ ՂԳ.], Վն., 1922, էջ 1-122, Յովհաննէս Վանական (4-36), Վարդան Արևելցի (114-122), Կիրակոս Գանձակեցի (92-113) և Մաղաքիա աբեղա (114-122):

[11] Սովորական, այսպես կոչված, ճառընտիր-ում, որը վրաց. «Մրավալթավի» է նշանակում, ռուսերեն՝ изборник; **Կարինեանց**, Մայր Ցուցակ, 65, 129, **Ոսկեան**, Յովհաննէս Վանական. Վն., 31, տե՛ս էջմ. թանգարանի նոր հավաքածուի ձեռ. Հմր № 223/300 [4950]: Պասի և «առաջավոր» տերմինի մասին տե՛ս **Л. Меликсет-Беков**, Грузинский извод сказания о посте "араджавор".- ХВ, т. VI, 1917, стр. 73-111:

[12] Գիրք թղթոց, 533-535:

[13] **J. Muylderans**, Note sure Վանական վարդապետին ասացեալ բան հաւատալի ազգիս մերում.- ՀԱ, 1925, էջ 462-463:

[14] Գիրք թղթոց, 534:

[15] **Վարդան**, 69-70, **Ե. Լալայեան**, Վարձիա կամ Վարձունիք.- ՀԱ, 1895, էջ 23 = Ջաւախք.- ԱՀ, Ա., Շուշի 1895, էջ 160-164:

